# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՍԵԹԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ

ՉՈՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՎԵՆԵՏԻԿ

ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐՈՒ ՎԱՆՔԸ

1857

(9)

# ԾԱՆՈՒՑՈՒՄՆ

Անձամբ փորձ եղած ու աչքով տեսած կը վը-կայեմ, որ մեր ազգին մէջ վարպետները սորվե-ցընելու՝ և տղաքը սորվելու բաւական ջանք ու ախորժակութիւննին․ բայց քիչ աշխատանքով և քիչ ժամանակ կորսնցնելով սորվելու յարմար ամէն ուսման դասատետրները չունին ։ Եւ գիտնալով որ ուսմանց մէջ հարկաւոր տղոց սորվելու մէկ բանն ալ պատմութիւնն է, անոր համար հիմա մեզի ալ յորդոր մը եղաւ աշխարհքիս պատմու-թիւնները համառօտ ոճով շինելու հարցմամբ պատասխանով որ օրինակ ըլլայ տղոց՝ թէ ինչպէս յարմար կերպով պիտի հարցընեն ու պատասխա-նեն սորված պատմութիւննին ։ Եւ որովհետև հաւատքին հիմը, պատմութիւններուն մէջ ալ ա-ւելի հարկաւոր գիտնալու՝ մէջէն շատ խրատ առ-նելու պատմութիւնն աստուածաշունչին է, այսինքն՝ հին ու նոր կտակարանը, անոր համար առաջ ա-

սոր ձեռք զարկինք . մէկ քանի հարկաւոր գիտելիքներ ալ ամէն մէկ մասին ետեւէն աւելցուցինք , ու ետքը Երուսաղէմին կործանմանը վրայ քիչ մը բան խօսեցանք . անկէ վերջն ալ ամէն մէկ գասին համար մէյմէկ խրատական իմաստներ դրինք . և ետքը գրքին ցանկը՝ եղած փոխուածներուն ժամանակովը ։





# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻՆ

### ՎՐԱՅ



Հ. Հին ու Նոր Կտակարան ըսելով ի՞նչ կ'իմանաս.

Պ. Կտակարան՝ կտակի կամ դաշինքի գիրք ըսել է։ Հին կ'ըսուի ան կտակարանը որ կը խօսի Աստուծոյ Մովսէս մարգարէին ձեռքով տուած Հին օրէնքներուն վրայ։ Իսկ Նոր Կտակարան կ'ըսուի Քրիստոսի ձեռքովը մեզի տրուած օրէնքներուն գիրքը։

Հ. Կտակարաններուն հեղինակը ո՞վ է.

Պ. Աստուած է, որ տուն տուաւ Մովսէս մարգարէին ու իր ուրիշ ծառաներուն որ գրեցին. անոր համար Աստուածաշունչ ալ կ'ըսուի, որ ըսել է՝ Հոգւոյն սրբոյ ազդելովը գրուած։ Սուրբ Գիրք ալ կ'ըսուի՝ որովհետեւ Աստուծոյ գիրքն է, ու մէջի ամէն բանը իրաւ ու աղէկ է, ամէն մարդու սուրբ ըլլալու ալ պատճառ։

Հ. Աստուածաշունչը կարդալու ատեն ի՞նչ զգուշութիւն պէտք է ընել.

Պ. Որովհետեւ ամէն մէջի պատմութիւնները Աստուծոյ ազդելովը առանց սուտի մը գրած են, մէջի խրատներն ալ բոլոր Աստուծոյ տուած խրատներն են, անոր համար երկիւղածութեամբ

սոր ձեռք զարկինք . մէկ քանի հարկաւոր գիտե-
լիքներ ալ ամէն մէկ մասին ետեւէն աւելցուցինք ,
ու երբը Երուսաղէմին կործանմանը վրայ քիչ մը
բան խօսեցանք . ասկէ վերջն ալ ամէն մէկ դասին
համար մէյմէկ խրատական իմաստներ դրինք . և
երբը գրքին ցանկը՝ եղած փոփոխուածներուն ժա-
մանակովը ։





# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻՆ

### ՎՐԱՅ



Հ. Հին ու Նոր կտակարան ըսելով ինչ կ'իմանանք.

Պ. Կտակարան՝ կտակի կամ դաշինքի գիրք ըսել է։ Հին կ'ըսուի ան կտակարանը որ կը խօսի Աստուծոյ Մովսէս մարգարէին ձեռքով տուած Հին օրէնքներուն վրայ։ Իսկ Նոր Կտակարան կ'ըսուի Քրիստոսի ձեռքովը մեզի տրուած օրէնքներուն գիրքը։

Հ. Կտակարաններուն հեղինակը ո՞վ է.

Պ. Աստուած է, որ տուեն տուաւ Մովսէս մարգարէին ու իր ուրիշ ծառաներուն որ գրեցին. անոր համար Աստուածաշունչ ալ կ'ըսուի, որ ըսել է՝ Հոգւոյն սրբոյ ազդելովը գրուած։ Սուրբ Գիրք ալ կ'ըսուի՝ որովհետեւ Աստուծոյ գիրքն է, ու մէջի ամէն բանը իրաւ ու աղէկ է, ամէն մարդու սուրբ ըլլալու ալ պատճառ։

Հ. Աստուածաշունչը կարդալու ատեն ինչ զգուշութիւն պէտք է ընել.

Պ. Որովհետեւ ամէն մէջի պատմութիւնները Աստուծոյ ազդելովը առանց սուտի մը գրած են, մէջի խրատներն ալ բոլոր Աստուծոյ տուած խրատներն են, անոր համար երկիւղածութեամբ

ու մեծ պատուով պէտք է կարդալ։ Իսկ որ մե-
կուն խելքը չհասնիր կամ մէջէն սխալ բան կ'ի-
մանայ, պէտք է գիտցողի մը հարցնէ ու սուրբ
հայրց և եկեղեցւոյ ընդունած մեկնիչներուն մէջը
նայի, և չարութեամբ աղէկը գէշի չմեկնէ։ Անոր
համար սուրբ Օգոստինոս ալ կ'ըսէ "Թէ որ մէ-
ջէն բան մը քու խելքէդ վեր երեւնայ, պէտք չէ
որ ըսես թէ գիրքը չէնոր սխալ բան կ'ըսէ, հապա
գիտցիր որ կամ կարդացած օրինակդ սխալ է,
կամ սխալ թարգմանուեր է, կամ թէ դու չես
հասկընար"։

Հ․ Հին կտակարանը քանի՞ գիրք կը բաժնուի․

Պ․ Քառասունըհինգ․ Մովսէս մարգարէին
գրած հինգ գրքերը, այսինքն Ծնունդք, Ելք,
Ղեւտականք, Թիւք, Երկրորդ օրէնք․ Յեսու որդի
Նաւեայ, Դատաւորք, Հռութ, չորս գիրք Թա-
գաւորութեանց, երկու գիրք Մնացորդաց, եր-
կրորդ Եզր, Նէեմի, Եսթեր, Յուդիթ, Տոբիթ,
երկու Մակաբայեցիք, Սաղմոս Դաւթի, Առակք
Սողոմոնի, Ժողովող, Երգ երգոց, Իմաստութիւն,
Յոբ․ հինգ մեծ մարգարէները՝ այսինքն Եսայի,
Երեմիա, Բարուք, Դանիէլ, Եզեկիէլ․ տասներ-
կու փոքր մարգարէները՝ այսինքն Ովսէէ, Ամովս,
Միքիա, Յովէլ, Աբդիու, Յովնան, Նաւում,
Ամբակում, Սոփոնիա, Անգէոս, Զաքարիա,
Մաղաքիա, և Սիրաքայ գիրքը[1]։

Հ․ Նոր կտակարանը քանի՞ գիրք կը բաժնուի․

Պ․ Քսանըեօթը․ չորս աւետարանիչք, այսինքն
Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յովհաննէս․
Գործք առաքելոց, կաթողիկեայց եօթը թուղ-
թերը, այսինքն Յակոբու մէկ, Պետրոս առա-
քելոյն երկուք, Յովհաննէս աւետարանչին

1 Ասոնցմէ զատ կան նաև առաջին Եզր. Երրորդ Մա-
կաբայեցին։

իրեք. Յուդայի՛ն մէկ, Պօղոս առաքելոյն տասնը-չորս Թուղթերը, որ գրեց Հռոմայեցւոց. երկու Թուղթ Կորնթացւոց, Գաղատացւոց, Եփեսացւոց, Փիլիպեցւոց, Կողոսացւոց, երկու Թուղթ Թեսաղոնիկեցւոց, Եբրայեցւոց, երկու Թուղթ Տիմոթէոսի, Տիտոսի, Փիլիմոնի, և Յայտնութեան գիրքն որ Յովհաննէս աւետարանիչը գրեց։

Հ. Հին կտակարանը ի՞նչ լեզուով գրուեցաւ.

Պ. Հրէից լեզուով. միայն Դանիէլի, Յուդիթայ գրքերուն համար կ՚ըսեն թէ քաղդէարէն գրուած են, որ Հրէից լեզուէն քիչ մը տարբեր է. իսկ երկրորդ Մակաբայեցւոց ու Սողոմոնի Իմաստութեան գիրքը՝ սուրբն Հերոնիմոս կ՚ըսէ թէ յունարէն գրուեցան։

Հ. Նոր կտակարանը ի՞նչ լեզուով գրուեցաւ.

Պ. Յունարէն. միայն Մատթէոսի աւետարանը ու Պօղոս առաքելոյն Եբրայեցւոց գրած Թուղթը շատերը կը կարծեն որ Հրէից լեզուով գրուած ըլլան։

Հ. Հին կտակարանին հին ու երեւելի թարգմանութիւնները որո՞նք են.

Պ. Երեւելի է հայերէն թարգմանութիւնը, յունարէնը, լատիներէնը, քաղդէարէնը, ասորերէնը, արաբացին։ Յունարէն քանի մը անգամ թարգմանուած է, որոնց մէջ ընտիրը Եօթանասնից ըսուած թարգմանութիւնն է, որ Պտղոմէոս Փիլադելփոս անունով Եգիպտոսի թագաւորին հրամանովը եօթանասուն ու երկու Հրէայ Ռաբբիներ թարգմանեցին, Քրիստոսէ 273 տարի առաջ։

Հ. Հայերէն մեր Աստուածաշունչը ո՞վ թարգմանեց, և ո՞ր լեզուէն.

Պ. Հինգերորդ դարուն մէջ, Քրիստոսի 410 թուականին, մեր սուրբ Թարգմանիչները Սահակ ու Մեսրոպ իրենց աշկերտներովը թարգմանեցին

հին կտակարանը Եօթանասնից թարգմանութե-
նէն, ու Նոր կտակարանն ալ նոյնպէս յոյն բնա-
գրէն. աչքէ անցընելով նաև Հրէից, Ասորւոց ու
Արաբացւոց թարգմանութիւնները: Այս մեր թարգ-
մանութեան նման աղէկ թարգմանութիւն մէկ լե-
զուի մը մէջ չկայ. ինչպէս որ կը վկայեն օտարազ-
գիք ալ, որոնք որ հայերէն սորվեր ու մեր Աս-
տուածաշունչը կարդացեր են: Լաքրոզ ըսուած
երևելի Հոլանտացի հեղինակը համարձակեցաւ
ըսելու՝ որ հայերէն թարգմանութիւնը թագուհի
է ամէն ուրիշ ազգերուն թարգմանութեանցը:

Հ. Լատիներէն Աստուածաշունչը ով թարգ-
մանեց.

Պ. Լատինացիք թէ և առաջուց Եօթանասնից
թարգմանութենէն թարգմանածը ունէին, բայց
սուրբն Հերոնիմոս ուզելով որ աւելի աղէկ ըլլայ՝
նորէն թարգմանեց Հրէից լեզուէն, որ Վուլկա-
տա ըսուեցաւ, և արևմտեան եկեղեցւոյ մէջ կը
գործածեն. որ տեղ տեղ Եօթանասնից թարգ-
մանութենէն կը տարբերի:

Հ. Աստուածաշունչի պատմութիւնը քանի
դար կը բաժնուի.

Պ. Վեց. Ա. Աշխարհքիս ստեղծմանէ մին-
չուան Ջրհեղեղ . . . . . . . 1656 տարի:

Բ. Ջրհեղեղէն մինչուան Աբրահամու կոչու-
մը . . . . . . . . . . . . 2114 տարին:

Գ. Անկէ մինչուան Իսրայէլացւոց Եգիպտոսէ
ելլելը . . . . . . . . . . 2544 տարին:

Դ. Անկէ մինչուան Հրէից թագաւորութեան
սկիզբը . . . . . . . . . . 2962 տարին:

Ե. Անկէ մինչուան Հրէից Բաբելոն գերի եր-
թալը . . . . . . . . . . . 3446 տարին:

Զ. Անկէ մինչուան Յիսուսի ծնունդը՝ աշխարհ-
քիս . . . . . . . . . . . . 4053 տարին:

Հին կտակարանին պատմութիւնը մենք ալ այս վերը բերած վեց դարերուն վրայ վեց մաս կը բաժնենք։

Առջի մասը՝ Նահապետաց առենը, ինչուան Ջրհեղեղ, 1656 տարուան պատմութիւն։

Երկրորդ մասը՝ Ջրհեղեղէն ետքը եղած նահապետաց առենը, ինչուան Աբրահամու կոչումը, 458 տարուան պատմութիւն։

Երրորդը՝ անկէ ետքը եղած նահապետաց առենը, ինչուան Հրէից Եգիպտոսէ ելլելը, 430 տարուան պատմութիւն։

Չորրորդը՝ Մովսէս մարգարէէն սկսած Դատաւորաց առենը, ինչուան Սաւուղ թագաւորը, 418 տարի։

Հինգերորդ՝ Սաւուղէն ինչուան Բաբելոնի գերութիւնը, [illegible]4 տարուան պատմութիւն։

Վեցերորդը՝ իշխանութեան կամ քահանայութեան առենը, որ կը սկսի Բաբելոնի գերութենէն, ինչուան Յիսուսի ծնունդը՝ 607 տարուան պատմութիւն։ Բոլորը կ'ըլլայ 4053 տարի աշխարհքիս ստեղծմանէն 'ի վեր։

Նոր կտակարանին պատմութիւնն ալ չորս մաս կը բաժնենք.

Ա. Սուրբ Աստուածածնայ աւետմանէն, ինչուան Յիսուսի մկրտութիւնը։

Բ. Յիսուսի մկրտութենէն, ինչուան փառաւորապէս Երուսաղէմ մտնելը։

Գ. Յիսուսի Երուսաղէմ մտնելէն ինչուան հոգւոյն սրբոյ գալուստը։

Դ. Հոգւոյն սրբոյ գալստենէն ինչուան Պետրոս և Պօղոս առաքելոց գլխատումը։ Այս Նոր կտակարանին պատմութիւնը 74 տարուան միջոց է։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻՆ

## ՆԱՀԱՊԵՏԱՑ ԴԱՐԸ

### ՋՐՀԵՂԵՂԷՆ ԱՌԱՋ

### Ա.

Աշխարհքիս ստեղծումը։

Հ. Աշխարհըս ո՞վ ստեղծեց, ու ի՞նչ կերպով.

Պ. Աստուած վեց օրուան մէջ ոչինչէ ստեղծեց երկինքն ու երկիրս իր ամէն մէջի բաներովը։ Թէ և կրնար իր ամենակարողութեամբը մէկ վայրկենի մէջ ստեղծել ամէնը մէկէն, բայց ուզելով իմացընել որ ինքն ամէն բան խորհրդով կ'ընէ ու կարգով, անոր համար ամէն օր մէյմէկ բան ըրաւ։ Ուստի նախ և առաջ ստեղծեց երկինքն ու երկիրս և հրեշտակները. ետքը լոյսն ստեղծեց, ու գիշերը ցորեկէն որոշեց. և ան եղաւ աշխարհքիս ստեղծմանն առաջին օրը։

Երկրորդ օրը հաստատութիւնն ըրաւ, ու երկինքի ջուրերն երկրիս ջուրերէն զատեց։

Երրորդ օրը ծովը ցամաքէն բաժնեց, ու հրաման տուաւ որ գետինը խոտեր, ծաղիկներ ու ամէն կերպ պտղոյ ծառեր բուսցընէ։

Չորրորդ օրն արեւը լուսինն ու աստղերն ստեղծեց, ու անոնցմով ժամանակ, օր, տարի որոշեց։

Հինգերորդ օրը՝ ձկներն ու թռչուններն ըրաւ, ու օրհնեց զանոնք որ աճին ու շատնան, օդոյն և ջրին մէջ սփռուին։

Վեցերորդ օրն ամէն ցեղ չորքոտանիներ ու անասուններ, ամէն բանէն ետքն ալ մարդն ստեղծեց իրեն նման ու անունը Ադամ դրաւ։

Հ. Աստուած Ադամը ինչ կերպով ստեղծեց.

Պ. Աստուած միայն Եղիցի ըսելով ամէն բան ստեղծեց. երկինքը, երկիրս, ծովը, աստղերը, արեւը, ամէն տեսակ կենդանիները, թռչունները, ձկները, և ամէն տեսակ ծառերը ծաղիկները։ Բայց երբոր կարգը մարդուն եկաւ՝ բոլորովին ստեղծելու կերպը փոխեց, սկսաւ խորհուրդ ընել. կ'ըսէ "Ստեղծենք մարդը՝ մեր կերպարանքովը և մեզի նման"։ Ասով իմացընել ուզեց Երրորդութեան խորհուրդը։ Ասանկ մտաւոր ստեղծուածի մը մարմինն ալ արժան սեպելով որ չընէ միանակ խօսքով, հող առաւ ու մարդ շինեց, և աւելի զարմանալու կերպով ալ հոգին ստեղծեց։ Ուրիշ բաներու համար՝ սա դիէն ան դիէն ելլէն կ'ըսէր. բայց մարդուն հոգին ինքն իրմէ փչեց։ Այսչափ տարբերութիւնները անոր համար ըրաւ որ իմացընէ թէ ուրիշ արարածները ամէնը մէկէն առած՝ մարդէն շատ վար և տարբեր բաներ են։

Հ. Ամէն աշխարհքիս բաները ստեղծելէն ետքը Աստուած ինչ ըրաւ.

Պ. Եօթներորդ օրը դադրեցաւ իր ամէն գործքերէն ու օրհնեց ան օրը, որն որ ետքը պատուիրեց որ իրեն նուիրենք՝ Շաբաթ անուանելով, որ հանգիստ ըսել է. անոր տեղը ետքը Կիրակի օրը դրուեցաւ 'ի յիշատակ Քրիստոսի յարութեանը։

Զ.

## Ադամայ մեղքն ու պատժուիլը:

Հ. Աստուած իր ստեղծած բաներուն ինչ կարգ ու կանոն դրաւ.

Պ. Անբան արարածներուն հրաման տուաւ որ իրենց դրած կարգովը փոփոխուելով՝ ամէնքն ալ իրենց տեսակը պահեն. իսկ մարդը դրաւ աղուոր ու զուարճալի պարտէզի մը մէջ որ Դրախտ կ'ըսուի: Անոր մէջը ամէն տեսակ պտղատու ծառերէն զատ երկու ծառ ալ կային. մէկուն անունը Ծառ կենաց, մէկալինը՝ Ծառ գիտութեան բարւոյ և չարի. ուստի Ադամայ ալ պատուիրեց որ տիրէ աշխարհքիս ամէն բաներուն, և ուզածին պէս կառավարէ. միայն արգելեց իրեն որ գիտութեան ծառին պտուղէն չուտէ, թէ չէ՝ գիտնայ որ կերածին պէս կը մեռնի:

Հ. Ինչո՞ւ արգելեց Աստուած Ադամայ որ գիտութեան ծառին պտուղէն չուտէ.

Պ. Որովհետև Աստուած զմարդը իրեն նման ստեղծեց բանական և ինքնիշխան, ու ամէն բան անոր ձեռքը թողուց որ վայելէ և ուրախանայ, անոր համար ուզեց որ մէկ պզտի բանի մը մէջ հնազանդելով Աստուծոյ, ու իրեն կամքին դէմ ընելով՝ իմացընէ որ թէպէտ ազատ ստեղծուած է, բայց հաւատարիմ է իր ստեղծողին, ու կը ճանչնայ որ ան ամէն բարիքը Աստուծմէ առեր է:

Հ. Ադամ հնազանդեցա՞ւ Աստուծոյ հրամանին.

Պ. Քանի որ մինակ էր՝ չկերաւ. բայց երբոր Աստուած Եւան անոր ընկեր տուաւ, Եւային յորդորելովը կերաւ ան ծառին պտուղէն:

Հ. Եւան ի՞նչպէս ստեղծուեցաւ.

Պ. Ադամ երբոր դրախտին մէջը պառկեր քուն կ'ըլլար, առաւ Աստուած անոր մէկ կողը, ու անկէ շինեց Եւան, ու տուաւ Ադամայ որ անոր ընկեր, օգնական ու կին ըլլայ:

Հ. Եւան չիմացա՞ւ Աստուծոյ հրամանը չուտելու գիտութեան ծառին պտղէն.

Պ. Ադամ զուրցած էր անոր. բայց սատանան օձի կերպարանք առած, որ ամէն կենդանիներէն խորամանկ է, եկաւ Եւային խաբխբելով ըսաւ. "Թէ որ ուտէք այն ծառէն՝ Աստուծոյ պէս կ'ըլլաք, բարին ու չարը կը ճանչնաք: Եւան ալ խոստմունքին հետ տեսնելով պտղոյն աղուորութիւնն ալ՝ հաւնեցաւ, փրցուց Ադամին ալ տուաւ ու մէկտեղ կերան:

Հ. Ադամ ու Եւա իրենց ըրած անհնազանդութեան համար ի՞նչպէս պատժուեցան.

Պ. Նախ մէկէն 'ի մէկ կորսնցուցին իրենց անմեղութիւնը, ու իմանալով թէ մերկ են՝ սկսան ամչնալ, և թզենի տերևներով իրենք զիրենք ծածկեցին, ու ծառերու մէջ պահուըտեցան: Աստուած ուզելով որ զղջումի գան, հարցուց թէ Ո՞ւր էք. անոնք զղջալու տեղ՝ մերկ ըլլալնին պատճառ բերեին. ու երբոր նորէն հարցուց, թէ "Չըլլա՞յ թէ այն արգելած պտղէն կերած ըլլաք„. այն ատեն Ադամ յանցանքը Եւային վրայ ձգեց, Եւան ալ օձին, առանկով չզղջացին. անոր համար Աստուած ալ առաջ օձը պատժեց որ ամէն կենդանիներէն ալ անիծած ըլլայ, փորուն վրայ քալէ ու հող ուտէ, ու կինը իրեն գլուխը ճզմէ, օձն ալ կնոջ կրունկը խածնելու ջանայ: Եւային ալ պատիժ դրաւ որ ցաւով տղայ բերէ, ու էրիկը իշխէ անոր վրայ. Ադամին ալ պատիժ՝ որ իր հացը ճակտին քրտինքովը գտնէ, ու մեռնի հող դառնայ: Նաև Աստուած երկուքին ալ կաշիէ զգեստ

հագցուց, ու դրախտէն դուրս հանեց, որ գետին բանին ու աշխատին. ու քերոբէներուն ալ հրաման տուաւ որ բոցեղէն սրով արգելեն կենաց ծառին մօտենալու:

## 5.

### Կայէն, Աբէլ.

Հ. Ադամ դրախտէն ելլելէն ետքը ինչ նոր խեղճութեան հանդիպեցաւ.

Գ. Ադամ երկու տղայ ունեցաւ. առջինին անունը Կայէն էր, երկրորդին Աբէլ: Կայէն երկրագործ եղաւ, Աբէլ հովիւ. Կայէն Աստուծոյ զոհ ըրաւ իր երկրին պտուղներէն, Աբէլն ալ զոհ ըրաւ իրեն ոչխարներուն առջինեկները ու գէրերը. անոր համար Աստուած Աբէլինը ընդունեցաւ, բայց Կայէնինին տուածին չհաւնեցաւ: Աս բանիս վրայ Կայէն շատ սրտմեցաւ: Աստուած իրեն ըսաւ որ դու սրտանց չտուիր, անոր համար չընդունեցայ: Բայց Կայէն սաստիկ նախանձեցաւ եղբօրը վրայ. օր մը խաբելով զինքը դաշտ տարաւ, ու հոն զարկաւ մեռցուց: Աս բանս մեծ ցաւ եղաւ Ադամայ, երբոր տեսաւ իր անհնազանդութեան պատիժը սիրելի անմեղ որդւոյն վրայ հասած իր առջինեկ որդւոյն ձեռքով:

Հ. Կայէն եղբայրասպանութեանը համար ինչ պատիժ քաշեց.

Գ. Աստուած կ'ուզէր որ զղջումի գայ. անոր համար չգիտցողի պէս հարցուց թէ ուր է Աբէլը. բայց Կայէն զղջալու տեղ լրբութեամբ պատասխանեց, թէ Ես իրեն պահապանն եմ: Անոր համար Աստուած ալ պատիժ տուաւ իրեն, որ

տապանէն անդին բարբարոսական պաշտօնք, շատ աշխատի, ու երկիրը իրեն պատրաստ չէր. բայց Կայէն չհետևեցաւ Ադամայ օրինակին ու ետքն ալ չզղջաց. և անանկ յուսահատած տարուեցաւ՝ մինչուան որ Ղամէք իր թոռը մէկ անտառի մը մէջ վայրի կենդանի կարծելով զինքը՝ նետով զարկաւ մեռցուց։

Հ. Աստուած ինչո՞վ մխիթարեց Ադամայ սիրտը՝ որ Աբելին մահուամբ վշտացած էր.

Գ. Անոր տեղը ուրիշ զաւակ մը տալով Սէթ անունով, որ Աստուծոյ ալ շատ սիրելի եղաւ իրեն որդիներովը, անոր համար ալ Սէթայ ցեղը Որդիք Աստուծոյ ըսուեցան։

Հ. Սէթայ ցեղին մէջ որ[illegible] երևելի.

Գ. Մէկը Ենովս Սէթայ որդին, որ սկսաւ կատարեալ աստուածպաշտութիւն տարածել. Ենովք՝ որ Աստուծոյ շատ սիրելի ըլլալուն ողջ ողջ աշխարհքէս վերցաւ իրեք հարիւր վաթսունհինգ տարուան. Մաթուսաղան՝ որ 969 տարի ապրեցաւ, որուն չափ երկայն տարիք մարդ չեղաւ աշխարհքիս վրայ։

Հ. Կայենին ցեղն ինչպէս անուանեցան, ու մէջերնին ինչ երևելի մարդիկ եղան.

Գ. Որդիք մարդկան ըսուեցան, և մէջերնին ամէն նշանաւորն եղաւ Կայէն՝ որ քաղաք շինեց և անունը դրաւ Ենոք, որ էր իր առջի որդւոյն անունը։ Ղամեքայ մէկ որդին Յոբաղ երաժշտութիւն գտաւ. մէկալ որդին Թոբէլ դարբնութիւն գտաւ. և ասոնց քոյրն ալ Նոյեմա՝ կտաւ գործել սկսաւ։

Հ. Որդիք Աստուծոյ իրենց աղէկութեանը մէջ մինչև ո՞ր ատեն մնացին.

Գ. Քանի որ խնամութիւն չէին ըներ Որդիք մարդկան ըսուածներուն հետ՝ Աստուծոյ սիրելի էին. բայց երբոր աս զգուշութիւնը մէկդի թողլով սկսան խնամանալ անոնց հետ, բոլորովին գէշ

ցան։ Ան տեսեր էր որ երեւելի հսկաները ծնան անոնց խնամութենէն։

## 4.

### Ջրհեղեղ։

Հ. Որդիք Աստուծոյ գէշութեան ետեւէ ըլլալուն համար ի՞նչ պատիժ առին Աստուծմէ.

Պ. Աստուած թէպէտ ամէնը մէկէն կրնար յանկարծ ջնջել, բայց իր ողորմութեամբը, հարիւր տարի առաջ իմացուց՝ թէ սրդողած է և կ՚ուզէ պատժել. ու երբոր չզղջացին, ջրհեղեղով կորսնցուց բոլոր աշխարհքիս մարդիկը, ողջ պահելով միայն Նոյ նահապետը իրեն ընտանիքովը։

Հ. Աստուած ի՞նչ կերպով իմացուց մարդիկներուն, թէ իրենց մեղքին համար կ՚ուզէր ջրհեղեղ ընել.

Պ. Նոյնահապետին հրաման տուաւ որ հարիւր տարուան մէջ մէկ տապան մը շինէ՝ որուն երկայնքն ըլլայ երեք հարիւր կանգուն, լայնքը յիսուն կանգուն, բարձրութիւնն ալ երեսուն. երեք յարկ. մէջը բաժանմունք, քովէն ալ դուռ մը. աս նաւը շինելու ատեն ամէնքը իմացան, բայց կը խնդային Նոյ նահապետին վրան, ու չէին հաւտար։

Հ. Ջրհեղեղը ի՞նչպէս եղաւ.

Պ. Նոյ նահապետը Աստուծոյ հրամանովը ամէն տեսակ սուրբ ըսուած կենդանիներէն եօթնական զոյգ, և անսուրբ ըսուածներէն երկերկու զոյգ տապանը մտցուց՝ իրենց պէտք եղած պաշարովը. մտաւ ինքն ալ տապանին մէջ իր երեք որդիքներովը ու իրենց կնիկներով, ամէնը ութ հոգի. Աստուած ալ դուռը վրաններնէն գոցեց։ Եօթն օր անցնելէն ետքը սկսաւ երկնքէն սաստիկ անձրև գալ, գետնէն ալ չորս դին սկսաւ ջուր

եղաւ քառասուն օր միակերպ, ինչուան ջուրը բարձր լեռներէն ալ տասնուհինգ կանգուն վեր բարձրացաւ ու խեղդեց բոլոր մարդիկներն ու կենդանիները, որ տապանէն դուրս մնացած էին :

5.

Աստուծոյ խնամքը Նոյ նահապետին վրայ :

Հ. Նոյ նահապետը որչափ ատեն տապանին մէջ փակուած կեցաւ.

Պ. Տարի մը ամբողջ. վասն զի ինչուան հարիւր յիսուն օր ջուրը բարձրացած մնաց. ինչուան որ ամէն մարմինները ջրին երեսը կեցած՝ փտեցան ընջուեցան : Իսկ թէ որ ջուրը շուտ մը ցամքէր, անոնք գետնին երեսը տարածուած՝ իրենց գէշ հոտովը բոլոր օդը կ'ապականէին : Հինգ ամիսէն ետքը Աստուած հով մը հանեց որ սկսաւ ջուրը ցամքիլ. երբոր եօթը ամիս եղաւ՝ նստաւ տապանը Հայաստանու Արարատ կամ Մասիս կոչուած լեռան վրայ. և տասնումէկերորդ ամսուն առջի օրը լեռներուն գլուխները սկսան երեւնալ. քառասուն օր՝ ալ անցնելէն ետքը Նոյ նահապետը տապանին պատուհանը բացաւ ու ագռաւ մը թռցուց, որ գնաց ու ալ չդարձաւ. ան ատենը Նոյ աղաւնի մը թողուց որ իմանայ թէ ջուրը ցամքե՞ր է. բայց աղաւնին կենալու տեղ չգտնալով ետ դարձաւ, Նոյ ալ ձեռքը երկընցուց՝ ներս առաւ : Եօթը օրէն նորէն թողուց աղաւնին, որ իրիկուան դէմ դարձաւ եկաւ տապանը՝ ձիթենիի ճիւղ մը առած բերանը. անցաւ եօթը օր ալ՝ նորէն խրկեց աղաւնին, որ գնաց ու մէյմ'ալ չդարձաւ : Ան ատեն Նոյ տապանին վրան բացաւ ու անանկ մէկքանի օր ալ սպասեց ինչուան որ աղէկ մը ցամքեցաւ գետինը, ու Աստուծմէ հրաման առաւ, ելաւ դուրս, ու

ամէն անասունները ու թռչուններն ալ թողուց որ ելլեն ։

Հ. Նոյ նահապետ տապանէն ելլելուն պէս իր առջի գործքը ի՞նչ եղաւ.

Պ. Մէկէն ընկաւ Աստուծոյ առջեւ շնորհակալ եղաւ, ու հետը ունեցած սուրբ կենդանիներէն զոհ ըրաւ, որ Աստուծոյ շատ հաճոյ անցնելով օրհնեց զինքը որ շատնայ ու իշխէ աշխարհքիս ամէն բաներուն վրայ ։

Հ. Աստուած ի՞նչ դաշինք ըրաւ Նոյին հետ՝ տապանէն ելլելէն ետքը, և ի՞նչ նոր բանի հրաման տուաւ.

Պ. Գիտնալով մարդուս բնութեան տկարութիւնը որ պզտիկուց գէշութիւն կը սիրէ, անոր համար Աստուած ուխտ ըրաւ որ մէյմ՝ ալ ջրհեղեղ չընէ. և իր ուխտին նշան տուաւ ծիրանի գօտին, որ երբոր երևնայ յիշենք Աստուծոյ գթութիւնն ու յուսանք որ չպատժեր զմեզ, հապա կը սպասէ որ զղջանք ու թողութիւն առնենք ըրածներնուս վրայ ։ Նոր տուած հրամանն ալ աս էր որ ջրհեղեղով երկիրս գէշնալով՝ մարդիկներուն բնութիւնն ալ տկարացաւ, անոր համար արտօնեց որ անկէ ետքը մարդիկ միս ալ կարենան ուտել՝ ուրիշ ուտելիքներուս պէս ։

քըն սուրբ Աստուածածինը ) Ճզմէ սատանային գլուխը ։ Ասով Ադամայ սիրտն ալ մխիթարեց, իմացընելով թէ ինքն որ հոգւով նման է Աստուծոյ՝ատէն կուգայ որ Աստուած ալ մարմնով իրեն նման կ'ըլլայ ու զինքն ալ մեռնելէն կ'ազատէ ։

Հ. Ջրհեղեղէն ետեւը քաղաքական կառավարութիւնը ինչպէս էր.

Պ. Ամէն մէկ նահապետ իրենց տունը կը կառավարէին ։ Եւ շատ ապրելով շատ ալ տղաքներ թոռներ ունենալով, մէյմէկ պզտի թագաւոր կը ձեւանային, որ իրենք իրենց քաղաք կը շինէին, ու իրենց ընտանեացը կարգ կանոն կը դնէին ։

Հ. Դրախտը աշխարհքիս ո՛ր կողմն էր.

Պ. Աստուածաշունչին պատմութենէն հաւանական կ'երեւնայ որ դրախտը Հայաստանի մէջն ըլլայ ։ Նախ անոր խօսքէն որ կ'ըսէ Աստուածաշունչը. " Եւ տնկեաց Աստուած զդրախտն յԵդեմ ընդ արեւելս ",. որ ըսել է թէ դրախտը Արաբիայի, Մովսեսի պտըտած տեղերուն արեւելեան կողմն էր՝ որ Հայաստանու դին կ'իյնայ ։ Երկրորդ որ դրախտին մէջէն ելած գետերուն երկուքը՝ Տիգրիս ու Եփրատ՝ Հայաստանի մէջէ քովէ կեցած են ինչուան հիմա ։ Ասոնցմէ զատ, ան գետերուն մօտ տեղերուն պարարտութիւնը, գեղեցկութիւնը, այն տեղւոյն հոտաւէտ ծաղկըներուն անթիւ տեսակները, որ ինչուան հիմա կը բուսնին ու տեսնողները կը զմայլեցընեն, և յայտնի կը ցուցընեն՝ որ առաջուց մանաւոր Աստուծմէ օրհնած տեղ մը եղած է ։



# ՆԱՀԱՊԵՏԱՑ ԴԱՐԸ

## ՋՐՀԵՂԵՂԻՆ ԵՏԵՒ

### 7.

Նոյ նահապետին որդիքը։

Հ. Նոյին որդւոց անունը ի՞նչ է, և ի՞նչ մասնաւոր գործք կը պատմուի իրենց վրայ.

Պ. Անունները Սեմ, Քամ, Յաբեթ է։ Ասոնց հայրը Նոյ այգի տնկեց, ու մէկ անգամ մը շատ կեկ խմելով գլուխը զարկաւ, ու երբոր տանը մէջ մերկ պառկեր էր՝ դիպուածով Քամը տեսաւ՝ ու գնաց ծիծաղելով պատմեց եղբարցը. անոնք լսելնուն պէս լաթ մը առին, ու ետ ետ երթալով գնացին գոցեցին հայրերնին առանց տեսնելու։ Երբոր արթընցաւ Նոյ ու իմացաւ եղածը, անիծեց զՔամ որ ծառայ ըլլայ մէկալ երկու եղբարցը, և օրհնեց զՍեմ որ իշխէ անոր վրայ, և զՅաբեթ ալ՝ որ Սեմայ հետ բնակի։

Հ. Նոյ նահապետ ջրհեղեղէն ետքը որչափ ատեն ապրեցաւ.

Պ. Երեք հարիւր յիսուն տարի. հինգ հարիւր տարուան էր երբոր տապանը սկսաւ շինել, վեցհարիւր տարուան էր ջրհեղեղին ատենը, ինը հարիւր յիսուն տարուան մեռաւ։

Հ. Սեմ, Քամ, Յաբեթ ջրհեղեղէն ետքը մէկէն զաւակեցա՞ն մէկմէկէ.

Պ. Երբոր այնչափ շատցան որ ալ մէկտեղ չէին կրնար բնակիլ, որոշեցին աստի անդին երթալ սփռուիլ. բայց երբոր ճամբուն վրայ հանդիպեցան Սեննաարայ մեծ դաշտին, քիչ մը ատեն ալ հոն կեցան Բաբելոնի աշտարակը շինելու մտքով. ու երբոր չյաջողեցաւ խորհուրդնին, բոլորովին ցրուած բաժնուեցան մէկմէկէ:

Հ. Ի՞նչ բանի համար կ՚ուզէին մարդիկ շինել Բաբելոնի աշտարակը.

Պ. Երբոր տեսան Սեննաարայ մեծ ու ընդարձակ դաշտը, մտքերնին հպարտութեան խորհուրդ մը ինկաւ իրենց կարողութիւնը ցուցնելու, ու յիշատակնին ձգելու յաւիտեան աշխարհիս վրայ. ատոր համար սկսան շինել քաղաքի չափ մեծ աշտարակ մը, որուն բարձրութիւնը կ՚ուզէին մինչեւ երկինք հասցնել: Իսկ շինուածքին նիւթ կը գործածէին քարի տեղ եփած աղիւս. եւ կրոյ շաղախի տեղ կուպր, ինչու որ ան տեղուանքը քար գըժուար կը գտնուէր:

Հ. Ի՞նչ արգելք եղաւ որ աշտարակ շինելու խորհուրդը չկրցան առաջ տանիլ.

Պ. Աստուած տեսաւ որ մտքերնին չար է, ու գիտնալով որ ամէն մարդ մէկտեղ մէկ լեզու ու մէկ ազգ ըլլալով ուրիշ շատ անկարգութիւններ ալ կ՚ընեն, յանկարծ լեզուննին շփոթեց, խառնակեց, անանկ որ մէկմէկու ըսածը չէին հասկընար. ատանկով խառնակութիւն ինկաւ մէջերնին, ու աստի անդին ցրուեցան գնացին: Անոր համար ան տեղին անունն ալ Բաբելոն դրին՝ որ խառնակութիւն ըսել է, որ առաջ Սեննաար կ՚ըսուէր:

Հ. Ո՞վ գլուխ կեցեր էր աշտարակ շինելու խորհուրդը առաջ տանելու համար. ու շինուածքին նիւթը ուսկից կը գտնէին.

Պ. Նեբրովթ անունով Քամայ թոռանը գլուխն

կորիզ ու աղէկ սերմը վատորակիլ գիտցող մարդ մը՝ ամենուն գլուխ կեցեր՝ բանը առաջ կը տանէր ։ Բայց լեզուները չփոթելէն ետքը ճար չեղաւ զա_նոնք միաբանելու . անոր համար ինքը իրեններովը մինակ մնաց , ու կ'իշխէր անոնց ։

8 .

Սեմայ որդիէն իջնալն Աբրահամ ։

Հ . Սեմը Նոյ նահապետէն օրհնուելով ինչ բա_րիք գտաւ Աստուծմէ .

Պ . Աստուած, անոր ցեղէն ընտրեց առաւ իրեն սիրելի ազգ մը՝ որոնց վրայ մասնաւոր գութ խը_նամք ցուցընելով կը հոգար ։ Այս ազգը Հրէից կամ Եբրայեցւոց ժողովուրդն էր , որուն յայտ_նեց Աստուած իր ամէն կամքը , ու օրէնքներ գրաւ վրանին՝ որոնք կ'ուզէր որ մարդիկ պահեն , և ա_նոնցմով արժանի եղան Աստուծոյ ժողովուրդ կո_չուելու , և զՔրիստոս իրենց մէջը ընդունելու ։

Հ . Աստուած երբ ընտրեց Եբրայեցիները ու_զատեց ուրիշ ազգերէն .

Պ . Չորս հարիւր յիսունըութը տարի ջրհեղե_ղէն ետքը հայր Աբրահամու ատենը , որ Սեմէն սկսած տասնըմէկերորդն էր ։ Վասն զի Սեմայ տղան Արփաքսադ , Արփաքսադին տղան Կայնան, Կայնանայ տղան Սաղա , Սաղային տղան Եբեր՝ որուն անունով ազգը ըսուեցաւ Եբրայեցի . Եբե_րայ տղան Փաղէկ , Փաղեկայ տղան Ռագաւ , Ռա_գաւայ տղան Սերուք , Սերուքայ տղան Նաքովր , Նաքովրի տղան Թարա ։ Աս Թարան իրեք որդի ունեցաւ . Աբրահամ , Նաքովր , Առան . Առան մեռաւ ու Թողուց տղայ մը Ղովտ անունով ։ Աբրա_

Բայց աս մարդկանց տարիքին կարճնալը Թողուց Աստուած որ բնական կերպով ըլլայ կամաց կամաց. վասն զի Նոյին Թոռները հինգհարիւր տարիի չափ ապրեցան, և անոնց որդիքը չորս հարիւր և երեք հարիւր տարի։ Եւ Ջրհեղեղէն հինգհարիւր տարի ետքը Աբրահամու ատենը՝ հազիւ երկու հարիւր տարի կ'ապրէին. անկէ մէկ երկու հարիւր տարի ալ ետքը՝ հարիւր կամ հարիւր քսան տարի ապրող քիչ կը գտնուէր, ինչպէս որ ըսեր էր Աստուած։ Անկէ ետքը մինչուան հիմա չորս հազար տարուան միջոց միշտ նոյնպէս հարիւր քսան տարուընէ վեր ապրող խիստ դժուար կը գտնուի։ Իսկ անկէ երեք հազար տարի առաջ Դաւիթ մարգարէն Սաղմոսին մէջ կ'ըսէ իր ատենին համար՝ թէ եօթանասունէն անդին առողջ հանգիստ կեանք չըլլար. ինչպէս որ հիմա ծերերը փորձով նոյն խօսքը կը հաստատեն։

## 10.

Հ. Լեզուները խառնուելէն առաջ մարդիկ ինչ լեզուով կը խօսէին.

Պ. Հաւանականաբար Հայերէն, ինչպէս ստոյգ կ'երևնայ Աստուածաշունչին պատմութենէն. վասն զի Նոյ նահապետը երբոր տապանէն ելլելով Մասիս լեռնէն իջաւ, հոն Հայաստան բնակեցաւ. ու երբոր մարդիկ շատցան, ու ելան Հայաստանէն ասդին անդին երթալու համար, և Սենաարայ դաշտին մէջ լեզունին խառնուեցաւ, միայն Հայաստանու բնակիչներուն լեզուն՝ որոնք տեղերնէն չէին շարժած՝ մնաց առջի լեզունին՝ առանց խառնուելու։ Այսչափէն յայտնի կրնանք գուշակել որ երբոր Հայկ նահապետը Հայաստանէն ելլելուն վրայ զղջալով նորէն ետ դարձաւ, ինչպէս

որ չախորժեցաւ ուրիշ տեղուանքէն ու իր ազգի բնակութիւնը եկաւ, առանց ալ չախորժելով իր աւրուած լեզուէն, և տեսնելով որ բոլոր ազգի բնակիչները իրենց ազգի լեզուներին կը խօսէին, ինքն ալ նորէն սկսաւ հայերէն լեզուով խօսիլ. մէյմը՝ իրեն հօրը լեզուով խօսելու փափաքով, մէյմ՝ ալ որպէս զի շահի բնակիչներուն սիրտը ու տիրէ անոնց վրայ, որոնք բնական կերպով կ'ատէին անանկ նորելուկ լեզու մը որ պատժոյ համար Աստուած տուեր էր։ Այս պատճառութիւնը չընդունելով Եւրոպացիք, և չկրնալով ալ ուրիշ աղդի մը աս ազգի լեզուին յարմարցընել մէկ կերպով մը, ընդհանրապէս կը կարծեն թէ Եբրայեցւոց լեզուն եղած ըլլայ. բայց յայտնի է որ կը սխալին։

Հ. Սեմ, Քամ, Յաբէթ մէջերնին ինչպէս բաժնեցին երկիրը.

Պ. Աստուածաշունչին մէջի ազգերուն անուանները աշխարհքներուն անուններուն նմանցընելով կրնայ ըսուիլ թէ Յաբեթին որդիքը Եւրոպա ու փոքր Ասիա բնակեցան. Սեմայ որդիքը Ասիայի մէջ արևելեան կողմերը. Քամայ որդիքը Աֆրիկէ, Փիւնիկէ ու Պաղեստին։



# ՆԱՀԱՊԵՏԱՑ ԴԱՐԸ

## ԻՆՉՈՒԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ԵԼԼԵԼՆԻՆ



### II.

Հայր Աբրահամու Ղովտայ հետ ըրած գործերը:

Հ. Ինչու համար Աստուած կանչեց Աբրահամը, և ան ալ ո՞ւր գնաց.

Պ. Աբրահամու հաւատարմութեանը համար ուզեց Աստուած որ զատ ազգ ընէ զինքը. ուստի երբոր Աբրահամ եօթանասուն ու հինգ տարուան էր. Աստուծոյ հրամանովը ելաւ Խառանէն՝ Ղովտն ալ հետը եկաւ Քանանացւոց երկիրը ինչուան Սիւքեմ՝ բարձր կաղնի ծառին քովը. հոն Աստուած երեւցաւ ու ըսաւ թէ քու զաւկըներուդ պիտի տամ աս երկիրներս. անկէ ելաւ Բեթել գնաց, անկէ ալ անապատ: Ան տարիները սաստիկ սով եղաւ Քանանացւոց երկիրը. անոր համար ելաւ գնաց Աբրահամ Եգիպտոս:

Հ. Աբրահամ Եգիպտոսի մէջ ո՞րչափ ատեն կեցաւ.

Պ. Քիչ կեցաւ. վասն զի ինքը վախնալով որ չըլլայ թէ Սառային համար զինքը մեռցընեն, ով որ կը հարցընէր՝ քոյրս է կ՚ըսէր. անոր համար փա-

բաւոնք զՍարան իրէն կին առաւ, և ասոր բանին համար Աստուծմէ սաստիկ պատժուեցաւ։ Ան ատենը իմացաւ Փարաւոն Աբրահամու ըրած խաբէութիւնը, ու իրեն շատ ընծաներ ալ տուաւ առջի տուածներէն զատ, ու ըսաւ որ Ղովտին հետ մէկ տեղ ելլեն երթան։

Հ. Աբրահամ երբոր Եգիպտոսէն ելաւ Ղովտայ հետ ո՞ւր գնաց.

Պ. Դարձաւ առջի անապատը Բեթէլի մօտ՝ ուր որ առաջ Աստուծոյ սեղան շիներ էր. բայց որովհետև բաներնին խիստ շատցեր էր, մէկտեղ չէին կրնար կենալ, անով կռիւ ալ կ՚ըլլար Աբրահամու ու Ղովտայ հովիւներուն մէջ. անոր համար Աբրահամու խորհրդով բաժնուեցան մէկմէկէ, ու Ղովտ Յորդանան գետին կողմերուն աղէկութեանը համար Սոդոմ քաղաքը գնաց նստեցաւ, ուր որ գերի բռնուեցաւ։ Եւ Աբրահամու ըսաւ Աստուած որ ելլէ պտըտի՝ բոլոր Քանանացւոց երկիրը՝ որ իրեն տալ կ՚ուզէ. Աբրահամ ալ ելաւ գնաց Քեբրոնի մէջ Մամբրէի կաղնին ծառին քով բնակեցաւ ու հոն Աստուծոյ սեղան շինեց։

Հ. Ղովտ ի՞նչ պատճառաւ գերի գնաց Սոդոմ քաղաքէն, և ի՞նչպէս ազատեցաւ.

Պ. Ան ատենները չորս թագաւոր մէկ եղած՝ հինգ թագաւորի դէմ պատերազմ բացին Աղտից ձորին մէջ, ու Սոդոմացիք յաղթուեցան և թագաւորնին նաւթի ջրհորի մէջ պահուըտեցաւ. Թշնամիները Ղովտն ալ առին գերի տարին։ Երբոր լսեց Աբրահամ, իրեք հարիւր տասնըութը հոգի իր ծառաները առաւ գնաց, վազեց թշնամիներուն վրայ՝ զարկաւ, ազատեց զՂովտ իր ամէն բաներովը և ժողովուրդն ալ մէկտեղ։ Ան ատեն Սոդոմայ թագաւորը շնորհակալ եղաւ Աբրահամին ու կ՚ուզէր աւարը իրեն թողուլ. բայց չառաւ Աբրահամ ու ըսաւ, չըլլայ որ ըսես թէ ես հարըս-

տացուցի զԱբրահամ, վասն զի ինքը բոլորովին Աստուծոյ ապաւինած էր ։ Եւ Մելքիսեդեկ Սաղեմայ Թագաւորն ալ որովհետեւ քահանայ Աստուծոյ էր՝ օրհնեց զԱբրահամ. Աբրահամ ալ առած բաներէն անոր տասանորդ տուաւ ։

12.

Աբրահամու գործերը Ղովտը գերութենէ դարձնելէն ետքը ։

Հ. Աբրահամ իր բոլոր յոյսը Աստուծոյ վրայ դրած ըլլալուն համար Աստուծմէ ինչ վարձք ընդունեցաւ.

Պ. Աստուած տեսիլքով իրեն խոստացաւ որ ինքը վերակացու ըլլայ անոր, ու երկնքի աստղերուն չափ իրեն որդիքը շատցընէ. և աս խոստմունքներուս կատարուելուն նշան՝ հրաման տուաւ Աստուած որ Աբրահամ մէկ զոհ մը ընէ. ան զոհը ընելու ատեն ահաւոր կերպով մը իմացուց իրեն եւքի ըլլալիքները ։

Հ. Սարային ամուլ ըլլալուն համար Աբրահամ չէ՞ր տարակուսեր Աստուծոյ խոստմունքներուն վրայ.

Պ. Ոչ երբէք. վասն զի ինքը կը հաւատար կատարեալ սրտով որ Աստուած իր ուզածը կ՚ընէ՝ առանց իմացընելու ատենը և ինչպէս ընելիքը, և կը սպասէր կատարուելուն. Թէպէտ և ինչուան ան ատենը դեռ տղայ չունէր, որովհետեւ Սարա ամուլ էր ։ Բայց Սարային ուզելովը Ագար աղախինէն տղայ մը ունեցաւ Իսմայէլ անունով ։ Աս Ագարը դեռ տղան չծնած՝ սկսաւ հպարտանալ Սարային վրայ. Սարան ալ սկսաւ Ագարը նեղը խոթել, ան ալ առջինին պէս հնազանդելու տեղ

ելաւ փախաւ. բայց Աստուած Ճամբէն ետ դարձուց զինքը՝ որ երթայ հնազանդի Սարային : Երբոր տասնուերկու տարուան էր Իսմայէլ, Աստուած յայտնեց Աբրահամու որ Սարայէն տղայ մը ունենայ՝ որուն պիտի տայ ան խոստացած երկիրները. իր Աբրամ անունն ալ Աբրահամ կոչուիլ ըսաւ, Սարան ալ՝ Սառա. եւ իրեն Աստուծոյ ժողովուրդ ըլլալուն նշան տուաւ թլփատութիւնը :

Հ. Ղովտը գերութենէն ազատելէն ետքը ուր Սոդոմայ մէջ բնակեցաւ.

Պ. Չէ. վասն զի Սոդոմ քաղաքը քիչ ատենէն կործանեցաւ :

Հ. Ինչո՞ւ համար Սոդոմ կործանեցաւ.

Պ. Սոդոմացւոց մեղքերուն շատութեանը համար : Բայց ուզելով Աստուած իրեն անչափ ողորմութիւնը իմացընել մեզի, օր մը ցորեկը երբոր Աբրահամ իր տանը դրան առջև նստեր էր, իրեք հոգի կ'անցնէին սա Ճամբէն. տեսնելուն պէս Աբրահամ դիմացնին ելաւ. հանգչեցուց զիրենք, ոտուըննին լուաց ու կերակուր հանեց. անոնք ալ պատմեցին իրեն թէ Սառան գալ տարի աս օրս տղայ կ'ունենայ : Սառա դրան ետեւէն լսեց ու ծիծաղեցաւ իննսուն տարուան պառաւ ըլլալուն համար : Ետքը երբոր ելան որ երթան, պատմեցին Աբրահամու թէ Սոդոմը կործանելու կ'երթան. Աբրահամ լսածին պէս, գութը շարժեցաւ ու աղաչեց որ յիսուն արդար թէ որ մէջը գտնուի՝ չկործանեն. երբոր մտիկ ըրին աղաչանքին՝ կամաց կամաց արդարներուն համրանքը քիչցուց, մինչուան խօսք առաւ որ տասը արդար թէ որ գըտնուի՝ ազատէ քաղաքը. բայց չգտնուեցաւ :

քըն սուրբ Աստուածածինը ) ճզմէ սատանային գլուխը։ Ասով Ադամայ սիրտն ալ մխիթարեց, իմացընելով թէ ինքն որ հոգւով նման է Աստուծոյ՝ ատեն կուգայ որ Աստուած ալ մարմնով իրեն նման կ'ըլլայ ու զինքն ալ մեռնելէն կ'ազատէ։

Հ. Ջրհեղեղէն առաջ քաղաքական կառավարութիւնը ի՞նչպէս էր.

Պ. Ամէն մէկ նահապետ իրենց տունը կը կառավարէին։ Եւ շատ ապրելով շատ ալ տղաքներ թոռներ ունենալով, մէյմէկ պզտիկ թագաւոր կը ձեւանային, որ իրենք իրենց քաղաք կը շինէին, ու իրենց ընտանեացը կարգ կանոն կը դնէին։

Հ. Դրախտը աշխարհքիս ո՞ր կողմն էր.

Պ. Աստուածաշունչին պատմութենէն հաւանական կ'երեւնայ որ դրախտը Հայաստանի մէջն ըլլայ։ Նախ ան խօսքէն որ կ'ըսէ Աստուածաշունչը. "Եւ տնկեաց Աստուած զդրախտն յԵդեմ ընդ արեւելս", որ ըսել է թէ դրախտը Արաբիայի, Մովսեսի պտըտած տեղերուն արեւելեան կողմն էր՝ որ Հայաստանու դին կ'իյնայ։ Երկրորդ որ դրախտին մէջի եղած գետերուն երկուքը՝ Տիգրիս ու Եփրատ՝ Հայաստանի մէջ քովէ քով կեցած են ինչուան հիմա։ Ասոնցմէ զատ, ան գետերուն մօտ տեղերուն պարարտութիւնը, գեղեցկութիւնը, այն տեղւոյն հոտաւէտ ծաղկըներուն անթիւ տեսակները, որ ինչուան հիմա կը բուսնին ու տեսնողները կը զմայլեցընեն, և յայտնի կը ցուցընեն՝ որ առաջուց մասնաւոր Աստուծմէ օրհնուած տեղ մը եղած է։

# ՆԱՀԱՊԵՏԱՑ ԴԱՐԸ

## ՋՐՀԵՂԵՂԷՆ ԵՏԵՒ

### 7.

Նոյ նահապետին որդիքը։

Հ. Նոյին որդւոց անունը ինչ է, և ինչ մասնաւոր գործք կը պատմուի իրենց վրայ.

Պ. Անուններն Սեմ, Քամ, Յաբեթ է։ Ասոնց հայրը Նոյ այգի անկեց, ու մէկ անգամ մը շատկեկ խմելով գլուխը զարկաւ, ու երբոր տանը մէջ մերկ պառկեր էր՝ գինովցածով Քամը տեսաւ՝ ու դուրս ծիծաղելով պատմեց եղբայրը. անոնք լսելնուն պէս լաթ մը առին, ու ետ ետ երթալով գնացին գոցեցին հայրերնին առանց տեսնելու։ Երբոր արթընցաւ Նոյ ու իմացաւ եղածը, անիծեց զՔամ որ ծառայ ըլլայ մէկալ երկու եղբայրցը, և օրհնեց զՍեմ որ իշխէ անոր վրայ, և զՅաբեթ ալ՝ որ Սեմայ հետ բնակի։

Հ. Նոյ նահապետ ջրհեղեղէն ետքը որչափ ատեն ապրեցաւ.

Պ. Երեք հարիւր յիսուն տարի. հինգ հարիւր տարուան էր երբոր տապանը սկսաւ շինել, վեց հարիւր տարուան էր ջրհեղեղին ատենը, ինը հարիւր յիսուն տարուան մեռաւ։

Հ. Սեմ, Քամ, Յաբեթ ջրհեղեղէն ետքը մէկէն զատուեցա՞ն մէկմէկէ.

Պ. Երբոր այնչափ շատցան որ ալ միջավեղ չէին կրնար բնակիլ, սփռելէն առջի անգամին երթալ սկսան. բայց երբոր Ջաղկեռան վրայ հանդիպեցան Սենաարայ մեծ դաշտին, քիչ մը ատեն ալ հոն կեցան Բաբելոնի աշտարակը շինելու մտքով. ու երբոր չյաջողեցաւ խորհուրդնին, բոլորովին ցրուած բաժնուեցան մէկմէկէ :

Հ. Ի՞նչ բանի համար կ'ուզէին մարդիկ շինել Բաբելոնի աշտարակը.

Պ. Երբոր տեսան Սենաարայ մեծ ու ընդարձակ դաշտը, մտքերնին հպարտութեան խորհուրդ մը ինկաւ իրենց կարողութիւնը ցուցնելու, ու յիշատակնին ձգելու յաւիտեան աշխարհիս վրայ. ատոր համար սկսան շինել քաղաքի չափ մեծ աշտարակ մը, որուն բարձրութիւնը կ'ուզէին մինչեւ երկինք հասցնել: Իսկ շինուածքին նիւթ կը գործածէին քարի տեղ եփած աղիւս. և կրով շաղախի տեղ կուպր, ինչու որ ան տեղուանքը քար դժուար կը գտնուէր :

Հ. Ի՞նչ արգելք եղաւ որ աշտարակ շինելու խորհուրդը չկրցան յառաջ տանիլ.

Պ. Աստուած տեսաւ որ մտքերնին չար է, ու գիտնալով որ ամէն մարդ միջավեղ մէկ լեզու ու մէկ ազգ ըլլալով ուրիշ շատ անկարգութիւններ ալ կ'ընեն, յանկարծ լեզունին շփոթեց, խառնակեց, անանկ որ մէկմէկու ըսածը չէին հասկընար. ատանկով խռովութիւն ինկաւ մէջերնին ; ու ասդին անդին ցրուեցան գնացին : Անոր համար ան տեղին անունն ալ Բաբելոն դրին՝ որ խառնակութիւն ըսել է, որ առաջ Սենաար կ'ըսուէր ;

Հ. Ո՞վ գլուխ կեցեր էր աշտարակ շինելու խորհուրդը առաջ տանելու համար. ու շինուածքին նիւթը ուսկից կը գտնէին.

Պ. Նեբրովթ անունով Քամայ Թոռանը որդին

կտրիճ ու աղէկ սիրտ վարուիլ գիտցող մարդ մը՝ ամենուն գլուխ կեցեր՝ բանը առաջ կը տանէր։ Բայց լեզուները չփոխելէն ետքը ճար չեղաւ զանոնք միաբանելու. անոր համար ինքը իրեններովը մինակ մնաց, ու կ'իշխէր անոնց։

8.

Սեմայ որդիքը մինչեւ Աբրահամ։

Հ. Սեմը Նոյ նահապետէն օրհնուելով ինչ բարիք գտաւ Աստուծմէ.

Պ. Աստուած, անոր ցեղէն ընտրեց առաւ իրեն սիրելի ազգ մը՝ որոնց վրայ մանաւոր գութ խընամք ցուցնելով կը հոգար։ Այս ազգը Հրէից կամ Եբրայեցւոց ժողովուրդն էր, որուն յայտնեց Աստուած իր ամէն կամքը, ու օրէնքներ դրաւ վրանին՝ որոնք կ'ուզէր որ մարդիկ պահեն, և անոնցմով արժանի եղան Աստուծոյ ժողովուրդ կոչուելու, և Քրիստոս իրենց մէջը ընդունելու։

Հ. Աստուած ե՞րբ ընտրեց Եբրայեցիները ուրիշ ազգերէն.

Պ. Չորս հարիւր յիսունըութը տարի Ջրհեղեղէն ետքը հայր Աբրահամու տանը, որ Սեմէն սկսած տասնըմէկերորդն էր։ Վասն զի Սեմայ տղան Արփաքսադ, Արփաքսադին տղան Կայնան, Կայնանայ տղան Սաղա, Սաղային տղան Եբեր՝ որուն անունով ազգը ըսուեցաւ Եբրայեցի. Եբերայ տղան Փաղէկ, Փաղեկայ տղան Ռագաւ, Ռագաւայ տղան Սերուք, Սերուքայ տղան Նաքովր, Նաքովրի տղան Թարա։ Աս Թարան երեք որդի ունեցաւ. Աբրահամ, Նաքովր, Առան. Առան մեռաւ ու Թողուց տղայ մը Ղովտ անունով։ Աբրա-

կտրիճ ու աղէկ սիրտ վաստըկիլ գիտցող մարդ մը՝ ամէնուն գլուխ կեցեր՝ բանը առաջ կը տանէր։ Բայց լեզուները չփոխելէն ետքը ճար չեղաւ զանոնք միաբանելու. անոր համար ինքը իրեններովը մինակ մնաց, ու կ'իշխէր անոնց։

## 8.

### Սեմայ որդիքը մինչեւ Աբրահամ։

Հ. Սեմը Նոյ նահապետէն օրհնուելով ինչ բարիք գտաւ Աստուծմէ.

Գ. Աստուած, անոր ցեղէն ընտրեց առաւ իրեն սիրելի ազգ մը՝ որոնց վրայ մանաւանդ գութ խնամք ցուցընելով կը հոգար։ Այս ազգը Հրէից կամ Եբրայեցւոց ժողովուրդն էր, որուն յայտնեց Աստուած իր ամէն կամքը, ու օրէնքներ գրաւ վրանին՝ որոնք կ'ուզէր որ մարդիկ պահեն, և անոնցմով արժանի եղան Աստուծոյ ժողովուրդ կոչուելու, և Քրիստոս իրենց մէջը ընդունիլ։

Հ. Աստուած երբ ընտրեց Եբրայեցիները ու զատեց ուրիշ ազգերէն.

Գ. Չորս հարիւր յիսունըութը տարի Ջրհեղեղէն ետքը հայր Աբրահամու ատենը, որ Սեմէն սկսած տասնըմէկերորդն էր։ Վասն զի Սեմայ տղան Արփաքսադ, Արփաքսադին տղան Կայնան, Կայնանայ տղան Սաղա, Սաղային տղան Եբեր՝ որուն անունով ազգը բռնեցաւ Եբրայեցի. Եբերայ տղան Փաղէկ, Փաղեկայ տղան Ռագաւ, Ռագաւայ տղան Սերուք, Սերուքայ տղան Նաքովր, Նաքովրի տղան Թարա։ Աս Թարան իրեք որդի ունեցաւ. Աբրահամ, Նաքովր, Առան. Առան մեռաւ ու թողուց տղայ մը Ղովտ անունով։ Աբրա-

համ ու Նաքովր-ալ կարգուեցան ․․ Աբրահամու կնոջ անունը Սարա էր , Նաքովրինը Մեղքա ։ Ետքը Թարա առաւ իրեն երկու որդիքը Աբրահամ ու Նաքովը , և մեռած որդւոյն տղան Ղովտը , ու Քաղդէացւոց երկրէն ելաւ Քանանացւոց երկիրը երթալու համար ։ Ետքը եկան բնակեցան Խառան ըսուած տեղը , ու հոն մեռաւ Թարա Աբրահամու հայրը ։ Աս տեղս ու աս ատենս ընտրեց Աստուած Աբրահամը իրեն ժողովուրդ ընելու համար ։



9.

## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Աշտարակին վրայ գրուած տառանշանները գիտնալու՞ ինչ հարկաւոր բան կը խօսին.

Պ. Նախ ձեւին վրայ ամէնը համաձայն չեն խօսիր. ոմանք կլոր էր կ'ըսեն, ոմանք ալ քառանկիւնի: Նոյնպէս բարձրութեանը համար ալ՝ ոմանք ինչուան մղոն մը ելեր էր կ'ըսեն, ուրիշները ինչուան 12.000 գիրկ կը հանեն: Սուրբն Հերոնիմոս չորս մղոն բարձրութիւն կուտայ: Իսկ Հրեայք չափը անցնելով՝ ուզեցին որ քանդուելը մղոն բարձրութիւն ունենայ: Իսկ շինելուն պատճառ կուտան՝ թէ ուրիշ անգամ ջրհեղեղէն ազատելու համար էր: Փլչելուն համար ալ կ'ըսեն թէ Աստուած սաստիկ փոթորիկ մը հանեց, ու հիմնայատակ կործանեց:

Հ. Ջրհեղեղէն առաջ մարդիկ մինչեւ երկայն կ'ապրէին, և ինչու՞ ետքէն կարճեցաւ կեանքերնին.

Պ. Ջրհեղեղէն առաջ առհասարակ ինը հարիւր տարիէն շատ կ'ապրէին, ինչպէս որ Ադամ ինը հարիւր երեսուն տարի ապրեցաւ. ասոր նման ուրիշներն ալ քիչ մը աւելի քիչ մը պակաս. բայց Աստուած տեսաւ որ մարդիկ շատ ապրելով՝ զինքը բոլորովին կը մոռնան, և ըրած չարութիւննին ալ խիստ չափը կ'անցընէ, Նոյ նահապետին ջրհեղեղէն առաջ իմացուց որ մարդուս տարիքն ալ պիտի կարճեցընէ, անանկ որ շատ շատ՝ ապրին հարիւր քսան տարի: Անոր համար ջրհեղեղով գետնին ուժն ալ տկարացուց, խոտեղէնները գէշցան:

Բայց աս մարդկան տարիքին կարճընալը Թողուց Աստուած որ բնական կերպով ըլլայ կամաց կամաց. վասն զի Նոյին Թոռները հինգ-հարիւր տարին չափ ապրեցան, և անոնց որդիքը չորս հարիւր և երեք հարիւր տարի: Եւ Ջրհեղեղէն հինգ հարիւր տարի ետքը Աբրահամու ատենը՝ հազիւ երկու հարիւր տարի կ'ապրէին. անկէ մէկ երկու հարիւր տարի ալ ետքը՝ հարիւր կամ հարիւր քան տարի ապրող քիչ կը գտնուէր, ինչպէս որ ըսեր էր Աստուած: Անկէ ետքը կ'իջուան. հիմա չորս հազար տարուան միջոց մէջս նոյնպէս հարիւր քան տարուընէ վեր ապրող խիստ դժուար կը գտնուի: Իսկ անկէ իրեք հազար տարի առաջ Դաւիթ մարգարէն Սաղմոսին մէջ կ'ըսէ իր ատենին համար՝ Թէ եօթանասունէն անդին առողջ հանգիստ կեանք չըլլար. ինչպէս որ հիմա ծերերը փորձով նոյն խօսքը կը հաստատեն:

## 10.

Հ. Լեզուները խառնուելէն առաջ մարդիկ ինչ լեզուով կը խօսէին.

Պ. Հաւանականաբար Հայերէն, ինչպէս տոյդ կ'երևնայ Ածաշունչին պատմութենէն. վասն զի Նոյ նահապետը երբոր տապանէն ելլելով Մասիս լեռնէն իջաւ, հոն Հայաստան բնակեցաւ. ու երբոր մարդիկ շատցան, ու ելան Հայաստանէն ասդին անդին երթալու համար, և Սենաարայ դաշտին մէջ լեզունին խառնուեցաւ, միայն Հայաստանու բնակիչներուն լեզուն՝ որոնք անդերնէն չէին շարժած՝ մնաց առջի լեզունին՝ առանց խառնուելու: Այսչափէն յայտնի կրնանք գուշակել որ երբոր Հայկ նահապետը Հայաստանէն ելլելուն վրայ զղջալով նորէն ետ դարձաւ, ինչպէս

որ չախորժեցաւ ուրիշ տեղուանքէն ու իր ազգի բնակութիւնը եկաւ, ասանկ ալ չախորժելով իր աւրուած լեզուէն, և տեսնելով որ բոլոր ազգի բնակիչները իրենց ազգի լեզունին կը խօսէին, ինքն ալ նորէն սկսաւ հայերէն լեզուով խօսիլ. մէյմը՝ իրեն հօրը լեզուով խօսելու փափաքով, մէյմ՝ ալ որպէս զի շահի բնակիչներուն սիրտը ու տիրէ անոնց վրայ, որոնք բնական կերպով կ'ատէին անանկ նորեկ լեզու մը որ պատճառ համար Աստուած տուեր էր: Այս պատմութիւնը չըգիտնալով Եւրոպացիք, և չկրնալով ալ ուրիշ ազգի մը աս ազգի լեզուն յարմարցնել մէկ կերպով մը, ընդհանրապէս կը կարծեն թէ Եբրայեցւոց լեզուէն եղած ըլլայ. բայց յայտնի է որ կը սխալին:

Հ. Սեմ, Քամ, Յաբեթ մեծերնին ինչպէս բաժնեցին երկիրը.

Պ. Աստուածաշունչին մէջի ազգերուն անունները աշխարհքներուն անուններուն նմանցնելով կրնայ ըսուիլ թէ Յաբեթին որդիքը Եւրոպա ու փոքր Ասիա բնակեցան. Սեմայ որդիքը Ասիայի մէջ արեւելեան կողմերը. Քամայ որդիքը Աֆրիկէ, Փիւնիկէ ու Պաղեստին:



# ՆԱՀԱՊԵՏԱՑ ԳԻՐԸ

## ԻՆՉՈՒԻԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ԵԼԼԵԼՆԻՆ

### 11.

Հայր Աբրահամու Ղովտայ հետ ըրած գործերը ։

Հ. Ինչու համար Աստուած կանչեց Աբրահամը, և ան ալ ուր գնաց.

Պ. Աբրահամու հաւատարմութեանը համար ուզեց Աստուած որ զատ ազգ ընէ զինքը. ուստի երբոր Աբրահամ եօթանասունըհինգ տարուան էր, Աստուծոյ հրամանովը ելաւ Խառանէն՝ Ղովտին ալ հետը եկաւ Քանանացւոց երկիրը ինչուան Սիւքեմ՝ բարձր կաղնի ծառին քովը. հոն Աստուած երեւցաւ ու ըսաւ թէ քու զաւկըներուդ պիտի տամ աս երկիրներս. անկէ ելաւ Բեթէլ գնաց, անկէ ալ անապատ ։ Ան ատենները սաստիկ սով եղաւ Քանանացւոց երկիրը. անոր համար ելաւ գնաց Աբրահամ Եգիպտոս ։

Հ. Աբրահամ Եգիպտոսի մէջ ո՞րչափ ատեն կեցաւ.

Պ. Քիչ կեցաւ. վասն զի ինքը վախնալով որ չըլլայ թէ Սարային համար զինքը մեռցընեն, ով որ կը հարցընէր՝ քոյրս է կ'ըսէր. անոր համար Փա-

ւոնը զՍարան իրեն կին առաւ, և աս բանիս համար Աստուծմէ սաստիկ պատժուեցաւ։ Ան ատենը իմացաւ Փարաւոն Աբրահամու ըրած խաբէութիւնը, ու իրեն շատ ընծաներ ալ տալով առջի տուածներէն զատ, ու ըսաւ որ Ղովտին հետ մէկ տեղ ելլեն երթան։

Հ. Աբրահամ երբոր Եգիպտոսէն ելաւ Ղովտայ հետ ո՞ւր գնաց.

Պ. Դարձաւ առջի անապատը Բեթէլի մօտ՝ ուր որ առաջ Աստուծոյ սեղան շիներ էր. բայց որովհետև բաներնին խիստ շատցեր էր, մէկտեղ չէին կրնար կենալ, անով կռիւ ալ կ՚ըլլար Աբրահամու ու Ղովտայ հովիւներուն մէջ. անոր համար Աբրահամու խորհրդով բաժնուեցան մէկմէկէ, ու Ղովտ Յորդանան գետին կողմերուն աղէկութեանը համար Սոդոմ քաղաքը գնաց նստեցաւ, ուր որ գերի բռնուեցաւ։ Եւ Աբրահամու ըսաւ Աստուած որ ելլէ պտըտի՝ բոլոր Քանանացւոց երկիրը՝ որ իրեն տալ կ՚ուզէ. Աբրահամ ալ ելաւ գնաց Քեբրոնի մէջ Մամբրէի կաղնի ծառին քով բնակեցաւ ու հոն Աստուծոյ սեղան շինեց։

Հ. Ղովտ ի՞նչ պատճառաւ գերի գնաց Սոդոմ քաղաքէն, և ի՞նչպէս ազատեցաւ.

Պ. Ան ատենները չորս թագաւոր մէկ եղած՝ հինգ թագաւորի դէմ պատերազմ բացին Աղեկց ձորին մէջ, ու Սոդոմացիք յաղթուեցան և թագաւորնին նաւթի ջրհորի մէջ պահուըտեցաւ. Թըշնամիները Ղովտն ալ առին գերի տարին։ Երբոր լսեց Աբրահամ, իրեք հարիւր տասնըութը հոգի իր ծառաները առաւ գնաց, վազեց թշնամիներուն վրայ՝ զարկաւ, ազատեց զՂովտ իր ամէն բաներովը և ժողովուրդն ալ մէկտեղ։ Ան ատեն Սոդոմայ թագաւորը շնորհակալ եղաւ Աբրահամին ու կ՚ուզէր աւարը իրեն թողուլ. բայց չառաւ Աբրահամ ու ըսաւ, չըլլայ որ ըսես թէ ես հարըս-

տացուցի զԱբրահամ, վասն զի ինքը բոլորովին Աստուծոյ ապաւինած էր ։ Եւ Մելքիսեդեկ Սաղեմայ Թագաւորն ալ որովհետեւ քահանայ Աստուծոյ էր՝ օրհնեց զԱբրահամ․ Աբրահամ ալ առած բաներէն անոր տասանորդ տուաւ ։

## 12 ։

### Աբրահամու գործերը Ղովտը գերութենէ դարձնելէն ետեւ ։

Հ․ Աբրահամ իր բոլոր յոյսը Աստուծոյ վրայ դրած ըլլալուն համար Աստուծմէ ինչ վարձք ընդունեցաւ ․

Պ․ Աստուած տեսիլքով իրեն խոստացաւ որ ինքը վերակացու ըլլայ անոր, ու երկնքի աստղերուն չափ իրեն որդիքը շատցընէ․ և աս խոստմունքներուս կատարուելուն նշան՝ հրաման տուաւ Աստուած որ Աբրահամ մէկ զոհ մը ընէ․ ան զոհը ընելու ատեն ահաւոր կերպով մը իմացուց իրեն ետքի ըլլալիքները ։

Հ․ Սարային ամուլ ըլլալուն համար Աբրահամ չէր տարակուսեր Աստուծոյ խոստմունքներուն վրայ․

Պ․ Ոչ երբէք․ վասն զի ինքը կը հաւատար կատարեալ սրտով որ Աստուած իր ուզածը կ՚ընէ՝ առանց իմացընելու ատենը և ինչպէս ընելիքը, և կը սպասէր կատարուելուն․ Թէպէտ և ինչուան ան ատենը դեռ տղայ չունէր, որովհետեւ Սարա ամուլ էր ։ Բայց Սարային ուզելովը Ագար աղախինէն տղայ մը ունեցաւ Իսմայէլ անունով ։ Աս Ագարը դեռ տղան չծնած՝ սկսաւ հպարտանալ Սարային վրայ․ Սարան ալ սկսաւ Ագարը նեղը խոթել, ան ալ առջինին պէս հնազանդելու տեղ

ելաւ փախաւ . բայց Աստուած Ճամբէն ետ դարձուց զինքը՝ որ երթայ հնազանդի Սարային : Երբոր տասուերկու տարուան էր Իսմայէլ, Աստուած յայտնեց Աբրահամու որ Սարայէն տղայ մը ունենայ՝ որուն պիտի տայ ան խոստացած երկիրները . Իր Աբրամ անունն ալ Աբրահամ կոչուիլ ըսաւ , Սարան ալ՝ Սառա . և իրեն Աստուծոյ ժողովուրդ ըլլալուն նշան տուաւ Թլփատութիւնը :

Հ . Ղովտը գերութենէն ազատելէն ետքը ո՞ւր Սոդոմայ մէջ բնակեցաւ .

Պ . Չէ . վասն զի Սոդոմ քաղաքը քիչ ատենէն կործանեցաւ :

Հ . Ինչո՞ւ համար Սոդոմ կործանեցաւ .

Պ . Սոդոմացւոց մեղքերուն շատութեանը համար : Բայց ուզելով Աստուած իրեն անչափ ողորմութիւնը իմացընել մեզի , որ մը ցորեկը երբոր Աբրահամ իր տանը դրան առջև նստեր էր , իրեք հոգի կ'անցնէին ան Ճամբէն . տեսնելուն պէս Աբրահամ դիմացնին ելաւ . հանգչեցուց զիրենք , տունընին լուաց ու կերակուր հանեց . անոնք ալ պատմեցին իրեն թէ Սառան գալ տարի աս օրս տղայ կ'ունենայ : Սառա դրան ետևէն լսեց ու ծիծաղեցաւ ինքնուն տարուան պառաւ ըլլալուն համար : Ետքը երբոր ելան որ երթան , պատմեցին Աբրահամու թէ Սոդոմը կործանելու կ'երթան . Աբրահամ լսածին պէս , գութը շարժեցաւ ու աղաչեց որ յիսուն արդար թէ որ մէջը գտնուի՝ չկործանեն . երբոր մտիկ ըրին աղաչանքին՝ կամաց կամաց արդարներուն համրանքը քիչցուց , ինչուան խօսք առաւ որ տասը արդար թէ որ գըտնուի՝ ազատէ քաղաքը . բայց չգտնուեցաւ :

տացուցի զԱբրահամ, վասն զի ինքը բոլորովին Աստուծոյ ապաւինած էր ։ Եւ Մելքիսեդեկ Սաղեմայ Թագաւորն ալ որովհետեւ քահանայ Աստուծոյ էր՝ օրհնեց զԱբրահամ. Աբրահամ ալ առած բաներէն անոր տասանորդ տուաւ ։

## 12.

Աբրահամու գործերը Ղովտը գերութենէ դարձնելէն ետեւ ։

Հ. Աբրահամ իր բոլոր յոյսը Աստուծոյ վրայ դրած ըլլալուն համար Աստուծմէ ի՞նչ վարձք ընդունեցաւ.

Պ. Աստուած տեսիլքով իրեն խոստացաւ որ ինքը վերակացու ըլլայ անոր, ու երկնքի աստղերուն չափ իրեն որդիքը շատցընէ. և աս խոստմունքներուս կատարուելուն նշան՝ հրաման տուաւ Աստուած որ Աբրահամ մէկ զոհ մը ընէ. ան զոհը ընելու ատեն ահաւոր կերպով մը իմացուց իրեն ետքի ըլլալիքները ։

Հ. Սարային ամուլ ըլլալուն համար Աբրահամ չէ՞ր տարակուսեր Աստուծոյ խոստմունքներուն վրայ.

Պ. Ոչ երբէք. վասն զի ինքը կը հաւատար կատարեալ սրտով որ Աստուած իր ուզածը կ՚ընէ՝ առանց իմացընելու ատենը և ինչպէս ընելիքը, և կը սպասէր կատարուելուն. Թէպէտ և ինչուան ան ատենը դեռ տղայ չունէր, որովհետև Սարա ամուլ էր ։ Բայց Սարային ուզելովը Ագար աղախինէն տղայ մը ունեցաւ Իսմայէլ անունով ։ Աս Ագարը դեռ տղան չծնած՝ սկսաւ հպարտանալ Սարային վրայ. Սարան ալ սկսաւ Ագարը նեղը խոթել, ան ալ առջինին պէս հնազանդելու տեղ

ելաւ փախաւ . բայց Աստուած Ճամբէն ետ դարձուց զինքը՝ որ երթայ հնազանդի Սարային : Երբոր տասնուիրեք տարուան էր Իսմայէլ, Աստուած յայտնեց Աբրահամու որ Սարայէն տղայ մը ունենայ՝ որուն պիտի տայ ան խոստացած երկիրները . իր Աբրամ անունն ալ Աբրահամ կոչուիլ ըսաւ , Սարան ալ՝ Սառրա . և իրեն Աստուծոյ ժողովուրդ ըլլալուն նշան տուաւ Թլփատութիւնը :

Հ . Ղովտը գերութենէն ազատելէն ետքը միշտ Սոդոմայ մէ՞ջ բնակեցաւ .

Պ . Չէ . վասն զի Սոդոմ քաղաքը քիչ ատենէն կործանեցաւ :

Հ . Ինչո՞ւ համար Սոդոմ կործանեցաւ .

Պ . Սոդոմացւոց մեղքերուն շատութեանը համար : Բայց ուզելով Աստուած իրեն անչափ ողորմութիւնը իմացընել մեզի , օր մը ցորեկը երբոր Աբրահամ իր տանը դրան առջև նստեր էր , իրեք հոգի կ՚անցնէին ան Ճամբէն . տեսնելուն պէս Աբրահամ դիմացնին ելաւ . հանդչեցուց զիրենք , տաքընին լուաց ու կերակուր հանեց . անոնք ալ պատմեցին իրեն թէ Սառրան գալ տարի աս օրս տղայ կ՚ունենայ : Սառրա դրան ետևէն լսեց ու ծիծաղեցաւ իննսուն տարուան պառաւ ըլլալուն համար : Ետքը երբոր ելան որ երթան , պատմեցին Աբրահամու թէ Սոդոմը կործանելու կ՚երթան . Աբրահամ լսածին պէս , գութը շարժեցաւ ու աղաչեց որ յիսուն արդար թէ որ մէջը գտնուի՝ չկործանեն . երբոր մինչև ըլլին աղաչանքին՝ կամաց կամաց արդարներուն համրանքը քիչցուց , ինչուան խօսք առաւ որ տասը արդար թէ որ գըտնուի՝ ազատեն քաղաքը . բայց չգտնուեցաւ :

13.

Սոդոմ Գոմորայ կործանումը ։

Հ. Ի՞նչ կերպով կործանեցին հրեշտակները Սոդոմ ու Գոմոր քաղաքները.

Պ. Երկու հրեշտակ իրիկուան դէմ մտան քաղաքը՝ Ղովտայ դրան առջեւէն կ'անցնէին. Ղովտ տեսածին պէս՝ շատ աղաչանքով ներս հրամցուց զանոնք՝ երկու օտարական մարդ կարծելով, ոտուըներնին լուաց ու կերակուր հանեց ։ Քիչ մը անցաւ, եկան քաղաքացիները կ'ուզէին Ղովտէն ան օտարականները որ չարչարեն. Ղովտ չտուաւ ։ Երբոր շատ նեղը խոթեցին, ձեռքերնէն ազատելու համար՝ անոնց տեղը խոստացաւ տալու իրեն երկու աղջիկները. բայց անոնք իրենց ուզածէն ետ չէին կենար ։ Ան ատեն հրեշտակները զՂովտ ներս քաշեցին, ու տանը դուռը կորսընցնել տուին որ կը փնտռէին ու չէին գտներ ։ Ետքը Ղովտայ հասկըցուցին հրեշտակները իրենց ինչ բանի համար եկածնին, ըսին որ իրեն նշանած փեսաներուն ալ իմացընէ որ մէկտեղ գան. բայց անոնք երբոր լսեցին՝ ծիծաղեցան Ղովտայ դիւրահաւանութեանը վրայ ու տեղերնէն չշարժեցան ։ Երբոր առաւօտեցաւ՝ առին Ղովտը, կինը ու երկու աղջիկները, քաղքէն դուրս հանեցին ու ապսպրեցին որ չըլլայ թէ դառնան ետեւնին նային, մէկ տեղ մըն ալ չկեցած շիտակ լեռը ելլեն ։ Արեւը ծագելուն պէս սկսաւ սաստիկ կրակով խառնած ծծումբ անձրեւ գալ Սոդոմ Գոմորայ վրայ ։ Ղովտայ կինն ալ Աստուծոյ հրամանին դէմ ընելով ետին նայեցաւ ու մէկէն աղէ արձան կըտրեցաւ ։ Ղովտ վախնալով որ չըլլայ թէ լեռն ալ

համնի կրակը, ուզեց որ մօտ քաղաքներուն մէկը փախչի. հրեշտակներն ալ իրեն ուզելուն համար հոն տարին զինքը. անով ազատ մնաց ան քաղաքը աս պատճէն, և անոր համար անունը Սեգովր ըսուեցաւ: Ահա ասանկով չորս քաղաք մէկտեղ երկինքէ Թափած կրակով մոխիր դարձան իրենց մեղքերուն համար:

Հ. Ղովտ Սեգովր քաղաքը ո՞րչափ ատեն կեցաւ.

Պ. Խիստ քիչ. վասն զի սրտին վախէն՝ մէկէն անկէ ալ ելաւ գնաց մօտ տեղ այրի մը մէջ բնակեցաւ: Ղովտ երկու որդիք ունեցաւ, Մովաբ և Ամոն. ատոնցմէ եղան Մովաբացիք և Ամոնացիք: Հոս կը լմննայ Ղովտայ վրայ եղած պատմութիւնը:

Հ. Հայրն Աբրահամ ի՞նչպէս իմացաւ Սոդոմայ այրիլը, ու անկէ ետքը ի՞նչ ըրաւ.

Պ. Առաւօտանց նայեցաւ դէպ 'ի Սոդոմ Գոմոր, տեսաւ որ ծուխը երկինքը պատեր էր՝ ցաւեցաւ: Ետքը ելաւ գնաց դէպ 'ի հարաւ՝ Գերարայ ըսուած տեղը, ու հոն Սառային համար ամէն հարցնողին՝ քոյրս է կ'ըսէր: Անոր համար Աբիմելէք ան տեղին Թագաւորը՝ Սառան իրեն կին առնել ուզեց. բայց Աստուած տեսիլքով երեցաւ անոր ու ապսպրեց որ չդպչի Աբրահամին կնոջը: Ան ալ կանչեց զԱբրահամ, գանգատեցաւ սուտ զրուցելուն վրայ, ու շատ պարգևներ տալով Թողուց՝ որ ուր կ'ուզեն երթան: Բայց երթալէն առաջ Աբրահամ աղօթք ըրաւ Աբիմելէքայ համար ու ազատեց Աստուծոյ տուած պատժէն, որ իրեն պատճառաւ Աբիմելէքայ մարդիկներէն մէկու մ'ալ տղայ չէր ըլլար:

**14.**

Իսահակ :

Հ. Սառան որդի ունեցա՞ւ.

Պ. Երբոր հասաւ Աստուծոյ խոստացած ատենը տղայ մը ունեցաւ և անունը դրաւ Իսահակ, և կաթէն կտրած օրը մեծ ուրախութիւն ըրաւ Աբրահամ։

Հ. Իսահակ Սառային հարազատ տղան ըլլալով, Իսմայէլին վնաս մը եղա՞ւ.

Պ. Իսահակայ պատճառաւ Իսմայէլ սկսաւ արհամարհուիլ՝ չէ թէ խորթ որդի ըլլալուն համար, հապա որովհետև Իսահակայ հետ կ'իյնար, անոր գէշ օրինակ կուտար. անոր համար Սառան ուզեց որ հեռացընէ զԻսմայէլ իր քովէն։ Ու թէպէտ Աբրահամ չէր ուզեր, բայց Աստուած իմացուց Աբրահամու որ Սառային ուզածը աղէկ բան է։ Ան ատենը մէկէն Աբրահամ հնազանդեցաւ Սառային խօսքին։ Ելաւ առաւօտանց հաց ու ջուր տուաւ Ագարայ, տղան ալ հետը ճամբայ դրաւ։ Ագար ճամբան կորսնցուցած՝ Երգման ջրհորին քովերը կը պտըտէր, մինչուան ջուրն ալ հատաւ, ինքն ալ յուսահատած՝ թողուց տղան մէկ ծառի մը տակ, ու գնաց քիչ մը հեռու նստեցաւ՝ որ չտեսնէ տղուն մեռնիլը։ Աստուած լսեց տղուն լալու ձայնը, ու ջուր բղխեցուց ան տեղուանքէն, և խոստացաւ ալ որ մեծ ազգ ընէ զԻսմայէլ։

Հ. Երգման ջրհորը ո՞ւր տեղուանք կ'իյնայ.

Պ. Գերարայ Փղշտացւոց երկիրը՝ Աբիմելէքին թագաւորութեան տակը։ Աս ջրհորը Աբրահամ բացեր էր ու Աբիմելէքին մարդիկը առեր էին ձեռքէն։ Երբոր Աբիմելէք նորէն դաշինք դրաւ

Աբրահամու հետ, ան ջրհորն ալ նորէն ետ տուաւ, անմեղադրելի ընելով ինքզինքը թէ չէր իմացած: Աբրահամ ալ ծառեր տնկեց այն ջրհորին քովերը, ու հոն Աստուծոյ աղօթք կ'ընէր:

Հ. Աբրահամ զԻսմայէլ դուրս ընելէն ետև ալ ուրիշ վիշտ չքաշե՞ց Իսահակայ պատճառաւը.

Պ. Երբոր բոլորովին հանգստութեան մէջ կը կարծէր ինքզինքը՝ տեսնելով որ իր վրայ կը կատարուի Աստուծոյ խոստումը, յանկարծ մէկ գիշեր մը ցաւալի դիպուած մը հանդիպեցաւ: Հրաման տուաւ Աստուած Աբրահամու որ Իսահակը ողջակէզ ընէ: Աբրահամ բնաւ չտարակուսեցաւ, առաւօտը կանուխ ելաւ, փայտ կոտրեց, էշով մը և երկու ծառայով ճամբայ ելաւ գնաց իրեք օր հեռու. ու երբոր տեսաւ Աստուծոյ ցուցուցած տեղը, ծառաները թողուց, փայտերը շալկեցուց Իսահակայ կռնակը, ինքն ալ կրակ և դանակ առաւ ու գնացին. տղան տարակուսած կը հարցնէր թէ ո՞ւր է ողջակէզ ընելու ոչխարը. Աստուած պատրաստած է՝ ըսաւ Աբրահամ: Երբոր հասան տեղը, կապեց զԻսահակ, քաշեց դանակը, կ'ուզէր մորթել. Կեցի՛ր, ըսաւ Աստուած. ու Սաբեկայ ծառին վրայէն կախուած ոչխար մը ցցուց անոր տեղը՝ որ ողջակէզ ըրաւ: Աստուած ալ օրհնեց զԱբրահամ ասանկ միամիտ հնազանդութեանը համար:

## 18.

### Սառայի մահը, Իսահակայ կարգուիլը:

Հ. Ո՞ւր տեղ և քանի՞ տարուան մեռաւ Սառա.

Պ. Քեբրոնի մէջ Քանանացւոց երկիրը հարիւր քսանըեօթը տարուան:

14.

Իսահակ։

Հ. Սառան որդի ունեցա՞ւ.

Պ. Երբոր հասաւ Աստուծոյ խոստացած ատենը տղայ մը ունեցաւ և անունը դրաւ Իսահակ, և կաթէն կտրած օրը մեծ ուրախութիւն ըրաւ Աբրահամ։

Հ. Իսահակ Սառային հարազատ տղան ըլլալով, Իսմայէլին վնաս մը եղա՞ւ.

Պ. Իսահակայ պատճառաւ Իսմայէլ սկսաւ արհամարհուիլ՝ չէ թէ խորթ որդի ըլլալուն համար, հապա որովհետև Իսահակայ հետ կ'իյնար, անոր դէշ օրինակ կուտար. անոր համար Սառան ուզեց որ հեռացընէ զԻսմայէլ իր քովէն։ Եւ թէպէտ Աբրահամ չէր ուզեր, բայց Աստուած իմացուց Աբրահամու որ Սառային ուզածը աղէկ բան է։ Ան ատենը մէկէն Աբրահամ հնազանդեցաւ Սառային խօսքին։ Ելաւ առաւօտանց հաց ու ջուր տուաւ Ագարայ, տղան ալ հետը ճամբայ դրաւ։ Ագար ճամբան կորսնցուցած՝ երդման ջրհորին քովերը կը պտըտէր, ինչուան ջուրն ալ հատաւ, ինքն ալ յուսահատած՝ թողուց տղան մէկ ծառի մը տակ, ու գնաց քիչ մը հեռու նստեցաւ՝ որ չտեսնէ տղուն մեռնիլը։ Աստուած լսեց տղուն լալու ձայնը, ու ջուր բղխեցուց ան տեղուանքէն, և խոստացաւ ալ որ մեծ ազգ ընէ զԻսմայէլ։

Հ. Երդման ջրհորը ո՞ւր տեղուանք կ'իյնայ.

Պ. Գերարայ Փղշտացւոց երկիրը՝ Աբիմելէքին թագաւորութեան տակը։ Աս ջրհորը Աբրահամ բացեր էր ու Աբիմելէքին մարդիկը առեր էին ձեռքէն։ Երբոր Աբիմելէք նորէն դաշինք դրաւ

Աբրահամու հետ, ան ջրհորն ալ նորէն ետ տուաւ, անմեղադիր ըլլալով ինքզինքը թէ չէր իմացած։ Աբրահամ ալ ծառեր անկեց ան ջրհորին քովերը, ու հոն Աստուծոյ աղօթք կ'ընէր։

Հ. Աբրահամ զԻսմայէլ դուրս ընելէն ետև ալ ուրիշ վիշտ չքաշե՞ց Իսահակայ պատճառաւը.

Պ. Երբոր բոլորովին հանգստութեան մէջ կը կարծէր ինքզինքը՝ տեսնելով որ իր վրայ կը կատարուի Աստուծոյ խոստումը, յանկարծ մէկ գիշեր մը ցաւալի դիպուած մը հանդիպեցաւ։ Հրաման տուաւ Աստուած Աբրահամու որ Իսահակը ողջակէզ ընէ։ Աբրահամ բնաւ չտարակուսեցաւ, առաւօտը կանուխ ելաւ, փայտ կոտրեց, էշով մը և երկու ծառայով ճամբայ ելաւ գնաց լերինք որ հեռու. ու երբոր տեսաւ Աստուծոյ ցուցուցած տեղը, ծառաները թողուց, փայտերը շալկեցուց Իսահակայ կռնակը, ինքն ալ կրակ և դանակ առաւ ու գնացին. տղան տարակուսած կը հարցընէր թէ ո՞ւր է ողջակէզ ընելու ոչխարը. Աստուած պատրաստած է՝ ըսաւ Աբրահամ։ Երբոր հասան տեղը, կապեց զԻսահակ, քաշեց դանակը, կ'ուզէր մորթել. Կեցիր, ըսաւ Աստուած. ու Սաբեկայ ծառին վրայէն կախուած ոչխար մը ցցուց անոր տեղը՝ որ ողջակէզ ըրաւ։ Աստուած ալ օրհնեց զԱբրահամ ասանկ միամիտ հնազանդութեանը համար։

18.

Սառայի մահը, Իսահակայ կարգուիլը։

Հ. Ո՞ւր տեղ և քանի՞ տարուան մեռաւ Սառա.

Պ. Քեբրոնի մէջ Քանանացւոց երկիրը հարիւր քսանըեօթը տարուան։

Հ. Ո՞ւր թաղեցաւ Սառա.

Պ. Քեբրոն Քանանացւոց երկիրը Մամբրէին դիմացը երկու այրին մէկուն մէջ, որն որ Աբրահամ դիմացի ագարակովը մէկտեղ գնեց չորս հարիւր սատերի Սահառ քետացիին տղուն Եփրոնին ձեռքէն։ Աստուածաշունչը կանանց մէջէն միայն Սառային տարիքը, մեռնիլը ու թաղուիլը կը յիշէ՝ եկեղեցւոյ օրինակ ըլլալուն համար. ինչպէս Իսահակ ալ Քրիստոսի օրինակ էր։

Հ. Իսահակ ե՞րբ կարգուեցաւ, և ի՞նչպէս.

Պ. Սառային մեռնելէն իրեք տարի ետքը։ Տեսնելով Աբրահամ որ ինքն ալ ծերացած է՝ հարիւր քառասուն տարուան, կանչեց զԵղիազար՝ իրեն հաւատարիմ ծառան, ու երդում ընել տալով որ քետացի կին չառնէ իրեն որդւոյն, տասը ուղտով, շատ ընծաներով, ոսկիէ արծըթէ զարդերով խրկեց որ երթայ իր հայրենիքը՝ Միջագետքէն Իսահակայ կին առնէ ու բերէ։ Երբոր անիկայ տարակոյս կը հանէր թէ չգալու ըլլայ նէ՝ ի՞նչ ընեմ, Աբրահամ հաստատուն յուսով ըսաւ, թէ Աստուծոյ հրեշտակը կ՚առաջնորդէ քեզի. բայց թէ որ չգայ, ազատ ըլլաս երդումէդ։ Գնաց Եղիազար Նաքովրայ քաղաքին դուրսի դին ջրհորին քովը նստաւ։ Աղաչեց Աստուծոյ որ երբ քաղքէն կուգան աղջիկները սափորներով ջուր առնելու, ո՛ր աղջիկն որ ընտրուած է աս բանիս՝ Եղիազար թէ որ խմելու ջուր ուզէ անկէ՝ անիկայ ինքիրեն ուղտերուն ալ խմցընէ։ Աս բանս մտածելու առեն եկաւ Ռեբեկա Աբրահամու եղբօրը՝ Նաքովրայ տղուն Բաթուէլին աղջիկը, ու Եղիազարին խօսք դրածին պէս ըրաւ։ Ան առեն Եղիազար հարցուց իմացաւ ով ըլլալը, ու հանեց ձեռուընները ոսկիէ ապարանջաններ դրաւ, ականջներուն ալ ոսկիէ օղեր անցուց։ Երբոր Լաբան տեսաւ անոնք ու լսեց եղածը, եկաւ տուն հրամ-

ցուց. ուղտերուն խոտ տուաւ, իրենց ալ ոտուը-նին լուաց ու կերակուր հանեց. բայց Եղիազար չուզեց ուտել ինչուան որ խօսքը չըսպառէն։ Ետքը պատմեց եղած դիպուածները. անոնք ալ Աստուծոյ բանն է ըսելով մէկէն հաւանեցան։ Եղիազարն ալ ան ատենը հանեց ոսկիէ արծըթէ ամաններ ու լաթեր և ընծայ տուաւ Բաթուէլի. Ռեբեկային մօրը. Լաբանայ եղբօրը ու իրեն. և անանկով կերան խմեցին ու հանգչեցան։ Առտուոր մէկէն երթալ կ'ուզէր Եղիազար. անոնք աղաչեցին որ տասը օր ալ կենայ աղջիկը. ետքը խօսքը որոշելու համար Ռեբեկային հարցուցին, և անոր ուզելովը մէկէն բաժնուեցան գնացին Ռեբեկա և իր աղախինները ուղտերու վրայ նստած։ Երբոր մօտեցան Տեպլեան ջրհոր ըսուած տեղին, ան ատենը Իսահակ ելեր դաշտին մէջ կը պտըտէր. մէկզմէկ տեսան հեռուէն, և Ռեբեկա երբոր իմացաւ թէ դէպ 'ի իրենց եկողը Իսահակն է, վրան լաթ առաւ՝ վար իջաւ, ու անանկ գնաց։ Ասանկով Իսահակը երբ քառա-սուն տարուան էր՝ իրեն կին առաւ զՌեբեկա, ու մօրը մահուան սուգն ալ պակսեն փարատեցաւ.

16.

Աբրահամու մահը, և Իսահակայ աղօթքով զաւակ ունե-նալը։

Հ. Իսահակայ կարգուելէն ետքը Աբրահամ որչափ ատեն ապրեցաւ.

Պ. Երեսունըհինգ տարի. և սա միջոցիս մէջ Քետուրա անունով կին մը առաւ, և անկէ վեց որդի ալ ունեցաւ. ծերացած ատենը Աստուծոյ մասնաւոր խնամքով, բայց չթողուց անոնց որ Ի-

սահակայ հետ իրեն ժառանգ ըլլան. մեռնելէն առաջ անոնց մէյմէկ քիչ բան տուաւ ու ճամբեց։ Ինքը մեռաւ հարիւր եօթանասունըհինգ տարուան, և Իսահակ ու Իսմայէլ մէկտեղ թաղեցին Սառային քովը այրին մէջ, Մամբրէի կաղնի ծառին դիմացը։

Հ. Իսահակ ո՞ւր կը բնակէր.

Պ. Քանանացւոց երկիրը Աբրահամու կեցած տեղը, ինչուան որ մեծ սովի մը պատճառաւ ելաւ ճամբայ Եգիպտոս երթալու համար։ Բայց Աստուած արգելեց որ այն երկրէն դուրս չելլէ, որն որ իր հօրը խոստացեր էր ու իրենց կ՚ուզէր տալ։ Անոր համար գնաց Գերարայ Փղշտացւոց Աբիմելէքը թագաւորին քով. հոն երկար ատեն կենալէն ետքը՝ դարձաւ նորէն առջի տեղը։

Հ. Իսահակ Փղշտացւոց երկրին մէջ ի՞նչ նեղութիւն քաշեց.

Պ. Առջի նեղութիւնը եղաւ իր սրտադողը որ քաշեց Ռեբեկայի համար. ուստի ամէն հարցընողին քոյրս է կ՚ըսէր բայց Աբիմելէք դիպուածով իմացաւ ու նեղացաւ Իսահակայ երկդիմի խօսքին վրայ, և պատուիրեց ամենուն որ գիտնան, ու չըլլայ թէ վնաս մը հասցընեն անոնց։ Ատեն անցաւ շատ հարստացաւ Իսահակ. սկսան նախանձիլ Փղշտացիները, ու Իսահակայ հօրը փորած ջըրհորները ամէնն ալ լեցուցին. ետքը Իսահակ նորէն բացաւ։ Աս բաներուս համար Աբիմելէք ալ Իսահակայ ըսաւ որ ելլէ երթայ այն տեղէն։

Հ. Իսահակ Աբիմելէքին քովէն երթալէն ետև ի՞նչ մասնաւոր գործք ունի յիշուած.

Պ. Գերարայի ձորին մէջ՝ ուր որ կը բնակէր, ջրհոր մը բացաւ ինքիրեն ըսած ջրոյ, ու անունը դրաւ Զրկանք, անոր համար որ Գերարայի հովիւները կռիւ կ՚ընէին՝ այն ջրհորը մերն է ըսելով։ Ուրիշ ջրհոր մըն ալ բացաւ, անուանեց Թշնամու-

Եկան նորէն կռիւ ընելնուն համար . ուրիշ մըն ալ բացաւ ու անուանեց Ընդարձակութիւն, որուն համար կռիւ չեղաւ : Ետքը գնաց Երդման Ջրհորին քով . հոն Աստուծոյ սեղան շինեց, զոհ ըրաւ, ու օրհնուեցաւ Աստուծմէ : Հոն ալ ջրհոր մը փորեց ու ջուր ելլալուն համար անունը Երդման դրաւ : Աս ատեններս եկաւ իրեն քով Աբիմելէք թագաւորը, Ռոզոմաթ ու Փիքող իրեն իշխաններով մէկտեղ դաշինք գնելու : Իսահակ անոնց սեղան ըրաւ ու մէկտեղ բարեկամութեան ուխտ ըրին գնացին :

17 .

Յակոբ, Եսաւ :

Հ . Իսահակ կարգուելուն պէս տղայ ունեցա՞ւ .

Գ . Ռեբեկա ամուլ ըլլալուն համար քսան տարի ետքը աղաչելով Աստուծմէ երկուորեակ տղաք ունեցաւ . որոնք երկու ազգ կը նշանակէին ու մեծը պզտիկին պիտի ծառայէր : Եսաւ էր մեծը՝ մազոտ թխագոյն և բնութիւնը խիստ, և պզտիկը Յակոբ՝ հեզահոգի :

Հ . Եսաւայ ու Յակոբայ բնաւորութիւններն ի՞նչ օգուտ կամ վնաս հասուցին իրենց .

Գ . Եսաւ տաքգլուխ կորիճ մը ըլլալով, անդրանկութենէն և հօրը օրհնութենէն զրկուեցաւ . Յակոբ հանդարտ մտածող ընտանի բարք ունենալուն՝ ամէն բանի մէջ յաջողութիւն գտաւ :

Հ . Եսաւ ի՞նչպէս անդրանկութիւնը կորսնցուց .

Գ . Օր մը Յակոբ ոսպէ ապուր եփեր էր . Եսաւ սաստիկ անօթի դաշտէն դարձած ատեն,

ուզեց ։ Յակոբ ալ ըսաւ . « Թէ որ անդրանկութիւնդ ինծի տաս, կեր » ։ Եսաւ մէկէն առանց առաջը եկածը մտածելու « Անդրանկութենէն ինչ կ'ելլէ՝ քեզի ըլլայ » , ըսաւ ։ Յակոբ երդում ուզեց ։ Եսաւ մէկէն երդում ալ ըրաւ ու նստաւ կերաւ խմեց ու գնաց ։ Անոր համար Եսաւ Եդոմ ըսուեցաւ ։

Հ . Իսահակ հաւանեցա՞ւ Յակոբին ու Եսաւայ ըրած անդրանկութեան փոխանակութեանը .

Պ. Ինչը չիմանալով անդրանկութեան օրհնութիւնն ալ Յակոբայ տուաւ . վասն զի Եսաւ որսորդ ըլլալով երբեմն երբեմն աղէկ որսեր կ'ընէր ու կը կերցնէր հօրը . անոր համար Իսահակն ալ Եսաւը կը սիրէր ։ Իսկ Ռեբեկա մայրերնին ալ Յակոբը կը սիրէր ։ Իսահակ երբոր շատ ծերացաւ՝ ուզեց որ զԵսաւ օրհնէ . կանչեց ըսաւ որ երթայ մէկ աղէկ որս մը ընէ եփէ ու բերէ , որ ինքն ուտէ ու ետքի օրհնութիւնը տայ իրեն ։ Մէկէն որսալու գնաց Եսաւ ։ Իմացաւ բանը Ռեբեկա . խրկեց զՅակոբ որ շուտ մը դաշտէն երկու գիրուկ ուլ բերէ , որ ինքը եփէ ու տայ իրեն որ ուտի ու օրհնութիւնը ինքն առնու . Յակոբ սկսաւ վախնալ թէ չըլլայ որ իմացուի ու ինքը անէծք առնէ օրհնութեան տեղը . մայրը « Իմ վրաս ըլլայ , ըսաւ , անէծքը , դու խօսքիս մտիկ ըրէ » ։ Երբոր գնաց բերաւ , Ռեբեկա եփեց շուտ մը . Եսաւայ նոր զգեստն որ իր քովը պահեր էր անոր հագցուց . ուլին մորթն ալ թեւերուն ու վզին վրայ յարմարցուց , ձեռքը տուաւ կերակուրը որ տանի ։ Իսահակ ձայնը լսածին պէս սկսաւ տարակուսիլ . հարցնել զարմանալով թէ ինչ շուտ բերաւ . քովը կանչեց . ձեռուըները բռնեց նայեցաւ . միայն ձայնը ճանչցաւ թէ Յակոբայ էր . բայց երբոր մտածեց՝ Եսաւայ լաթերուն հոտը առաւ , ու առանց տարակուսի անդրանկութեան օրհնութիւնը տուաւ՝

շատ խորհրդաւոր խօսքերով, և թէ եղբօրը վրայ իշխէ ։ Աստուծով ելաւ գնաց Յակոբ ։ Իսահակ Եսաւ ալ բերաւ իրեն բռնած որսը . այս բանին վրայ խիստ զարմացաւ Իսահակ , հայրը՝ խռովեցաւ , բայց Աստուծոյ մասնաւոր խնամքովը՝ որով արժանացած խոստումները առաւ գնաց , առած օրհնութիւնը ալ աւելի հաստատեց ։ Այն ատենը նեղանալով Եսաւ որ անդրանկութեան հետ օրհնութիւնն ալ կորսնցուց , սկսաւ լալ ու խնդրել որ զինքն ալ օրհնէ ։ Իսահակ ընդունեց օրհնել . Եղբայր խիստ շատ թախանձեց՝ ան ատենը մէկ բանի խօսք ալ իրեն ըսաւ ։ Եսաւ երկու անգամ խաբուելուն համար սաստիկ ոխ պահեց Յակոբայ դէմ ու կը սպասէր Իսահակայ մահուանը՝ որ զինքն ալ մեռցնէ ։

## 18 .

### Յակոբայ երթալը Լաբանայ քով ։

Հ. Յակոբ անդրանկութեան օրհնութիւնը առնելէն ետքը Եսաւայ հետ ինչպէս վարուեցաւ ։

Պ. Ռեբեկա իմանալով Եսաւայ միտքը՝ ուզեց զՅակոբը հեռացնել ։ Եւ որովհետեւ Եսաւ երկու կին առեր էր քանանացի և խեթացի , որոնք շատ նեղութիւն կուտային իրեն ու Իսահակայ , ան պատրուակաւ գնաց աղաչեց Իսահակայ որ Յակոբ երթայ Միջագետաց Խառան , ու հոն կարգուի ։ Յակոբին ալ յորդորեց որ երթայ Լաբանայ իրեն եղբօրը քով՝ հեռանայ Եսաւէն ։ Այն ատեն Իսահակ կանչեց զՅակոբ , օրհնեց նորէն ու Խառան խրկեց ։

տիկ ոչխարները միշտ խծն ըլլան ,, : Հաւանեցաւ Լաբան ու մէկէն զատեց բոլոր ճերմակներն , ու իրեն տղոցը ձեռքը տուաւ որ իրեք օրուան ճամբայ հեռու տանեն , որպէս զի Յակոբ ճերմակներուն ծնած խատուտիկներն ալ չառնէ : Տեսաւ Յակոբ որ Լաբան խարդախութիւն կ'ընէ , ինքն ալ Աստուծմէ խրատուած՝ ծառի գալար ճիւղեր առաւ , որոնց վրայի կանաչները տեղ տեղ կեղուելով գոյնզգոյն կ'երևնար . անոնք ոչխարները ջուր խմելու ատեն աւազանին մէջ կը դնէր որ տեսնելով կը խրտչէին ու խատուտիկ կը ծնանէին , ինքն ալ անոնք բոլոր մէկդի կը զատէր . և վեց տարուան մէջ Յակոբ այնչափ հարստացաւ որ Լաբան սկսաւ վրան նախանձիլ ու ծուռ նայիլ : Օր մը Յակոբ իմացուց Լիային ու Ռաքելին իրենց հօրը տրտունջը . և թէ ինքը տեսիլք տեսեր է որ Աստուած “ Ելիր ասկէ գնա քու հօրդ տունը կ'ըսէ ,, : Մէկէն հաւնեցան անոնք ալ . ուստի առաւ ընտանիքը , տղաքը , ու ամէն ունեցածը՝ ելաւ ճամբայ : Ռաքէլն ալ հօրը կուռքերը գողցաւ մէկտեղ առաւ :

Հ . Լաբան ի՞նչպէս ձայն չհանեց Յակոբայ իրմէ բաժնուելուն վրայ .

Պ . Ան ատենը Լաբան ուրիշ տեղ ոչխար խուզելու գացած ըլլալով իրեք օրէն ետև իմացաւ և սաստիկ նեղացաւ , ու իրեն մարդիկներովը եօթն օրուան ճամբայ մինչուան Գաղաադու լեռը ետևէն վազեց հասաւ : Գիշերը Աստուած երևցաւ Լաբանու , և պատուիրեց որ գէշ մը չհասցընէ Յակոբայ . անոր համար միայն յանդիմանեց գաղտուկ փախչելը , և կուռքերը գողնալը : Յակոբ գաղտուկ փախչելուն համար “ Վախցայ , ըսաւ , որ չըլլայ թէ արգելես զիս . իսկ գողութիւնը՝ թէ որ մէկը ըրած է՝ պատժուի ,, ըսաւ : Լաբան շատ փնտռեց չգտաւ . վասն զի Ռաքէլ ուղտին կանա_

զինքը չթողուց․ ան ատեն հրեշտակը անունն ալ փոխեց Իսրայէլ այսինքն Աստուածատես դրաւ ։ Յակոբ ալ ան տեղւոյն անունը Տեսիլ Աստուծոյ ըսաւ ։

Հ․ Յակոբ Եսաւայ ինչպէս հանդիպեցաւ․

Պ․ Երբոր մօտեցաւ՝ իրեք բաժնեց իր ընտանիքը․ առաջ երկու աղախինը իրենց տղոցմով, Լիան իրեններովը, ետեւէն զՌաքէլը և զՅովսէփ․ և ինքն անոնցմէ առաջ անցաւ՝ եօթն անգամ երկրպագութիւն ըրաւ, անոնք ալ մէկտեղ, ինչուան Եսաւայ գութը շարժեցաւ ու լալով պագտուեցաւ ։ Եսաւ ուզեց մէկտեղ երթալ կամ իրեն մարդիկներէն օգնական տալ․ Յակոբ շնորհակալ եղաւ․ մանր տղաքը՝ անասունները պատճառ բերելով, կամաց կամաց կը հասնիմ ըսաւ ինչուան Սէիր ։

Հ․ Յակոբ Միջագետքէն դառնալէն ետեւ ու՞ր գնաց բնակեցաւ, և ինչ նոր վիշտ քաշեց․

Պ․ Սիկիմ քաղաքին դիմացը բնակեցաւ, ու Սիքեմայ հօրմէն Եմովրէն հարիւր ոչխարի խորան ըռնուած տեղը գնեց ։ Օր մը Դինա իր աղջիկը գնաց քաղաքը պտըտելու ։ Սիւքեմ Եմովր իշխանին տղան՝ տեսաւ աղջիկը ու չարչրկեց, և իրեն կնիկ առնելու մտքով առաւ տուն տարաւ ։ Հայրը Եմովր եկաւ Յակոբայ հետ խօսեցաւ՝ յորդորելով որ իրենք ալ միշտ հոն կենան և ուրիշի հետ խնամութիւն ալ ընեն ։ Սիւքեմն ալ կը խոստանար ինչ օժիտ որ ուզեն ։ Բայց Յակոբ ու տղաքը շատ նեղացած ըլլալով, Շմաւոն ու Ղեւի որ մէկ մօրէ Դինայի եղբայրներն էին՝ խարդախութեամբ ըսին թէ պէտք է որ մեզի պէս թլփատուիք որ աս բանիդ հաւանինք ։ Անոնք յանձն առին, գնացին քաղաքացիներին ալ յորդորեցին ըսելով թէ հարուստ են, բոլոր ունեցածներն ալ մերը կ'ըլլայ․ ասանկով ամէնքն ալ թլփատուեցան ։ Երրորդ օրը երբոր ամէնքը ցաւի մէջ էին, Շմաւոն ու Ղեւի սրերով մտան քաղաքը ջարդեցին ամէն էրիկ մարդիկը,

Պ. Այն օրերը Թագաւորին տակառապետը ու մատակարարը Յովսէփին կեցած բանտը դրուեցան. և մէկ գիշեր մը երկուքն ալ երազ տեսան: Երկրորդ օրը Յովսէփ տեսնելով որ երեսնին կախեր են՝ իմացաւ պատճառը, հարցուց երազը ու ըսաւ, թէ Աստուծով ես կը մեկնեմ երազնիդ: Ան ատենը պատմեց տակառապետը. “Տեսայ որ, ըսաւ, որթ մը իրեք կանաչ ճիւղ և խաղող ունէր, ես ճզմելով գաւաթի մէջ Փարաւոնին տուի„: “Իրեք օրէն, ըսաւ Յովսէփ, առջի պաշտօնիդ պիտի հասնիս՝ ու գաւաթով գինին Փարաւոնին տաս„ Ու աղաչեց որ երբոր ազատի, յիշէ զինքն ալ Փարաւոնին առջև որ յանցանք չունի: Մատակարարն ալ տեսնելով որ երազին աղէկ մեկնութիւն տուաւ, “Ես ալ տեսայ որ, ըսաւ, իրեք աղնիւ ալիւրի աման գլխուս վրայ դրած էր. վրայինին մէջը աղնիւ Թագաւորական կերակուրներ, և թռչունները կ'ուտէին մէջէն„: Պատասխանեց Յովսէփ. “Իրեք օրէն Փարաւոն գլուխդ պիտի կտրէ և մարմինդ ալ փայտէ պիտի կախէ որ թռչունները գան ուտեն„: Իրեք օրէն Փարաւոնին ծննդեան օրը ըլլալով, կատարուեցաւ Յովսէփայ ըսածը. բայց տակառապետը մոռցաւ յիշել զՅովսէփ:

Հ. Յովսէփ ի՞նչպէս բանտէն խալըսեցաւ.

Պ. Երկու տարի բանտը կենալէն ետքը, Փարաւոն երազ մը տեսաւ. գետին մէջէն եօթը գէր կովեր ելան կ'արածէին. ուրիշ եօթը վատոյժ կովեր ալ ելան, արածելու ատեն առջինները կլլեցին: Արթընցաւ և նորէն քնացաւ, տեսաւ որ մէկ արմատէն եօթը պարարտ ցորենի հասկեր ելան, ետքը եօթն ալ ցամաք հասկեր, ու առջինները կլլեցին: Փարաւոն տակնուվրայ եղած չէր գտներ մէկը որ տեղն 'ի տեղը մեկնէ. յանկարծ տակառապետին միտքը ինկաւ, պատմեց

Հ. Եգիպտոսի սովը ինչուան ո՞ւր տարածուեցաւ.

Պ. Ամէն մէկ կողմի աշխարհքները. ինչուան Յակոբ ալ սովէն նեղացած խրկեց տղաքը Եգիպտոս՝ որ ցորեն գնեն։

Հ. Յովսէփայ եղբայրքը երբոր առջի անգամ տեսնուեցան իրեն, ինչպէս վարուեցաւ անոնց հետ.

Պ. Երբոր անոնք եկան առջևը իյնալով երկրպագութիւն ըրին, մէկէն ճանչցաւ. բայց չճանչնալ ձևացուց, ու սկսաւ բարկանալ "Լրտես էք, ըսաւ, եկեր էք որ քաղաքս աչքէ անցընէք ու մատնիչ ըլլաք"։ Անոնք "Չէ, կ՚ըսէին, ցորեն գնելու եկեր ենք". ու կը պատմէին ով ըլլալնին. և թէ տասնուերկու եղբայրք ենք, պզտիկը հօրերնուն քովն է, և մէկը մեռած է։ Յովսէփ աս բաները լսելով, ալ աւելի վրայ տուաւ թէ "Դէշ մարդիկ էք. թէ չէ, ըսաւ, ձեզմէ մէկը խրկեցէք որ ձեր պզտի եղբայրը բերէ"։ Ասանկով ամէնն ալ բանտը դրաւ։ Երեք օրէն ետքը իբր թէ խղճալով հրաման տուաւ որ միայն մէկը մնայ, մէկալները ցորեննին առնին ու՝ի դարձին պզտի եղբայրնին ալ բերեն, որ իրենց հաւատայ։ Մեղովյանձն առին, ու կարծելով որ Յովսէփ չհասկընար, որովհետև թարգմանով կը խօսէր, սկսան ըսել թէ "Աս նեղութիւնը կը քաշենք Յովսէփայ ըրածներնուս համար. որչափ կ՚աղաչէր ու մենք մտիկ չըրինք". Ռուբէն ալ կ՚ըսէր՝ թէ "Ես ձեզի չըսի՞. խեղճ տղուն արիւնը մի մտնէք"։ Աս խօսքերուս վրայ Յովսէփայ սիրտը փղձկելով, մէկդի քաշուեցաւ ու լացաւ։ Ետքը նորէն եկաւ, հրամայեց որ զՇմաւոն կապեն ու պահեն։ Իրենց ամանները լեցընել տուաւ, և գաղտուկ պատուիրեց որ ամենուն ցորենին գինն ալ իրենց ամաններնին մէջը դնեն։ Անկէ զատ ճամբուն համար կերակուր ալ տուաւ ու խրկեց։

## 24.

### Յովսէփայ եղբարց յայտնուիլը :

Հ. Երկրորդ անգամ Յովսէփի եղբայրները ինչպէս ընդունեցաւ.

Պ. Երբոր Բենիամինն հետերնին Եգիպտոս հասան, Յովսէփ հրամայեց իր տանը վերակացուին՝ որ տուն տանի զանոնք ու կերակուր պատրաստէ, որպէս զի միասին հաց ուտեն: Բայց անոնք կարծելով թէ ստակին համար կ'երթան պատասխան տալու, սկսան ան մարդուն առջև զիրենք արդարացնել. ու "Հիմա, ըսին, անկէ զատ ուրիշ ստակ ալ բերինք": Մարդը սիրտ տուաւ անոնց թէ "Աս Աստուծոյ բանն է, հոգ մընէք". Ետքը Շմաւոն եղբայրնին ալ արձըկեց, տուն բերաւ: Երբոր Յովսէփ եկաւ, ամէնքը երկրպագութիւն ըրին, ու ինքն ալ սիրով առաւ բերած ընծանին. հարցուց հօրերնուն ինչպէս ըլլալը, ու ըսաւ թէ Աստուծմէ օրհնած մարդ մըն է անիկայ: Ետքը Բենիամինի վրայ նայելով, հարցուց. "Աս է ձեր պզտիկ եղբայրը. Աստուած քեզի ողորմի որդի", ըսաւ, և ան տեղը Յովսեփայ սիրտը լեցուեցաւ, արցունքը չկրցաւ բռնել, ելաւ մինաւոր տեղ մը գնաց լալու համար: Ետքը ամէնը մէկտեղ կարգով իր հետը հացի նստեցուց, ու սեղանին վրայ աւելի պատիւ ցըցուց Բենիամինի: Ետքը Յովսէփ վերակացուին ապսպրեց որ ցորենին ամանները ալէկ մը լեցընէ, ու նորէն ստակները քուրձերուն բերանը դնէ կապէ. իր արծըթէ գաւաթն ալ Բենիամինի քուրձին մէջ դնէ: Ասանկով առաւօտանց կանուխ ճամբեց զիրենք:

Հ. Բենիամինին քուրձի արծըթէ գաւաթը ինչ կերպով յայտնուեցաւ.

Պ. Յովսէփ եղբայրներէն բաժնուելէն ետքը, վերակացուն ետևնուն խրկեց՝ որ երեսնին տայ որ-ծըլթէ գաւաթը գողցաներնին. երբոր լսեցին անոնք, խռովեցան ու սկսան ըսել՝ թէ “Այդպէս բան չենք ըրած, չենք գիտեր. ինչպէս կարելի է որ մենք արծաթ կամ ոսկի գողնանք, որ մեր քուր-ձին մէջ գտած ստակնիս ալ նորէն ետ դարձու-ցինք„: Եւ ըսին վստահութեամբ թէ որուն քո-վէն որ ելլէ այն գաւաթը՝ սպաննուի, և ամենքս ալ գերի ըլլանք: Այն ատեն վերակացուն սկսաւ կարգով նայիլ փնտռել՝ ու գտաւ Բենիամինի ա-մանին մէջէն: Պաղեցան միացին ամէնքը, և յու-սահատած լաթերնին սկսան պատռտել, և գլուխնին կախած ետ դարձան:

Հ. Երրորդ անգամ Յովսէփայ եղբայրներուն առջև երևնալը ինչ կերպով եղաւ.

Պ. Երբոր եկան Յովսէփայ առջևը՝ սկսաւ զիրենք յանդիմանել: Այն ատեն Յուդա շատ մը աղէք ինկաւ ըսելով. “Ալ պատասխան չունինք. Աստուած մեղքերնիս երեսնիս տուաւ. ահա ա-մէնքս քու գերիդ ենք„: Յովսէփ “Չէ ըսաւ, որուն քովէն որ գաւաթը ելաւ, միայն ան իմ գե-րիս ըլլայ, դուք ազատ ելէք գնացէք„: Աս խօս-քես քիչ մը սիրտ առաւ Յուդա, ու թողութիւն ուզելով սկսաւ պատմել թէ ինչպէս հօրը ծերու-թեան սիրական զաւակն է Բենիամին, և թէ շատ դժուարութեամբ թողուցեր է բաժնուիլ իրմէն, ըսելով թէ “Ռաքէլ ինծի միայն երկու զաւակ բերաւ. մէկը ըսիք թէ գազանը բզքտեց. հիմա թէ որ աս ալ առնէք՝ իրեն փորձանք մը հանդիպելու ըլլայ, ցաւէս կը մեռնիմ„: Անոր համար, ըսաւ Յուդա, ես աս տղին երաշխաւոր եղայ, ուստի սիրով գերի կ'ըլլամ քեզի, միայն թէ ինքը ազատ հօրը երթայ. թէ չէ, ինչ երեսով ես հօրս առջևը ելլեմ, անոր կսկիծը տեսնեմ„:

րիները, զՅովսէփ կանչեց՝ երդումընցընելով պա-տուիրեց որ իրեն հայրենական գերեզմանը դնէ։ Անկէ ետև մէկ հեղ մըն ալ իմացուցին Յովսեփայ թէ հայրը ծանրացեր է. բերաւ երկու որդիքը Մանասէ ու Եփրեմ, որ իր վերջի օրհնութիւնը տայ։ Յակոբ ալ տղաքը գիրկը առաւ պագաւ, « իմ որդւոցս կարգը առնուք ալ ետևըսուբին » ըսաւ։ Եւքը Յովսէփի չուզեցուց զանոնք առջևը որ օրհնէ. Յակոբ օրհնելու ատեն՝ աջ ձեռքը Եփրեմի վրայ դրաւ՝ ու ձախը Մանասէին. Յովսէփ դիպուա-ծով կարծելով շտկել ուզեց. բայց Յակոբ գի-տեմ ըսաւ, երկուքն ալ օրհնած ըլլան, բայց Ե-փրեմը Մանասէէն վեր ըլլայ։ Եւ Միկիմը, որուն մարդիկը չարդեր էին, Յովսեփայ տուաւ։ Եւքը կանչեց մէկալ որդիքն ալ առջևը, ու ամէն մէկը զատ զատ օրհնեց՝ վրանին մարգարէութիւններ խօսելով։ Եւ Յուդային օրհնութեանը մէջ յայտ-նի գուշակեց անոր ցեղին մէջը հաստատուելու Իսրայէլացւոց թագաւորութիւնը, և Մեսիային գալուստը։ Եւ մեռաւ հարիւր քառասունևեօթը տարուան։

Հ. Յակոբայ մարմինը մէկէն տարին Քանա-նացւոց երկիրը թաղելու.

Պ. Նախ զմռսել տուաւ Յովսէփ, որ Եգիպ-տացիք պատուոյ համար կ'ընէին, ու եօթանասուն օր սուգ ընելէն ետև, փարաւոնին հրամանովը իր եղբայրները ու շատ իշխաններ հետերնին՝ կառ-քերով և ձիաւորներով խիստ փառաւոր հանդէ-սով գնացին Յորդանանին անդիի դին, եօթը օր ալ հոն սուգ ըրին, որ ամէն Քանանացիք կ'ըսէին. « Մեծ սուգ ունին Եգիպտացիք »։ Անկէ տարին Մամբրէին դիմացը իրենց հայրենական գերեզ-մանը թաղեցին։

26.

Յովսէփայ մահը, Հրէից ծառայած Միսրը :

Հ. Յակոբայ մեռնելէն ետև Յովսէփ ի՞նչ աչ-քով կը նայէր եղբարցը վրայ.

Պ. Անանկ իբրև թէ բան մը եղած չըլլայի։ Բայց իր եղբայրքը վախցան որ չըլլայ թէ վրաննին ոխ պահելով վրէժ առնէ, եկան Յովսէփայ ըսին թէ "Հայրերնիս ապսպրեց որ իր կողմանէ հրաման-նոցդ ըսենք, որ մեղի թողութիւն տաս. ուստի մենք հիմա քեզմէ ներումն կը խնդրենք" ըսե-լով Յովսէփայ ոտքը ինկան ու քու ծառադ ենք ըսին. Յովսէփայ սիրտը լեցուեցաւ՝ սկսաւ լալ. ու մխիթարելով ըսաւ. "Մի վախնաք, ես ալ Աստուծոյ ծառան եմ. յիրաւի դուք ինծի չարիք ընել ուզեցիք, բայց Աստուած չարը 'ի բարին դարձուց". ուրիշ ալ անուշ խօսքերով սրտերնին առաւ՝ բոլորովին անյիշաչար ըլլալով. ու խաղա-ղութեամբ հանգիստ կ'ապրէին։

Հ. Յովսէփ ինչուան ե՞րբ մնաց իր պատուոյն մէջ.

Պ. Ինչուան ետքը. և մեռաւ հարիւր տասը տարուան՝ կտակ ընելով մնացած եղբայրներուն որ Եգիպտոսէ ելլելու ատեննին իր ոսկորներն ալ տանին։

Հ. Իսրայէլացիք ի՞նչ վիճակ ունեցան Յովսէ-փայ մեռնելէն ետքը.

Պ. Վաթսուն տարիի չափ հանգիստ անցըներ-լով, օրէ օր կը շատնային։ Փարաւոն անունով թագաւոր մը՝ տեսաւ որ կը շատնան կ'ուժովնան Իսրայէլացիք, վախցաւ թէ օր մը իրեն թշնամի-ներուն հետ մէկ եղած՝ կը պատերազմին իրեն

Հետ ու կ՚երթան Եգիպտոսէն․ անոր համար սկսաւ չարչարել զանոնք, քաղաք շինել տալ, Փիթոմը, Ռամեսէն, ու Ովն կամ Արեգը․ բայց որչափ Եգիպտացիները զԻսրայելացիքը կը տանջէին, անոնք այնչափ կը շատնային ։ Ուստի Փարաւոն ուրիշ հնարք մը մտածեց․ անոնց երկու Սեփորա ու Փուա դայեակներուն գաղտուկ հրամայեց որ տղայ առնելու ատեն մանչ ծնածները խեղդեն ։ Բայց դայեակները Թագաւորէն աւելի Աստուծմէ վախնալով, չկատարեցին աս հրամանը ։ Աստուած ալ օրհնեց զիրենք՝ ու բաներնին յաջողելով կը հարըստանային ։ Ետքը երբոր Թագաւորը սրդողեցաւ անոնց, պատասխան տուին թէ “Եբրայեցիք դայեակը չհասած տղան կը բերեն„ ։ Ինքն ալ նեղացած հրաման հանեց որ անկէ ետքը բոլոր Իսրայելացւոց մանչ ծնած տղաքը գետը ձգեն ։

27․

Մովսէս ։

Հ․ Փարաւոնի տղաքը գետը ձգելու հրամանէն կրցա՞ւ մարդ խալըսիլ․

Պ․ Ղեւիին ցեղէն՝ Ամրամ անունով մարդու մը տղան ազատեցաւ աս կերպով ։ Երբոր ծնաւ տղան՝ երեք ամիս գաղտուկ պահելէն ետեւ՝ վախնալով որ օր մը յանկարծ կ՚իմացուի, խսիրէ հիւսած սնտուկ մը առին կպրաձիւթով ծեփեցին, ու տղան մէջը դրած գոցած՝ գետը ձգեցին ։ Տղուն քրոջն ալ սիրտը չդիմանալով քովէն չէր զատուէր՝ որ տեսնէ թէ ինչ կ՚ըլլայ ։ Ան ատենը Փարաւոն Թագաւորին աղջիկը իր նաժիշտներովը անդին գետին քովերը ելեր ժուռ կուգար․ տեսաւ աս սնտուկը՝ շուտ մը հանել տուաւ՝ տեսաւ տղան որ

կուլար, գութը շարժեցաւ: Տղուն քոյրը քովը մօտեցաւ. « Կ՚ուզե՞ս, ըսաւ, որ Եբրայեցի կաթ տուող կնիկ մը կանչեմ որ տղան պահէ »: Ան ալ՝ Կանչէ՛ ըսաւ: Աղջիկը գնաց տղուն մայրը բերաւ. որ առաւ տղան Փարաւոնի աղջկանը ծախքովը մեծցուց ու տարաւ իրեն տուաւ: Փարաւոնին աղջիկն ալ ուրիշ զաւակ չունենալով իրեն որդեգիր ըրաւ, և անունը Մովսէս դրաւ, որ Ջրէ հանած ըսել է: Ու Եգիպտացւոց իմաստութիւնները անոր սորվեցնել տուաւ:

Հ. Մովսէս ինչուան ե՞րբ կեցաւ Փարաւոնին պալատը.

Պ. Երբոր քառասուն տարուան եղաւ, տեսնելով իր եղբարցը քաշած վիշտը, գնաց զիրենք մխիթարելու: Մէկ հեղ մը տեսաւ որ Եգիպտացի մը Եբրայեցւոյ մէկը բաներ կը ծեծէր, աստուածային նախանձով վառուեցաւ սիրտը՝ չորս դին նայեցաւ որ մարդ չկայ. հոն մէկէն սպաննեց զԵգիպտացին՝ ու աւազին մէջը թաղեց: Մէկալ օրը նորէն տեսաւ որ երկու Եբրայեցի կռիւ կ՚ընէին, ուզեց հաշտեցնել. « Մարդիկ, ըսաւ, դուք մէկմէկու եղբայր էք, ինչո՞ւ կռիւ կ՚ընէք »: Ան ատենը անիրաւութիւն ընողը ըսաւ. « Քեզ ո՞վ դրաւ դատաւոր մեր վրայ. իս ալ սպաննե՞լ կ՚ուզես երեկուան Եգիպտացւոյն պէս »: Զարմացաւ մնաց Մովսէս թէ ինչպէս յայտնուեր է: Ու իմանալով որ Փարաւոն զինքը կը փնտռէ, ելաւ Մադիանացւոց երկիրը փախաւ, որ Կարմիր ծովուն մէկալ դին է, Սինա լեռանը մօտ:

Հ. Մովսէս երբոր փախաւ Մադիանացւոց երկիրը ո՞ւր կը բնակէր.

Պ. Նախ գնաց Ջրհորի մը քով նստած երբոր կը մտածէր, ան ատենը Մադիանացւոց քուրմին եօթը աղջիկները եկան ջուր քաշելու ոչխարներուն համար, և ուրիշ հովիւներ թող չէին տար. տե-

տաւ Մովսէս, վռնտեց հովիւները ու ջուր քաշեց անոնց համար․ որ խմցուցին ոչխարներուն ու- դարձան։ Ռագուէլ հայրերնին շուտ դառնալնուն պատճառը իմանալով, մէկէն տուն բերել տուաւ զՄովսէս՝ որ իրեն կերակուր մը ընէ։ Եւ հոն մնաց Մովսէս ինչուան որ Աստուած զինքը ետ կանչեց․ ու Սեփովրա անոր աղջիկը կին առաւ, ասկից երկու որդիք ունեցաւ՝ Գերսամ ու Եղիազար։

## 28.

### Մովսէսի առաջնորդ ընտրուիլը։

Հ․ Ի՞նչ բանի համար, ու ի՞նչ կերպով կանչեց Աստուած զՄովսէս Մադիանացւոց երկրէն․

Պ․ Երբոր մեռաւ Փարաւոն և ուրիշ մը նստաւ, որ անկէ աւելի կը չարչարէր Եբրայեցիքը, Մովսէսի ելլելէն քառսուն տարի ետքը Աստուած իր անհուն ողորմութեամբը Իսրայէլացւոց հառաչանքը լսելով, ուզեց որ Մովսէսի ձեռքովը զանոնք ազատէ։ Ուստի օր մը Մովսէս ոչխարները արածելու ատեն Քորեբ լեռան վրայ, յանկարծ տեսաւ որ մորենիի ծառ մը կրակ կտրած կը վառէր, ու չէր այրէր։ Մովսէս սկսաւ առաջ երթալ մօտենալու որ աս հրաշքս աղէկ մը տեսնէ․ ան ատենը մորենիէն ձայն եկաւ․ "Մովսէս Մովսէս, հոս մի մօտենար․ կօշիկներդ հանէ, վասն զի կայնած տեղդ սուրբ գետին է"։ Մովսէս ալ զարհուրած չէր ալ կրնար նայիլ։ Ետքը Աստուած յայտնեց իր կամքը անոր, և թէ ժողովրդեան աղաչանքը լսեր է, և կ'ուզէ որ ինքն երթայ հանէ զանոնք Եգիպտոսէն։

Հ․ Մովսէս յանձն առա՞ւ Իսրայէլացիները Եգիպտոսէն հանելու հրամանը․

Գ



Գ. Ըստ դժուարութեանց : Աղջի բերանը իր անկարող ըլլալը յայտնեց . Աստուած՝ " Ես քեզի կ'օգնեմ ,, ըսաւ : " Հապա թէ որ անունդ հարցնեն ինչ ըսեմ ,, ըսաւ Մովսէս : Պատասխանեց Աստուած . " Որ էն խրկեց ըսէ . և անոնցմէ խօսքի տէր մարգիկներ հետդ առ՝ փարաւոնի առջևը ելիր ու ըսէ . մեր տէր Աստուածը զմեզ կը կանչէ որ իրեք օրուան ճամբայ դէպ 'ի անապատը երթանք , զոհ ընենք : Գիտեմ , ըսաւ Աստուած , չուզեր թողուլ . բայց ես զինքը չարաչար կը պատժեմ՝ ինչուան որ թողու ,, : Ան ատեն Մովսէս . " Հապա թէ որ Իսրայէլացիք չհաւատան , ինչ ընեմ ,, ըսաւ : " Ձեռքի գաւազանդ գետինը ձգէ ,, , ըսաւ Աստուած . ձգելուն պէս օձ դարձաւ , ու Մովսէս սկսաւ վախնալ : Երբոր Աստուածոյ հրամանովը պոչէն բռնեց , նորէն գաւազան եղաւ : Նաև Աստուած . " Ձեռքդ ծոցդ խոթէ ,, , ըսաւ . Մովսէս երբոր խոթեց ու հանեց՝ տեսաւ որ բորոտած էր . Աստուած " Նորէն ծոցդ դիր ,, ըսածին՝ դնելուն պէս՝ բորը վրայէն գնաց : " Թէ որ նորէն չհաւատան , ետևէն աս ալ ըրէ՝ ըսաւ . գետէն ջուր առ , գետինը լեցուր , ջուրը արիւն կը դառնայ ,, : Երբոր Մովսէս նորէն ետ կեցաւ՝ համարձակ խօսիլ չունենալուն համար , " Ես այժ կուտամ , ըսաւ Աստուած , քեզի խօսելու ,, . Մովսէս երբոր սկսաւ նորէն հրաժարիլ , ան ատենը Աստուած սրդողեցաւ , ու Ահարոն իրեն եղբայրն ալ ընկեր տուաւ . " Ան աղէկ խօսք ունի բերանը , դուն իմ կամքանէս կ'ըլլաս ըսաւ , ան ալ ժողովրդեան ,, : Ասանկով Քորէբ լեռնէն տուն դարձաւ , աներոջը մնաք բարով ըսաւ , տղաքը կինը մէկտեղ՝ գաւազանն ալ ձեռքը՝ ճամբայ ելաւ :

29.

Եգիպտոսի հարուածները։

Հ. Մովսէս ի՞նչ յաջողութեամբ կատարեց Աստուծոյ հրամանը Եգիպտոս երթալու.

Պ. Երբոր ճամբայ ելաւ Աստուծոյ հրամանով, Ահարոն եղբայրը դիմաւորեց զինքը. սիրով պատուեցան ու միասին գնացին, ան Աստուծոյ տուած հրաշքները Իսրայելացւոց առջև ընելով հաւատացուցին թէ կ'ուզէ զիրենք փրկել Աստուած։ Ետքը երկուքն ալ միասին Փարաւոնի առջևը ելան, ըսին. «Աստուած կ'ըսէ որ թողուս իմ ժողովուրդը որ երթան իրենց տօնախմբութիւն ընեն»։ Փարաւոն պատասխանեց. «Չեմ ճանչնար ան Աստուածը», ըսաւ. ու սկսաւ աւելի նեղը խոթել Իսրայելացիները որ զբաղին ու փուճամուճ բաներ չմտածեն։

Հ. Երբոր Մովսէսին գալուն պատճառաւ Իսրայելացիք սկսան տանջուիլ՝ ի՞նչ կ'ընէին.

Պ. Մոռնալով Աստուծոյ խոստմունքը որ քիչ առաջ կը փրկուէին, սկսան գանգատիլ Մովսէսի Ահարոնի դէմ։ Բայց Աստուած Մովսէսի նորէն սիրտ տուաւ, որ երթայ աղէկ մը Իսրայելացւոց հասկըցնէ, ըսէ թէ համբերեն քիչ մը որ Աստուծոյ ան Աբրահամ, և ան Իսահակ ըրած խոստմունքը վայելեն. ու ինքն ալ Ահարոնի հետ նորէն Փարաւոնի երթան ըսեն որ թողու, թէ չէ չարաչար կը պատժէ զանոնք, ու իր ժողովուրդը անկէ կը հանէ։ Բայց Փարաւոն գաւազանին օձ դառնալը կախարդութիւն կարծեց, տեսնելով որ իր կախարդներն ալ ըրին. Թէպէտ Մովսէսի գաւազանը մէկալներունը կլլեց։

Հ. Փարաւոնին խստասրտութիւնը Աստուած ինչո՞վ կակղեցուց.

Պ. Տասը կերպ սաստիկ պատիժներով. ամէն մէկ պատիժը տալու ատեն կը ցուցընէր իրեն արդար դատաստանին անհեղութիւնը, և զատ զատ ամէն մէկը օրերով ուշացընելովը կ՚իմացընէր իր երկայնամիտ համբերութիւնը:

Հ. Եգիպտացւոց առջի պատիժը ի՞նչպէս եղաւ.

Պ. Առաւօտանց Փարաւոն գետին եզերքը ելեր կեցեր էր. Մովսէս Աստուծոյ հրամանովը գնաց դիմացի կողմէն. «Որովհետև չես թողուր Իսրայէլացիները՝ ամէն տեղի ջրերը արիւն դառնան թող, ձկներն ալ սատկին», ու զարկաւ գաւազանովը ջրին ու արիւն դարձան բոլոր Եգիպտոսի ջրերը: Ասդին անդին փոսեր կը բանային Եգիպտացիք ու ջուր չէին գտներ եօթը օր: Բայց աս բանս կախարդներն ալ փորձեցին՝ ըրին, անոր համար խստացաւ Փարաւոնին սիրտը:

Հ. Ո՞րն է երկրորդ պատիժը.

Պ. Աստուծոյ հրամանովը նորէն գնաց Մովսէս ու ըսաւ Փարաւոնին. «Որովհետև չես թողուր, գետէն գորտեր ելլեն ու բոլոր քաղաքը լեցուին»: Երբոր Ահարոն Մովսէսի գաւազանը երկնցուց դէպ ՚ի Եգիպտոսի ջրերուն ու լճերուն վրայ, ու այնչափ գորտ ելան անոնցմէ՝ որ բոլոր Եգիպտացւոց տները ելան լեցուեցան, և անոնց պառկելու մահիճներուն վրայ, թոնիրներուն ու կերակուրներուն վրայ կը վազէին: Աս բանս կախարդներն ալ ըրին. բայց Փարաւոն աղաչեց Մովսէսի որ աղօթքով աս պատիժս վերցընէ, որ զիրենք թողու: Մովսէս ալ Փարաւոնի ցուցընելով թէ ինքը աս բաներս կախարդութեամբ չըներ, հարցուց թէ երբ կ՚ուզես որ դադրի. Փարաւոն ալ վաղը ըսաւ: Ու Մովսէս աղօթք ընելուն պէս,

մէկալ օրը սատկեցան ան գորտերը, ու բոլոր երկիրը հոտեցուցին։ Բայց Փարաւոն խօսքին վրայ չկեցաւ։

Հ. Ո՞րն է երրորդ պատուհասը։

Պ. Հրամայեց Աստուած Մովսէսի որ Ահարոն գաւազանովը գետնի հողը զարնէ. անանկ որ ըրաւ՝ բոլոր Եգիպտոս մունով ծածկուեցաւ։ Փարաւոնի կախարդներն ալ ընել ուզեցին՝ ու երբոր չկրցան, ըսին թէ Աստուծոյ ձեռքը կայ աս բանին մէջը։ Բայց անով ալ Փարաւոնի սիրտը չկակղցաւ։

Հ. Ո՞րն է չորրորդ պատուհասը։

Պ. «Գնա, ըսաւ Աստուած Մովսէսի, ու ըսէ որ թողու, թէ չէ՝ բոլոր երկիրը շանաճանճով լեցունի, որն որ Գեսեմ Եբրայեցւոց կեցած տեղը չըլլայ»։ Ինչպէս որ ըսաւ՝ եղաւ, ու կճելով շատ մարդ և անասուն մեռցուց։ Փարաւոն չդիմացաւ՝ Մովսէսն ու Ահարոնը կանչեց, ըսաւ. «Գնացէք ձեր Աստուծոյ զոհ ըրէք իմ երկրիս մէջ։ — Չըլլար, ըսաւ Մովսէս, որ Եգիպտացւոց աստուած կենդանիները զոհ ընենք՝ որոնք մորթելը պղծութիւն կը սեպեն ու մեզ կը քարկոծեն. հարկաւոր է որ երեք օրուան ճամբայ հեռու տեղ երթանք։ — Գացէք, ըսաւ, միայն թէ շատ չհեռանաք, աղօթք ալ ըրէք որ շանաճանճը անցնի»։ Աղօթքին ուժովը անցաւ, բայց Փարաւոն խօսքը չպահեց։

Հ. Ո՞րն է հինգերորդ պատուհասը։

Պ. Եգիպտացւոց ամէն կենդանիները մեկէն ջարդուեցան. բայց երբոր իմացաւ Փարաւոն թէ Իսրայէլացւոց մէկն մը չէ եղեր, գժուարը գալով նորէն չթողուց։

30.

## Եգիպտոսի հարուածները ։

Հ. Ո՞րն է վեցերորդ պատուհասը.

Պ. Աստուած հրամայեց Մովսէսի ու Ահարոնի, որ փարաւոնի առջեւը ելլեն, ու ափով մը մոխիր առած դէպ 'ի երկինք ցանեն ։ Այսով մարդիկներուն և անասուններուն վրայ անանկ խոցեր ու բշտած ուռեցքներ ելան, որ չէին կրնար դիմանալ ։ Այս խոցերը փարաւոնին կախարդներն ալ ունենալով չկրցան Մովսէսի դիմացը կենալ ։

Հ. Ո՞րն է եօթներորդ պատուհասը.

Պ. Աստուած տեսնելով որ փարաւոնի սիրտը չկակղցաւ՝ նորէն խրկեց զՄովսէս որ ըսէ, "Գիտնաս որ վաղը՝ չտեսնուած կարկուտ պիտի թափեմ Եգիպտոսի մէջ. ուստի, ըսաւ, դուրս անասունքդ որ ունիք՝ ներս առէք ,,։ Մէկալ օրը եկաւ կարկուտը կրակով խառնուած, ու ամէն բան մոխիր դարձուց. և ով որ Մովսէսի մտիկ չըրաւ, զանոնք կարկուտը սպաննեց ։ Սոսկացաւ փարաւոն, կանչեց զՄովսէս, որ կարկուտը դադրեցնէ, և թող կուտամ ըսաւ. բայց երբոր դադրեցաւ, նորէն ալ խօսքէն ետ դարձաւ ։

Հ. Ո՞րն է ութերորդ պատուհասը.

Պ. Սպառնացաւ Մովսէս սաստիկ մարախ բերելու. երբոր լսեցին փարաւոնի քովը եղած Եգիպտացիները, սկսան զանգատիլ իրեն՝ թէ ինչու չթողուր որ երթան իրենց Աստուածը պաշտեն. "Չե՞ս տեսներ, կ՚ըսէին, որ Եգիպտոս կորսուելու վրայ է ,,։ Փարաւոն կանչեց հարցուց թէ "Գնացողները որո՞նք են ,,։ Մովսէս ալ պատասխան տուաւ թէ "Մե՛նք ամենքս ամէն ունե-

մեկալ օրը սատկեցան անոնց գորտերը, ու բոլոր երկիրը հոտեցուցին : Բայց Փարաւոն խօսքին վրայ չկեցաւ :

Հ. Ո՞րն է երրորդ պատուհասը.

Պ. Հրամայեց Աստուած Մովսէսի որ Ահարոն գաւազանովը գետնի հողը զարնէ. անանկ որ ըրաւ՝ բոլոր Եգիպտոս մլունով ծածկուեցաւ : Փարաւոնի կախարդներն ալ ընել ուզեցին՝ ու երբոր չկրցան, ըսին թէ Աստուծոյ ձեռքը կայ սա բանին մէջը : Բայց անով ալ Փարաւոնի սիրտը չկակղցաւ :

Հ. Ո՞րն է չորրորդ պատուհասը :

Պ. " Գնա, ըսաւ Աստուած Մովսէսի, ու ըսէ որ թողու, թէ չէ՝ բոլոր երկիրը շանաճանճե լեցուցի, որն որ Գեսեմ Եբրայեցւոց կեցած տեղը չըլլայ " : Ինչպէս որ ըսաւ՝ եղաւ, ու կճճելով շատ մարդ և անասուն մեռցուց : Փարաւոն չդիմացաւ՝ Մովսէսն ու Ահարոնը կանչեց, ըսաւ . " Գնացէք ձեր Աստուծոյ զոհ ըրէք իմ երկրիս մէջ . — Չըլլար, ըսաւ Մովսէս, որ Եգիպտացւոց ամէն ան կենդանիները զոհ ընենք՝ որոնք մարթերը պղծութիւն կը սեպեն ու մեզ կը քարկոծեն . հարկաւոր է որ երեք օրուան ճամբայ հեռու տեղ երթանք : — Գացէք, ըսաւ, միայն թէ շատ չհեռանաք, աղօթք ալ ըրէք որ շանաճանճը անցնի " : Աղօթքին ուժովը անցաւ, բայց Փարաւոն խօսքը չպահեց :

Հ. Ո՞րն է հինգերորդ պատուհասը .

Պ. Եգիպտացւոց ամէն կենդանիները մեկէն ջարդուեցան . բայց երբոր իմացաւ Փարաւոն թէ Իսրայէլացւոց զէն մը չէ եղեր, դժուարը գալով նորէն չթողուց :

32 .

## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Աբրահամ ինչպէս քոյր ըսաւ Սառային համար.

Պ. Հրէից սովորութիւն է ազգականներն քոյր ըսել: Սառան ալ որ Ղովտայ քոյրն էր Աբրահամու քոյր ալ կրնար ըսուիլ:

Հ. Ո՞վ էր Մելքիսեդեկ.

Պ. Սուրբ թագաւոր մըն էր Քանանացւոց երկիրը Երուսաղէմի մէջ. և կոյս ու քահանայութիւնը Քրիստոսի օրինակ էր:

Հ. Աբրահամին ու Սառային անունը Աստուած ինչու փոխեց.

Պ. Աբրամ հրէարէն մեծ հայր ըսել է. իսկ Աբրահամ շատ ազգերու հայր: Ասանկ ալ Սարա փերուհի իմ կը նշանակէ. իսկ Սարրա՝ ամենուն տիրուհին: Որովհետև Քրիստոսին աշխարհ գալովը, իրենք ամէն ազգերուն ծնող պիտի ըլլային:

Հ. Հրեշտակը ինչու կռիւ ըրաւ Յակոբայ հետ.

Պ. Իրեն սիրտ տալու համար որ հրեշտակէ յաղթելէն ետքը, Եսաւէն ամենևին չվախնայ:

Հ. Յակոբ իր Մանասէ ու Եփրեմ թոռները օրհնելու ատեն ինչու աջ ձեռքը Եփրեմին վրայ դրաւ.

Պ. Վասն զի մարգարէական հոգւով իմացաւ թէ Եփրեմին ցեղէն պիտի ըլլային Իսրայէլացւոց տասը ցեղին թագաւորները: Երկրորդ որ Եփրեմին ցեղը Մանասէին ցեղէն պատուաւոր ու շատուոր պիտի ըլլար: Երրորդ որ Եփրեմին ցեղէն պիտի ծնանէր Յեսու՝ Քրիստոսի օրինակը:

Հ. Փարաւոնի հրամանը որ ըրեր էր Իսրայէլացւոց մանչ տղաքը մեռցընելու համար, առաջ գնա՞ց.

Գ. Հաւանական կարծիք է թէ Եգիպտացւոց սիրտը չդիմացաւ այսանկ անգթութեան, ու քիչ ատենէն դադրեցուցին. կամ՝ ան Թագաւորն որ Փարաւոն Ամենոֆիս կ'ըսուէր, մեռնելուն պէս անոր հրամանն ալ հետը վերջացաւ, երբոր Մովսէս չորս տարուան էր։

Հ. Մովսէսի Աստուծոյ հրամանին դէմ կենալը, ու մէկէն յանձն չառնելը աղէկ բա՞ն էր.

Գ. Չէ, վասն զի անհնազանդութիւն էր ըրածը, չմտածելով թէ Աստուած էր հրամայողը, ուստի իրեն պէտք եղած ոյժն ալ կրնար տալ։ Անոր համար Աստուած ալ վրան նեղացաւ։

Հ. Ի՞նչ կերպով Իսրայէլացիք կողոպտեցին Եգիպտացիները.

Գ. Աստուած ամենուն տէրը՝ արդար դատաստանով անանկ որոշեց ու հրամայեց իրենց՝ ատենց վարձքի քաշած աշխատանաց ու չարչարանաց տեղը։ Որովհետեւ Եգիպտացիք Իսրայէլացիներուն չէին տար՝ բանի տալ տուաւ։





# ԴԱՏԱՒՈՐԱՑ ԴԱՐԸ

## ՄՈՎՍԵՍԷՆ ԻՆՉՈՒԱՆ ՍԱՒՈՒՂ



### 33 .

Իսրայէլացւոց ճամբորդութիւնը .

Հ . Իսրայէլացիք Փարաւոնին ձեռքէն խալըսելէն ետեւ ազատ ու հանգիստ մնացի՞ն .

Գ . Չէ . վասն զի կարմիր ծովէն ելլելէն ետեւ Սուր անապատին մէջը իրեք օր ճամբայ ըրին ու խմելու ջուր չէին գտներ : Հասան Մեռա , հոն ալ ջուրը լեղի էր , անոր համար սկսան տըրտընջալ : Մովսէս Աստուծոյ դիմեց . Աստուած ալ փայտ մը ցըցուց որ ջրին մէջը դնելով կ'անուշնար : Աստուած հոն խրատեց ժողովուրդը՝ պատուիրանքներ տուաւ որ պահեն , ու ինքն ալ զանոնք հոգայ : Ետքը ելան Աղիմ եկան՝ ուր որ տասներկու անոյշ ջրի աղբիւր կար ու եօթանասուն արմաւենի . հոն քիչ մը կենալէն ետքը գնացին Սին անապատը , և հոն ալ կերակուրի նեղութիւն սկսան քաշել :

Հ . Իսրայէլացիք անապատին մէջ ուսկից գտան կերակուր .



# ԴԱՏԱՒՈՐԱՑ ԴԱՐԸ

## ՄՈՎՍԷՍԷՆ ՄԻՆՉԵՒ ՍԱՒՈՒՂ



### 33 .

Իսրայէլացւոց ճամբորդութիւնը .

Հ . Իսրայէլացիք Փարաւոնին ձեռքէն խալըսելէն ետեւ աղատ ու հանգիստ մնացի՞ն .

Պ . Չէ . վասն զի Կարմիր ծովէն ելլելէն ետեւ Սուր անապատին մէջը լինեք օր ճամբայ ըրին , ու խմելու ջուր չէին գտներ : Հասան Մեռա , հոն ալ ջուրը լեղի էր , անոր համար սկսան տըրտնջալ : Մովսէս Աստուծոյ դիմեց . Աստուած ալ փայտ մը ցըցուց որ ջրին մէջը դնելով կ'անուշնար : Աստուած հոն խրատեց ժողովուրդը՝ պատուիրանքներ տուաւ որ պահեն , ու ինքն ալ զանոնք հոգայ : Ետքը ելան Եղիմ եկան՝ ուր որ տասնուերկու անուշ ջրի աղբիւր կար ու եօթանասուն արմաւենի . հոն քիչ մը կենալէն ետքը գնացին Սին անապատը , և հոն ալ կերակուրի նեղութիւն սկսան քաշել :

Հ . Իսրայէլացիք անապատին մէջ ուսկից գտան կերակուր .

Պ. Ինչո՛ւ մէկ քանի՝ կը տրտնջային Մովսէսի ու Ահարոնի վրայ, Եգիպտոսի միսը հացը յիշելով և փափագելով որ հոն մեռած ըլլային. անոնք ալ սկսան խնդրելու թէ Աստուծոյ դէմ է ըրածնին։ Երբոր Աստուծոյ կողմանէ խօսք տուաւին որ երկինքէն գէմ միս ուտեն, և մէկալ առաւօտ հաց. և ան միջոցին Աստուծոյ փառքը երեւցաւ ամպին մէջէն։ Երբոր իրիկուան անհամար լորամարգի եկան իջան բանակին վրայ. և առաւօտը ելան տեսան որ ցօղին հետ եղեամի պէս ճերմակ գինձի նման բան մը իջեր է, զարմանալով սկսան եբրայեցերէն ըսել Ման հու, որ ըսել է " Աս ինչ է "։ Անկէ անունը մնաց Մանանա։ Եւ Աստուծոյ դէմն Մովսէս պատուիրեց որ ամէն առաւօտ մէկ օրուան ուտելու համար հոգի տեղ անկէց ժողվեն աւելը չձգած. վասն զի աւել մնացածին պէս մէկէն կը հալէր։ Եւ ուրբաթ օրերը շաբաթ օրուան ալ մէկտեղ ժողվեն։ Բայց թէ որ ուրիշ օրուան պահէին կ'որդնոտէր։ Եւ մէկ օրուան համար քիչ ժողվողին չէր պակսէր, շատ ժողվողին ալ չէր աւելնար։ Եղան ոմանք որ պահեցին մէկալ օրուան ալ, և բոլոր որդնոտեցաւ. Մովսէս ալ նեղացաւ անոնց վրայ։ Ոմանք ալ շաբաթ օրը ելան ժողվելու չգտան, Աստուած ալ բարկացաւ ու պատուիրեց որ շաբաթը սուրբ պահեն։

Հ. Մանանան ինչպէս կ'ուտէին.

Պ. Առաջ աղօրի պէս կը ծեծէին, ետքը շաղուելով կ'եփէին, խորիսխի համ կ'ըլլար։ Քառասուն տարի անով ապրեցան Իսրայելացիք։ Աստուծոյ հրամանովը աս մանանայէն ոսկիէ սափորով պահեցին, ու ետքը Աստուծոյ տապանակին մէջ դրին, իրեն բարերարութեանը յիշատակ։

Հ. Սին անապատէն ո՞ւր գնացին Իսրայելացիք, և հոն ինչ նոր դիպուած հանդիպեցաւ.

Պ. Ռափիդիմ գնացին. և հոն նորէն ջուր

ջղանելով, այնչափ սաստիկ Մովսէսի դէմ տրտնջացին՝ որ քարկոծել կ'ուզէին ։ Մովսէս Աստուծոյ դիմեց․ Աստուած հրամայեց որ քանի մը հոգի ծերերէն հետը առած երթայ դիմացը Քորեբ լեռը, գաւազանով ապառաժ քարին զարնէ․ և ասանկով ջուր բխեցուց ։ Մովսէս ան տեղին անունը Փորձութիւն դրաւ․ որովհետև Իսրայէլացիք ուզեցին իմանալ թէ Աստուած իրենց հետ է ։ Աս Ռափիդիմ ըսուած տեղը առաջինը եղան որ պատերազմի ելան Իսրայէլացւոց դէմ Ամաղեկացիք ։ Մովսէս հրաման տուաւ Նաւեայ որդւոյն Յեսուայ՝ Եփրեմի ցեղէն, որ առաւօտը կտրիճ մարդիկ հետը առնէ՝ Ամաղեկացւոց դէմ պատերազմի ելլէ ։ Ինքն ալ գաւազանը ձեռքը Ահարոնի ու Ովրի հետ լեռան վրայ ելաւ․ Թևերը վեր բռնած աղօթք որ կ'ընէր, Իսրայէլացիները կը յաղթէին․ երբոր յոգնելով վար կ'իջեցընէր ; Ամաղեկացիները վրայ կ'ելլէին ։ Ան ատենը քար մը վրայ նստեցուցին զՄովսէս, և երկու կողմէն Ահարոն և Ովր թևերը վեր կը բռնէին, և անանկ մինչուան իրիկուն բազկատարած կենալով բոլոր Ամաղեկացիները ջարդուեցան․ ետքը Աստուած ըսաւ Մովսէսի որ աս յաղթութեան յիշատակը գրէ, և Յեսուայ ալ ըսէ որ Աստուած Ամաղէկը բոլորովին ջնջել կ'ուզէ ։ Մովսէս ալ հոն սեղան մը շինեց՝ անունը դրաւ Տէր ապաւէն իմ ։

34 ․

Ճամբորդութիւն ։

Հ․ Իսրայէլացւոց ճամբորդութեան ատեն դատաստանները ով կը տեսնէր ․

Պ․ Մինչուան Ռափիդիմ միայն Մովսէս ։ Հոն Մովսէսի աները Յոթոր, անոր կինը ու երկու

տղաքը առած եկաւ թափելու, և Իսրայէլացւոց ուրախակից ըլլալու. Մովսէս պատգամուեցաւ և սիրով ընդունեցաւ ու պատմեց ամէն բան: Որոնց վրայ Յոթոր զարմացաւ ու գոհ ըրաւ Աստուծոյ, ու ամէն ծերերն ալ անոնց հետ սեղանի նստան: Երկրորդ օրը Յոթոր տեսաւ Մովսէսի մինակ դատաստան կարելը, ու չհաւնելով խրատ տուաւ որ իրեն ընկեր ընտրէ խելացի, արդար, խոնարհ, աստուածավախ մարդիկ, ու դատաւոր դնէ հազարին մէկ հոգի, հարիւրին մէկ, յիսունին մէկ, տասնին մէկ, որ պզտիկ դատերը հոգան, ու մեծը իրեն իմացընեն: Ետքը Յոթոր դարձաւ իր տեղը. Մովսէս ալ անկէ ետև անոր ըսածին պէս կ'ընէր:

Հ. Իսրայէլացիք Ռափիդիմէն ո՞ւր գնացին.

Պ. Սինա լեռանը դիմացը, Եգիպտոսէ ելլելէն երկու ամիս ետքը: Հոն Մովսէս Սինա լեռը ելաւ, և Աստուած յայտնեց Մովսէսին՝ թէ կ'ուզէ դաշինք դնել հետերնին որ պահեն, ու իրեն ժողովուրդ ըլլան: Մովսէս իջաւ լեռնէն, ու բանը պատմեց ծերերուն, և ամէնքն ալ հաւնեցան: Երբոր Մովսէս ժողովրդեան պատասխանը Աստուծոյ տարաւ, ըսաւ Աստուած, թէ ամպէ սիւնին մէջէն կը խօսիմ քեզի հետ որ իրենք ալ լսեն: Ու հրամայեց որ երկու օր պատրաստուին, լաթերնին լուանան որ երրորդ օրը Աստուած Սինա լեռը պիտի իջնայ: Լեռանը չորս դին ալ սահման դնել տուաւ որ անկէ անդին չանցնին թէ մարդ թէ կենդանի՝ քանի որ Աստուած հոն է, որ չմեռնին: Միայն Մովսէսն ու Ահարոնը մօտ կանչէց: Երրորդ օրը առաւօտանց Սինա լեռը ամպով ծածկած կը բռնկէր կը մխար. սաստիկ փողի ձայներով կայծակներ կ'ընէր կը գոռար: Ժողովուրդը սարսափած շուարուած կեցան. և Աստուած ահաւոր ձայնով մը ամպերուն մէջէն տասը պատուիրանքները ըսաւ Մովսէսի:

որ ըսուեցաւ Խորան վկայութեան․ ուր որ կ՚ուզէր Աստուծոյ բան մը հարցընել, հոն կ՚երթար։

Հ․ Մովսէս Աստուծոյ հետ ինչպէս կը խօսէր․

Պ․ Ամպին մէջէն Աստուծոյ ձայնը միայն լսելով․ ու երբոր բանակէն դուրս հանեց իր խորանը, խօսելու ատեն ամպէ սիւնը խորանին դուռը կ՚իջնէր՝ ու մէջէն բարեկամի պէս մեկտեղ կը խօսէին․ և ժողովուրդն իրենց տեղը կեցած երկրպագութիւն կ՚ընէին։ Բայց անգամ մը Մովսէս ուզեց՝ որ բուն զԱստուած տեսնէ։ Աստուած ըսաւ իրեն թէ “ Զիս տեսնողը կը մեռնի ”․ բայց զինքը սիրելուն համար՝ դրաւ մէկ քարի մը ծերպի տակ՝ որ Աստուած անցնելու ատեն՝ ետևէն քիչ մը տեսաւ։

Հ․ Տասը պատուիրանքին քարերը Մովսէս չը նորոգեց․

Պ․ Աստուծոյ հրամանովը նորէն երկու քարէ տախտակ շինեց, ելաւ Սինա լեռը, ու նորէն գրեց՝ քառասուն օր հոն ծոմ կենալով։ Ետքը երբոր կ՚իջնէր՝ անանկ փառաւորուած էր երեսը՝ որ ժողովուրդը քովը երթալու վախցան․ թէպէտ ինքը չէր իմանար։ Մովսէս կանչեց՝ պատմեց Աստուծոյ ըսածները․ և անկէ ետքը ժողովրդեան հետ խօսելու որ կ՚ըլլար, երեսը քող կը ծածկէր․ ու երբոր Աստուծոյ կ՚երթար, կը վերցընէր։

56․

Իսրայելացւոց ծեսերը։

Հ․ Աստուծոյ ապսպրած օրէնքներն ու կարգերը բոլոր կրցա՞ն պահել․

Պ․ Առջի բերան չէին կրնար, վասն զի շատ բաներ կար շինելու։ Ուստի Մովսէս նախ հրաման տուաւ որ ամէնքը ընծայ բերեն Աստուծոյ։

իմացընելով թէ այն օրէնքները ճիշդ պահել պէտք է ։ Ինչպէս որ օրէնք էր թէ ողջակիզին սեղանին վրայի կրակը միշտ վառած պահուի , ու բուրվառուն մէջ միշտ այն կրակէն բանեցընեն ։ Նադաբ ու Աբիուդ Ահարոնին մեծ որդիքը այս օրէնքը բանի տեղ չսեպելով , անգամ մը իրենց բուրվառներուն մէջ ուրիշ կրակ դրին . այն առենը յանկարծ սեղանէն կրակ ելաւ ու էրեց մեռցուց զանոնք ։ Ուրիշ անգամ ալ Իսրայէլացիները մեծ մեծ պատիժներ Աստուծմէ ընդունեցան ։ Իրենք ալ երբոր իրենց մէջ օրէնքի դէմ բան կը տեսնէին , կ՚երթային Մովսեսի կ՚իմացընէին ու ընողը կը քարկոծէին . ասանկով մեծ վախ ինկաւ մէջերնին ու սկսան զգուշանալ ամէնքն ալ ։

Հ . Օրէնքի դէմ ընողին ի՞նչ պատիժ կուտային Իսրայէլացիք .

Պ . Անգամ մը հօր կողմանէ եգիպտացի մարդ մը՝ մէկու մը հետ կռիւ ընելով , անոր Իսրայէլացի անունը հայհոյեց . մէկէն քովի եղողները բռնեցին Մովսեսի առջեւ տարին . որ Աստուծոյ հրամանովը ըսաւ՝ թէ այն մարդը բանակէն դուրս հանեն ու հայհոյութիւն լսողները ձեռուընին անոր գլխուն վրայ դրած , իրենց վկայ ըլլալուն նշան , անանկ քարկոծեն ։ Ուրիշ մարդ մըն ալ որ ելեր շաբաթ օրը փայտ կը ժողվէր , երբոր Մովսեսի առջեւը բերին , Աստուծոյ հրամանովը քարկոծել տուաւ ։

## 37 .

### Լուսամարգին , ու Մարիամին պատիժը ։

Հ . Իսրայէլացիք Սինա լեռնէն ո՞ւր գնացին և ի՞նչ նոր դիպուած եղաւ մէջերնին .

Պ . Մէկ տարիի չափ հոն կենալէն ետեւ , իրենք

որ ճամբայ ըրին դէպ 'ի փառաւոր անապատը : Հասարակ ժողովուրդը սկսան տրտնջալ միս ուզել, մտքերնին բերելով Եգիպտոսի ձուկերը, ձմերուկը, սոխն ու սխտորը : Այն ատենը Մովսէս ինկած Աստուծոյ առջև, կ'աղաչէր որ զինքը մեռցընէ. « Չեմ կրնար, կ'ըսէր, այսչափ ժողովուրդը մինակ հոգալ » : Աստուած եօթանասուն հոգի ընտրել տուաւ, ու Մովսեսի մարգարէութեան հոգիէն անոնց ալ բաժնեց որ իրեն օգնական ըլլան : Անոնցմէ երկուքը Ելդադ ու Մովդադ մնացին բանակը ու կը մարգարէանային. երբոր Մովսեսի իմացուցին, Յեսու ըսաւ որ արգիլէ : « Ի՞նչ կ'ըսես, ըսաւ Մովսէս. ո՜ւր է թէ բոլոր ժողովուրդը մարգարէ ըլլային » :

Հ. Իսրայելացւոց միս ուտելու փափաքը Աստուած ինչպէս անցուց.

Գ. Աւելցուց որ պատրաստուին վաղը միս ուտելու ինչուան որ կշտանան : Կը զարմանար Մովսէս՝ թէ այնչափ ժողովուրդին որոնց միայն կտրիճները վեցհարիւր հազար հոգի են, ինչպէս ամիս մը միս կը բաւէ : Աստուած ծովու դիէն սաստիկ հով մը հանեց՝ որ բերաւ դիզեց լորամարգի՝ երկու կանգուն բարձր բոլոր բանակին մէջը, ու չորս դին՝ ինչուան օրուան մը ճամբայ հեռու. անանկ որ երկու օր մէկ գիշեր ամէնքը վրան թափեցան ժողվեցին : Ամենէն քիչ ժողվողը տասը քոռ ժողվեց. ամէնքն ալ ապխտեցին ու սկսան ուտել : Քանի որ չէին հատցուցած, Աստուած իր բարկութիւնն ալ վրանին թափեց. կրակ մը բորբոքեցաւ մէջերնին որ չարաչար տանջելով շատ մարդ մեռցուց, ինչուան որ Մովսեսին աղօթքովը դադրեցաւ. անոր համար ան տեղին անունը Հրայրեաց, և Գերեզմանք ցանկութեան ըսուեցաւ : Ետքը անկէ ելան Ասերովթ եկան. ուր բորոտեցաւ Մարիամ Մովսեսի քոյրը :

Հ. Մարիամ Մովսէսի քոյրը ինչո՞ւ բորոտեցաւ.

Գ. Մովսէսի կինն որ Եթովպացի էր՝ տեսաւ որ Մովսէս Աստուծոյ սիրելի եղաւ, սկսաւ պարծենալ: Մարիամ չգիմանալով ասոր բանին, Ահարոն եղբայրը հետը առած սկսան Մովսէսը վար զարնել, ըսելով “ Միթէ Աստուած միայն Մովսէսի՞ հետ կը խօսի. մեզի հետ ալ խօսեր է ”: Մովսէս խիստ հեզ ըլլալով ամենևին դէմ չզրուցեց: Բայց Աստուած բարկացաւ, իրենք մէկէն խորանը կանչեց՝ ու ամպէ սիւնէն ըսաւ իրենց. “ Գիտնաք որ ուրիշ մարգարէներուն հետ տեսիլքով կը խօսիմ, բայց Մովսէսի հետ՝ որ իմ հաւատարիմ ծառաս է, բերնէ բերան կը զրուցեմ. Ինքը իմ աստուածային փառքս ալ տեսեր է. դուք ինչպէս չվախցաք քամահրեցիք զինքը ”: Դուրս ելլալնուն պէս մէկէն բորոտեցաւ Մարիամ. ան ատենը Ահարոն գնաց աղաչեց Մովսէսի. Մովսէս երբոր խնդրեց Աստուծմէ, հրամայեց Աստուած՝ որ Մարիամ եօթը օր բանակէն դուրս կենայ: Աս պատճառաւ ժողովուրդը ճամբայ չելաւ՝ սպասեց եօթը օր:

38.

Լրտեսները ու Կորխ Դաթան Աբիրոն:

Հ. Ասերովթէն ո՞ւր գնացին Իսրայէլացիք.

Գ. Փառանու անապատը. հոն Մովսէս իմացուց թէ Աւետեաց երկիրը մօտեցան. անոնք ալ ուզեցին որ առաջուց մարդ խրկեն իմանան ինչպէս տեղ ըլլալը:

Հ. Մովսէս հաւնեցա՞ւ Իսրայէլացւոց ուզածին որ իրենցմէ առաջ լրտես խրկեն Աւետեաց երկիրը.

տեւոյ եկողներէն չմնաց՝ Յեսուէն ու Քաղեբէն զատ ։ Անոր համար Ճամբանին փոխել տուաւ դէպ 'ի Կարմիր ծովը, որ քառասուն տարի անապատին մէջ պտըտելով ամէնքն ալ մեռնին ։

Հ. Իսրայելացիք երբոր լսեցին թէ քառասուն տարի Ճամբայ ընելով պիտի ջարդուէին, ի՞նչ ըրին ։

Գ. Շատ զղջացին ըրածներնուն վրայ, ու մէկալ օրը առաւօտանց Մովսէսի ըսածին որ " Եկէնք լեռը ու պատերազմելով առաջ երթանք ։ — Մի ընէք, ըսաւ Մովսէս, Աստուած հետերնիդ չէ ": Անոնք մտիկ չըրին՝ ելան լեռը ։ Ան ատենը Ամաղեկացիք ու Քանանացիք ալ դէմ ելան, անոնցմէ շատը մեռուցին, մնացածն ալ նորէն բանակը դարձան ։

Հ. Մովսէս քառասուն տարի Իսրայելացւոց Ճամբորդութեան ատեն ի՞նչ ըրաւ ։

Գ. Աստուծմէ շատ ծէսեր ու դատաստանք ընելու օրէնքներ առաւ՝ որ Ղեւտացւոց ու Երկրորդ օրինաց գրքերուն մէջ գրած են ։ Մէկ կողմանէ ալ ժողովրդեան անկարգութիւնները դադրեցնել կը ջանար որ ազատին պատժուելէն ։

Հ. Ղեւտացւոց ցեղն ալ պատժոյ արժանի գործք ըրի՞ն քառասուն տարուան մէջ ։

Գ. Անոնք ալ կը յարմարէին ուրիշներուն, ինչպէս անգամ մը Կորխ Ղեւեայ ցեղէն, Դաթան և Աբիրոն Ռուբենի ցեղէն, ուրիշ երկու հարիւր յիսուն հոգի ալ խօսքի տէր մարդիկ մէկ եղած՝ Մովսէսի ու Ահարոնի դէմ ելան թէ " Ինչո՞ւ դուք Աստուծոյ ժողովրդեանը կ'իշխէք ": Մովսէս աղաչելով կ'ըսէր թէ " Աստուած իր ուզածը ընտրեց ". Կորխին ալ կ'ըսէր՝ թէ " Ուրիշ ցեղերուն դժուարը պիտի գայ սա բանիս համար, չէ թէ քեզի ու քու ցեղիդ որ Աստուած ընտրեր կրեն ատեր է ": Ետքը ըսաւ անոնց որ վրանը բուրվառնին առած խորանը գան, ու հոն

Պ. Այդքի բերանը խիստ սարսափելով իրար անցան. բայց մէկալ օրը վազեցին Մովսէսի ու Ահարոնի վրայ՝ "Դուք պատճառ եղաք" ըսելով: Անոնք մէկէն խորանը փախան, ամպն ալ վրանին ծածկեց: Աստուած նորէն ուզեց ջնջել ժողովուրդը, ինկան Աստուծոյ առջև աղաչելու, Մովսէս ըսաւ Ահարոնին թէ "Առ բուրվառը, գնա ժողովրդեան մեղքը քաւէ": Ինչուան որ գնաց՝ տասնըչորս հազար եօթըհարիւր հոգի մեռան:

Հ. Իսրայէլացւոց մէջ քահանայութեան համար եղած տրտունջը ինչպէս վերցուեցաւ.

Պ. Այսպէս Աստուած որ տասներկու ցեղին ալ մէյմէկ գաւազանի վրայ գրեն անուններն, և վկայութեան խորանը դնեն. որուն գաւազանն որ ծաղկի՝ ան է Աստուծոյ ընտրածը: Մէկալ օրը տեսան ու ժողովրդեան ալ ցուցուցին որ մինակ Ահարոնինը ծաղկեր ու ընկոյզ ալ տուեր է, որ Աստուծոյ հրամանովը տապանակին մէջ պահեցին. ժողովուրդն ալ զարհուրած ճար կը խնդրէին չի ջարդուելու: Մովսէս ալ կարգ դրաւ որ խորանին մէջ միայն Ահարոն իր տղաքներովը ծառայեն, մէկալ Ղևտացիները իրենց գործքը ընեն. մնացած մարդիկն ալ դրսէն Ղևտացւոց ծառայեն:

Հ. Աւետեաց երկիրը չմտնելու պատժոյն տակը Մովսէս ալ կը սեպուէ՞ր.

Պ. Չէ. բայց շատ տարիէն ետքը, երբոր նորէն Սին անապատը եկան, Կադէս ըսուած տեղը բանակներն դրին. հոն Մարիամ մեռնելէն ետքը, ժողովուրդը ջրի համար սկսան տրտնջալ. "Երանի թէ մենք ալ մեռած ըլլայինք", կ'ըսէին: Մովսէս Աստուծոյ հրամանովը ժողովրդեան հետ դիմացի լեռը գնաց՝ ապառաժէն ջուր հանելու, ու տարակուսած քարին վրայ ելաւ ըսելով թէ "Ա

քարէս ձեռքի ջուր պիտի հանենք ,, ։ ու գաւա-զանով երկու հեղ զարկածին պէս սկսաւ առատ ջուր գալ ։ Բայց Աստուած աս բանիս համար բարկացաւ Մովսէսի և Ահարոնի , ու ըսաւ որ Աւետեաց երկիրը չմտնեն ։ Ասոր համար ան ջրին անունն ալ Ջուր Հակառակութեան ըսուեցաւ ։

Հ . Իսրայէլացիք Կադեսէն ո՞ւր գնացին .

Պ . Ուզեցին անցնիլ Եդոմայ երկրէն , անոր համար մարդ խրկեց Մովսէս՝ ըսելով որ մէկ բանի մը վնաս չենք ըներ , միայն ճամբայ տուէք ։ Անոնք վախցան՝ թող չտուին , կ'ուզէին պատերազմի ել-լել , անոր համար դարձան Հոր լեռը եկան ։

Հ . Ահարոն ո՞ւր մեռաւ .

Պ . Եգիպտոսէ ելլելէն քառասուներորդ տարին , Հոր լեռան տակը . հոն Աստուած Մովսէսի ըսաւ որ Ահարոնը Հոր լեռը տանի՝ քահանա-յապետականութիւնը հանէ Եղիազար տղին հագ-ցնէ . սաանկով հարիւր քսանուիրեք տարուան մեռաւ ու հոն թաղուեցաւ ։ Երեսուն օր ալ մա-հուանը վրայ սուգ առին ։

Հ . Ահարոնին մեռնելէն ետքը Իսրայէլացւոց ինչ նոր գլխուած հանդիպեցաւ .

Պ . Քանանացիք վրանին պատերազմի ելան ու Իսրայէլացիներէն գերի առին . անոնք ալ ուխտ ըրին Աստուծոյ , թէ որ մատնէ Քանանա-ցին իրենց ձեռքը , նզովեն . Աստուած լսեց իրենց աղաչանքին . յաղթեցին Քանանացիներուն ու ան տեղին անունը Նզովք դրին ։ Ետքը երբոր Հոր լեռնէն Սելմոնայ գնացին , ճամբուն նեղութե-նէն ձանձրացած նորէն սկսան տրտունջ Մովսէ-սի դէմ , ըսելով թէ “ Գանէր ենք անշահ մանա-նայէն , ինչու՞ հանեցիր զմեզ Եգիպտոսէն ,, ։ Աստուած ալ թունաւոր օձեր խրկեց վրանին որ կը սպաննէին զանոնք . սկսան աղաչել Մովսէսի որ աղօթք ընէ իրենց համար ։ Մովսէս Աստուծոյ

հրամանով պղնձէ օձ մը շինեց՝ ձողի վրայ բարձր կայնեցուց. ով որ անոր կը նայէր՝ կը բժշկուէր։

40

Բաղաամ։

Հ. Իսրայէլացիք երբոր Աւետեաց երկիրին մօտեցան, ինչ պատճառաւ ան տեղի ազգերը իրենց դէմ պատերազմի կ'ելլէին.

Գ. Աստուած կը պատուէր զիրենք՝ սիրտերնին վախ ձգելով որ չըլլայ թէ իրենց վնաս հասցընեն Իսրայէլացիք. անոր համար Ամովրհացւոց երկիրը հասան ու անցնել կ'ուզէին, Սեհոն անոնց թագաւորը դէմ դրաւ. ուստի Իսրայէլացիք ալ պատերազմ ըրին. անոնց երկիրնին առին։ Նոյնը Բասանու Ովգ թագաւորն ալ դէմ ելաւ, անոր ալ յաղթեցին՝ երկիրներն առին։ Անտեն Մովաբացւոց Բաղակ թագաւորը վախցաւ որ չըլլայ թէ իրեն ալ յաղթեն. մարդ խրկեց Բաղաամ որդի Բէովրայ ըսուած կախարդին՝ որ գայ Իսրայէլացիները անիծէ։

Հ. Բաղաամ անիծե՞ց Իսրայէլացիները.

Գ. Առջի անգամ Բաղակայ քովը չգնաց՝ Աստուծոյ հրամանելով։ Բայց Բաղակ նորէն մարդ խրկեց ընծաներով. Բաղաամ մտիկ չըրաւ ան գիշեր նորէն Աստուծոյ հարցուց։ “Գնա, ըսաւ Աստուած, բայց ըսածէս դուրս մի՛ ելլեր”։ Առաւօտանց էշը հեծած երթալու ատեն միտքը փոխուելուն համար՝ ճամբուն դիմացը երեցաւ հրեշտակ մը թուրը ձեռքը. էշը տեսաւ ճամբէն դուրս փախչիլ. Բաղաամ չտեսնելով հրեշտակը՝ զարկաւ էշին որ շիտակ քալէ. երբոր քիչ մ' ալ առաջ գնացին, էշը նորէն տեսաւ հրեշտակը ու մէկդի քաշուելով պատին պատին քսուեցաւ որ

զիկը մեռցուց , ու անով Աստուած հաշտուելով դադրեցաւ մարդկիններուն կոտորածը : Ետքը Աստուծոյ հրամանով հազարական հոգի ամէն մէկ ցեղէն գնացին Մադիանացւոց վրայ՝ Փենեհէս ալ հետերնին , ջարդեցին զամէնքը , Բաղաամն մեկտեղ , ու ամէն ունեցածնին աւար առին : Ու Մովսէս ան երկիրները Յորդանանին քով Ռուբէնի , Գադայ ցեղերուն ու Մանասէին կէս ցեղին տուաւ՝ իրենց ուզելուն համար , 'խօսք դնելով որ տներնին հոն թողուն ու իրենք միւսներուն հետ Աւետեաց երկիրը երթան օգնեն որ առնեն ալ տեղաւորուին , ետքը դառնան :

Հ . Մովսէս ո՞ւր մեռաւ .

Պ . Յորդանանու քովը Աստուծոյ հրամանով Յեսուն իր տեղ առաջնորդ դրաւ , Իսրայելացւոց ալ շատ խրատներ տուաւ . օրէնքները պահէ պահելու . ու ամէն մէկ ցեղը զատ օրհնելէն ետքը՝ Աբարիմ կամ Նաբաւ լեռը ելաւ , ուսկից Աստուած իրենց ցուց բոլոր Աւետեաց երկիրները , ու ան տեղը մինակ մեռաւ ու թաղուեցաւ հարիւր քսան տարուան . ոչ աչուըները տկարացան , ոչ ալ երեսը խորշոմեցաւ . Իսրայելացիք երեսուն օր վրան սուգ ըրին :

41 .

Յորդանանէն անցնիլը ու Երիքովի պարիսպներուն ինկնալը :

Հ . Մովսէսի մեռնելէն ետքը Իսրայելացիք ո՞ւր գնացին .

Պ . Աստուծոյ հրամանովը Յեսու ըսաւ որ պատրաստուին Յորդանանէն անցնելու . ու երկու լրտես խրկեց Երիքով որ իմանան թէ ինչ միտքի վրայ են ան տեղի մարդիկները . ու անոնց

թեքած լողալը աւելի դիւրա տեսած կարգով մտնե_ ցան գետին թուլը․ քահանաները առջեւէն տա_ պանակը վերցուցած․ որոնց ոտքերնին ջրին դպչե_ ցնելուն պէս Յորդանան երկու բաժնուեցաւ․ վարի ջրերը Մեռեալ ծովը գնացին, վերինները դիզուեցան մնացին։ Քահանաները տապանակով գնացին գետին մէջ տեղը կեցան, մինչեւ որ ամէնը անցան։

Հ․ Յորդանան գետին մէջէն իսրայէլացիք անց_ նելուն պէս տապանակն ալ դուրս հանեցին․

Պ․ Տապանակը դուրս չելած Աստուած հրա_ մայեց որ գետին մէջէն քահանաներուն կեցած տեղէն՝ ամէն ցեղէն մէյմէկ հոգի մէյմէկ քար առնեն ու ան գիշերը ուր որ պիտի կենան՝ հոն տանին դնեն․ ուրիշ տասներկու քար ալ գե_ տին մէջ տապանակին կեցած տեղը դնեն․ ետքը տապանակը դուրս ելլելուն պէս՝ ջուրը նորէն առաջինին պէս սկսաւ վազել։ Ասով Յեսուէն ալ Մովսէսին պէս սկսան վախնալ։

Հ․ Յորդանանէն անցնելէն ետքը ինչ նոր գի_ պուած հանդիպեցաւ իսրայէլացւոց․

Պ․ Մէկէն մանանայ իջնալը դադրեցաւ․ հոն առջի զատիկը ցորենէ բաղարջ կերան։ Յեսու ալ Աստուծոյ հրամանով դաշտային քարով թլփատեց անապատը ծնածները, անոր համար ան տեղին անունը Գաղգաղա ըսուեցաւ։

Հ․ Յեսուայ Երիքով ղրկած լրտեսները ինչ ըրին;

Պ․ Գնացին Ռախաբ ըսուած կնկան մը տունը․ Թագաւորը իմացաւ, մարդ ղրկեց որ բռնեն․ Ռախաբ պահեց զանոնք ու ըսաւ թէ գնացին․ ետքը լրտեսներուն իմացուց որ ամէնքը սաստիկ վախի մէջ են, գիտնալով որ Աստուած է ձեր ա_ ռաջնորդը․ ու երդումնցուց զիրենք որ քաղաքը առնելու ատեն իր տունը ազատեն․ անոնք ալ

43.

Յեսուայ Նաւէի գործերը :

Հ. Երբոր Յեսու շատ քաղաքներ կ'առնէր, չպատահեցա՞ւ ազգ մը որ քիչ մը ուժով կարենայ դէմ դնել.

Պ. Յաբին Ասորայ թագաւորը առջ ելաւ, չորս դին մարդ խրկեց Ամորհացւոց, Քետացւոց, Փերեզացւոց, Յեբուսացւոց, Խեւացւոց, և ուրիշ քանի ազգերուն, ու ամէնը մէկէն անհամար զօրքով ձիերով ու պատերազմական կառքերով ժողվեցան Մառոն ջրին քովը : Ան ատեն Աստուած ըսաւ Յեսուայ. “ Մի վախնար, վաղը այսօր յաղթէք անոնուն, ձիերը ջլադէք, կառքերը այրէք ”: Յեսու քաջութեամբ լեռան դիքէն յանկարծ վրանին վազեց՝ կոտրեց զանոնք, փախչողներուն ալ ետևէն ինկաւ՝ զամէնքը ջարդեց ու երկիրներնին առաւ : Ասանկով վեց տարուան մէջ երեսունումէկ թագաւոր ջարդեց ու բոլոր Քանանացւոց երկիրը մաքրեց :

Հ. Յեսուայ ըրած պատերազմներով ջարդուեցա՞ն բոլոր թշնամիները.

Պ. Մէկ քանի այլազգի տէրութիւններ թողուց Աստուած Իսրայէլացւոց զգուշութեան համար, որ պատրաստ կենալով չթուլնան. նաև պէտք եղած ատենը՝ անոնց ձեռքովը պատժուելին խրատուելին :

Հ. Յեսու ինչ կարգով բաժնեց երկիրները Իսրայէլացւոց.

Պ. Ինչպէս որ Մովսէս որոշեր էր՝ ինն ու կէս ցեղին վրայ բաժնեց. երկու ու կէս ցեղին Յորդանանէն անդին տուած ըլլալով. Ղեւտացւոց բաժինն ալ մասնաւոր տեղ չէր, հապա քահանա-

նըռւմը քաղաքը չտուած բոլոր Իսրայէլացւոց մէջ . որոնցմէ մէջը Քահանայ ապաստանի կ'ըսուէր , որովհետև զի թէ որ մէկը դիպուածով մարդ սպաննէ՝ հոն փախչի խալըսի ։ Անկէ զատ Քահանայից ալ , բայց մկայութեանը վարձ՝ ինչպէս որ Աստուած խօստացեր էր , մասնաւոր տեղ տուաւ . Իսրայէլացիք ալ Աստուծոյ հրամանովը՝ Եփրեմի ցեղին երկրին մէջ լեռան մը վրայ Թամնաթսարայ Յեսուայ տուին , որ հոն քաղաք շինեց ու բնակեցաւ ։

Հ . Յորդանանէն անցնելէն ետքը տապանակը ո՞ւր կը պահէին .

Պ . Ինչուան որ պատերազմները լմնցաւ երկիրները բաժնեցին՝ Գաղգաղա էր , ետքը Եփրեմայ ցեղին երկրին մէջ Սելով քաղաքը դրին . Թէպէտ անկէ ալ Իսրայէլացիք վերուցին՝ տեղէ տեղ տարին , բայց էր հաստատ տեղը հոն եղաւ՝ ինչուան Սամուէլ մարգարէին ատենը ։

Հ . Երկիրները բաժնելէն ետև՝ ինչ կերպով կառավարեցան Իսրայէլացիք .

Պ . Երբոր խաղաղ կեցեր էին՝ յանկարծ չփոթութիւն մը պատահեցաւ ։ Ան երկու ցեղ ու կէսն որ Յորդանանու անդին կողմը գնացին տեղաւորուեցան , հոն մէկ մեծ սեղան մը շինեցին ։ Մէկալ տասը ցեղը երբոր իմացան՝ ծառա մտքէ գնացին . անոր համար խորհուրդ ըրին որ անոնց վրայ պատերազմի ելլեն ։ Բայց առաջուց աղէկ մը իմանալու համար՝ Փենեհէս քահանան՝ ուրիշ խօսքի տէր մարդիկներու հետ մէկտեղ անոնց խրկեցին , որ գնայ յանդիմանէ զանոնք թէ կռապաշտութիւն ընել սկսեր են ։ Անոնք պատասխան տուին թէ անոր համար շինեցինք որ ետևի եկողները իմանան թէ մենք ձերին հետ եղբայր ենք ։ Այսով ամենուն սիրտը հանդարտեցաւ ու փառք տուին Աստուծոյ՝ որ աս . մեծ չարէն ազատ

նութիւնը քաղաքը պատած բոլոր Իսրայելացւոց մէջ․ որոնցմէ վեցը Քաղաք ապաստանի կ'ըսուէր, որովհետեւ դի թէ որ մէկը դիպուածով մարդ սպաննէ՝ հոն փախչի խալըսի ։ Ասկէ զատ Քահանայից ալ, բարեկ մկայութեանը վարձ՝ ինչպէս որ Աստուած խոստացեր էր, մասնաւոր անոր տուաւ ․ Իսրայելացիք ալ Աստուծոյ հրամանովը Եփրեմի ցեղին երկրին մէջ լեռան մը վրայ Թամնաթսարան Յեսուայ տուին, որ հոն քաղաք շինեց ու բնակեցաւ ։

Հ․ Յորդանանէն անցնելէն ետքը տապանակը ո՞ւր կը պահէին ․

Պ․ Ինչուան որ պատերազմները լմնցան երկիրները բաժնեցին՝ Գաղգաղա էր, ետքը Եփրեմայ ցեղին երկրին մէջ Սելով քաղաքը դրին ․ Թէպէտ անկէ ալ Իսրայելացիք մեկնեցին՝ տեղէ տեղ տարին, բայց էր հաստատ տեղը հոն եղաւ՝ ինչուան Սամուէլ մարգարէին ատենը ։

Հ․ Երկիրները բաժնելէն ետև՝ ամէն կերպով խաղաղացան Իսրայելացիք ․

Պ․ Երբոր խաղաղ կեցեր էին՝ յանկարծ շփոթութիւն մը պատահեցաւ ։ Ան երկու ցեղ ու կէսն որ Յորդանանու անդին կողմը գնացին անդաւորուեցան, հոն մէկ մեծ սեղան մը շինեցին ։ Մէկալ տասը ցեղը երբոր իմացան՝ ծուռ միտք գնացին․ անոր համար խորհուրդ ըրին որ անոնց վրայ պատերազմի ելլեն ։ Բայց առաջուց աղէկ մը իմանալու համար՝ Փենեհէս քահանան՝ ուրիշ խօսքի տէր մարդիկներու հետ մեկտեղ անոնց խրկեցին, որ գնաց յանդիմանեց զանոնք թէ կռապաշտութիւն ընել սկսեր են ։ Անոնք պատասխան տուին թէ անոր համար ․ շինեցինք որ ետքի եկողները իմանան թէ մենք ձեզի հետ եղբայր ենք ։ Ասով ամենուն սիրտը հանդարտեցաւ ու փառք տուին Աստուծոյ՝ որ ան․ մեղքէն ազատ

են եղեր ։ Յեսու ալ ան սեղանին անունը դրաւ՝ Վկայութիւն, որ ան ցեղերն ալ մեկալնոնց հետ մէկ Աստուած կը պաշտեն ։

Հ. Յեսու Թամնաթսարան երթալէն ետքը յիշատակի արժանի ինչ բան ըրաւ.

Պ. Վերջի ծերութեան ատենը բոլոր մեծերը քովը կանչեց ու մտքերնին ձգելով Աստուծոյ անհամար բարերարութիւնները, յորդորեց որ զգուշ ըլլայ թէ կուռքերուն ետեւէն երթալով Աստուած վրանին բարկացնեն. երդում ալ առաւ իրենցմէ որ յաւիտեան իրենց Աստուածը պաշտեն. և աս բանիս յիշատակ՝ խորանին քովը մեծ քար մը տնկեց որ որդւոց որդի յիշեն աս Աստուծոյ հետ ըրած ուխտերնին. իսկ ինքը բարի ծերութեամբ հարիւր տասը տարուան մեռաւ ։ Վրան շատ չանցաւ՝ Եղիազար քահանայապետն ալ մեռաւ, և տեղը անցաւ Փենեհէս որդին ։

## 44.

### Քաղէբ, Գոթոնիէլ, Աւոդ, Սամեգար ։

Հ. Յեսուայ մեռնելէն ետև ով եղաւ առաջնորդ Իսրայէլացւոց.

Պ. Աստուծոյ հրամանովը Քաղէբ՝ Յուդայի ցեղէն ։ Ան ատենը Յուդայի ցեղը՝ Շմաւոնի ցեղը հետը առած Քանանացւոց ու Փերեզացւոց դէմ ելլել սկսան. Ադոնիբեզեկ թագաւորն ալ բռնեցին ու ձեռուըները ոտուըները կտրեցին ։ Ինքն ալ ան ատենը ըսաւ թէ “ Ըրածիս հատուցումը գտայ, որ եօթանասուն թագաւոր բռներ եմ ու անոնց ձեռուըները կտրած սեղանիս տակը շան պէս ինկած փշրանքները բերնով կ՚առնէին ու կ՚ուտէին ” ։

ձեռքը մատնուեցան. Եօթը տարիէն ետքը Աս-
տուծոյ ինկան, Աստուած մարգարէ մը խրկեց
որ ըրած մեղքերնին երեսնին տուաւ՝ խրատեց:
Ետքը հրեշտակ մը խրկեց Գեդէոնին՝ Մանասէի
ցեղէն, երբոր ասիկայ Մադիանացւոց ձեռքէն
փախած՝ իր հօրը կալը ցորեն կը ծեծէր, հրեշ-
տակն եկաւ ըսաւ թէ “ Աստուած քեզ ընտրեր
է որ թշնամիները վռնտես ,,: Գեդէոն ըսաւ;
“ Եա՞ մէկ եմ որ Իսրայէլացիքը ազատեմ ,,: Հրեշ-
տակը պատասխան տուաւ թէ “ Աստուած հետդ
է ,,: Ան ատեն Գեդէոն նշան մը ուզեց. աղա-
չեց հրեշտակին որ հոն կենայ՝ մինչուան ինքն եր-
թայ իրեն համար կերակուր բերէ. ու գնաց
Գեդէոն շուտով ուլ մը պատրաստեց ու բաղարջ
հաց շինեց, հրեշտակին առջևը բերաւ. Հրեշ-
տակն ըսաւ որ միսերը քարին վրայ դնէ ան բա-
ները, և ձեռքի գաւազանովը մսին դպածին պէս՝
քարէն կրակ ելաւ այրեց կերակուրները, ու
հրեշտակն ալ աներևոյթ եղաւ: Գեդէոն աս
հրաշքովը իմացաւ որ հրեշտակ Աստուծոյ է ե-
ղեր՝ վախցաւ, և ան տեղը Աստուծոյ սեղան շի-
նեց: Ան գիշերը Աստուած Գեդէոնի հրամայեց
որ երթայ իր հօրը Բահաղ կուռքին սեղանը,
կործանէ, քովի անտառը կտրէ, և ան փայտե-
րով իր հօրը եօթը տարուան գիրցուցած եզը՝
Աստուծոյ ողջակէզ ընէ՝ նոր շինած սեղանին
վրայ: Գեդէոն վախցաւ ցորեկին ընելու. ուստի
գիշերը ելաւ գաղտուկ տասուերկու հոգի առաւ
իր հօրը ծառաներէն՝ գնաց Աստուծոյ հրամանը
կատարեց: Առաւօտանց քաղքին մարդիկը իմա-
ցան որ Գեդէոն ըրեր է, հօրը եկան, կ'ուզէին
որ Գեդէոնը տայ որ սպաննեն: Հայրը պատասխան
տուաւ. “ Բահաղը թէ Աստուած է՝ ինքը թող
վրէժ առնէ ,,: Գեդէոնի անունն ալ Յերոբաաղ
դրաւ, իբր թէ Բահաղ կուռքին յաղթող:

Հ. Ե՞րբ գնաց Գեդէոն Մադիանացւոց և Ա-մաղէկացւոց դէմ.

Պ. Աստուծոյ իրեն երևնալէն ետքը երբոր ըսեց թէ անոնք նորէն վրանին կու գան, կանչեց Իսրայէլացիները Ասերի, Զաբուղոնի և Նեփթա-ղիմի ցեղերէն՝ որ դէմ ելլեն: Բայց նորէն Աս-տուծմէ ալ նշանաւ խնդրեց, որ գզաթ մը գիշերը դուրս փռէ, ու ան գզաթին վրայ միայն անձրե-ւայ. առաւօտանց որ ելաւ գզաթը քամեց՝ կոնք մը ջուր ելաւ: Ասոր տեսաւ՝ մէյմ՝ ալ խնդրեց որ ասոր ներհակը՝ ան գզաթը չոր մնայ, ու բո-լոր գետինը թրջի: Ան երկու հրաշքով սիրտ ա-ռած, երբոր ելաւ թշնամիներուն դէմ երթալու, Աստուած "Շատ են, ըսաւ, զօրքդ. ետքը կը կարծեն թէ իրենց ուժովը յաղթեցին. ըսէ որ վախկոտները ետ դառնան": Ան ատենը քսա-նուերկու հազար հոգի ետ գնացին ու տասը հա-զար մնացին: "Ասոնք ալ շատ են ըսաւ Աս-տուած. ուստի ասոնք ջրին քով տար, ու հոն նայէ թէ ով ջուրը ափը առած շան պէս կը լափէ, ու ով ծնկան վրայ ինկած, ու մէկ մէկէ զատէ": Ասանկով միայն երեք հարիւր հոգի շան պէս լա-փելով խմեցին. և Աստուած ըսաւ Գեդէոնին. "Միայն ասոնցմով Իսրայելացիքը Մադիանացի-ներէն պիտի ազատեմ, մէկալները ճամբէ":

Հ. Գեդէոն իրեք հարիւր հոգւով ինչպէս պա-տերազմեցաւ Մադիանու հետ.

Պ. Առաջ Աստուած իրեն սիրտ տալու հա-մար հրամայեց որ ինքը իր Փարա ծառային հետ գի-շերանց գաղտուկ թշնամիներուն բանակը եր-թայ, ու լսէ ինչ որ կը խօսին: Գեդէոն գնաց լսեց որ զինուորին մէկը մէկալին երազ կը պատ-մէր, թէ "Տեսայ որ մէկ գարիէ նկանակ մը գլո-րեցաւ դէպ 'ի մեզ, ու զարկաւ կործանեց բոլոր Մադիանու բանակը". մէկալն ալ ըսաւ, թէ

«Այս Գեդէոնի սուրն է, Աստուած զանոնք անոր ձեռքը տուեր է»: Գեդէոն Աստուծոյ շնորհակալ ըլլալով բանակը դարձաւ. «Ելէք, ըսաւ, Աստուած Մադիանը մեր ձեռքը մատնեց». ու իրեք հարիւրը երեք գունդ բաժնեց, և զէնքի տեղ ամենուն մէկ ձեռքը եղջիւրէ փող տուաւ, և միւսալ ձեռքը վառած ջահ՝ սափորի մէջ ծածկած. և պատուիրեց որ իրեն նայելով ու անանկ ընեն: Դէպ գիշերուան մէջ յանկարծ Թշնամիներուն բանակը գնացին, ու մէկէն փողերնին փչելով սափորնին կոտրտեցին՝ ջահերնին դուրս երևցան, ու մէկ բերան պոռալ կանչել, Սուր Տեառն և Գեդէոնի: Այս բանով Աստուած Մադիանու բանակը անանկ վախ մը ձգեց որ մէկզմէկ թշնամի կարծելով անխնայ կը ջարդէին. ինչուան հարիւր քսան հազար հոգի մեռան: Փախածներուն համար ալ մարդ խրկեց միւսալ իսրայէլացւոց, որ գետերնին ելլելէն ջարդեն: Որէբ ու Զէբ իշխաններուն ալ գլուխնին կտրեցին, Գեդէոնի բերին:

Հ. Զանհերով վախցընելով Մադիանու զօրքը ջարդելէն զատ Գեդէոն ուրիշ ինչ պատերազմ ըրաւ.

Պ. Երկու Մադիանու Թագաւորներ՝ Զեբէէ և Սաղմանա՝ տասնըհինգ հազար զօրքով փախեր էին ուրիշ տեղ: Ետևնուն գնաց Գեդէոն, բայց յոգնած և անօթի ըլլալով զօրքը՝ հանդիպեցաւ Սոկքովթ քաղաքը որ քիչ մը հաց տան. անոնք չտուին՝ ըսելով. «Ո՞ւր են Թագաւորները. ցուցուր որ տանք: — Երբոր բռնեմ զանոնք, ըսաւ Գեդէոն, զձեզ փուշերու վրայ կը տանջեմ». ու գնաց Փանուէլ քաղաքը. անոնք ալ առաջիններուն պէս ըսին. անոնց ալ սպառնացաւ որ կործանէ իրենց աշտարակը: Գնաց ջարդեց զանոնք. Թագաւորներն ալ բռնեց ու դարձաւ, ը-

լեռները կը ընկերներուն հետ լայ իր կուսու-թիւնը . երկու ամսէն ետև կատարեց Յեփթայէն իր Աստուծոյ ըրած ուխտը ։ Իւ. ան աղջիկներն ան-վերջութեան նշան Իսրայէլացւոց մէջ տարին չորս օր աղջիկները միասին երթալ Յեփթայէի աղջը-կանը վրայ ողբ կ՚ընէին ։

Հ . Յեփթայէն Ամմոնացւոց պատերազմէն դառ ինչ պատերազմ ըրաւ .

Պ . Եփրեմայ ցեղին հետ մեծ պատերազմ ըրաւ . վասն զի անոնք իրեն նախանձելով ինչպէս Յորդանանն գետը՝ եկան ըսին թէ « ինչու մեզ չկանչեցիր Ամմոնացւոց դէմ » . ու կ՚ուզէին իրեն տունը հրայրկել ։ Յեփթայէն պատասխան տուաւ թէ « կանչեցի , բայց դուք չեկաք , Աստուած ալ բանս յաջողեց » ։ Երբ տեսաւ որ անոնք չեն հանդարտիր՝ սկսաւ անոնց հետ պատերազմիլ , ու մեծ ջարդ տուաւ , եւ փախչողներն ալ որ Յորդանանէն մէկ նեղուցէ մը պիտի անցնէին՝ բռնե-նել կուտար կը հարցընէր թէ Եփրեմայ ցեղէն են . երբոր Չէ կ՚ըսէին , իրենց ըսել կուտար աս բառը՝ շիբողէթ , որ հասկ ըսել է , ու ով որ չկրնար ըսել չիբռնալով սիբողէթ կ՚ըսէր , ան կը մեռց-նէին . և այսպէս քառասուներկու հազար հոգի կոտորուեցան անոնցմէ ։ Ասկէ վեց տարի դատաւորութիւն ընելէն ետքը մեռաւ ։

Հ . Յեփթայէին ով յաջորդեց .

Պ . Եսեբոն Բեթղեհեմացին՝ եօթը տարի . որ երեսուն մանչ ունէր , երեսուն ալ աղջիկ , և ամէնն ալ ինքը կարգեց ։ Եսեբոնէն ետև Եղոն Զաբուղոնացի տասը տարի ։ Ետքը Աբդոն Փա-րաթոնացի՝ Եփրեմի ցեղէն ութը տարի . քառա-սուն տղայ ունէր , երեսուն ալ թոռ ։

49.

Սամփսոն :

Հ. Աբդոնէն ետքը Իսրայէլացւոց ով կ'առաջնորդէր ,

Գ. Նորէն աստուածպաշտութենէ թուլնալով քառասուն տարի այլազգիներուն տակը ինկան : Ան տարիները Դանայ ցեղէն Մանուէ անունով մէկը ամուլ կին ունէր . օր մը հրեշտակ Աստուծոյ երեցաւ աս կնկան , ու ըսաւ թէ "Դուն տղայ մը պիտի բերես՝ ուխտաւոր Աստուծոյ . բայց զգուշացիր գինիէ օղիէ և ուրիշ անմաքուր կերակուրներէն , ու տղուն ալ մազը ածելի պիտի չկտրուի . անիկայ Իսրայէլացիները կ'ազատէ ": Կինը երթալ պատմեց Մանուէին , աղաչեց Աստուծոյ որ ան սուրբ մարդը նորէն մէյմըն ալ ղրկէ որ իմացընէ ինչ պիտի ընեն ան տղին : Հրեշտակը նորէն երեցաւ կնկանը : ան ալ շուտ մը վազեց էրիկը կանչեց , որ նորէն հարցուց ան բաները հրեշտակին . ետքը Մանուէ ուզեց անոր սեղան ընել , հրեշտակն ալ ըսաւ , " Ես չեմ ուտեր , Աստուծոյ նուիրէ ", ան ատենը Մանուէն՝ " Անունդ ի՞նչ է , ըսաւ , որ բանձներդ ըլլայ նէ զքեզ օրհնենք ": Հրեշտակը պատասխանեց՝ Աքանչելի է : Մանուէն սկսաւ զոհ ընել Աստուծոյ , հրեշտակն ալ կրակին բոցովը երկինք ելաւ : Աս որ տեսան՝ սաստիկ վախցան , իմանալով որ հրեշտակ է եղեր : Ետև ատենին կնիկը տղան բերաւ , անունը Սամփսոն դրին :

Հ. Սամփսոնին առջի զարմանալի գործքը ո՞րն եղաւ .

Գ. Անգամ մը Թամնաթա գնաց , ու հօն այլազգի աղջիկ մը տեսաւ , եկաւ իր ծնողացը

մարդ չէ եկած պատերազմի. որովհետեւ մէջեր-նին երդում ըրեր էին որ ամէնքը երթան, գնա-ցին Ջարդեցին զանոնք, միայն կոյսերը թողուց որոնք չորս հարիւր գտնուեցան. Մնացածնե-րուն ալ ըսին որ Սելով քաղաքէն աղջիկ մը յափշ-տակեն. երբոր բողոքեն՝ ըսին՝ մենք խօսք կը հա-կեցընենք, ասանկով Բենիամինի ցեղը նորէն հա-հաստատուեցաւ :

## ԾԲ.

## Հռութ

Հ. Ո՞վ է Հռութ, ու ի՞նչ գործք ըրաւ.

Պ. Յուդայի ցեղէն Եղիմելէք անունով մէկը՝ սովի պատճառաւ իր Նոյեմին կնիկովը ու երկու տղոցմով Մովաբացոց երկիրը գնաց ու հոն մնա-ցաւ, տղաքն ալ կարգուեցան այլազգիներուն հետ. հարսերուն անունն ալ՝ մէկունը Որփա էր, մէկալինը Հռութ. տասը տարիէն տղաքն ալ մե-ռան: Նոյեմին ուզեց հարսերը իրենց տունը ճամ-բել ու ետ դառնալ: Որփան շատ դժուարու-թեամբ գնաց. բայց Հռութ ճար չեղաւ՝ իր կե-սուրէն չզատուեցաւ, "Մահը միայն զիս քեզ-մէ կը բաժնէ" կ'ըսէր, անոր համար մեկնեց Բեթղեհէմ դարձան: Հոն Եղիմելէքի ազգականը կար՝ Բոոս անունով. Նոյեմինին տեղ տուաւ որ բնակին: Երբոր արտերը ցորեն կը հնձէին՝ Հռութ Նոյեմինէն ուզեց որ երթայ՝ ինքն ալ արտերը բանի. ու գնաց Բոոսին արտի հնձած ցորենները կը քաղէր: Բոոս երբոր իմացաւ թէ Հռութ Նոյեմինին հարսն է, վրան հոգ ըրաւ. և ըսաւ որ իր աղջիկներուն հետ մէկտեղ ուտէ. հնձող-ներուն ալ պատուիրեց որ զինքը աղէկ նային, եւ ցորենի հասկերուն մնացածը թողուն որ ժողվէ

տանի ։ Նոյեմին երբ իմացաւ եղածը, հարսին Հռութայ ցըցուց որ զինքը սիրցընէ Բոոսին ու կարգուի ։ Բոոս երբոր Հռութայ միայն իմացաւ՝ չէ չըսաւ. բայց որովհետեւ ուրիշ մօտ ազգական կար, անոր կ'իյնար կարգուիլ. որպէս զի բանը կարգով ըլլայ, քաղաքին ծերերը ժողվեց ու ա-նոնց առջեւն ան ազգականին ըսաւ որ Նոյեմինը իր երկանէն մնացած գետիններուն մէկ կտորը ծախել կ'ուզէ, քեզի կ'իյնայ առնել, թէ չէ՝ ես կ'առնեմ. բայց աս ալ գիտնաս որ ան տեղին հետ հարսն ալ պիտի առնես. որ անկէց մեռնողին ժա-ռանգ թողուս ։ Անիկայ աս բանս յանձն չառաւ ։ Ան ատենը Բոոս վկայ բռնելով ան ծերերը՝ Հռութն իրեն հարազատ կնիկ առաւ, որ ամէնքն օրհնեցին. ուսկից շատ չանցաւ՝ որդի մը ունե-ցաւ անունն Ովբէդ, ու անկէց եղաւ Յեսսէն՝ Դաւիթ մարգարէին հայրը ։

53.

Հեղի. Սամուէլ։

Հ. Հեղի ինչպէս կը կառավարէր Իսրայէլա-ցիները.

Պ. Թէպէտ իր կառավարութիւնը աղէկ էր, բայց երկու որդի ունէր՝ Ոփնի ու Փենեհէս, որոնք ժողովրդեան զոհ մատուցանելու ատեն անիրաւութիւն կ'ընէին. ինքն ալ կ'իմանար, բայց ինչպէս որ պէտք է չէր խրատէր, անոր համար զինքն ալ պատժեց Աստուած իր որդւոցը հետ ու տեղը Սամուէլն ընտրեց ։

Հ. Սամուէլ որո՞ւն տղան է.

Պ. Եղկանա անունով մէկ ղեւտացիի մը Արիմա-թեմ քաղաքէն. աս մարդս երկու կին ունէր՝ Աննա ու Փեննանա ։ Տարին հեղ մը ուխտի կ'երթար

Սելով քաղաքը՝ Աստուծոյ տապանակին առջև . անգամ մը Աստուծոյ զոհ ընելէն ետև սեղան որ նստաւ՝ Փեննանային ու անոր տղոցը բաժինները մէկտեղ տուաւ . և Աննային տղայ չունենալուն՝ անոր մէկ բաժին մը տուաւ : Աննան մինաւոր նըստած՝ իր ամլութեանը վրայ տրտմած կը մաշէր . Թէպէտ Եղկանան կ'ուզէր զինքը մխիթարել , բայց ճար չէր ըլլար : Սեղանէն ետքը Աննան մինաւոր գնաց տաճարին դրան առջևն ինկաւ ու սրտանց հառաչելով մտքէն սկսաւ աղաչել որ Աստուած իրեն ողորմի՝ զաւակ մը տայ , և ուխտ ըրաւ Աստուծոյ նուիրելու ան [illegible] : Հեղի հոն նստած ըլլալով երբոր տեսաւ որ Աննա երկայն ատեն անշարժ կեցեր է , կարծեց թէ գինով է , տղան խրկեց որ վռնտէ ան սուրբ տեղէն : Աննան պատասխան տուաւ թէ " Գինով չեմ , հապա տրտմութեամբ լեցուած կնիկ մըն եմ որ Աստուծոյ առջև սրտիս ցաւը կը բանամ ,, : Ան ատենը Հեղի զինքն օրհնեց . [illegible] խօսք մխիթարուեցաւ Աննա , ու երբոր տունը դարձաւ , տղայ մը բերաւ՝ որուն անունը Սամուէլ դրին , որ ըսել է Աստուծմէ խնդրուած :

Հ . Աննան ինչպէս կատարեց Աստուծոյ ըրած խոստմունքը .

Պ . Տեղինակը կպատմէ . Նախ ինչուան որ կաթէն կտրեց Սամուէլը՝ ալ չգնաց Սելով Եղկանին հետ . ետքը ատենը հասածին պէս ընծաներով բերաւ Աստուծոյ նուիրեց , ու տղան Հեղի քահանայապետին ձեռքը տալու ատեն ըսաւ . " Տէր իմ , ես ան կնիկն եմ որ քու աչքիդ առջևն Աստուծոյ աղաչեցի աս տղիս համար . ինչպէս որ Աստուծոյ ուխտ ըրի՝ ամբողջ իրեն կը նուիրեմ ,, . ու օրհնութեան աղօթք մըն ալ ըրաւ Աննան հոն տեղը . և ետքը Թողուցին Սամուէլը ու դարձան : Աստուած ալ Աննային՝ Սամուէլէն զատ ուրիշ երեք

մանչ ու իրեք աղջիկ զաւակ տուաւ․ և ինքն ամէն տարի որ Սելով քաղաքը կ'երթար՝ Սամուէլին լաթ կը շինէր կը տանէր․ Սամուէլ ալ հոն տապանակին կը ծառայէր։

Հ․ Աստուած Հեղին ու տղաքը պատժելէն առաջ իմացո՞ւց կերպով մը որ զգուշանան․

Գ․ Նախ հրեշտակ մը խրկեց Հեղիին որ տղոցն ըրած անիրաւութիւններն ըսելէն ետքը պատիժ ալ սպառնացաւ՝ քահանայութիւնը ձեռքէն առնելու․ ու աս ըսածներուն նշան ըսաւ, «Երկու տղաքդ մէկէն մեռնին»։ Որովհետև ասով Հեղի չզարթեցաւ, մէկ գիշեր մը երբոր Սամուէլ տաճարը պառկեր էր, կանչեց Աստուած․ Սամուէլ Սամուէլ։ Ան կարծեց թէ Հեղին կը կանչէ, մէկէն գնաց հրամմէ, ըսաւ․ Հեղի «Չկանչեցի, ըսաւ, գնա պառկէ»։ Աս բանս իրեք անգամ եղաւ։ Ան ատենը Հեղի իմացաւ որ Աստուած կը կանչէ, պատուիրեց Սամուէլին որ եթէ նորէն կանչէ՝ պատասխանէ․ «Հրամմէ Տէր ծառայիդ»։ Չորրորդ անգամ ըսածին պէս ըրաւ․ ան ատենն Աստուած նորէն յայտնեց թէ գէշ կ'ընեն Հեղիին տղաքը, պիտի պատժուին։ Առաւօտուն Սամուէլ վախցաւ պատմելու, բայց Հեղին երդումով բերնէն առաւ ու անհոգութեամբ ըսաւ․ «Կամք տեառն օրհնեալ եղիցի»․ տղաքն ալ ամենևին իրենց ըրածէն ետ չկեցան։ Աստուած ալ ան ատենէն սկսաւ յայտնել Սամուէլին իր կամքն՝ ու օրէ օր անունը Իսրայելացւոց մէջ հռչակուեցաւ, թէ Աստուծոյ սիրելի և հաւատարիմ մարգարէն է։

## 84.

### Տապանակին գերութիւնը :

Հ. Ի՞նչ կերպով պատժեց Աստուած Ոփնին ու Փենեհէսը .

Գ. Այլազգիները Իսրայելացւոց վրայ պատե_րազմի ելան . ու առջի պարտութենէն Իսրայելա_ցւոցմէ չորս հազար հոգի ինկան . ուստի եկան Սելովէն տապանակը մէկտեղ առին որ Աստուած իրենց օգնէ . Ոփնի ու Փենեհէս տապանա_կին հետը գնացին : Այլազգիները Իսրայելացւոց կանչռտուքէն իմանալով տապանակին գալը , վախցան . « Վա՜յ մեզի , ըսին , բաներնիս լմնցաւ » . բայց մէկմէկու սիրտ տալով յուսահատութեամբ սկսան կռուիլ , ու երեսուն հազար հոգի կոտորե_ցին՝ Ոփնին ու Փենեհէսն ալ մէկտեղ . Աստուծոյ տապանակն ալ գերի առին : Ան ատենը Յեմինա_ցի մը վազեց բերաւ աս գէշ լուրը Սելով քաղաքը : Հէլին ալ ծերացած իննսունութը տարուան՝ աչքին լոյսն ալ կորսնցուցած՝ տանը դրանը քով աթոռով նստեր լուրի կը սպասէր , երբոր լսեց եղած բաները , և թէ Աստուծոյ տապանակն առ_նուեր է , աթոռին ցաւէն կռնըկին վրայ ինկաւ՝ մէջ_քը կոտրեցաւ մեռաւ : Փենեհէսի կնիկն ալ որ ան օրերը տղաբերքի մօտ էր՝ իր կեսրայրին և էր_կանը մեռնիլը լսելով ցաւը բռնեց ու տղաբերքին ատենը մեռաւ :

Հ. Այլազգիք տապանակն ի՞նչ ըրին .

Գ. Տարին Ազովտոս քաղաքը՝ Դագոն կուռ_քին տաճարը դրին : Երբոր մէկալ առաւօտ տա_ճարը գնացին՝ տեսան որ Դագոնը տապանակին առջև երեսին վրայ ինկեր է , վերցուցին : Բայց նորէն մէկալ առաւօտ տեսան որ Դագոնը գետի_

նը կործանած՝ ու միայն ոտնայարը ողջ մնացեր էր , գլուխն ու երկու ոտուըները կոտրտած մէջ տեղն ինկած , երկու ձեռքն ալ դրանը շեմին վրան ։ Բոլոր այլազգիներն ալ սկսան պատժուիլ . Նստուկ տեղերնին խոց կ'ելլէր ու կը տանջուէին , շատն ալ կը մեռնէին . իրենց արտերն ալ մկներ կը վխտային որ բոլոր վարուցաննին կ'աւրէին ։ Անոր համար տապանակն անկէց վերցուցին՝ Գէթ քաղաքը տարին՝ որ իմանան թէ տապանակն է ընողը . հոն ալ որ սկսան ըլլալ ան պատուհաս-ները , ուզեցին որ Ասկաղոն տանին , բայց Աս-կաղոնացիները դէմ կեցան ։ Ուստի եօթը ամիս տապանակը քովերնին կենալէն ետև , ուզեցին ետ Ճամբել՝ ազատիլ . ան առենը քուրմերը խոր-հուրդ տուին որ ընծայով խաւրեն . այլազգինե-րուն հինգ իշխաններուն համրանքով հինգ ոս-կիէ երաստանի պատկեր շինեն , ու հինգ ալ ոս-կիէ մուկ , որոնք տապանակին նուէրեն որ ան պատիժները վրաներնէն վերնայ . և ըսին որ տա-պանակը ոսկիէ ընծաներով նոր սայլի վրայ դնեն , ու երկու երինջ լծեն՝ զատելով իրենց աջինեկ հորթերնէն , ու տեսնեն որ շիտակ Իսրայէլաց-ւոց երկիրը կ'երթան . անով իմանան թէ ան պա-տիժները տապանակէն է ։ Ան որ ըրին՝ կովերը շիտակ գնացին Բեթսամիւս Իսրայէլացւոց եր-կիրը , երբոր անոնք ցորեն կը հնձէին ։

Հ . Երբոր տապանակը Բեթսամիւս հասաւ՝ Իսրայէլացիք ի՞նչ ըրին .

Պ . Տապանակն որ մտաւ Յովսեայ Բեթսամիւ-սացիին արտը , Իսրայէլացիք ուրախութեամբ վրան վազեցին՝ սայլէն վար առին , ու սայլը ջար-դեցին , ան երկու կովերն ալ ողջակէզ ըրին տա-պանակին առջևը ։ Ետքը հետաքրքրութեամբ մէջը նայելնուն համար՝ յիսուն հազար եօթա-նասուն հոգի Աստուծմէ պատժուելով մեռան ։

Ուստի զարհուրած՝ Կարիաթարիմի բնակչաց իմացուցին որ իրենց քաղաքը տանին. հոն շատ տարի Ամինադաբ քահանային տունը կեցաւ:

Հ. Սամուէլ ինչպէս կ'առաջնորդէր Իսրայէլացւոց.

Պ. Երբոր իր վրայ ինկաւ ժողովրդեան հոգը, սկսաւ կռապաշտութիւնը ջնջել ու աստուածպաշտութիւն սորվեցընել: Եւ ինքը սովորութիւն ըրեր էր որ տարուէ տարի ամէն տեղ կ'երթար կը հոգար, դատաստաններն կը տեսնէր, և ուրիշ ատեն միշտ Արիմաթեմ կը կենար:

Հ. Սամուէլի դատաւորութեան ատեն Իսրայէլացիք ամէն կողմանէ խաղա՞ղ էին;

Պ. Անգամ մը Իսրայէլացիք Մասեփաթ ժողված՝ Սամուէլ իրենց իրաւ որ կուտար, այլազգիներն իմացան, յանկարծ վրանին պատերազմի ելլել ուզեցին: Իսրայէլացիք վախնալով Սամուէլի դիմեցին որ Աստուծոյ աղաչէ. Սամուէլ գառ մը ողջակէզ ըրաւ. Աստուած ալ երկինքն անանկ սաստիկ գոռացուց, որ բոլոր այլազգիներն իրար անցած՝ փախչիլ սկսան: Իսրայէլացիներն ալ ետևնուն վազեցին ջարդեցին, ու իրենց ամէն քաղաքները նորէն անոնց ձեռքէն առին: Անով այլազգիներուն աչքը վախցաւ, ու մէյմ'ալ պատերազմի չելան, ինչուան Սաւուղի թագաւորութեան ատենը:

88.

## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Տապանակն ինչո՞ւ Տապանակ կտակարանաց կ'ըսուի.

Պ. Աստուծոյ պատուիրաններուն տախտակները մէջը դրուած ըլլալուն համար:

Հ. Մովսէսի երեսը ինչո՞ւ լուսաւորուեցաւ.

Պ. Մէյմը որ նշան ըլլայ թէ Աստուծոյ փառքը տեսած է. երկրորդ որ ժողովուրդը վախնայ իրմէ ու պատկառի:

Հ. Իսրայէլացիք երբոր միս ուզեցին, Աստուած ինչո՞ւ լորամարգի տուաւ.

Պ. Վասն զի լորամարգին ան կողմերն ուրիշ թռչուններէն շատ կը գտնուի ու պարարտ ալ է:

Հ. Ինչո՞ւ Մարիամ բորոտեցաւ ու Ահարոն պատիժ մը չառաւ.

Պ. Վասն զի բուն տրանջողը Մարիամն էր. Ահարոն ալ անոր դէմ չդնելովը հաւնիլ ցուցուց. անոր համար իրեն տուած յանդիմանութիւնը Աստուած հերիք սեպեց:

Հ. Թէ որ Բաղաամ կախարդ էր՝ Աստուած ինչպէս հետը կը խօսէր.

Պ. Բաղաամ սատանայի կը հարցընէր, բայց Աստուած հրեշտակի ձեռնով իր ուզածը պատասխան կուտար անոր:

Հ. Մովսէսի գերեզմանն ինչո՞ւ անյայտ մնաց.

Պ. Որպէս զի չըլլայ թէ կռապաշտութեան սիրող Իսրայէլացիներն իրեն մարմինը պաշտեն:

Հ. Յեսուայ առջին եղած բաներն ո՞ւր կը պատմուին.

ծաշունչը վերջը ինչպէս կատարուեցաւ յայտնի չը-նելով, կ'իմացընէ որ խոհեմութիւն չէր անանկ ուխտ ընելը :

Հ. Սամփսոն ինքզինքը սպաննած չըսեպուիր.

Պ. Չէ. վասն զի ինքը Աստուծոյ պատգամամբը իր ազգին բարւոյն համար գրաւ իր կեանքը. ինչպէս որ պատերազմի մէջ ալ կը պատահի :

Հ. Բենիամինի ցեղին վրայ պատերազմի գընացողներն ինչո՞ւ երկու անգամ ջարդ կերան.

Պ. Աստուած անանկ կարգադրեց որ առաջ իրենց ըրած մեղքերուն պատիժը քաշեն, իրենք իրենց մեղքերէն զղջան ու ետքը ուրիշներուն վրէժխնդիր ըլլան. մէյմըն ալ որ իրենց ուժին ու բազմութեանը չվըստահին :

Հ. Հռութայ գիրքը ո՞վ գրեց.

Պ. Հաւանական կարծիք է որ Սամուէլ մարգարէն գրած ըլլայ, որովհետեւ իր ատեններն եղած բան էր :

## 36.

## Յոբ Երանելի :

Հ. Աստուծոյ Իսրայէլացւոց տուած օրէնքը պարտաւո՞ր էին պահելու ամէն աշխարհքիս մէջ գտնուած աստուածպաշտ մարդիկ.

Պ. Չէ. վասն զի ան օրէնքները միայն Աւետեաց երկիրը ժառանգելու համար գրած էր, օրինակ Նոր օրէնքին՝ որ արքայութիւնը ժառանգելու համար տուաւ Քրիստոս : Ինչպէս որ զՅոբ երանելին ալ գովելով կը յիշէ աստուածաշունչը, որ Եսաւայ որդիներէն էր ու աստուածպաշտութեամբ զարդարուած, թէպէտ Իսրայէլացւոց օրէնքը չէր գիտեր :

Հ. Ի՞նչ բանի մէջ աւելի երեցաւ Յոբայ աստուածպաշտութիւնը.

Պ. Համբերութեան օրինակ եղաւ ամենուս: Որովհետեւ Յոբ, որ Յոբաբ ալ կ'ըսուէր, Եդովմայեցւոց երկիրը Աւսիդ գաւառը իշխան մըն էր խիստ հարուստ, աստուածավախ ու արդար: Եօթը մանչ զաւակ ունէր, իրեք ալ աղջիկ. երբոր անոնք մէկտեղ եկած կ'ուրախանային, ինքն անոնց ամէն մէկուն համար զոհ կը մատուցանէր Աստուծոյ, որ եթէ մեղք մը ըրած են՝ Աստուած թողութիւն տայ: Սատանան ետեւէ էր որ զինքն Աստուծոյ աչքէն հանէ. բայց Յոբ ամէն փորձութիւններուն համբերելով աւելի Աստուծոյ աչքը մտաւ:

Հ. Ի՞նչպէս փորձուեցաւ Յոբ.

Պ. Սատանան միտքը դնելով որ Յոբայ ըրած աստուածպաշտութիւնը սրտանց չէ, անոր համար զինքը խաբել կ'ուզէր. Աստուած ալ Յոբայ աղէկութիւնը իմացընելու համար հրաման տուաւ սատանային որ ինչ կ'ուզէ ընէ Յոբայ, միայն թէ իրեն անձին չդպչի: Օր մը յանկարծ մէկն եկաւ Յոբայ պատմեց որ “ Աւազակներ եկան՝ հերկող եզներդ ու արածող էշերը բոլոր յափշտակեցին տարին, պահապաններն ալ մեռուցին. անոնցմէ ես միայն ազատեցայ ,,: Անիկայ խօսքը չմընցուցած՝ ուրիշ մըն ալ հասաւ՝ սկսաւ ըսել թէ “ Երկնքէն կրակ իջաւ ոչխարներդ հովիւներովը այրեց. մինակ ես մնացի ,,: Երբոր աս կ'ըսէր նաեւ՝ ուրիշ մը եկաւ. “ Իրեք խումբ ասպատակաւորներ եկան, ըսաւ, ուղտերդ տարին՝ ու պահապանները մեռուցին, մինակ ես կրցայ փախչիլ ,,: Անոր ետեւէն հասաւ ուրիշ մը ու ըսաւ. “ Երբոր տղաքդ ու աղջիկներդ իրենց մեծ եղբօրը քով կ'ուտէին կը խմէին, յանկարծ փոթորիկ մը եկաւ՝ տունը կործանեց, ինծմէ զատ ամէնքը

մեռուց „ ։ Ան ատեն ելաւ Յոբ, լաթը պատռեց ու մազերը կտրեց, ինկաւ Աստուծոյ երկրպագութիւն ըրաւ, ըսելով. " Մերկ ելայ աշխարհք, և նորէն մերկ պիտի դառնամ. Աստուած տուաւ, Աստուած առաւ, ինչպէս որ կամեցաւ՝ անանկ եղաւ. Աստուծոյ անունն օրհնեալ ըլլայ „ ։ Անանկով երբոր սատանան ամօթով մնաց, սկսաւ Աստուծոյ դէմ պատճառ բերել թէ " Իրեն չդպայ, անոր համար հոգը չեղաւ. Թէ որ իր մարմնոյն ալ զէն հասցընեմ՝ տեսնես թէ ինչպէս զքեզ կ'անիծէ „ ։ Ան ատենն Աստուած թողուց որ սատանան ինչ կ'ուզէ ընէ, միայն թէ չմեռցընէ ։ Մէկէն սատանան Յոբայ վրան ոտքէն մինչուան գլուխը խոցեր հանեց. անանկ որ դուրս տեղ մը աղբիւսի մէջ նստած՝ խեցիով ինքն իր թարախները կը մաքրէր, ու միշտ փառք կուտար Աստուծոյ ։ Բայց խորամանկ սատանան Յոբայ կինը միայն ողջ թողուցեր էր, որ տեսնելով աս խեղճութիւնները՝ ալ ձանձրացած եկաւ Յոբայ ըսաւ ։ " Ինչուան երբ պիտի համբերես, որ ես ալ քու պատճառաւդ տնէ տուն բարբարական եմ եղեր. Աստուծոյ դէմ անէծք մը ըրէ որ մեռնիս, ազատիս „ ։ Յոբ պատասխան տուաւ. " Իրաւ անզգամ կնկան մը պէս խօսեցար. բարիքը վայլեցինք, չարիքին չհամբերե՞նք „ ։

Հ. Յոբայ քաշած փորձութիւնները ինչ կերպով դադրեցաւ.

Պ. Լսելով իրեն խեղճութիւնը իրեք բարեկամ թագաւորները՝ Եղիփազ Թեմանացին, Բաղդատ Սաւքեցին, Սոփար Մինեցին, եկան զինքը մխիթարելու. որոնց հետ էր նաև Եղիուս Բուզացին ։ Առջի բերան չճանչցան, բայց ետքն որ ճանչցան՝ սկսան լալ, ու վրայի լաթերնին պատռած՝ գլուխնին հող ցանած՝ եօթն օր Յոբայ առջևը պապանձած կեցան, ինչուան որ Յոբ

սկսաւ ցաւելով պատմել գլխէն անցածները, խմացնելով թէ Աստուծոյ կամքն աս է, պատժոյ համար չէ ։ Անոնք ալ սկսան պնդել թէ անմեղ մարդը անանկ բան չքաշէր ։ Յոբ կ'ըսէր թէ Աստուած մարդուն համբերութիւնը կը փորձէ. անոնք մէկ բերան դէմ կը խօսէին. ինչուան որ Աստուած ամպին մէջէն Յոբն արդարացուց՝ ու բարեկամները յանդիմանեց, և պատուիրեց իրենց որ եօթը հորթ և եօթն՝ ոչխար բերեն Յոբայ, որ իրենց համար զոհ մատուցանելով աղօթք ընէ՝ ու իրենց մեղաց թողութիւն ըլլայ ։ Ասանկով եօթը տարի չարչարութեամբ համբերելէն ետև, նորէն Աստուած տուաւ իրեն առողջութիւն. և եկան ամէն ճանչուորները ուրախակից եղան իրեն ու մէյմէկ ընծաներ տուին. Աստուած ալ առջինէն զինքն ու առջինէն աւելի հարստացուց. և նորէն եօթը մանչ՝ իրեք ալ աղջիկ տուաւ ։ Անկէ ետքը հարիւր եօթանասուն տարի ալ ապրեցաւ՝ ինչուան իրեն թոռանը թոռը տեսաւ, և երկու հարիւր քառասունութը տարուան վախճանեցաւ ։





# ԹԱԳԱՒՈՐԱՑ ԳԱՐԸ

## ԻՆՉՈՒԻԱՆ ԲԱԲԵԼՈՆԻ ԳԵՐՈՒԹԻՒՆ'Ը



### ԾԷ.

### Սաւուղայ թագաւորելը ։

Հ. Ի՞նչ պատճառաւ Իսրայէլացիք սկսան իրենց թագաւոր դնել.

Պ. Սամուէլ ծերութեան ատենը իր երկու որդիքը Յովէլ ու Աբիա իր տեղը դատաւոր դրաւ. ասոնք անիրաւութիւն ընելով ժողովուրդը կը նեղէին. որով ամէնքը մէկ եղած՝ թագաւոր ուզել սկսան ։ Սամուէլ վախնալով որ չըլլայ թէ Աստուծոյ ապերախտ գտնուին, որ ինչուան ան օրը ինքը զանոնք կը կառավարէր՝ դատաւորներու ձեռքով, Աստուծոյ հարցուց. Աստուած հաւանեցաւ, բայց առաջուց իմացուց թագաւորին իրաւունքները. երբոր անոնք յանձն առին, Աստուած Սաւուղն ընտրեց ։

Հ. Սաւուղն ինչպէս թագաւոր օծեցին.

Պ. Սաւուղայ հայրը Կիս՝ Բենիամինի ցեղէն՝ անգամ մը իր էշերը կորսնցուց, ու Սաւուղը ծառայի մը հետ ղրկեց էշերը փնտռելու. երբոր չգտան և յուսահատած ետ կը դառնային, ծառան ըսաւ որ "Երթանք Սամուէլ մարգարէին

հարցընենք »: Օրով առաջ Աստուած Սամուէլի յայտներ էր Թագաւոր օծելու մարդը: Ուստի Սամուէլ տեսածին պէս՝ ըսաւ Սաւուղին Թէ «գտնուած են էշերը». ու տարաւ կերակուրի տարաւ. հոն Սաւուղն ամենէն վեր նստեցուց, ու աղէկ կտորուանքը իրեն առջևը դնել տուաւ. ան գիշերն ալ հոն քնանեց, ու առաւօտանց գլուխը եղ լեցնելով ըսաւ. «Աստուած զքեզ Թագաւոր օծեց»: Մէկէն Սաւուղի սիրտն ալ փոխուեցաւ: Ետքը Սամուէլ զինքը հաւատացընելու համար՝ իրեք նշան տուաւ իրեն. մէյմը որ տունը դառնալու ատեն ընդ առաջ գան ըսեն Թէ էշերը գտնուեր են. երկրորդ որ ուխտի գնացող իրեք մարդու հանդիպի որ իրեն երկու հաց ընծայ տան. երրորդ որ մարգարէութիւն ընէ: Աս նշանները կատարուեցան՝ ու եղքի նշանէն առակ եղաւ՝ կրցածէն դուրս բան ընողին ըսել Եւ Սաւուղ 'ի մարգարէս:

Հ. Սաւուղին Թագաւորելը ի՞նչպէս հրատարակուեցաւ.

Պ. Սամուէլ պատուիրեց որ Սաւուղ Գաղգաղա երԹայ՝ իրեն եօԹն օր սպասէ. ինքն ալ գնաց բոլոր ժողովուրդը Մասեփաթ ժողվեց՝ Թագաւոր ընտրելու համար. վիճակ որ ձգել տուաւ, Սաւուղայ վրան ինկաւ՝ որ պահուըտեր էր. ան ատենը Աստուծոյ հարցուց՝ գտաւ. երբոր բերաւ մէջտեղ՝ Թիզ մը հասակով ամենէն բարձր էր. ժողովուրդը կեցցէ կանչեցին, Սամուէլ ալ սորվեցուց անոնց Թագաւորի իրաւունքները: Ետքը կարիճ մարդիկներ Աստուծմէ շարժած Սաւուղին քով ժողվեցան:

Հ. Սաւուղ իշխանուԹիւնը առջի անգամ ի՞նչ բանի մէջ ցըցուց.

Պ. Ամմոնացւոց Նաաս Թագաւորն եկաւ Գաղաադու երկրէն Յաբիս քաղաքին վրայ: Յաբիսա-

ցիք վախնալով ուզեցին դաշինք դնել. « Կ'ըն-դունիմ, ըսաւ, դաշինքը՝ թէ որ ձեր աջ կողմի աչքերնիդ հանեք »: Անոնք եօթն օր ատեն ու-զեցին մտածելու: Սաւուղ երբոր լսեց՝ վառուե-ցաւ աստուածային զօրութեամբ, երկու եզ կտոր կտոր ըրաւ, ու ասդին անդին Իսրայելացւոց խրկեց ըսելով, « Ով որ Սաւուղի ու Սամուէլի հետ չգայ՝ ասանկ կ'ըլլան անոր եզները »: Ասան-կով ամէնքն ալ ելան վեց հարիւր եօթանասուն հազար հոգի: Սաւուղ զանոնք երեք խումբ բաժ-նեց. մտան Ամմոնացւոց բանակը ու ջարդեցին փախուցին. ասով անանկ ժողովրդեան աչքը մտաւ Սաւուղ՝ որ կ'ուզէին մեռցնել ան մարդի-կը որ Սաւուղը բանի տեղ չէին դրած, բայց Սամուէլ արգիլեց. ետքը Իսրայելացիքը Գաղ-գաղա տարաւ, հոն նորէն Սաւուղը հանդէսով թագաւոր օծեց ու Աստուծոյ շնորհակալութեան զոհեր ըրին. և Սամուէլ ինչուան ան ատեն ար-դար կառավարութեան վկայութիւնը ժողովրդոց բերնէն առնելով և Աստուծոյ իրենց վրայ ըրած բարերարութիւնները յիշելով, խրատեց ու յոր-դորեց՝ որ իրենց թագաւորին հետ Աստուծմէ վախնան: Ու նշան՝ թէ թագաւոր ուզելնին աղէկ չէր, աղօթք ըրաւ Սամուէլ, ու շատ մը ատանց ամպի երկինքը սաստիկ գոռալով սկսաւ անձրև գալ. այնչափ որ ժողովուրդը սոսկալով մեղայ ըսին, ու Սամուէլէն աղօթք խնդրեցին:

58.

Սաւուղայ պատերազմները:

Հ. Սաւուղ հանդէսով թագաւոր օծուելէն ետև ի՞նչ պատերազմ ըրաւ.

Պ. Իրեք հազար հոգի իրեն թիկնապահ ըն-

տրեց, սահմանէն հազարը իր տղուն Յովնաթանին տուաւ ու Գաբաա խրկեց. հոն Յովնաթան զարնուեցաւ այլազգիներուն գնդին հետ որ կ'ըսուէր Նասիբ այլազգի. անկէ գրգռուեցան Փղշտացիք ու երեսուն հազար կառքով և վեց հազար ձիաւորով, և ուրիշ անթիւ մարդիկներով պատերազմի ելան։ Իսրայէլացիք ալ սկսան Սաւուղի քով ժողվիլ. Սամուէլ խօսք դրաւ որ եօթն օրէն ինքն ալ Գաղգաղա գայ ու զոհ մատուցանէն մէկտեղ։ Ան միջոցին ժողովուրդը վախնալով թշնամւոյն շատութենէն, սկսան ցրուիլ. պահուըտիլ։ Եօթն օր եղաւ՝ Սամուէլ չերևցաւ. Սաւուղ ալ չսպասեց՝ զոհը ինքն ըրաւ լմնցուց. Սամուէլ վրայ հասաւ ու սրդողելով Սաւուղի անհամբերութեան և յանդգնութեանը վրայ, ըսաւ. “Այսօր Աստուած հաստատէր պիտի քու թագաւորութիւնդ, դու չհնազանդեցար կորսնցուցիր”. ու թողուց գնաց։ Սաւուղ ալ ուզելով թշնամւոյն դէմ երթալ՝ գնաց Գաբաա, ու մնացած զօրքը համրեց՝ տեսաւ որ վեց հարիւր հոգի են. հոն կեցաւ։ Ան ատենը Փղշտացիք իրեք խումբ բաժնուած՝ բոլոր երկիրներուն սկսան տիրել. ու Իսրայէլացւոց երկրին մէջ դարբին չթողուցին, որպէս զի սուր ու գեղարդ չշինեն, և որուն որ մանգաղ կամ ուրիշ բան պէտք կ'ըլլար՝ Փղշտացւոց երկիրը կ'երթար։ Անգամ մը այլազգիք Գաբաայի քով Մաքմաս եկեր էին. օր մը Յովնաթան լռուն ժայռերուն մէջ նեղ ճամբէ մը գաղտուկ իր կապարճակիրովը գնաց անոնց վրայ՝ Աստուած քիչով ալ յաղթել կուտայ ըսելով, ու ճամբուն բերանը կեցած՝ քսան հոգի մեռուց. անկէ մէջերնին շփոթութիւն մը ինկաւ Աստուծմէ, սկսան փախչըտիլ. Սաւուղ բանը իմացաւ, ելաւ ետևնուն ինկաւ, ուրիշ պահուըտած մարդիկն ալ ելան պատերազմելու։ Ան ա-

տենը Սաւուղ ուխտ ըրաւ Աստուծոյ որ ինչուան իրիկուան քանի որ պատերազմը չէ լմնցած՝ ով որ բան ուտէ՝ մեռնի ։ Զօրքը մեղուի անտառէն կ՚անցնէին տրտնջալով ․ Յովնաթան չգիտնալով հրամանը՝ գաւազանին ծայրովը կտոր մը խորիսխ առաւ կերաւ ։ Քովիններն իմացուցին թէ հօրը հրամանին դէմ ըրաւ ․ երբոր լսեց ․ “ Աղէկն ըսաւ , թէ որ աւարէն ուտէին զօրքը , բոլոր թըշնամիները կը ջարդէին ,, ։ Իրիկուան զօրքը անօթի յոգնած , սկսան արտորնօք գետնի վրայ մորթել ոչխարներն ու արիւնոտ ուտել՝ օրէնաց դէմ ։ Սաւուղ բարկացաւ , քարի վրայ մորթել տուաւ ու անանկ մաքրած ուտեն ըսաւ ։ Ետքը ուզելով նորէն գիշերանց այլազգիներուն ետևէն երթալ , քահանային ձեռքովը հարցուց Աստուծոյ ․ Աստուած պատասխան չտալով՝ իմացուց որ մեղք մը եղած է ։ Սաւուղ վիճակ ձգել տուաւ , Յովնաթանու վրայ ելաւ վիճակը ․ Սաւուղ մեռցնել կ՚ուզէր , բայց ժողովուրդը դէմ կեցան՝ ան յաղթութեան պատճառն ինքն ըլլալուն համար ․ ու Աստուծոյ աղաչելով ան մեղքին թողութիւն խնդրեցին ։ Անկէ ետքը ուրիշ շատ յաջող պատերազմներ ըրաւ Սաւուղ չորս կողմի ազգերուն հետ ։

Հ ․ Սաւուղ Աստուծոյ սիրելի մնա՞ց ինչուան ետքը ․

Պ ․ Չէ ․ անգամ մը Սամուէլ մարգարէն Աստուծոյ անունով հրամայեց Սաւուղին որ երթայ Ամաղեկացիները ջարդէ , ամենեին բան մը չապրեցնէ , որովհետև անոնք պատերազմ ըրեր էին Իսրայէլացւոց հետ Եգիպտոսէ ելլելու ատենները ։ Սաւուղ չորս հարիւր երեսուն հազար զօրքով գնաց՝ ջարդեց ու ողջ պահեց անոնց Ագագ թագաւորը , և անոնց կենդանիներուն աղէկները ։ Անոր համար սաստիկ բարկացաւ Աստուած ,

ու ըսաւ Սամուէլի, “Զղջացայ, որ Սաւուղը թագաւոր դրի”: Սամուէլ ան գիշերը ամբողջ կ'աղօթէր Աստուծոյ. ու առաւօտանց գնաց տեսաւ որ Սաւուղ Ամաղեկացւոց կողոպուտներէն Աստուծոյ զոհ կը մատուցանէր. Սամուէլը տեսածին պէս՝ դիմաւորեց ու ըսաւ. “Ահա Աստուծոյ հրամանը կատարեցի”: Սամուէլ “Հապա ի՞նչ է, ըսաւ, ան ոչխարներուն ու կովերուն ձայնը որ ես կը լսեմ”: Սաւուղ “Աղէկները պահեցի, ըսաւ, որ Աստուծոյ զոհ ընենք”: Սամուէլ աստուածային նախանձով վառուած՝ չարաչար յանդիմանեց զինքը, ըսաւ. “Զոհէն աւելի հաճոյ է Աստուծոյ հնազանդութիւնը. արհամարհեցիր զԱստուած, արհամարհուիս Աստուծմէ: — Մեղայ, ըսաւ Սաւուղ, եկու մէկտեղ Աստուծոյ աղօթք ընենք որ մեղքս թողու”: Սամուէլ մտիկ չըրաւ. ան ատեն Սաւուղ վերարկուէն բռնեց որ չերթայ, պատռեցաւ կտորը ձեռքը մնաց. դարձաւ Սամուէլ ըսաւ. “Աստուած պատռեց ու առաւ թագաւորութիւնդ որ քեզմէ աղէկ մարդու տայ”: Ետքը տեսաւ որ խիստ շատ կ'աղաչէ՝ ժողովրդեան առջև պատիւը չկորսնցնելու համար, դարձաւ մէկտեղ աղօթք ըրաւ: Ետքէն Ագագ թագաւորին առջևը բերել տուաւ. երբոր դողալով եկաւ, Սամուէլ զարկաւ մեռուց, ըսելով, “Ինչպէս քու սուրդ այնչափ մայրեր անորդի ըրեր է, այնպէս ալ հիմա քու մայրդ քեզմէ զրկուի”: Ետքը ելաւ Արիմաթեմ գնաց, ու մէյմըն ալ Սաւուղի հետ չտեսնուեցաւ:

39.

Դաւթի օծումը։

Հ. Աստուած զո՞վ ընտրեց Սաւուղայ տեղ.

Գ. Սամուէլին հրամայեց որ Բեթղեհէմ երթայ, Յուդայի ցեղէն Յեսսէին տղոցը մէկը թագաւոր օծէ. և Սաւուղէն գաղտուկ ըլլալու համար Աստուած ըսաւ՝ որ ձայն հանէ թէ զոհ ընծայելու գնացեր է։ Հոն ըսաւ Սամուէլ որ Յեսսէն ալ գայ զոհին. ետքը ուզեց որ Յեսսէն տղաքը մէկիկ մէկիկ իր առջևը բերէ որ տեսնէ։ Երբոր տեսաւ մեծ տղան՝ Եղիաբը, Սամուէլ հաւնեցաւ, բայց Աստուած իրեն ըսաւ թէ "Անիկայ չէ, վասն զի մարդ երեսին կը նայի, Աստուած սրտին"։ Ուրիշ վեցն ալ եկան, չհաւնեցաւ. Հարցուց Յեսսէին՝ իմացաւ որ պզտիկ մէկն ալ կայ՝ ոչխար կ՚արածէ, բերել տուաւ ու տեսաւ որ շնորհալի տղայ մըն էր Դաւիթ անունով, որն որ Աստուծոյ ուզելովը թագաւոր օծեց. և Աստուծոյ հոգին Սաւուղէն հեռացաւ՝ Դաւթի եկաւ. Սաւուղ ալ դիւահարեցաւ ու ատեն ատեն կը տանջուէր։

Հ. Դաւիթ օծուելէն վերջը ո՞ւր կը կենար.

Գ. Սաւուղի քով. վասն զի Սաւուղին համար քնար զարնող մը փնտռեցին որ դիւահարած ատենը քնարին ձայնովը հանգստանայ. իմացան որ Դաւիթ աղէկ քնար զարնել գիտէ, տարին Սաւուղին՝ որ առջի բերան շատ սիրեց զինքը ու իրեն կապարճակիր ալ ըրաւ։ Բայց երբոր Դաւիթ սպաննեց զԳողիաթ, ու անով ժողովրդեան առջև անունն ածնեցաւ, Սաւուղ սկսաւ ատել զինքը։

Հ. Գողիաթն մի՛ է, ու ինչպէս սպաննուե-
ցաւ.

Պ. Հսկայ մարդ մըն էր այլազգիներուն բա-
նակին մէջ, վեց կանգուն ու մէկ թիզ երկայն.
հագած երկրթէ զրահին ծանրութիւնը հարիւր
քսան հօխայ: Երբոր անգամ մը Սաւուղ այլազ-
գիներուն դէմ պատերազմի գնաց, պատերազմը
չսկսած՝ բանակէն դուրս ելաւ Գողիաթն ու Իս-
րայելացւոց բանակը քամահրելով կը կանչէր.
“Հանեցէք դիմացս մէկը որ մինակ ծեծկուինք.
և ով որ յաղթէ՝ յաղթութիւնն ան կողմին ըլ-
լայ„: Սարսափեցան Իսրայելացիք, ու քառա-
սուն օր կեցան բանակ բանակի դիմաց, և Գո-
ղիաթ ամէն օր կ'ելլէր կը նախատէր Իսրայելացի-
ները. Սաւուղ ալ բանիս սիրտ ընողին իր աղջիկը
խոստացաւ տալու ու զինքը անոր աղատ ընելու:
Ան օրերը Յեսսէին Դաւիթը բանակ ղրկեց որ ի-
րեն իրեք եղբայրներուն հաց տանի, ու տեսնէ
թէ ինչպէս են: Դաւիթ երբոր գնաց ու տեսաւ
զԳողիաթ՝ վառուեցաւ սիրտն ու սկսաւ մէկուն
մէկալին հարցընել, ու արհամարհել զինքը: Եղիաբ
իր մեծ եղբայրը չեխեց որ հպարտութեամբ իր
հասակէն ու կարողութենէն վեր բանի ձեռք կ'ու-
զէ զարնել: Բայց Դաւիթ Աստուծոյ սիրովը վա-
ռուած, հոգը չըրաւ. ինչուան Սաւուղ լսեց՝ ու
առջևը կանչեց, և տեսնելով որ պզտիկ է՝ “Վախ-
նամ թէ չկրնաս ըսաւ„: Դաւիթ պատասխան
տուաւ. “Ես իմ հօրս ոչխարներն արածելու
ատեն երբոր առիւծ կամ արջ վրայ կուգար ու
ոչխար կը յափշտակէր, ես կ'աղատէի. ու թէ որ
վրաս ելլէր, վիզէն կը բռնէի՝ կը սպաննէի. յու-
սամ՝ որ Աստուծով հիմայ ալ անանկ կ'ընեմ„:
Ան ատեն Սաւուղ իր զէնքերը հագցուց անոր.
Դաւիթ սովոր չըլլալով՝ երթալու ատեն եր-
կու իրեք անգամ սահեցաւ. ուստի հանեց վրայ-

էն, « Անոնցմով չեմ կրնար երթալ ». ըսաւ. ու իր գաւազանը ձեռքն առած, և պարսատիկը, հինգ քար ալ մախաղին մէջը դրած Գողիաթին դիմացն ելաւ: Գողիաթ աս որ տեսաւ, ծիծաղեցաւ՝ ըսելով. « Ես շո՞ւն եմ որ գաւազանով ու քարով կուգաս վրաս »: Դաւիթ պատասխան տուաւ. « Շնէն ալ ցած ես »: Ան ալ ըսաւ. « Եկուր որ դիակդ թռչուններուն գազաններուն կերակուր ընեմ: — Դուն քու զէնքերուդ վստահեցեր ես, ըսաւ Դաւիթ, բայց ես Աստուծոյ զօրութեանը ապաւիներ եմ, ու կը յուսամ որ հիմա գլուխդ կ'առնեմ, և բոլոր այլազգիներուն մարմինն այսօր թռչուններուն գազաններուն կուտամ որ ուտեն. և ամէնքն իմանան թէ մէկն է ճշմարիտ Աստուածն, որ առանց զէնքի երբ կ'ուզէ կը յաղթէ »: Աս խօսքերէն ետքն երբոր սկսան մէկմէկու մօտենալ՝ մէկէն Դաւիթ պարսատիկով քար մը նետեց, ու Գողիաթին ճակտին զարկաւ որ փռուեցաւ ինկաւ, վազեց Դաւիթ վրան ցատքեց, քաշեց Գողիաթին սուրն ու կտրեց անոր գլուխը: Այլազգիները տեսածնուն պէս՝ փախչող փախչողի եղան. Իսրայէլացիք ալ ետևնին ինկան զարկեցին ու բոլոր բանակն առին:

## 60.

### Սաւուղայ նախանձը Դաւթի վրայ:

Հ. Սաւուղ ինչ փոխարէն ըրաւ Դաւթի՝ Գողիաթն սպաննելուն համար.

Պ. Ասկէ ետքը վրան զարմանալով քովը պահեց ու զօրագլուխ ըրաւ. Յոնաթան ալ հետը սաստիկ սիրով կապուած՝ իր զինուորական հագուստները բոլոր անոր տուաւ: Բայց ետքը երբոր պատերազմէն կը դառնային՝ ժողովուրդն

սկսան շնորհաւորելով դիմացնին ելլել. ու կնիկ-ները պար բռնած՝ ծնծղաներով կ'երգէին ու կ'ը-սէին. «Սաւուղ հազար ջարդեց, Դաւիթ տասը հազար»: Ասոր վրայ Սաւուղ՝ նախանձելով սկսաւ ծուռ աչքով նայիլ Դաւիթի վրայ ու մեռ-ցնելու հնարք մտածել. Օր մը դիւահարու-թիւնը բռնած՝ երբոր Դաւիթ առջեւը քնար կը զարնէր, յանկարծ գեղարդը վրան նետեց. բայց Դաւիթ երկու անգամ՝ փախչելով ազատեցաւ:

Հ. Սաւուղ ի՞նչ հնարք բանեցուց որ Դաւիթն սպաննէ.

Հ. Որովհետեւ ինչպէս որ խոստացեր էր՝ Մե-րովբ իր մեծ աղջիկը Դաւիթի պիտի տար. բայց որպէս զի Դաւիթը վտանգի մէջ ձգէ, ուզեց որ առաջ ուրիշ կտրիճութիւն մ՚ ալ ընէ. Դաւիթ՝ «Արժանի չեմ, ըսաւ, թագաւորի փեսայ ըլլա-լու»: Սաւուղին յոյսը պարապ ելլելով՝ ուրիշի հետ կարգեց Մերովբը. եաքը իմանալով որ իր մէկալ Մեղքող աղջիկը Դաւիթի հաւներ է՝ նորէն Դաւիթը փորձանքի մէջ ձգել ուզեց որ սպան-նուի այլազգիներէն. ու ըսաւ թէ «Մեղքող աղջիկս քեզի տամ, բայց առաջ գնա հարիւր այ-լազգի մեռցուր»: Առջի բերանը եա կեցաւ Դա-ւիթ, բայց եաքը Սաւուղայ մարդիկն ալ որ շատ յորդորեցին՝ գնաց քաջութեամբ Սաւուղին ու-զածը կատարեց, ու Մեղքողը կին առաւ:

Հ. Դաւիթ Մեղքողը առնելէն ետքը՝ Սաւուղ ինչպէս հետը կը վարուէր.

Պ. Երթալով Դաւիթ ամենուն սիրելի եղաւ, և Յովնաթանին միջնորդելովը Սաւուղայ հետ ալ բարեկամացաւ: Բայց օր մը նորէն Սաւուղին դիւահարութիւնը բռնած՝ Դաւիթ քնար որ կը զարնէր՝ Սաւուղ գեղարդը վրան նետեց. Դաւիթ անկէ փախաւ իր տունը. Սաւուղ գիշերանց տանը դուռը առնել տուաւ որ առաւօտանց սպան-

նուի ։ Մեղքող գաղտուկ պատուհանէն վար ի-ջեցուց Դաւիթն ու ազատեց ․ ետքը պաճուճա-պատանք մը չինեց՝ Դաւթի պառկած տեղը դրաւ ու մարդիկներուն ըսաւ թէ հիւանդ է ։ Սաւուղ հրամայեց որ մահճովը բերեն իրեն, ու երբոր իմացաւ Մեղքողին խաբէութիւնը՝ Դաւթի ե-տևէն իրեք անգամ մարդ ղրկեց Նաւաթհռամա Սամուէլի քով ուր որ փախեր էր ․ ան մարդիկը կ՚երթային հոն կը մարգարէանային ։ Բարկացաւ Սաւուղ, ինքն ալ ելաւ գնաց ու մարգարէացաւ, ինչուան որ Դաւիթ անկէ ալ փախաւ՝ Յովնա-թանին գնաց որ ասի Սաւուղին թշնամութեանը համար խօսի ։ Երկար խօսեցան մէկտեղ, ճար փնտռեցին տեսան որ չըլլար ․ Յովնաթան խոր-հուրդ տուաւ որ բոլորովին Սաւուղին քովէն հեռանայ ․ և սաստիկ լալով պագնուելով մէկմէկէ բաժնուեցան ։

Հ ․ Դաւիթ Սաւուղէն որ փախաւ ո՞ւր գնաց ․

Պ ․ Շիտակ գնաց Նոմբա՝ Աքիմելէք քահանա-յին հանդիպեցաւ իր մարդիկներովը, ու ձևա-ցուց թէ թագաւորական բանի մը համար ծա-ծուկ ղրկուած է ։ Երբոր հաց ուզեց անկէ, ու-րիշ հաց չգտնուելուն՝ հինգ օրհնած առաջաւո-րաց հաց առաւ ․ Գողիաթի սուրն ալ որ առա-ջուց Աստուծոյ նուիրած էր՝ վրան առաւ ․ ան միջոցին հոն գտնուեցաւ Դովէկ ասորին որ Սա-ւուղայ ջորիները կ՚արածէր ։ Իսկ Դաւիթ գնաց Գեթացւոց Անքուս թագաւորին քով ․ հոն ալ երբոր ճանչցուեցաւ թէ Գողիաթը մեռցնողն է՝ վախցաւ ու սկսաւ առջևնին խենթ ձևանալ, ին-չուան որ թագաւորը վռնտեց զինքը ։ Դաւիթ Մովաբացւոց երկիրը գնաց ․ հոն եկան նաև հայ-րը՝ մայրը՝ եղբայրքը և ուրիշ չորս հարիւրի չափ փախստական մարդիկ, որոնց Դաւիթ զօրավար-ութիւն կ՚ընէր ։

Հ. Երբոր Դաւիթ Սաւուղէն բոլորովին բաժնուեցաւ՝ Սաւուղ ի՞նչ ըրաւ.

Պ. Սաստիկ կատղեցաւ. նախ Դովէկ ասորիէն իմանալով որ Աքիմելէք Դաւթի պաշտպանութիւն է ըրեր՝ առջեւը կանչեց զինքն ու բոլոր քահանաները երեք հարիւր հոգի, ու հրամայեց որ աչքին առջեւ սպաննեն զանոնք: Մարդիկը վախցան քահանաներուն ձեռք վերցնելու. ան ատեն Դովէկ ասորիին ըսաւ. անիկայ մէկէն զամենքը ջարդեց: Ետքը մարդ խրկեց Նոբայ քահանաներուն քաղաքն ու զամենքը թրէ անցընել տուաւ, միայն Աքիմելէքին մէկ տղան Աբիաթարը Դաւթի քով փախաւ: Անկէ ետեւ Սաւուղ ալ զօրքով սկսաւ Դաւթի ետեւէն իյնալ, Դաւիթ ալ փախչելով ամէն վտանգներէն Աստուծով կ'ազատէր: Երկու հեղ ալ այնպէս յաջողեց Աստուած, որ Սաւուղ Դաւթի ձեռքն ինկաւ, բայց Դաւիթ անյիշաչարութեամբ թողուց:

Հ. Առջի անգամ ի՞նչպէս եղաւ որ Սաւուղ Դաւթի ձեռքն ինկաւ.

Պ. Անգամ մը Անձուկ Գաթթայ ըսուած այրին մէջ կեցեր էր Դաւիթ. Սաւուղ երեք հազար զօրքով երբոր բռնելու կ'երթար, մօտ տեղ ճամբուն վրայ այրի մը մէջ մտաւ հանգչելու. Դաւթի մարդիկն իմացան, ըսին ըսել թէ Աստուած մատնեց որ ոխդ առնես: Դաւիթ զգաց որ կը քնանար, սիրտ ըրաւ՝ Սաւուղին քովը գնաց. Թէպէտ քովինները շատ վրայ կուտային որ սպաննէ, բայց ինքն Աստուծմէ օծուած է ըսելով չըդըպաւ, միայն վերարկուին ծայրէն կտրեց առաւ: Երբոր Սաւուղ չիմանալով ելաւ կ'երթար, Դաւիթ ետեւէն կանչեց. “Տէր իմ արքայ, ի՞նչու կը հաւտաս Դաւիթ քեզ մեռցընել կ'ուզէ ըսողներուն ,,. ու ցուցընելով կտորը՝ յայտնեց իր միտքն ու ըսաւ. “Աստուած մեր դատաստանը կարէ ,,:

կողմնակցութեան իրենց նենգութեամբն զատ ուրիշ բան տալ չէին ուզեր։ Բայց Դաւիթ ամենուն հաւասար բաժնեց. և աս օրէնքը միշտ մնաց Իսրայելացւոց մէջ որ կողոպուտը՝ քաղաքը պահողին և պատերազմի գնացողին հաւասար բաժնուի։

62.

Սաւուղայ մահը։

Հ. Անքուսայ Իսրայելացւոց դէմ ըրած պատերազմը ինչ վերջ ունեցաւ.

Պ. Սաւուղ անոր դէմ ելաւ Գելբուէ լերը։ Հարցուց Աստուծոյ, պատասխան չառաւ, անոր համար վախը սիրտը տիրեց. և որովհետև ինքը գիւթերը՝ կախարդները բոլոր ջնջեր էր, հագուստը փոխեց ու գիշերանց կախարդ կնկան մը գնաց՝ ուզեց որ Սամուէլը իրեն ցուցընէ, որ նոր մեռած էր։ Վհուկը չճանչնալով աղէկ բերանը յանձն չառաւ՝ Սաւուղ արգիլեց ըսելով։ Բայց ետքը երևցուց Սամուէլն որ սրդողելով Սաւուղին ըսաւ, “Ինչու զիս աշխատցուցիր. Աստուած քեզ երես ձգեր է, վասն զի պիտի ջարդուիք այլազգիներէն՝ անհնազանդ ըլլալնուդ համար„։ Սաւուղ սարսափած գետինն ինկաւ։ Կինը երբոր իմացաւ թէ Սաւուղն է՝ վախցաւ. ետքը հորթ մը ունէր՝ մորթեց. ուրիշ բաներ ալ պատրաստեց, որ Սաւուղ շատ դժուարութեամբ նստաւ կերաւ ու բանակը դարձաւ։ Առաւօտանց պատերազմ սկսաւ, Իսրայելացիք ջարդուեցան, Սաւուղին իրեք տղաքն ալ ինկան, և ինքը նետով զարնուելով յուսահատած ըսաւ կապարճակրին որ իր սրովը մեռցընէ, որ չըլլայ թէ այլազգիներէն մեռած սեպուի. կապարճակիրն երբ ետ քաշուեցաւ, Սաւուղ իր սրոյն վրայ ինկաւ մեռաւ։

կապարճակիրն ալ ցաւէն ինքզինքը մեռուց : Երկրորդ օրն այլազգիները գտան Սաւուղին ու իրեն տղոցը մարմինը . Սաւուղի գլուխը կտրեցին առին , զէնքերը Դագոնի տաճարը տարին . մարմինները ալ Բեթսան քաղքին պարսպէն կախեցին : Երբոր գիշերանց Գաղաադու Յաբիս քաղքին կորիճները գողցան թաղեցին . քաղաքացիներն ալ փրանին եօթն օր սուգ կատարեցին , որովհետև իրենք ալ Բենիամինի ցեղէն էին :

Հ . Դաւիթ ուրախացա՞ւ Սաւուղայ մահուանը վրայ .

Պ . Մանաւանդ թէ մեծ ցաւ ցըցուց . ինչպէս իրեն պէս առաջինի սիրտ ունեցողի մը կը վայլէր . և երբոր երկու օրէն ետև մէկ Ամաղէկացի մը Սիկելակ Դաւթի առջևն ելաւ , իբր թէ Իսրայելացւոց բանակէն ազատած , Դաւիթ հարցուց անոր պատերազմին համար . անիկայ պատասխան տուաւ թէ “ Ես տեսայ որ Սաւուղ իր նիզակին վրայ կռթընած՝ ինքզինքը մեռցընել կ'ուզէր , զիս տեսաւ , ինծի աղաչեց , ես ալ մեռուցի , և գլխու թագն ու ապարանջանները հրամանոցդ բերի ” : Աս բանս լսելուն պէս Դաւիթ՝ սրտին ցաւէն վրայի լաթը պատռեց . և ինչուան իրիկուն իր մարդիկներուն հետ սուգ կեցաւ՝ լացաւ՝ ծոմ պահեց , ու Սաւուղայ և Յովնաթանու վրայ ցաւալից ողբ մը ըրաւ : Իրիկուան ան մարդը կանչեց , ըսաւ . “ Ի՞նչպէս դու չվախցար Աստուածմէ օծուած մարդուն ձեռք վերուցիր ” . և հոն մէկէն զինքն սպաննել տուաւ ու ըսաւ . “ Արիւնդ քու գլուխդ , դու անանկ ըսիր ” : Երբոր ինքն Աստուծոյ հարցընելով գնաց Քեբրոն Յուդայի երկիրը :

63.

Դաւիթ Թագաւորութեան սկիզբը։

Հ. Սաւուղէն ետեւ ո՞վ եղաւ թագաւոր.

Պ. Յուդայի ցեղը Դաւիթն իրենց թագաւոր օծեցին, որ եօթը տարի ու կէս միայն անոնց իշխեց. միւս ցեղերուն վրայ Աբեններ Սաւուղի զօրապետն անոր Յեբուսթէ տղան թագաւոր դրաւ։ Անոր համար միշտ կռիւ պակաս չէր մէջերնէն, և Դաւիթ օրէ օր առաջ կ'երթար։

Հ. Ի՞նչ ճամբով տիրեց Դաւիթ բոլոր Իսրայէլացւոց.

Պ. Աբեններ պատճառով մը Յեբուսթէին հետ աւրուելով ետեւէ էր որ բոլոր թագաւորութիւնը Դաւթի դարձընէ. բայց Յովաբ Դաւթի զօրապետը վախնալով որ Աբեններ իր տեղը կ'անցնի, երբոր անիկայ Դաւթի քովէն հրաժարեր կ'երթար իշխանները համոզելու որ Դաւթի հնազանդին, ճամբէն ետ կանչել տուաւ՝ իբրև թէ իրեն գաղտուկ հարկաւոր խօսք մը ունի ըսելու, և պատուելու տեղն յանկարծ զարկաւ մեռուց։ Շատ ցաւեցաւ Դաւիթ ու Յովաբայ սաստիկ սըրդողեցաւ։ Երբոր լսեցին Իսրայէլացիք, ամենուն սիրտը կոտրեցաւ՝ յուսահատեցան. ան տեն երկու զօրապետ գնացին գաղտուկ Յեբուսթէն քնոյն մէջ մորթեցին ու գլուխը Դաւթի ընծայ բերին։ Դաւիթ շնորհակալ ըլլալու տեղ՝ բարկացաւ ու մէկէն երկուքն ալ սպաննել տուաւ, և Յեբուսթէին գլուխը պատուով թաղեց։ Ետքը որովհետև Սաւուղայ որդիներէն միայն Մեմփիբոսթէն մնացեր էր՝ Յովնաթանու տղան՝ ոտքը կաղ, անիկայ Դաւիթ քովը առաւ, իր սեղանէն կը կերցնէր։ Իսրայէլացիք ալ տեսնելով Դաւթի

աղէկութիւնները՝ անոնցմէ մեծամեծները Գեբրոն քաղաքը Դաւթի քով եկան, և զինքը նորէն բոլոր Իսրայելացւոց վրայ Թագաւոր օծեցին ։

Հ. Դաւիթ բոլոր Իսրայելացւոց տիրելէն ետքը առջի գործքը ո՞րն եղաւ.

Պ. Մեկէն գնաց Երուսաղէմ քաղաքը պաշարեց. մէջի Յեբուսացիքը ծաղր կ'ընէին՝ ըսելով թէ "Քաղքիս մէնակ կոյրերն և կաղերը բաւական են քեզի դէմ դնելու"։ Դաւիթ իր զօրապետներուն ըսաւ ։ "Ով որ առաջ բերդէն վրայ վազէ՝ առնէ, անիկայ իմ զօրապետս ըլլայ"։ Վազեց Յովաբ՝ ելաւ բերդին վրայ. և զօրապետութեանը մէջ հաստատուեցաւ ։ Դաւիթ ալ հոն նորէն քաղաք շինեց, մէջն ալ Թագաւորական պալատ, ու հոն գնաց նստաւ ։ Ասկէ ետև սկսաւ Փղշտացւոց դէմ քաջութեամբ պատերազմիլ, մեծամեծ յաղթութիւններ ըրաւ, և զանոնք որ հարկ կ'առնէին Իսրայելացւոցմէ իրեն հարկատու ըրաւ, ու շատ ոսկի, արծաթ, պղինձ ձեռք ձգեց անոնցմէ ։

Հ. Փղշտացւոց դէմ պատերազմելու ատեն ի՞նչ երևելի գործք ըրաւ Դաւիթ.

Պ. Այլազգիները Բեթղեհէմ ժողվեր էին. Դաւիթ սաստիկ պատերազմին մէջ թշնամիներուն յաղթելու ատեն՝ աւելի մեծ քաջութեամբ իրեն անձին ալ յաղթեց ։ Վասն զի սաստիկ ծարաւելով "Ո՜վ էր թէ, ըսաւ, մէկը Բեթղեհէմի դրան քովի հորէն ինծի ջուր մը բերէր"։ Ան որ լսեցին իրեք քաջ զինուորներ՝ վազեցին թշնամիներուն բանակը ձեղքեցին ու ջուրը բերին ։ Դաւիթ երբոր տեսաւ՝ չխմեց. "Քա՛ւ լիցի որ ուրիշի արիւնը խմեմ" ըսաւ, ու Աստուծոյ նուիրեց ։

64 .

Տապանակին փոխադրութիւնը ։

Հ . Դաւթի ատեն տապանակը ո՞ր քաղաքը կը կենար .

Պ . Երբոր Աստուած ամէն կողմանէ կը յաջողէր Դաւթի գործքերը , ուզեց Դաւիթ որ տապանակն ալ Կարիաթարիմէ Երուսաղէմ բերէ ։ Ուստի եօթանասուն հազար հոգւով գնաց հանեց Ամինադաբին տունէն՝ նոր սայլի վրայ դրած՝ առջևէն կերպ կերպ նուագարաններ զարնելով ինքն ալ հագուած կապուած առջևէն պար կը բռնէր ։ Երբոր հասան Քեղոն ըսուած տեղը կովերուն մէկը թօթուելով սայլը ծռեց . ան ատեն Ոզա զաւակին՝ Ամինադաբի տղան որ տապանակին քովէն կ'երթար , ձեռքովը բռնեց տապանակն որ չիյնայ , ու մէկէն ինքն ինկաւ մեռաւ ։ Ասկէ Դաւիթ վախնալով տապանակն իր տունը տանելու՝ Աբեդդար Գեթացիին տունը տանել տուաւ ։ Իրեք ամսէն լսեց որ տապանակին պատճառովը օրհներ է Աստուած Աբեդդարին տանն ամէն բարիքներով , ինքն ալ սիրտ առաւ , ու առջինէն աւելի հանդիսով բերաւ , անոր համար շինած նոր խորանին մէջ դրաւ ։

Հ . Դաւթի կը վայլէ՞ր որ տապանակին առջև պար բռնէ .

Պ . Կը վայլէր . վասն զի անով ժողովուրդը կը յորդորուէին ձեռքերնէն եկած պատիւն ընելու Աստուծոյ ։ Բայց Մեղքող իր կինը պատուհանէն տեսնելով իրեն անշնորհք երեցաւ . երբոր Դաւիթ տուն դարձաւ , առջևն ելաւ ըսաւ . « Ի՞նչպէս փառաւոր կ'երևնար Իսրայէլացւոց թագաւորը՝ որ իր ծառաներուն առջևը սօթառուած կա‑

քաւշի մը պէս կը ցատքէր ,, ։ Դաւիթ՝ " Ըսանկ է, քաւ, թող քու աղջկդ նախատուիմ. բայց Աստուծոյ առջև քու հօրդ անէծն աւելի ընդունելի կ'ըլլայ ,, ։ Աստուած ալ Մեղքողին ըրածին պատիժ՝ տղայ չտուաւ իրեն ։ Ետքը Դաւիթ կ'ուզէր որ փառաւոր տաճար մըն ալ շինէ . բայց Աստուած Նաթան մարգարէին ձեռքով իմացուց թէ իր տղան պիտի շինէ ։

Հ. Դաւիթ ինչ պատճառաւ Ամոնացւոց դէմ պատերազմ բացաւ .

Պ. Նաաս Ամոնացւոց թագաւորն որ մեռաւ՝ Դաւիթ անոր Անոն տղուն երկու դեսպան խրկեց որ ցաւակից ըլլան ։ Անոն իր իշխաններուն խորհրդովն անդեսպանները խայտառակեց, մօրուքնին ածիլել տուաւ, և լաթերնին ինչուան կէս մէջքը կտրած՝ նախատինքով վռնտեց քովէն, կարծելով թէ Դաւիթ զանոնք լրտեսութեան համար խրկեր է ։ Դաւիթ երբոր լսեց՝ իրենց իմացուց որ Երիքով կենան ինչուան մօրուքնին բուսնի . և ինքն ուզելով Ամոնացւոց հատուցումն ընել՝ Յովաբ զօրապետը վրանին խրկեց ։ Անոնք առաջուց կասկածելով շատ զօրք իրենց օգնութիւն բերեր էին, Յովաբ զարնուեցաւ ու եօթը հազար պատերազմական կառք, և քառասուն հազար ձիաւոր զօրք ան պատերազմին մէջը կոտորեց՝ միացողներն ալ Դաւիթի հարկատու ըրաւ ։ Ետքը Ամոնացիք նորէն շարժեցան . Դաւիթ մէյմ՝ ալ խրկեց Յովաբն որ ինչուան Ռաբաթ անոնց թագաւորական քաղաքը հասաւ պաշարեց՝ և կանչեց Դաւիթն որ եկաւ քաղաքը մտաւ . չարաչար տանջանքով սպաննեց մէջինները ու շատ կողոպուտ առաւ, և թագաւորական գանձը որ տաղանդ մը ոսկիի ծանրութիւն ունէր՝ իբր տասնըհինգ հօխա՝ ազնիւ քարերով զարդարուած, Դաւիթ սկսաւ բանեցընել ։

65.

Դաւիթի մեղքն ու ապաշխարութիւնը :

Հ. Դաւիթ իր կենացը մէջ ամենեւին Աստուծոյ դէմ բան չըրա՞ւ.

Պ. Ինչպէս որ յայտնի է, աշխարհքիս մէջ հանգստութիւնը Աստուծմէ կը հեռացնէ ըզմարդ : Երբոր Դաւիթ ալ ամէն կողմանէ հանգիստ թագաւորութիւն կը քշէր, օր մը իրիկուան դէմ տանիքին վրայ հանգչելու ատեն յանկարծ տեսաւ կին մը որ դիմացը աւազանին քովը կը լուացուէր. Դաւիթի կիրքը շարժեցաւ ու խմանալով որ իր զօրապետներէն մէկուն՝ Ուրիա Քետացիին կինն է Բերսաբէն, իրեն կանչեց. և մեղքը կատարելէն ետև, անիրաւութեամբ Ուրիա Քետացին ալ մեռցընել տուաւ, Յովաբայ գաղտուկ թուղթ գրելով որ կամքը պատերազմին վտանգաւոր կողմը դնէ զինքը որ մեռնի : Բերսաբէն երբոր իմացաւ իր էրկանը մեռնիլը՝ սուգ մտաւ, ու ետքը Դաւիթ զանիկայ իրեն կին առաւ :

Հ. Դաւիթ ի՞նչպէս ապաշխարեց իր մեղքը.

Պ. Աստուած խրկեց Նաթան մարգարէն որ առակով մը անոր ըրած մեղքերն երեսը տուաւ. "Քաղքի մը մէջ ըսաւ՝ հարուստ մարդ մը ու աղքատ մը կար. հարուստն շատ ոչխարներու տէր էր, իսկ աղքատը միայն գառնուկ մը ունէր որը [illegible] կը [illegible] : Անգամ մը հիւր մը եկաւ հարուստին. ան մարդս խնայելով իր ոչխարներուն՝ գնաց ան խեղճ աղքատին գառնուկն առաւ ու հիւրին կերակուր ըրաւ,, : Աս որ լսեց Դաւիթ՝ բարկացաւ, Նաթանայ խօսքը բերնէն առնելով "Աստուած վկայ որ, ըսաւ, մեռնելու արժանի է աս մարդը, պէտք է որ եօթը հեղ վճարէ ան

66.

Աբիսողոմ ապստամբիլը։

Հ. Դաւթին ծերութեան ատեն քաշած երկրորդ վիշտն ո՞րն եղաւ.

Պ. Աբիսողոմին ապստամբութիւնը. վասն զի Գեսուրէն դառնալէն ետքը Յովաբի ձեռքովը գնաց հօրը հետ հաշտուեցաւ, ու սկսաւ ապստամբութեան միջոցով ժողովրդոց սիրտը վաստըկիլ։ Ամէն օր ձիով՝ ծառաներն առջեւէն, կանուխ դուռը կ'երթար, ու ամէն եկողին առջեւը կ'ելլէր՝ սիրով կը հարցնէր. "Ուսկի՞ց ես, ի՞նչ կ'ուզես", ու թէ որ պէտք մը ունէի՞ն՝ կը հոգար. Եւ եթէ մէկը իրեն ծառայէր, շուտ մը Աբիսողոմ կը գրկէր զինքը կը պագնէր։ Չորս տարի ասանկ ընելով ժողովրդեան սիրտն իրեն քաշեց. ետքը հօրմէն հրաման ուզեց որ Քեբրոն երթայ՝ իր ուխտը կատարէ, որ փախչելու ատեն ըրեր էր։ Եւ երկու հարիւր հոգի մեծերէն հետն առած գնաց, ու հոն իմացուց իր միտքը. մէկէն ամէնքը հաւանեցան. Աքիտոփէլ Դաւթի մեծ խորհրդականն ալ իրեն կանչեց Աբիսողոմ։ Դաւիթ երբոր իմացաւ, զինքը Աստուծոյ յանձնելով իր քովի եղած քիչ մը զօրքովը Երուսաղէմէն ելաւ որ փախչի։ Ան ատեն Սադովկ քահանայապետն ալ բոլոր քահանաները մէկտեղ՝ տապանակը վերցուցին որ տանին. Դաւիթ չուզեց, թէ որ Աստուած ուզէ՝ ես նորէն կը դառնամ ըսելով. և Սադովկայ ապսպրեց որ իր տղոցը ձեռքովը Աբիսողոմին ընելիքները գաղտուկ իրեն իմացընէ։ Քուսի Արաքացւոյն ալ ըսաւ Դաւիթ որ Աբիսողոմի քովը երթայ, դրսուանց բարեկամութիւն ցուցընելով Աքիտոփէլին խորհուրդը փճացընէ,

պատուիրեց անոնց որ Աբիսողոմայ խնայեն : Հասաւ Աբիսողոմ իր զօրքովը սկսաւ պատերազմիլ, ու քանի հազար մարդ կորսնցընելէն ետքը՝ ցիրուցան Եփրեմի անտառին մէջէն փախչելու ատեններին շատ մարդ ալ հոն մեռան : Աբիսողոմ իր ջորիովը ան անտառէն երբոր կ՚անցնէր՝ գլխուն մազերը կաղնիի մը ծառին ճիւղերուն պլլուեցան, ջորին ալ տակէն ելլելով՝ ինքն անանկ կախուած մնաց : Ջինուոր մը եկաւ Յովաբայ պատմեց , ան ալ ըսաւ՝ " Ինչո՞ւ չսպաննեցիր՝ հիմա քեզի յիսուն սիկղ արծաթ ու Թուր մը կուտայի " : Ջինուորը պատասխան տուաւ . " Հազար ալ տայիր՝ ես Թագաւորիս տղուն ձեռք չէի վերցըներ , որովհետեւ պատուիրեց " : Ան ատեն Յովաբ՝ " Ուրեմն կեցիր " ըսաւ , ու գնաց իրեք նետով Աբիսողոմի սրտին զարկաւ . տասը հոգի ալ Յովաբի մարդիկը վրայ հասան՝ մեռուցին , ու մարմինը խորունկ փոսի մը մէջ ձգեցին :

67 .

ԴԱՒԹԻ ՎԵՐՋԻ ԳՈՐԾՔԵՐԸ :

Հ . Յովաբ Աբիսողոմը մեռցընելէն ետեւ ինչ ըրաւ .

Պ . Պատերազմը դադրեցընել տուաւ , ու խրկեց Քուսին որ Դաւթի աւետիս տայ : Դաւիթ երբոր իմացաւ՝ սաստիկ տրտմութենէն առանձնացած սկսաւ ողբ ընել ու ըսել . " Իմ Աբիսողոմ տղաս , Աբիսողոմ իմ տղաս , երանի Թէ ես քու տեղդ ըլլայի Աբիսողոմ իմ տղաս " : Ետքը Յովաբ ալ գործած երբոր իմացաւ՝ գնաց յորդորեց որ ելլէ զօրացն երեւնայ որ սիրտ առնեն՝ իրեն համար քաշած աշխատանացը վրայ , որ սրտերնին կոտրէր էր՝ իմանալով իրեն ըրած ողբը : Բայց

ատով և առջի ըրած մէկ քանի գործքերով Յովաբ Դաւիթի աչքէն ելաւ. անոր համար Ամեսային որ Աբիսողոմի զօրապետն էր՝ խօսք տուաւ՝ զինքը Յովաբին տեղը դնելու: Յովաբ իմանալով որ մի կեղծաւորութեամբ Ամեսային բարևելու ատեն՝ դանակը փորը խոթեց՝ մեռուց:

Հ. Դաւիթ ինչպէս դարձաւ Երուսաղէմ իր աթոռը.

Պ. Բոլոր Իսրայէլացիք առջին ելան՝ Թողութիւն խնդրեցին ու մեծարանքով բերին: Այն ատեն զինքը անիծող Սեմէին ալ հազար հոգի Բենիամինի ցեղէն հետը առած՝ Դաւիթի առջին ելաւ՝ "Մեղայ" ըսաւ: Աբեսսա զինքը տեսածին պէս՝ "Աստուծոյ օծեալը հայհոյեր է, պէտք է մեռցընենք" ըսաւ. Դաւիթ երդում ըրաւ Սեմէին չմեռցընելու, և ըսաւ. "Այսօր ամենևին մարդ պիտի չմեռնի": Մեմփիբոսթէն ալ սգաւորի կերպարանքով առջին ելաւ:

Հ. Մեմփիբոսթէն ինչու Դաւիթի հետ չէր գնացած.

Պ. Իր Սիբա ծառային պատուիրեր էր Մեմփիբոսթէն որ էշը պատրաստէ՝ երթալու համար. ան առեր է երկու էշ՝ շատ մըն ալ ուտելիքներ, մինակ գնացեր է Դաւիթի ետևէն, ըսելով թէ Մեմփիբոսթէն կը սպասէ որ զինքը թագաւոր ընեն. Դաւիթ ալ մէկէն հաւատալով բոլոր Մեմփիբոսթէին երկիրները Սիբայի տուեր է: Երբոր Դաւիթի առջին ելաւ, Դաւիթ հարցուց՝ իմացաւ, ու ըսաւ որ կէսուկէս մէջերնին բաժնեն երկիրները:

Հ. Դաւիթ Աբիսողոմէն փախչելէն ետքը երբոր Երուսաղէմ դարձաւ՝ ամենևին իրեն դէմ կեցող մը չեղա՞ւ.

Պ. Բենիամինի ցեղէն մէկը Սաբէէ անունով գլուխ քաշեց, որուն հետևեցան շատ մարդ:

Մեկէն Յովաբ ու Աբեսսան զօրքերով վրան գնա-ցին, ամէն ալ Աբէլ քաղաքը փախաւ. անոնք գնա-ցին՝ սկսան պարիսպը կործանել: Ան ատենը մէ-րէն կնիկ մը խելացի խօսքերով Յովաբը հանդար-տեցուց ու ըսելէն խօսք առաւ որ եթէ Սաբէէին գլուխը տան՝ կ'ազատին: Ուստի գնաց քաղաքա-ցիներուն ալ համոզեց որ գլուխը կտրեցին՝ պարիս-պէն վար նետեցին. և պատերազմը դադրեցաւ:

Հ. Դաւթի ծերութեան ատեն քաշած երրորդ վիշտն ո՞րն եղաւ.

Պ. Ան ատենները սով մը եղաւ իրեք տարի: Դաւիթ հարցուց Աստուծոյ ու իմացաւ որ Սա-ւուղայ Գաբաւոնացիները ջարդելուն համար է եղեր: Ուստի Դաւիթ Գաբաւոնացիներուն հար-ցուց թէ "ի՞նչ հատուցում ընել կ'ուզէք": Անոնք ալ եօթը հոգի ուզեցին Սաւուղի տղաքնե-րէն որ կախեն մեռցնեն: Դաւիթ ալ տուաւ Սաւուղի երկու մնացած խորթ տղաքն ու անոր Մերոբ աղջկանը հինգ տղաքը, որ ողջ ողջ արևը կախած մեռուցին, ու սովը դադրեցաւ: Անկէ ետքն ալ Դաւիթ երեք պատերազմներ ըրաւ այլազգիներուն դէմ. և անգամ մը քիչ մնաց որ կը զարնէր զինքը կորիճ այլազգի մը, բայց Աբեսա-սան ազատեց անոր ձեռքէն. ու անկէ ետքն ալ թող չտուին որ Դաւիթ պատերազմի երթայ:

Հ. Դաւթի ծերութեան ատենը քաշած չոր-րորդ վիշտն ո՞րն եղաւ.

Պ. Իսրայէլացւոց վրայ Աստուած բարկանա-լով՝ Դաւթի թող տուաւ որ հպարտութեան մտքով համրէ զանոնք. ուստի Յովաբայ հրամայ-եց Դաւիթ որ ծայրէ ծայր բոլոր ժողովրդոց համրանքն իրեն բերէ: Յովաբ չկրնալով դէմ դնել՝ գնաց պտըտեցաւ՝ համրանքը բերաւ. միայն կարիճ պատերազմի մարդիկն ութը հարիւր հա-զար, Յուդայի ցեղինն ալ զատ՝ հինգ հարիւր հա-

ղար ։ Բայց ետքը Դաւիթ զղջացաւ ըրածին վրայ ․ Աստուած ալ Գադ մարգարէին բերնով անոր պատիժ՝ կամ երեք տարի սով ըլլայ ըսաւ, կամ երեք ամիս պատերազմ, և կամ երեք օր մահտարաժամ, որը կ'ուզէ՝ ընտրէ ։ Այն ատենը Դաւիթ շատ ցաւելով ըսաւ, “ Լաւ է որ Աստուծոյ ձեռքն իյնամ՝ որոյ ողորմութիւնը շատ է ,, ․ ուստի մահտարաժամն ընտրեց ։ Եւ առաւօտանց մահն սկսաւ, ու ինչուան կէսօր եօթանասուն հազար հոգի մեռան ։ Դաւիթ տեսաւ հրեշտակը Որնա Յեբուսացիին կալին վրայ, որ ձեռքը սուր առած կը շարժէր զամէնքը, ինկաւ Աստուծոյ առջև “ Ես հովիւնին ըրի մեղքը ․ պէտք է որ զիս պատժես ,, ըսաւ ։ Այն ատեն Աստուծոյ հրամանովը եկաւ Գադ մարգարէն ու ըսաւ որ այն կալին մէջ սեղան շինէ, ու Աստուծոյ զոհ մատուցանէ ։ Դաւիթ շուտ մը գնաց, այն կալին տեղը գնեց իրեն եզներովը ու սայլերովը, հոն սեղան շինեց՝ ու եզներն Աստուծոյ ողջակէզ ըրաւ ․ ասով մահուան պատիժը դադրեցուց Աստուած ։ Եւ Դաւիթ ուզեց որ տաճարը հոն շինուի ։

80 ․

### Սողոմոնին Թագաւորելը

Հ ․ Դաւիթ երբոր ծերացաւ՝ իրեն յաջորդ զո՞վ ընտրեց ․

Հ ․ Ինքը դեռ չընտրած՝ Ադոնիա իր մեծ տղան ուզեց որ հօրն ետեւէն ինքը նստի, և զՅօվաբն ու Աբիաթար քահանայապետն ալ իրեն գին առած՝ Ռոգելթայ վիմին քով մեծ սեղան ըրաւ, թագաւոր օծուելու համար ։ Այն ատեն Նաթան մարգարէն գնաց Բերսաբէին ըսաւ որ երթայ Դաւթի միտքը ձգէ, որովհետև Սողոմոն տղուն

խոստացեր էր թագաւորութիւնը : Բերսաբէէն գնաց Դաւթի պալատը Ադոնիային ըրածը պատմեց, միտքը ձգելով Սողոմոնին համար ըրած երդումը. Նաթան ալ վրայ եկաւ ու սկսաւ Դաւթի հարցնել թէ իրեն հրամանո՞վն է Ադոնիային թագաւորելը, որ միայն զինքն ու Սադովկ քահանան ու Բանեա որդի Յովիդայեայ զօրապետն ու իր Սողոմոն տղան չէ կանչած : Ան ատենը Դաւիթ շուտ մը հրամայեց որ Սողոմոնն իր թագաւորական ջորին հեծցընեն, Գեհոն տանին, և բոլոր Իսրայելացւոց վրայ թագաւոր օծեն : Սողոմոն ան ատենը տասներկու տարուան էր : Երբոր Ադոնիայի հետն եղողները լսեցին որ Դաւիթ Սողոմոնն իր աթոռը նստեցուցեր է, ցրուեցան. Ադոնիան ալ Աստուծոյ խորանը փախաւ. մինչեւ որ Սողոմոն իրեն խօսք տուաւ չմեռցընելու՝ թէ որ չարութիւն մը չէր ըրածը, ու թէ որ նորէն բան չխառնէ :

Հ. Դաւիթ մեռնելէն առաջ ի՞նչ կտակ ըրաւ Սողոմոնին.

Պ. Աստուծոյ պատուիրանքներուն ու օրինացը վրայօք շատ խրատներ տալէն ետքը, Յովաբայ ու Սեմեիին համար ալ պատուիրեց որ արդար հատուցումն ընէ : Եւ իր առաջուց պատրաստած ոսկին՝ արծաթը և ուրիշ բաներն անոր յանձնելով հրամայեց որ Աստուծոյ տաճարը շինէ : Ետքը օրհնելով զինքը՝ եօթանասուն տարուան վախճանեցաւ, քառասուն տարի թագաւորութիւն ընելէն ետև :

Հ. Դաւթի մեռնելէն ետքը Սողոմոնի եղբայրց մէկ թագաւորութեան աչք ձգա՞ծ եղաւ.

Պ. Ադոնիան կ'ուզէր նորէն ոտք ելլել. անոր համար գնաց Բերսաբէին աղաչեց որ Սողոմոնին ըսէ իրեն կին առնելու համար Աբիսակ Սունամացին որ Դաւիթ ծերութեան ատենը քովը առեր

էր ։ Սողոմոն մարմին աս բանս լսածին պէս՝ սաստիկ բարկացաւ. իմանալով Ադոնիային միտքը. ու շուտ մը Բանեա որդի Յովիդայեայ զօրապետը խրկեց՝ սպաննել տուաւ. Աբիաթարն ալ որ անոր կողմն էր՝ քահանայապետութենէ ձգեց, իր Անաթովթ գեղը աքսորեց, տեղը Սադովկը դնելով ։ Նոյն ատեն Յովաբ վախնալով Աստուծոյ խորանը ապաւինեցաւ. Սողոմոն անոր ալ Բանեա որդի Յովիդայեան խրկեց ըսաւ որ դուրս ելլէ, բայց չելաւ. ուստի Սողոմոն ալ հոն սպաննել տուաւ, և անոր տեղը զօրապետ Բանեան դրաւ ։

## 69.

### Սողոմոնի իմաստութիւնը ։

Հ. Սողոմոն Սեմէիին դատաստանն ինչպէս կտրեց.

Պ. Արդէն պատուէր դրաւ որ Երուսաղէմէն դուրս չելլէ, թէ չէ՝ կը սպաննուի. Սեմէին ալ կեցաւ երեք տարի ։ Նաև անգամ մը անոր ծառաները Գեթացւոց երկիրը փախան. Սեմէին ալ գնաց՝ բռնեց ու Երուսաղէմ բերաւ. ան ատեն Սողոմոն մէկէն զինքն սպաննել տուաւ ։

Հ. Սողոմոն ինչ բանով աւելի Աստուծոյ սիրելի եղաւ.

Պ. Թագաւորութիւնը հաստատուելէն ետև ելաւ Գաբաւոն լեռը, և հոն Աստուծոյ հազար ողջակէզ մատուց ։ Աստուած ալ ան գիշերը քնոյն մէջն իրեն երևնալով ըսաւ թէ “ խնդրէ ինչ որ կ'ուզես ,, ։ Սողոմոն ալ շնորհակալ ըլլալով Աստուծմէ՝ “ Միայն իմաստութիւն կ'ուզեմ, ըսաւ, որ այսչափ ժողովուրդը կառավարեմ ,, ։ Աստուած ալ ըսաւ. “ Որովհետև դուն ոչ երկայն կեանք, ոչ հարստութիւն, ոչ թշնամիներուդ

դէմ յաղթութիւն խնդրեցիր, անոր համար- ոյնչափ իմաստուն ըլլաս՝ որ քեզի պէս մարդ չէ եղած և պիտի չըլլայ, և ասկէ զատ չխնդրածդ ալ քեզի կուտամ. անանկ հարուստ ըլլաս որ քու օրերդ թագաւորներուն մէջ քեզի պէս չգտնուի. ու թէ որ քու հօրդ Դաւթի չնման ճամբէն դուրս չելլես, քեզի երկայն կեանք ալ կուտամ,,: Սաղո- մոնանց Երուսաղէմ դարձաւ ու հոն ալ նորէն Աստուծոյ ողջակէզ ընելէն ետև, մէկէն յայտնը- ւեցաւ իր իմաստութիւնը՝ առջի ըրած դատաս- տանովը:

Հ. Սողոմոնի իմաստութեանն առջի նշանը ո՞րն եղաւ.

Պ. Երկու կնիկ դատաստանի եկան, որոնք եր- կուքն ալ իրենք որ եան տանը մէյմէկ տղայ բե- րեր են. մէկ գիշեր մը մէկը իրենինին վրան պառ- կած մեռուցեր է, ու գաղտուկ գնացեր մէկալի- նին հետ փոխեր է. ուստի երկուքն ալ կը պնդեն թէ ողջն իրենն է: Սողոմոն սանկ կարեց դա- տաստանն որ ողջ տղան երկու կտոր ընեն ու կէսը մէկուն՝ կէսը մէկալին տան: Ասով մէկէն իմացւե- ցաւ տղուն բուն մայրն, որ գութը շարժելով կ'աղաչէր թէ տղան մէկալին տան ու չսպաննեն. իսկ մէկալը կ'ուզէր որ կէսկէս բաժնուի: Սողո- մոն լսեցուց զանոնք ու ըսաւ. "Աս տղան ան կնոջն է, որն որ տղոր մեռնիլը չուզեր, անոր տուէք,,: Աս դատաստանը զամէնքը զարմացուց, ու Սողոմոնն ամենուն պատկառելի ըրաւ:

Հ. Սողոմոն թագաւորելուն պէս տաճարը շինեց.

Պ. Ամէն դիհէն խաղաղութիւն ըլլալով՝ հարըս- տութիւնը օրէ օր կ'աւելնար. ուստի թագաւո- րութեանը չորրորդ տարին մեծ պատրաստու- թեամբ շինելու ձեռք զարկաւ: Ութսուն հազար հոգի էին քար կտրողները, և օթանասուն հազար

հողի՝ քար կըրող, երեք հազար հինգ հարիւր վերակացու, ու շատ վարպետ արհեստաւորներ ալ՝ որ Քիրամ Տիւրոսի թագաւորին ու Փարաւոն Եգիպտոսի թագաւորը՝ Սողոմոնին խրկեցին: Ասանկով տաճարը եօթը տարուան մէջ շինուեցաւ՝ անանկ փառաւոր, որ աշխարհքիս վրայ նմանը չէ եղած, մէջը բոլոր ոսկեով ծեփած:

Հ. Երբոր տաճարը շինելը լմնցաւ՝ ինչ հանդէս ըրաւ Սողոմոն.

Պ. Նախ Աստուծոյ տապանակը մեծ փառքով բերաւ ան տաճարին մէջը, եւ եղբը տասնըչորս օր բոլոր Իսրայէլացիները ժողված՝ մեծ տօն կատարեց, եւ քսանըերկու հազար կով ու հարիւր քսան հազար ոչխար զոհ ըրաւ Աստուծոյ. հոն ինքն ալ շնորհակալութեան աղօթք մը ընելով խնդրեց Աստուծմէ որ ան տեղը ժողովուրդը ինչ խընդրուածք որ ընէ, Աստուած կատարէ: Ան ատեն լուսաւոր ամպով մը տաճարը լեցուեցաւ, ու երկընքէն կրակ իջնալով բոլոր ողջակէզները այրեց: Ժողովուրդը սոսկալով երեսի վրայ ինկած՝ Աստուծոյ փառք կուտային: Ան գիշերն Աստուած նորէն ըսաւ Սողոմոնի թէ "խնդիրներդ կը կատարեմ, ու տաճարին ալ իմ անունս կը սեպեմ, միայն թէ Դաւթի ճամբէն չխոտորիս ու որդւոց որդի թագաւորութիւնդ ալ հաստատեմ":

Հ. Սողոմոն տաճարէն զատ ինչ շինութիւններ ըրաւ.

Պ. Տաճարը լմննալէն ետեւ՝ իրեն Թագաւորական պալատը շինեց, որուն մէջ ամէնէն փառաւոր իր թագաւորական աթոռն էր փղոսկրէ՝ եւ ոսկի զարդերով. վեց աստիճան ունէր, որոնց վրայ երկու կողմէն տասներկու առիւծ շինած: Փառաւոր պալատ մըն ալ շինեց Փարաւոն Թագաւորին աղջկանը համար, որ իրեն կին էր: Ասոնցմէ զատ քաղաքներ ալ շինեց, եւ բոլորը քաղան

տարուան մէջ եղաւ. նաւեր ալ շինել տուաւ Սողոմոն՝ ու Սոփերէ խրկեց, որ երեք տարին հեղ մը անկէ շատ ոսկի, արծաթ, քարեր և ուրիշ շատ բարիք կը բերէին։ Ասոնցմով անանկ եղաւ որ ամէնքը Սողոմոնին իմաստութեանն ու հարստութեանը վրայ զարմացած, զինքը տեսնել կ'ուզէին։

Հ. Ո՞վ եղաւ որ Սողոմոնը տեսնելու համար աշխարհքէ աշխարհք քալեց.

Պ. Սաբայ թագուհին՝ իր զօրքերովը և ուղտերովը ընծաներ հետը առած եկաւ որ Սողոմոնին իմաստութիւնը փորձէ։ Բայց Սողոմոնի հետ խօսելէն ետքը, ամէն բանին կարգը կանոնն ալ տեսնելով, ըսաւ. « Լսածներս տեսածիս կէսը չէր, Աստուած սիրեր է աս ազգն որ քեզ իրենց թագաւոր դրեր է »։ Սողոմոն ալ անոր տուած ընծաներուն տեղ ինչ որ անոր սիրտն ուզեց տուաւ ու ճամբեց։

## 70.

### Յերոբովամ։

Հ. Սողոմոն ինչուան մահը Աստուծոյ հաւատարիմ մնաց.

Պ. Տարիքն առնելով՝ սկսաւ Աստուծմէ հեռանալ. վասն զի Աստուծոյ արգելած ազգերէն կին առաւ, ու անոնց սիրոյն համար կռատուններ շինեց. իր իմաստութեամբն Աստուծոյ ըրած ամէն բանը քննեց իմացաւ, կնոջը աչքին խաբուած՝ ինքը զինքն ալ իր Աստուածն ալ մոռցաւ. անոր համար Աստուած ալ սաստիկ բարկացաւ Սողոմոնի, և ըսեց որ թագաւորութիւնն իրմէն առնէ ծառային տայ։ Բայց Դաւիթի սիրոյն համար երկու բան կը շնորհեմ ըսաւ, մէյմը որ քու

որդ չեմ ըներ, երկրորդ՝ որ միայն երկու ցեղը Դաւիթի տանը կը թողում։ Ան ատեններն երկու պըլաղդչիք՝ Ադեր ու Ռազոն անուան Սողոմոնի դէմ ելլել։

Հ. Աստուած ինչ կերպով հանեց տասը ցեղը Սողոմոնին ձեռքէն.

Պ. Երբոր Սողոմոնին ծառան Յերոբովամ Նաբատայ որդին Եփրեմի ցեղէն՝ բանի մը համար Երուսաղեմէն ելեր կ'երթար, Աքիա Սիլոնացի մարգարէն նոր լաթ մը հագած ելաւ Յերոբովամին, ան լաթը տասներկու կտոր ըրաւ ու տասն անոր տուաւ, ըսելով. "Աստուած Սողոմոնի թագաւորութեանը տասը ցեղը քեզի պիտի տայ՝ անոր ապերախտութեանը համար. գուն ալ, ըսաւ, թէ որ Աստուծոյ պատուիրանքները պահես, որդւոց որդի թագաւորութիւն կ'ընես"։ Երբոր իմացաւ Սողոմոն, Յերոբովամը մեռցընել ուզեց. ան ալ փախաւ Եգիպտացւոց թագաւորին քովը ինչուան որ Սողոմոն մեռաւ՝ քառասուն տարի թագաւորութիւն ընելէն ետքը։

Հ. Իսրայէլացւոց տասը ցեղին թագաւորութիւնն ինչ կերպով Յերոբովամայ ձեռքն անցաւ.

Պ. Սողոմոնի մեռնելէն ետև Ռոբովամ անոր տղան Սիքիմ քաղաքը գնաց՝ հոն տեղը թագաւոր օծուելու. Յերոբովամն ալ որ Սողոմոնի մահը լսելով դարձեր էր Եգիպտոսէն՝ հոն կանչեցին, խնդրեցին Ռոբովամէն որ տուրքերը թեթևցընէ. Ռոբովամ ալ "Երեք օրէն եկէք, ըսաւ, որ պատասխան տամ". ու գնաց առաջ Սողոմոնին ատենի ծեր խորհրդականներուն հարցուց. անոնք ըսին որ առջի բերանն անուշութեամբ վարուելով սրտերնին վաստըկի։ Բայց Ռոբովամ գնաց իրեն հասակակից տղոցն ալ հարցուց, ու անոնց տուած խորհրդին հաւնելով, գնաց ըսաւ ժողո-

տարրուան մէջ եղաւ. Նաւեր ալ շինել տուաւ Սո-ղոմոն՝ ու Սովփերի խորթէց, որ երեք տարին հեղ մը անկէ շատ ոսկի, ազնիւ քարեր և ուրիշ շատ բարիք կը բերէին: Ասոնցմով անանկ եղաւ որ ամէնքը Սողոմոնին իմաստութեանը ու հարստու-թեանը վրայ զարմացած, զինքը տեսնել կ'ու-զէին:

Հ. Ո՞վ եղաւ որ Սողոմոնը տեսնելու համար աշխարհէ աշխարհ քալեց.

Պ. Սաբայ թագուհին՝ իր զօրքերովը և ուղտե-րովը ընծաներ հետը առած եկաւ որ Սողոմոնին իմաստութիւնը փորձէ: Բայց Սողոմոնի հետ խօ-սելէն ետքը, ամէն բանին կարգը կանոնն ալ տե-սնելով, ըսաւ. « Լսածներս տեսածիս կէսը չէր, Աստուած սիրեր է ան ազգն որ զքեզ իրենց թագաւոր դրեր է »: Սողոմոն ալ անոր տուած ընծաներուն տեղ ինչ որ անոր սիրտն ուզեց տուաւ ու ճամբեց:

70.

Յերոբովամ:

Հ. Սողոմոն իշխանութեան մէջը Աստուծոյ հաւա-տարիմ մնաց.

Պ. Տարիքն առնելով՝ սկսաւ Աստուծմէ հեռա-նալ. փոխան զի Աստուծոյ արգիլած ազգերէն կին առաւ, ու անոնց սիրոյն համար կռատու-ներ շինեց. իր իմաստութեամբը Աստուծոյ ըրած ամէն բանը քննեց իմացաւ, հիմա աչքին խա-բուած՝ ինքը զինքն ալ իր Աստուածն ալ մոռցաւ. անոր համար Աստուած ալ սաստիկ բարկացաւ Սողոմոնի, և ուզեց որ թագաւորութիւնն իրմէն առնէ ծառային տայ: Բայց Դաւթի սիրոյն հա-մար երկու բան կը շնորհեմ ըսաւ, մէկն որ քու

օրդ չէմ ըներ, երկրորդ որ միայն երկու ցեղը Դաւիթի տանը կը թողում: Այն տասններն երկու պըլլալնէ՝ Ադեր ու Ռազոն սկսան Սողոմոնի դէմ ելլել:

Հ. Աստուած ի՞նչ կերպով հանեց տասը ցեղը Սողոմոնին ձեռքէն.

Գ. Երբոր Սողոմոնին ծառան Յերոբովամ Նաբաթայ որդին Եփրեմի ցեղէն՝ բանի մը համար Երուսաղեմէն ելեր կ'երթար, Աքիա Սիլօնացի մարգարէն նոր լաթ մը հագած եկաւ Յերոբովամին, ան լաթը տասուերկու կտոր ըրաւ ու տասն անոր տուաւ, ըսելով. «Աստուած Սողոմոնի թագաւորութեանը տասը ցեղը քեզի պիտի տայ՝ անոր ապերախտութեանը համար. գուն ալ, ըսաւ, թէ որ Աստուծոյ պատուիրանքները պահես, որդւոց որդի թագաւորութիւն կ'ընես»: Երբոր իմացաւ Սողոմոն, Յերոբովամը մեռցնել ուզեց. ան ալ փախաւ Եգիպտացւոց թագաւորին քովը մինչուան որ Սողոմոն մեռաւ՝ քառասուն տարի թագաւորութիւն ընելէն ետքը:

Հ. Իսրայէլացւոց տասը ցեղին թագաւորութիւնն ի՞նչ կերպով Յերոբովամայ ձեռքն անցաւ.

Գ. Սողոմոնի մեռնելէն ետև Ռոբովամ անոր տղան Սիքեմ քաղաքը գնաց՝ հօրը տեղը թագաւոր օծուելու. Յերոբովամն ալ որ Սողոմոնին մահը լսելով դարձեր էր Եգիպտոսէն՝ հոն կանչեցին, խնդրեցին Ռոբովամէն որ տուրքերը թեթեւցընէ. Ռոբովամ ալ «Իրեք օրէն եկէք, ըսաւ, որ պատասխան տամ»: ու գնաց առաջ Սողոմոնին ատենի ծեր խորհրդականներուն հարցուց. անոնք ըսին որ առջի բերանն անուշութեամբ վարուելով սրտերնին վաստըկի: Բայց Ռոբովամ գնաց իրեն հասակակից տղոցն ալ հարցուց, ու անոնց տուած խորհրդին հաւնելով, գնաց ըսաւ ժողո-

Թա քաղաքն երթայ, հոն իրեն որբեւայրի կին մը կերակուր տայ։ Գնաց, ու երբոր կտոր մը հաց ուզեց, կինն ըսաւ՝ թէ "Միայն քիչ մը ալիւր ու եղ մնացեր է որ ուտենք ու մեռնինք պիտի։ — Ալիւրդ ու եղդ չպակսին, ըսաւ Եղիա, ինչուան որ անձրեւ գայ"։

## 73.

### Քուրմերուն ջուրը։

Հ. Սովին ատեն Աքաաբ զԵղիան փնտռելով կրցա՞ւ գտնել.

Պ. Սովին երրորդ տարին Աստուծոյ հրամանաւ Եղիա ինքիրեն գնաց որ երեւնայ Աքաաբու. և նախ հանդիպեցաւ անոր Աբդիու հազարապետին որ ձիերուն համար խոտ փնտռելու կ'երթար. "Գնա՛, ըսաւ Եղիա, իմացուր Աքաաբին թէ հոս եմ". Աբդիու յանձն չառաւ, ըսելով "Չըլլայ թէ Աստուծոյ հոգին զքեզ ուրիշ տեղ մը տանի, ետքը զիս կը մեռցընէ Աքաաբ. վասն զի ես ալ երկիւղած մարդ եմ ու ան սովին ատենն Աքաաբին ձեռքէն փախուցած հարիւր մարգարէ գաղտուկ այրի մէջ պահեր եմ ու հացով ջրով կը կերակրեմ։ — Մի՛ վախեր, ըսաւ Եղիա, այսօր պիտի երեւնամ ես անոր"։ Ան ատենը գնաց Աբդիու իմացուց։ Աքաաբ զԵղիան տեսածին պէս՝ "Իսրայէլացւոց մէջ խռովութիւն ձգող" կանչեց իրեն. Եղիան ալ ըսաւ, "Դուք էք՝ որ Աստուծոյ տեղ Բահաղը կը պաշտէք"։ Ետքը ապսպրեց Աքաաբին որ Կարմեղոս լեռը ժողվէ ամէն ժողովուրդը և ութը հարիւր յիսուն քուրմերը. երկու եզ ալ բերեն մորթեն, մէկը ինքը մէկալն ալ քուրմերը և Աստուծոյ մատուցանեն. որուն Աստուածն որ երկինքէն կրակ իջեցընէ ու այրէ

պատարագը, ան է իրաւ Աստուածը։ Ժողովուրդը սա բանիս հաւնեցաւ. ուստի առաջ քուրմերն իրենց եզը չոր փայտերու վրայ դրին և առաւօտէն մինչեւ իրիկուն անոր չորս դին կը պտըտէին ու կը կանչէին Բահաղը։ Եղիան ալ ծաղր ընելով կ'ըսէր, " Ամուր կանչեցէք, թէ որ քուն է' արթըննայ"։ Անոնք ալ սկսան ա'լ ամուր կանչուըռտել' մարմիններնին ալ կը ճեղքըռտէին, բայց ձայն մը չելաւ։ Ան ատեն " Մեկդի կեցէք" ըսաւ Եղիա. ու ինքը տասուերկու քարերով սեղան մը շինեց և ամէն բան պատրաստելէն ետքը վրան տասուերկու սափոր ջուր լեցընել տուաւ, անանկ որ միսը կը լողար ջրին մէջը. ու խնդրեց Աստուծմէ որ ինքզինքը ժողովրդեան իմացընէ։ Մեկէն երկնքէն կրակ իջաւ' այրեց ողջակէզը' ջուրը' սեղանն ալ մէկտեղ. ժողովուրդը ապշած երեսի վրայ ինկան' ըսելով. " Իրաւ որ սա է ճշմարիտ Աստուածը"։ Ան ատեն Եղիա հրամայեց ժողովրդեան որ Բահաղի քուրմերը բռնեն. ու զամէնն ալ ջարդեն։ Ետև Աքաաբին ըսաւ, թէ " Անձրևի չբռնուած' գնա կերակուրդ կեր"։ Աքաաբ տուն հասաւ չհասաւ' անձրեւն ալ առաւ։

Հ. Եղիայի քուրմերը ջարդելը երբոր լսեց Յեզաբէլ ինչ ըրաւ.

Պ. Սաստիկ սրդողելով Եղիայի, խրկեց ըսաւ, թէ " վաղը ղքեզ ալ քուրմերուն պէս պիտի ընեմ"։ Եղիա վախցաւ ու դէպ 'ի Յուդայի երկիրն անապատը փախաւ. Ճամբան հոգնած անօթի ծառի մը տակ նստած' քունը տարաւ. Հրեշտակ Աստուծոյ եկաւ արթընցուց, " Ելի կե'ր ըսաւ"։ Աչքը բացաւ' տեսաւ որ քովը հաց ջուր կայ, կերաւ ու նորէն քնացաւ։ Հրեշտակը նորէն ըսաւ որ ելէ ուտէ, վասն զի շատ ճամբայ պիտի ընէ։ Նորէն կերաւ ու անոր ուժովը քառասուն օր ճամբայ ընելով Քորեբ լեռը հասաւ։

Հ. Ինչո՞ւ Քորեբ լեռը Սինէ ըլլաւ.

Գ. Հոն՝ այրին մէջ երբ կը գանգատէր, Աս-տուած իմացուց թէ Իսրայէլացւոց մէջ այնպիսի դէջ կռապաշտութեան ատենը եօթը հազար աս-տուածապաշտ մարդ կայ. ու պատուիրեց որ եր-թայ Ազայէլն Ասորւոց Թագաւոր օծէ, ու Յէուն զօրապետն ալ Իսրայէլացւոց, Եղիսէն ալ իրեն տեղը մարգարէ դնէ, որ անոնց ձեռքով Աքաաբն ու Յեզաբէլը պատժուին: Գնաց Եղիա Համդի-պեցաւ Եղիսէին որ տասներկու եզով երկիր կը հերկէր, կանչեց. ան ալ թողուց ամէն բան ու սկսաւ իրեն հետ պտըտիլ:

74.

Աքաաբի պատերազմները:

Հ. Աքաաբին առջի ըրած պատերազմը ո՞րն եղաւ..

Գ.. Որդի Ադերայ Ասորւոց Թագաւորն ուրիշ այլազգի թագաւորներու հետ եկաւ Սամարիան պաշարեց ու Աքաաբի դեսպան խրկեց՝ ըսելով "Քու ունեցած արծաթներդ՝ ոսկիներդ ու զաւակներդ բոլորն ալ իմս են": Աքաաբ վախէն պատասխան տուաւ՝ թէ "Անանկ է": Ան ալ նորէն խրկեց ըսաւ՝ թէ "Վաղը բոլորն ալ ինծի խրկէ": Աքաաբ խորհուրդ ըրաւ ու պատաս-խան խրկեց թէ "Չըլլար": Երբոր անոնք սկը-սան խրոխտալ, "Այլ հերիք է, ըսաւ Աքաաբ, չպարծի կորն իբրև ուղիղ": Ետքը երբոր անոնք ուտելու խմելու հետ էին՝ մարգարէի մը խօսքով անոնց վրայ վազեց Չարդեց փախուց զամէնքը: Ասորիք կարծելով որ Իսրայէլացւոց Աստուածը լեռներու Աստուած է, անոր համար միւս տա-րի նորէն պատերազմ բացին Յափեկայ դաշտին

վրայ ։ Աստուած նորէն ալ մարգարէին բերնով իմացուց Աքաաբին որ անանկ ծանր կործիքներ-Թագինուն համար պիտի յաղթուին․ ուստի մէկ օրուան մէջ անոնցմէ հարիւր հազար հոգի կոտորեցին Իսրայէլացիք ․ Մնացածներուն վրայ ալ քաղաքին պարիսպը փլաւ՝ քսանուեօթը հազար ալ հոն մեռան ։ Ան ատենը Թագաւորնին ալ գաղտուկ տեղ մը փախած՝ իշխաններովը խրկեց որ յաղթուածի զգեստով երթան Աքաաբէն Թողութիւն ուզեցին ։ Աքաաբ ալ խղճալով վրանին՝ ու մեծարելով անոնց Թագաւորը, իր կառքին մէջ քովը առաւ, հետը բարեկամութեան դաշինք դրաւ․ ասոր համար Աստուած նեղացաւ, մարգարէի ձեռքով առակով մը իմացուց որ անոնց տեղն ինքն ու իր ժողովուրդը պիտի չարչարուին ։

Հ. Աքաաբ՝ որդի Ադերայ Թագաւորին դէմ ըրած պատերազմին ետև յիշատակի արժանի ինչ գործք ըրաւ ․

Պ. Մեծ անիրաւութիւն մը ըրաւ սա կերպով ։ Նաբովթայ այգին Աքաաբի պալատին քովն ըլլալով, Աքաաբ կ'ուզէր գնել․ բայց Նաբովթ չէր տար՝ իր հօրը ժառանգութիւն ըլլալուն համար․ Աքաաբ ասոր վրայ տրտմած՝ մէկ օր մը հաց չկերած պառկեցաւ ․ Յեզաբէլ կինը հարցուց իմացաւ, մէկէն հրովարտակ մը գրեց անոր քաղաքացիներուն մեծերուն որ դատաստան ընեն ու երկու սուտ վկայով հաստատեն Թէ Նաբովթ Աստուծոյ ու Թագաւորին դէմ խօսեր է․ ու ասանկով քարկոծեն զինքը ։ Ետքը երբոր Աքաաբ Յեզաբէլէն իմացաւ Նաբովթայ մահը, առջի բերան քիչ մը ցաւ ցուցուց, բայց ետքը գնաց առաւ այգին ։ Ան ատենն Աստուած խրկեց զԵղիան Աքաաբին՝ սաստիկ ըսելով․ "Ուր որ անմեղ Նաբովթին արիւնը շները լափեցին, հոն քուկդ ալ լափեն, ու Յեզաբէլ քաղաքին պարսպին տակը Թող

վարելի մարմինն ալ շներն ուտեն, և քու ցեղդ ալ բոլոր ջնջուի"։ Բայց որովհետև ինքը Նաբովթայ մահուանը վրայ ցաւ ցուցուց՝ անոր համար "Քու օրդ չըլլան աս բաները" ըսաւ։

Հ. Աքաաբ ինչպէս մեռաւ.

Պ. Որդի Ադերան ազատելէն իրեք տարի ետև նորէն Աքաաբ ուզեց պատերազմ բանալ Ասորւոց դէմ՝ որ Ռամաթ Գաղաադն անոնց ձեռքէն առնէ։ Յովսափատ Յուդայի թագաւորն ալ ան օրերը հոն գտնուելով խորհուրդ տուաւ որ մարգարէներուն հարցընեն. ուստի չորս հարիւր սուտ մարգարէ ժողված՝ յաջողութիւն կը խոստանային։ Ան ատենը Յովսափատ ըսաւ. "Չը՞կայ մէկ Աստուծոյ մարգարէ մըն ալ որ անոր հարցընենք"։ Աքաաբ ըսաւ. "Կայ մէկն որ միշտ իմ վրաս գէշ կը խօսի"։ Յովսափատ աղաչեց՝ բերել տուաւ, որ Միքիա մարգարէն էր, ու համարձակ եկաւ ամենուն դէմ ըսաւ, թէ "Աքաաբ ան պատերազմին մէջ պիտի մեռնի"։ Բարկացաւ Աքաաբ ու բանտ դնել տուաւ, որ եթէ ողջ դառնայ ինքը պատերազմէն մեռցնել տայ։ Ու գնաց ան պատերազմին մէջ նետով զարնուեցաւ, ու ինչուան իրիկուն արիւնը վազելով մեռաւ. և նստած կառքն ալ արիւնով լցուած՝ Սամարիա քաղաքը Նաբովթայ այգիին առջը բերած լուանալու ատեն՝ շներն արիւնը կը լափէին։

## 78.

### Ոքոզիա, Յովրամ, և Եղիայի Վերանալը.

Հ. Աքաաբին տեղն ով յաջորդեց.

Պ. Ոքոզիա իրեն տղան որ կռապաշտութիւն ընելով՝ երկու տարիէն ետքը օր մը տանը պա-

տուհանէն իյնալով՝ շարաչար հիւանդացաւ, ու մարդիկ խրկեց Ակկարոն քաղաքին որ Ճանճիկ կուռքին հարցընեն թէ պիտի բժշկուի՞ : Ան ատենն Աստուծոյ հրամանովը Եղիա հանդիպեցաւ անոնց ու ըսաւ . « Իսրայէլացիք Աստուած չունի՞ն՝ որ դուք Ճանճիկ կուռքին կ'երթաք հարցընելու . գնացէք իմացուցէք իրեն որ Իսրայէլացւոց Աստուածը կ'ըսէ թէ « Պառկած տեղէդ մէյ մ'ալ պիտի չելլես » : Ոքոզիան երբոր նշաններէն իմացաւ թէ Եղիան է ան ըսողը, վրան յիսնապետ մը խրկեց զօրքով՝ ան ատենն որ Եղիա բլրան մը վրայ նստեր էր : Յիսնապետը վարէն ըսաւ . « Մարդ Աստուծոյ, Թագաւորը քեզ կ'ուզէ » : Պատասխանեց Եղիա . « Թէ որ ես մարդ Աստուծոյ եմ, հիմա կրակ իջնայ երկինքէն ու զքեզ քու մարդիկներովդ այրէ » : Մէկէն կրակ իջաւ՝ զամէնքն այրեց : Ոքոզիա նորէն յիսուն մըն ալ խրկեց, անոնք ալ առջիններին պէս այրեցան : Երրորդ անգամն որ խրկեց, յիսնապետը ծունկի վրայ եկաւ, ու աղաչեց Եղիային որ իրենց խնայէ՝ չայրէ, ու ելլէ գայ : Ան ատենը Եղիա Աստուծոյ հրամանովը գնաց, յանդիմանեց Թագաւորին կռապաշտութիւնն, ու « Պիտի մեռնիս » ըսաւ : Նոյնկով Ոքոզիա ալ մեռաւ :

Հ . Ոքոզիայէն ետև ով եղաւ Թագաւոր Իսրայէլացւոց .

Պ . Իրեն որդի չունենալով, Յովրամ իր եղբայրը նստաւ՝ տասուերկու տարի . որ թէպէտ հօրը չափ գէշ չէր, բայց կռապաշտութիւնը բոլորովին ձեռքէ չթողուց : Ասոր օրերը Մովաբացիք ապստամբեցան :

Հ . Յովրամայ թագաւորութեան ատենը ինչ նոր գործք ըրաւ Եղիա .

Պ . Աստուած ուզեց որ զինքն ողջ ողջ երկինքը վերցընէ . ուստի ինքն ալ կ'ուզէր որ մինակ տեղ

մը երթայ՝ վերանալու համար. բայց Եղիսէն ի-մացաւ ու քովէն չէր զատուեր. ինքն ալ տեսաւ. որ չըլլար՝ մէկտեղ Յորդանանին քովը գնաց՝ իր կաշիէ վերարկուով ջրին զարկաւ ճեղքեց ու մէ-ջէն անցան: Հոն յայտնեց Եղիսէին՝ թէ "Ես պիտի աշխարհէս վերանամ. ուստի խնդրէ, ըսաւ, ինծմէ ինչ որ կ՚ուզես". Եղիսէն ալ ըսաւ. "Քու երկու զօրութիւնդ ալ՝ հրաշք ընելու և մարգարէանալու՝ ինծի գան: — Դժուար բան խնդ-րեցիր, ըսաւ Եղիան, բայց թէ որ զիս տեսնես երկինք ելլելու ատենս, ուզածդ ըլլայ": Մէյմէն ալ յանկարծ կրակէ կառքով և ձիերով սկսաւ վեր ելլել. Եղիսէն ալ սկսաւ կանչել. "Հայր հայր, մեր կ՚երթաս՝ Իսրայէլացւոց կառքն ու կառավարը": Ետքը տրտմութենէն իր լաթերը պատռեց՝ ու Եղիայի վերարկուն ձեռք առաւ՝ որ վեր ելլելու ատեն վրան ձգեց՝ նշան թէ իրեն գիրքը կը կտակէ, եկաւ Յորդանան գետին զար-նելով երկու բաժնեց ջուրն, ու նորէն անդին անցաւ:

76.

## Եղիսէի հրաշքները:

Հ. Եղիսէն Եղիայէն առած զօրութիւնն ինչ բաներու մէջ երևցուց.

Պ. Երբոր Երիքով գնաց, քաղաքացիքն իմա-նալով թէ Եղիայի զօրութիւնն անոր անցեր է, աղաչեցին որ քաղաքին ջուրն աղէկցնէ որ լեղի էր ու փնասակար: Եղիսէն ալ գնաց օրհնեց. մէջն աղ ցանեց ու անուշցուց: Ետքը Ճամբան տղաք-ներ ելան դիմացն ու սկսան զինքը ծաղր ընել՝ կունտ գլուխ՝ կանչելով. Եղիսէն ալ զանոնք անի-ծելուն պէս՝ անտառէն երկու արջ վրանին վա-

գեղջին ու քաղաքացիներուն հողի մեռուցին: Անգամ մըն ալ որբեւայրի կնոջ մը պարտատէրները պարտքի տեղ երկու տղաքը կ'ուզէին առնել. եկաւ Եղիսէին ոտքն ինկաւ. հարցուց Եղիսէն՝ իմացաւ որ քիչ մը եղ ունի, "Գնա՛ ըսաւ, դրացիներէդ փոխ առ պարապ ամաններ ու ան եղն ամէնուն մէջ լեցու": Ասանկով որչափ աման որ գտաւ կինը՝ ամէնն ալ լեցուեցաւ ու անով պարտքը վճարեց: Շատ անգամ Եղիսէ Սո-ւնամ քաղաքը կ'երթար. հոն բարեպաշտ ամուսնի կին մը իր տունէն անոր խուց մը պատրաստեր էր որ միշտ հոն կ'իջնար. մարգարէն ուզելով անոր բարի ընելուն հատուցումն մը ընել. Աստուծմէ խնդրեց, որ անոր զաւակ մը եղաւ. ատ տղան մեծնալէն ետքը երբոր մեռաւ, Եղիսէն աղօթքով նորէն ողջացուց զինքը: Սովի ատեն իր աշկերտին ըսաւ որ երթայ քիչ մը կանաչեղէն ժողվէ ու մարգարէներուն կերակուր ընէ. աշկերտը գնաց շատ աղուխ գտաւ՝ շալկեց բերաւ, ու չգիտնալով սանին մէջը դրաւ եփեց. մարդիկն ուտելու ատեն իմացան որ ժանդը զարկեր է. Եղիսէ քիչ մը ալիւր մէջը ցանել տուաւ ու կերցուց, մէկուն մըն ալ վնաս չեղաւ: Անգամ մը մէկը իրեն հաց ու թուզ ընծայ բերաւ. ան մէկ երկու հացը ժողովուրդեան բաժնել տուաւ. ամէնքն ալ կերան ու աւելցուցին ալ: Ուրիշ հրաշքներէն զատ Ասորւոց թագաւորին Նէեման զօրապետն ալ բժշկեց բորոտութենէ:

Հ. Նէեման ի՞նչպէս բժշկուեցաւ.

Պ. Նէեմանայ տունը գերի առնուած Իսրայէլացի աղջիկ մը կար, անիկայ իմացուց թէ Սամարիա մէկը կայ որ կը բժշկէ. ուստի Նէեման իր թագաւորէն յանձնարարական թուղթ մը առած Յովրամ թագաւորին՝ շատ պարգեւներով եկաւ Սամարիա: Յովրամ երբոր իմացաւ անոր գալուն

մը երթայ՝ վերանալու համար․ բայց Եղիսէն ի-
մացաւ ու քովէն չէր զատուէր․ ինքն ալ տեսաւ
որ չըլլար ։ մէկտեղ Յորդանանին քովը գնաց՝ իր
կաշիէ վերարկուով ջրին զարկաւ ճեղքեց ու մէ-
ջէն անցան ։ Հոն յայտնեց Եղիսէի՝ թէ “ Ես
պիտի աշխարհքէս վերանամ․ ուստի խնդրէ,
ըսաւ, ինծմէ ինչ որ կ՚ուզես ”․ Եղիսէն ալ ըսաւ․
“ Քու երկու զօրութիւնդ ալ՝ հրաշք ընելու և
մարգարէանալու՝ ինծի գան ։ — Դժուար բան խնդ-
րեցիր, ըսաւ Եղիան, բայց թէ որ զիս տեսնես
երկինք ելլելու ատենս, ուզածդ ըլլայ ”։ Մէյմէն
ալ յանկարծ կրակէ կառքով և ձիերով սկսաւ
վեր ելլել․ Եղիսէն ալ սկսաւ կանչել․ “ Հայր
հայր, ո՞ւր կ՚երթաս՝ Իսրայէլացւոց կառքն ու
կառավարը ”։ Ետքը տրտմութենէն իր լաթերը
պատռեց՝ ու Եղիայի վերարկուն ձեռք առած՝
որ վեր ելլելու ատեն վրան ձգեց՝ նշան թէ խնդ-
րածը կը կատարէ, եկաւ Յորդանան գետին զար-
նելով երկու բաժնեց ջուրն, ու նորէն ասդին
անցաւ ։

76․

## Եղիսէի հրաշքները ։

Հ․ Եղիսէն Եղիայէն առած զօրութիւնովն ինչ-
բաներու մէջ երևցուց ․

Պ․ Երբոր Երիքով գնաց, քաղաքացիքն իմա-
նալով թէ Եղիայի զօրութիւնն անոր անցեր է,
աղաչեցին որ քաղաքին ջուրն աղէկցընէ որ լեղի էր
ու վնասակար ։ Եղիսէն ալ գնաց օրհնեց․ մէջն
աղ ցանեց ու անուշցուց ։ Ետքը ճամբան տղաք-
ներ ելան դիմացն ու սկսան զինքը ծաղր ընել՝
կունտ գլուխ՝ կանչելով․ Եղիսէն ալ զանոնք անի-
ծելուն պէս՝ անտառէն երկու արջ վրանին վա-

զեցին ու քարուտնուներկու հողի մնացին : Անգամ մըն ալ որբեւայրի կնոջ մը պարտատէր-ները պարտքի տեղ երկու տղաքը կ՚ուզէին տանել . եկաւ Եղիսէին ոտքն ինկաւ . հարցուց Եղիսէն՝ իմացաւ որ քիչ մը եղ ունի , « Գնա՛ ըսաւ, դրացիներէդ փոխ առ պարապ ամաններ ու ան եղն ամենուն մէջ լեցու » : Ասանկով որչափ աման որ գտաւ կինը՝ ամէնն ալ լեցուեցաւ ու անով պարտքը վճարեց : Շատ անգամ Եղիսէ Սոմնա քաղաքը կ՚երթար . հոն բարեպաշտ ամուլ կին մը իր տունէն անոր խուց մը պատրաստեր էր որ միշտ հոն կ՚իջնար . մարգարէն ուզելով անոր բարի սրտին հատուցումն մը ընել, Աստուծմէ խնդրեց , որ անոր զաւակ մը ըլլայ . ու տղան մեծնալէն ետքը երբոր մեռաւ , Եղիսէն աղօթքով նորէն ողջացուց զինքը : Սովի ատեն իր աշկերտին ըսաւ որ երթայ քիչ մը կանաչեղէն ժողվէ ու մարգարէներուն կերակուր ընէ . աշկերտը գնաց շատ աղտխ գտաւ՝ շալկեց բերաւ , ու չգիտնալով սանին մէջը դրաւ եփեց . մարգարէին ուտելու ատեն իմացան որ ժանտը զարկեր է . Եղիսէ քիչ մը ալիւր մէջը ցանել տուաւ ու կերցուց , մէկու մըն ալ վնաս չեղաւ : Անգամ մը մէկը իրեն հաց ու թուզ ընծայ բերաւ . ան մէկ երկու հացը ժողովըրդեան բաժնել տուաւ . ամէնքն ալ կերան ու աւելցուցին ալ : Ուրիշ հրաշքներէն զատ Ասորւոց թագաւորին Նէեման զօրավարն ալ բժշկեց բորոտութենէ :

Հ . Նէեման ինչպէս բժշկուեցաւ .

Պ . Նէեմանայ տունը գերի առնուած Իսրայէլացի աղջիկ մը կար , անիկայ իմացուց թէ Սամարիա մէկը կայ որ կը բժշկէ . ուստի Նէեման իր թագաւորէն յանձնարարական թուղթ մը առած Յովրամ թագաւորին՝ շատ պարգեւներով եկաւ Սամարիա : Յովրամ երբոր իմացաւ անոր գալուն

պատճառը, խարդախութիւն կարծեց ու վախ-ցաւ՝ ըսելով " Ես Աստուած եմ որ մարդ բժշկ-կեմ "։ Աս բանիս լուրը երբոր Եղիսէին հասաւ, խրկեց Թագաւորին ըսաւ որ Թող քովս գայ որ իմանայ Աստուծոյ զօրութիւնը։ Գնաց Նէեման Եղիսէին. Եղիսէն ինքը չերևցած՝ մարդ խրկեց ըսաւ թէ երթայ Յորդանան եօթն անգամ լուա-ցուի ու բժշկուի։ Բարկացաւ Նէեման. " Ես կարծէի թէ, ըսաւ, գայ օրհնէ պիտի զիս ու բժշկէ. ա՛լ աղէկ չե՞ն Դամասկոսի ջրերը ", ու սկսաւ ետ դառնալ։ Ան ատենն իր ծառաները յորդորեցին զինքն որ մարգարէին ըսածը դիւրին բան մըն է, չարհամարհէ, մէյմը փորձէ։ Ասան-կով Նէեման գնաց Յորդանան ու լուացուելուն պէս՝ բժշկուեցաւ. ուստի ուրախութեամբ լցուած դարձաւ Եղիսէին շնորհակալ եղաւ, ը-սելով թէ " Հիմա իմացայ որ միմիայն Իսրայելա-ցւոց Աստուածն է ճշմարիտ. անոր համար երկու ջորի բեռ հող առնեմ տանիմ՝ որ ան հողին վրայ՝ միայն աս Աստուծոյն առջև ողջակէզ ընեմ "։ Ինքն ալ Եղիսէի տալ կ'ուզէր իր բերած ընծանե-րէն. բայց Եղիսէ բան մը չառաւ։ Իսկ երբոր մէկ-մէկէ բաժնուեցան, Եղիսէին աշկերտը Գեհզի՝ Նէեմանին ընծաներուն աչք տնկելով գաղտուկ գնաց անոր ետևէն, ու ըսաւ թէ " Իմ տէրս զիս խրկեց որ տաղանդ մը արծաթ ու երկու ձեռք հագուստ տաս, երկու աղքատ մարդիկներու համար ". Նէեման ալ սիրով հանեց երեք տա-ղանդ արծաթ՝ ան հագուստներն ալ ծառանե-րուն տուաւ, Գեհզիին հետը ճամբեց, որ մութ ատեն՝ մարդ չտեսած՝ տունն առաւ պահեց, և ատենին Եղիսէին առջևն ելաւ։ Եղիսէն հար-ցուց, թէ " Ուստի՞ց կուգաս "։ Պատասխան տուաւ, " Ծառադ տեղ մը չեմ գնացեր "։ Ան ատեն Եղիսէն ալ ըսաւ. " Ագահութիւնն ընել

տուաւ քեզի աս բաները . անոր համար Նէեմանին ստակին հետ բորն ալ քեզի ու զաւկըներուդ անցնի ,, ։ Հոն մէկէն ձիւնի պէս բորոտեցաւ Գեհեզին ։

Հ . Երբոր Մովաբացիք ապստամբեցան Իսրայէլացւոցմէ՝ Յովրամ կրցա՞ւ զիրենք նորէն հարկատու ընել .

Գ . Ըրաւ՝ Եղիսէին հրաշքովը ։ Վասն զի երբոր Յովրամ պատերազմ բացաւ անոնց դէմ, և զՅովսափատ Յուդայի թագաւորն ու Եդոմայ թագաւորն իրեն օգնական առած՝ եօթն օր անապատին մէջէն կ՚երթար , ջրերնին պակսեցաւ և յուսահատեցան . և Յովսափատայ խորհրդով կանչեց Յովրամ զԵղիսէն ու հարցուց ։ Եղիսէն չէր ուզեր պատասխանել , բայց Յովսափատայ սիրոյն համար քնար զարնող մը բերել տուաւ ու քնարին ձայնովը զուարթացած՝ ըսաւ որ հեղեղատին մէջ փոսեր բանան , ինքիրեն անոնք ջրով լեցուին ; և ետքը թշնամեաց ալ յաղթեն ։ Առաւօտանց կարմիր արևն ան ջրերուն զարնելով կը փայլէր . Մովաբացիք հեռուէն տեսան՝ արիւն կարծեցին ու ըսին թէ “ Ուրեմն իրեք թագաւոր մէկմէկու հետ կռուեր՝ մէկզմէկ ջարդեր են ,, . աւարի վազեցին որ կողոպուտ առնեն ։ Իսրայէլացիք պատրաստ ըլլալով՝ զանոնք աղէկ մը ջարդեցին , ու ինչուան թագաւորական քաղաքը փախուցին . հոն Մովաբացւոց թագաւորը յուսահատած՝ իրեն անդրանիկ տղան պարըսպին վրայ մորթեց ողջակէզ ըրաւ . և աս բանս քաշնեցուց Իսրայէլացիներն որ թողուցին ետ դարձան ։

77.

Եղիսէի մարգարէութիւնները ։

Հ. Եղիսէն հրաշագործութեանէն զատ՝ իր մարգարէութիւնն աւելի ինչ բաներու մէջ ցու֊ցուց.

Պ. Ինչ վարպետութիւն որ կը բանեցնէին Ասորիք պատերազմի մէջ՝ բոլոր Յովրամայ կ'իմացնէր ։ Անգամ մը Ասորիք դարան ըրին, Եղիսէն Յովրամայ իմացուց որ ան տեղէն չանցնի. ասանկով ուրիշ քանի մը անգամ ալ պարապն ելան Ասորիք ։ Բարկացաւ Թագաւորնին, կը հարցնէր թէ ո՞վ կ'իմացընէ Իսրայէլացւոց իրենց ըրածը ։ Ըսին իրեն թէ "Եղիսէ մարգարէ մը ունին որ գաղտուկ խուցի մէջը խօսածդ ալ կ'իմանայ". Շուտ մը վրան զօրք խրկեց որ գնացին պաշարեցին Դոթայիմ քաղաքը ։ Եղիսէն առաւօտանց քաղքէն դուրս ելլել կ'ուզէր, աշկերտն սկսաւ վախնալ. Եղիսէն անոր սիրտ տուաւ, ու Աստուծոյ աղաչեց՝ անոր ալ ցուցընելու իրենց քովի զօրքերն որ լեռանը վրայ Եղիսէին չորս դին ձիաւորներ՝ կրակէ կառքեր շարուած էին ։ Ետքը իր վրայ եկողներուն աչքն ալ կուրցուց ու ըսաւ. "Եկէք ցուցընեմ ուզածնիդ", և Սամարիա տարաւ. Հոն երբոր աչուըննին բացաւ, տեսան որ բռնուած են ։ Յովրամ հարցուց Եղիսէի զանոնք ջարդելու համար. Եղիսէն ալ ըսաւ. "Մեռցընելու իրաւունք չունիս. կերակուր տուր իրենց ու թող որ երթան" ։ Ուրիշ անգամ ալ սաստիկ սովի առեն՝ ըլլալու առատութիւնը մարգարէացաւ ։

Հ. Եղիսէի առեն մեծ սով ինչպէս եղաւ.

Պ. Ասորւոց Թագաւորն եկաւ պաշարեց Սամարիա քաղաքն, որ ամենեւին ուտելիք չմնաց մէ֊

ջը ։ Օր մը Յովրամ յուսահատած՝ պարսպին վրայ պտըտելու ատեն՝ վարէն կին մը սկսաւ կանչել. Թէ ուրիշ կնկան մը հետ առջի օրն իր տղան կե-րեր են , ու երկրորդ օրը մէկալ կինն իրը պահեր է՝ դուրս չհաններ որ ուտեն ։ Թագաւորին սիրտը խլխլաց աս բանիս ․ երդումըրաւ Եղիսէին գլուխն առնելու՝ հրաշք մը չընելուն համար , ու գնաց որ խօսի հետը ։ Եղիսէն զինքը հանդարտեցուց ու ըսաւ ․ " Վաղը աս ատենս մէկ դրիւ բարակ ա-լիւրը՝ մէկ սիկղ պիտի ծախուի "։ Իշխաններին մէկը զարմանալով պատասխանեց ․ " Երկինքէն ալիւր անձրևէ պիտի գայ " ․ Եղիսէն ալ անոր անհաւա-տութեանը համար ըսաւ ․ " Տեսնես՝ ու չու-տես "։ Հոն քաղքին դրանը քով չորս բորոտ կա-յին ․ ասոնք յուսահատած՝ ան գիշերը Թշնամի-ներուն բանակը գնացին որ կամ ազատնուին , կամ ուտելու բան գտնեն՝ ապրին ։ Նոյն գիշերն Աստուած Ասորւոց մէջ սաստիկ վախ ձգեր էր՝ զօրքերու ձիաւորներու ձայներ լսել տալով ա-տոնցմէ փախուցեր էր զամէնքը ։ Ուստի ան բորոտ-ները տեսան որ ձայն չկայ՝ նստան կերան խմե-ցին , ու սկսան ոսկի արծաթ փախցընել պահել ․ բայց տեսնելով որ գլուխ չելլուիր ատանկով և իմանալով որ հոս Աստուծոյ բանը պիտի ըլլայ , գնացին քաղքին պահապաններուն աւետիս տուին ։ Թագաւորն ալ լսելով սկսաւ ըսել թէ " Թշնամիներուն խաբէութիւնն է " ․ բայց մարդ-իրկեց իմացաւ որ իրաւ փախեր են , ճամբուն վրայ ալ լաթերնին և ուրիշ բաներնին թողուցեր են ։ Ուստի ամէնքը մտան բանակին մէջը , ժող-վող ժողվողի , անանկ որ Եղիսէին ըսածին պես ցորենն ու գարին աչքին գնով կը ծախուէր ։ Ան չհաւատացող իշխանն ալ որ Թագաւորին հրամա-նովը քաղքին դրանը վերակացու դրուած էր , ան տեղն ոտքի տակ ինկաւ կոխկրտուեցաւ մե-ռաւ ։

78.

Յէու, Յովաքազ, Յովաս, Յերոբովամ, Զաքարիա:

Հ. Յովրամ ինչպէս մեռաւ.

Պ. Եղիան Եղիսէին յանձնած ըլլալով որ Ազայէլը ու Յէուն թագաւոր օծէ, անոր համար Դամասկոս գնաց Եղիսէն։ Ասորւոց թագաւորը երբոր լսեց, ինքը հիւանդ ըլլալուն՝ խրկեց Ազայէլ իշխանն որ հարցընէ Եղիսէին՝ իր հիւանդութեանը համար։ Ան ատենը Եղիսէ ցուցելով ըսաւ Ազայէլին թէ " թագաւորը կը մեռնի, դու ալ կ'անցնիս, ու Իսրայէլացւոց շատ վիշտ պիտի հասցընես ,,։ Ինչպէս որ ըսաւ՝ քիչ ատենէն Ազայէլ թագաւոր եղաւ ու Յովրամին դէմ պատերազմ բացաւ. հոն վիրաւորուեցաւ Յովրամ ու Եզրայէլ գնաց բժշկուելու։ Ետքը Եղիսէն իր աշկերտներուն մէկը Ռամաթ Գաղաադ խրկեց, ու Յէուն ալ թագաւոր օծել տուաւ որ Աքաաբու տանը վրայ Աստուծոյ սպառնալիքը կատարէ։ Ան ատենը Յէու զօրքն առաւ գնաց Եզրայէլ քաղաքը Յովրամ թագաւորին վրայ. ու երբոր անիկայ սկսաւ փախչիլ՝ հասաւ ու նետով սպաննեց, մարմինն ալ Նաբովթայ այգին ձգեց։

Հ. Եղիայի մարգարէութիւնը Յեզաբելայ վրայ ինչպէս կատարուեցաւ.

Պ. Յէու Եզրայէլ քաղաքը մտնելու ատեն՝ Յեզաբէլ նազուած կապուած՝ պատուհանէն խօսք կը նետէր, " Բարի եկար, ըսելով Զամբրի տիրասպան ,,, իբր թէ Զամբրիին պէս իր տէրն սպաննեց։ Յէու հրամայեց Յեզաբելի քովի ներքինիներուն որ զինքը վար ձգեն. ու ձգածնուն պէս ջախջախեցաւ և ձիերէն կոխկրտուեցաւ ու շները կերան, անանկ որ թաղելու հա-

մար միայն գանկն ու ձեռաց թաթերը մնացեր էին։ Ետքը Յէու ջարդեց Աքաաբի մնացած եօթանասուն որդիքն ալ. Բահաղու քուրմերն ալ՝ հանդէս պիտի ընեմ ըսելով զամէնքը կռատան մէջը ժողվեց թրէ անցուց. կռատունն ալ կործանեց՝ ոտից ճամբայ շինեց։

Հ. Յէու որչափ տարին թագաւորեց.

Պ. Քսանեւութը տարի. և թէպէտև Բահաղը ջնջեց, բայց հորթ պաշտելէն ետ չկեցաւ։ Աստուած ալ իրեն ըրած աղէկութեանը համար մինչեւ չորրորդ ազգը թագաւոր նստին ըսաւ։ Աս տարիներս Ազայէլ Ասորւոց թագաւորը շատ կը չարչարէր Իսրայէլացիները։

Հ. Յէուէն ետքը ով թագաւորեց.

Պ. Յովաքազ իր որդին՝ հօրը նման կռապաշտ, տասնեւեօթը տարի. անոր ետեւէն Յովաս իր որդին, ան ալ կռապաշտ։

Հ. Յովաս ինչ երեւելի գործք ըրած ունի.

Պ. Եղիսէին մեռնելու տանն որ մօտեցաւ, գնաց Յովաս սկսաւ լալ, ըսելով թէ “Ասանկ քեզի Իսրայէլացիք ինչ պիտի ընեն„։ Եղիսէն հրամայեց որ աղեղն առնէ ու պատուհանէն դէպ 'ի Ասորւոց երկիրը նետ նետէ. թագաւորն իրեք հեղ նետելէն ետեւ դադրեցաւ. ան ատենը Եղիսէն՝ “Ափսոս, ըսաւ, միայն իրեք անգամ Ասորիները պիտի ջարդես. թէ որ հինգ կամ վեց հեղ նետէիր՝ բոլոր զանոնք կը ջնջէիր„։ Ուստի Յովաս իրեք անգամով Իսրայէլացւոց կորսնցուցած քաղաքները բոլոր նորէն ետ առաւ։ Ետքը Ամասիա Յուդայի թագաւորին երբոր հպարտութեամբ Իսրայէլացւոց վրայ պատերազմ բացաւ, Յովաս անոր ալ յաղթեց՝ զինքն ալ բռնեց, Երուսաղէմն ալ առաւ, և անկէ շատ կողոպուտ Սամարիա բերաւ, և տասնուերկու տարի թագաւորելէն ետեւ մեռաւ։

Ասորեստան գերի տարաւ ։ Ասանկով բոլորովին պատռեց Աստուած իրենց կառավարչութիւնը . Թագաւորութիւննին առաւ ու զիրենք . գերի ըրաւ . անանց՝ որոնց որ կուռքերը կը պաշտէին ։ Ետքը Սաղմանասար Սամարիային կողմերն ասդիէն անդիէն ուրիշ մարդիկներ բնակեցուց ; որոնք Սամարացի ըսուեցան ։

Հ . Սամարացիք ի՞նչ կը պաշտէին .

Պ . Առջի բերանը կուռք կը պաշտէին . անոր համար Աստուած վրանին առիւծներ խրկեց որ շատ մարդ կ'ուտէին ։ Երբոր իմացաւ Ասորւոց Թագաւորը , Իսրայելացւոցմէ քահանայ մը խրկեց իրենց որ սկսաւ Մովսէսի օրէնքներն անոնց սորվեցնել ։ Անկէ ետքը Սամարացիք Աստուծմէ ալ իրենց կուռքերէն ալ կը վախէին ։

## 79 ։

### Ռոբովամ , Աբիա , Ասա ։

Հ . Իսրայելացւոց տասը ցեղին կառավարչին Թագաւորներուն հետ բաղդատելով Յուդայի Թագաւորներն ի՞նչպէս կը գտանք .

Պ . Շատ աղէկ ։ Թէպէտ անոնց մէջն ալ կռապաշտ Թագաւորներ եղան , բայց շատ աստուածապաշտներ ալ իրենց գործքովը զԱստուած կը հաշտեցընէին . անոր համար Յուդայի Թագաւորութիւնը Իսրայելացւոց Թագաւորութենէն շատ դիմացաւ , որոնց առջինը Ռոբովամն էր՝ Սողոմոնին որդին ։

Հ . Ռոբովամ ի՞նչպէս Թագաւորութիւն բռնեց .

Պ . Առջի իրեք տարին աստուածապաշտութեամբ անցուց , անկէ ետքը սկսաւ դէշնալ ։ Անոր համար Աստուած Թագաւորութեանը հինգերորդ տարին Թող տուաւ որ Եգիպտացւոց

## 81.

### Ոքոզիա, Յովաս :

Հ. Յովրամին յաջորդն ո՞վ եղաւ.

Պ. Ոքոզիան՝ որ մինակ ազատեր էր թշնամեաց ձեռքէն. քսանըերկու տարուան էր՝ երբոր հայրը մեռաւ : Անիկայ իր մօրը Գոթողիայի խրատով ապականեց կռապաշտութեան հակէ եղաւ. անոր համար՝ մէկ տարիէն երբոր Իսրայէլացւոց Յովրամ թագաւորին հետ Ասորւոց դէմ պատերազմի գնացեր էր, ու դարձեր Յովրամին քովը կեցեր էր՝ Յովրամ վիրաւորուած հիւանդ ըլլալուն համար, ան տանն որ Յէու Աքաաբի տունը կը ջնջէր՝ զինքն ալ հոն գտաւ՝ սպաննեց : Գոթողիան իմանալուն պէս՝ ինքն ալ ջարդել տալով թագաւորութեան ժառանգներն ու տեղը ինքը նստաւ. բայց Յովսաբեթ Ոքոզիայի քոյրը՝ Յովիադայէ քահանայապետին կինը՝ Ոքոզիայի պզտիկ տղան Յովասն որ մէկ տարուան էր՝ պահեց տաճարին մէջը վեց տարի :

Հ. Յովասն ինչ կերպով նստաւ իր հօրը աթոռը.

Պ. Երբոր եօթը տարուան եղաւ՝ Յովիադայէ ծածուկ կերպով իմացուց բոլոր Յուդայի մեծերուն. և օր մը մէկտեղ տաճարը ժողվեց զիրենք ու հոն Յովասին գլուխը թագ դրաւ՝ օծեց. և ամէնքն ալ ծափ զարնելով ցնծումով սկսան կեցցէ արքայ կանչել : Գոթողիա լսելով ժողովրդոց իրար անցնելը, իր մարդիկներովը տաճարը վազեց ; տեսաւ թագաւորն ու անոր քովը շարուած իշխանները, բոլոր ժողովուրդն ալ խնդութեան մէջ, կատաղեցաւ՝ վրայի լաթերը պատռեց, սկսաւ կանչըռտել թէ " Դաւաճանութիւն է դաւաճանու-

Թիւն ,, ։ Այն ատեն Յովիդայէն հրամայեց որ մէ-կէն տաճարէն դուրս հանեն Գոթողիան ու մեռ-ցնեն ։ Եւս Թագաւորին ու իշխաններուն Աս-տուծոյ հետ դաշինք ընել տուաւ որ Աստուծոյ օրինացը յարմարութիւններն ամէն բան . ու ատոր շատ մը բոլոր Յուդայի երկրէն կռապաշտութեան բաները վերցուցին ։ Եւսըբ Յովաս Աստուծոյ տաճարն ալ նորոգեց՝ գանձանակով ստակ ժողվելով , ու ամէն բան նորոգուելէն ետքը , աւելցած ստակով ալ հարկաւոր պղնձեաններ՝ գործիքներ ու զարդեր շի-նեցին ։

Հ . Յովաս ինչուան մեռնիլը մնաց աստուածա-պաշտ .

Պ . Երբոր Յովիդայէ հարիւր երեսուն տա-րուան մեռաւ , Յովաս ալ իր իշխաններուն խոր-հրդով կռապաշտութեան սկսաւ ։ Աստուած մար-գարէներ խրկեց , մտիկ չըրին ։ Զաքարիա Յովի-դայեայ որդին Աստուծոյ հոգւով վառուած եր-բոր զինքը յանդիմանեց , Յովասի հրամանաւը քարկոծեցին զինքը , որ մեռնելու ատեն՝ " Աս-տուած տեսնէ , քննէ , պահանջէ ,, ։ Անոր համար երկրորդ տարին Թող տուաւ Աստուած որ Ասորիները քիչ զօրքով եկան՝ յաղթեցին ; Թա-գաւորական գանձը կողոպտեցին տարին ։ Եւսըբ Յովասն ալ ցաւերէն վրայ նեղանալով հիւանդա-ցած պառկեր էր . իրեն ծառաներէն քանի մը հոգի մէկ եղած՝ անկողնին մէջը մորթեցին զինքը՝ քառասուն տարի թագաւորելէն ետև ։

82 .

Ամասիա ։

Հ . Յովասէն ետքը մի՞ նստաւ .

Պ . Ամասիա իր որդին քառասունհինգ տարուան .

իր հայրը մեռցընողներն սպաննեց․ և ինքն ալ առջի բերանը բարեպաշտութիւն ցուցուց։ Եդո-մայեցիք որ ապստամբեր էին՝ ուզեց նորէն իր տակն առնել՝ և իրեն զօրքը հերիք չսեպելով Իս-րայելացւոցմէ հարիւր հազար զօրք վարձեց՝ հա-րիւր տաղանդ արծաթով։ Այն ատեն մարգարէ մը Աստուծոյ կողմանէ ըսաւ իրեն․ "Թէ որ կ՚ուզես յաղթութիւն ընել՝ ան Իսրայելացիքը ետ ճամ-բէ"։ Ամասիան ալ "Հապա տուած տաղանդս մեղք չէ՞" ըսաւ․ մարգարէն՝ "Մի՛ վախեր, ըսաւ, Աստուած անոր տեղը քեզի ալ շատը կուտայ"։ Երբոր Ամասիան հնազանդեցաւ ու մինակ իրեք հարիւր հազար զօրքովը գնաց, Եդոմայեցւոցմէ տասը հազարը ջարդեց, տասը հազար ալ գերի առաւ ու զանոնքն ալ բարձր ժայռէ մը վար ձգե-լով սպաննեց։

Հ․ Ամասիան ի՞նչ պատճառով իր առջի աս-տուածպաշտութենէն ետ կեցաւ․

Պ․ Եդոմայեցւոց յաղթելէն ետքը՝ կուռքեր-նին Երուսաղէմ բերաւ ու սկսաւ պաշտել․ և եր-բոր Աստուծոյ կողմանէ մարգարէն զինքը խրա-տեց՝ Ամասիա սրդողելով "Թէ որ, ըսաւ, մէյմ՝ ալ բերանդ բանաս կը մեռցընեմ"։ Անոր հա-մար Աստուծոյ երեսէն իյնալով երբոր հպար-տութեամբ Իսրայելացւոց Յովաս թագաւորին դէմ ելաւ, Յովաս զինքը բռնեց, ու Երուսա-ղէմի պարիսպները փլուց, բոլոր ոսկին արծաթն ալ կողոպտեց տարաւ։ Ետքը Ամասիայի զօրքն ալ գլուխ քաշեցին, ինքն ալ Լաքիս քաղաքը փախաւ, գնացին սպաննեցին զինքը՝ քսանինը տարի թա-գաւորելէն վերջը, ու բերին Երուսաղէմ թա-ղեցին։

Հ․ Ամասիային ետևէն ո՞վ թագաւորեց․

Պ․ Ոզիա կամ Ազարիա անոր որդին տասնըւ-վեց տարուան։ Աստուածպաշտութեամբ թա-

դաւոյեց յիսուներկու տարի, ամէն Թշնամի-
ներու յաղթեց. Երուսաղէմի պարիսպները նո-
րոգեց, ուրիշ քաղաքներ ալ շինեց, երկրագոր-
ծութիւնը ծաղկեցուց, ջրջերուն կարգ կանոն
դրաւ. անանկ որ ինչուան հեռու աշխարհքներ
իր անունէն կը վախէին. անոր համար հպարտա-
ցաւ՝ ուզեց որ ինքը քահանայութիւն ալ ընէ։
Ուստի օր մը բուրվառն առած տաճարն որ մտաւ,
քահանաներն արգիլեցին "Քեզի չվայլեր" ըսե-
լով։ Երբոր Ոզիա սրդողելով արհամարհեց զա-
նոնք, հոն մէկէն բորոտեցաւ ու ահով դողով
փութալ ելաւ, և գնաց քաշուեցաւ իր տունն ին-
չուան մահը, իր տեղը Յովաթամ որդին Թագա-
ւոր դնելով։

Հ. Ոզիային մեռնելէն ետև Յովաթամ ինչո՞ց իր
Թագաւորութեանը մէջ։

Պ. Աստուածպաշտութեան և Թագաւորու-
թեան մէջ հաստատուած՝ խաղաղութեամբ ա-
ռաջնորդեց ինչուան մահը։ Ամոնացւոց հետ
պատերազմեցաւ ու զանոնք հարկատու ըրաւ։
Աստուած գրգռեց Փակէէ որդի Ռովմելան՝ Իս-
րայէլացւոց Թագաւորը՝ ու Ռասոն Ասորւոց
Թագաւորն որ Յուդայի տէրութեան վրայ ելլեն՝
ժողովրդեան անկարգութեանը համար. բայց
պատերազմը չսկսած Յովաթամ մեռաւ՝ քսանուե-
նուերկու տարուան, տասնուվեց տարի Թագա-
ւորելէն ետև։

Հ. Յովաթամէն ետքն ո՞վ Թագաւորեց.

Պ. Աքազ անոր տղան՝ քսան տարուան։ Նըս-
տելուն պէս սկսաւ կռապաշտութիւն ընել, ին-
չուան իր տղաքն ալ կուռքերու կը զոհէր։ Ուստի
նախ Ասորւոց Ռասոն Թագաւորն եկաւ աղէկ
մը ջարդեց, շատ մարդ գերի տարաւ. ետքը Իս-
րայէլացւոց Փակէէ Թագաւորը մէկ օրուան մէջ
հարիւր քսան հազար մարդ ջարդեց, ու իրեն

հարիւր հազար հոգի գերի տարաւ ։ Բայց Աքազ ասոնցմով չզգաստացաւ ու թշնամիներէն շատ նեղուելով, ամէն տաճարին հարստութիւնն ու իր գանձը Ասորեստանի Թագլաթփաղասար թագաւորին խրկեց որ իրեն օգնէ ։ Ան ալ եկաւ յաղթեց Փեկայեանց, ու Աքազն իրեն հարկատու ըրաւ ։ Աքազ գնաց Դամասկոս՝ զինքը բարեւելու ։ Եւ կարծելով թէ Ասորիք որ կը յաղթեն՝ անոնց աստուածն է զօրաւոր, անոնց կուռքին սեղանին նմանը տաճարին մէջ շինել տուաւ ու փոխան ողջակէզ կ'ընէր, տաճարին շատ բաներն ալ փոխեց, ետքը բոլորովին ալ գոցեց տաճարը ։ ուրիշ ամէն տեղ կռատուններ շինել տալով ։ Տասնուվեց տարիէն մեռաւ ։

## 83.

### Եզեկիա, Մանասէ ։

Հ. Աքազէն ետքը թագաւորութիւնը որու անցաւ ։

Պ. Եզեկիային՝ որ քսանուհինգ տարեկան էր, Դաւիթի պէս բարեպաշտ ու աստուածասէր ։ Ամէն աստուածպաշտութեան կարգերը նորէն հաստատեց, եւ մարգարէն խրկեց՝ բոլոր Իսրայէլացիքը յորդորելու, որով շատերն սկսան կռապաշտութենէ ետ կենալ ու տօնախմբութեան համար զատկին Երուսաղէմ եկան ։ Թէպէտ շատն ալ ծաղր կ'ընէին զանոնք ։ Ասանկով առջի տարին մեծ զատկի տօնախմբութիւն ըրաւ, երկու հազար կով տասնեւութը հազար ալ ոչխար զոհ ընելով ։ Սողոմոնէն ետքը ասանկ մեծ հանդէս չէր եղած ։ Աստուած ալ իրեն յաջողութիւն տուաւ որ բոլոր թշնամիներուն յաղթեց ու տէրութեան սահմանը մեծցուց ։

Հ. Եղեկիան Ասորեստանեայց ի՞նչպէս կրցաւ յաղթել ու առողջ ըլլալ.

Պ. Ամէն քովի ազգերուն յաղթելէն ետքը Ասորեստանեայց ատելը անոր ալ գազազեցուց: Անոր համար Թագաւորութեանը տասնըչորրորդ տարին Սենեքերիմ Թագաւորը սաստիկ ուժով զօրքեր առնելով եկաւ ինչուան Լաքիս քաղաքը: Եղեկիա վախցաւ ու շատ ոսկի արծաթ խրկեց իրեն որ հաշտուի ու ետ դառնայ. բայց Սենեքերիմ մտիկ չընելով Երուսաղէմ խրկեց Ռափսակ զօրավարն որ եկաւ պաշարեց քաղաքն ու Սենեքերիմին բերնէն Աստուծոյ դէմ հայհոյութիւններ խօսեցաւ. "Ես ամէն աստուածներուն կը յաղթեմ" ըսելով: Եղեկիա քուրձ հագած գնաց տաճարը, ինկաւ Աստուծոյ առջին սկսաւ աղօթք ընել. Եսայի մարգարէին ալ մարդ խրկեց ըսաւ որ ինքն ալ Աստուծոյ աղաչէ Երուսաղէմին համար: Եսայի մարգարէն պատասխան տուաւ որ չվախէ, վասն զի Աստուած Սենեքերիմը ամօթով իր տեղը դարձնէ պիտի: Ու ան գիշերը հրեշտակ մը Սենեքերիմին բանակին մէջէն հարիւր ութսունհինգ հազար հոգի սպաննեց: Սենեքերիմ ամաչելով սարսափելով Թագուց փախաւ՝ Նինուէ գնաց: Հոն ալ իր երկու որդիքն իմանալով որ կուռքը հաշտեցընելու համար՝ զիրենք զոհ ընել կ'ուզէ, զինքն սպաննեցին ու իրենք Հայաստան փախան:

Հ. Եղեկիա միշտ մնա՞ց իր աղէկութեանը մէջ.

Պ. Անգամ մը սաստիկ հիւանդացաւ, այնանկ որ Եսայի մարգարէն ալ ըսաւ թէ "Պիտի մեռնիս". բայց աղաչանքովը Աստուած տասնըհինգ տարի ալ կեանքն երկընցուց ու անոր յաջողութիւն խոստացաւ իրեն: Այս բաներուս նշան ալ տուաւ որ Աքազու ըրած արեւի ժամացոյցին շուքը հրաշքով տասը աստիճան ետ շարժի

Ասանկով Եզեկիա առողջանալէն ետև Աստուծոյ շնորհակալ եղաւ, բայց ետքը մոռնալով իրեն եղած յաջողութիւնները՝ հպարտացաւ, ու Բաբելացւոց թագաւորին աչքալուսի համար խր-կած մարդկանցը պարծենալով ցուցուց բոլոր իր հարստութիւնները: Անոր համար Աստուած ալ իրեն բարկացաւ, ու անդին ալ իրենց անկարգութիւններուն համար կ'ուզէր պատժել. բայց Եզեկիա նորէն զղջալուն համար, թողուց Աստուած որ ինքը հանգիստ մեռնի: Ասոր ալ շնորհակալ եղաւ Եզեկիա, ու քսանըինը տարի թագաւորելէն ետքը մեռաւ, և մեծ հանդէսով թաղուեցաւ:

Հ. Եզեկիայէն ետև ո՞վ նստաւ.

Պ. Մանասէ իր որդին՝ տասներկու տարուան. մէկէն կուռք պաշտել սկսաւ, ինչուան Աստուծոյ տաճարին ալ կուռքեր դրաւ, ու իր որդին ալ կը զոհէր, և ամէն տեսակ կախարդութիւններու գէշութիւններու ետևէ եղաւ, և ով որ իրեն խրատ տար՝ կը սպաննէր. անոր համար Եսայի մարգարէն ալ փայտէ սղոցով մէջքէն երկու կտոր ընելով սպաննեց: Աստուած ալ սպառնացաւ որ Իսրայէլացւոց պէս Յուդայի թագաւորութիւնն ալ ջնջէ. ուստի Ասորեստանի թագաւորն եկաւ առաւ Երուսաղէմը, ու Մանասէն շղթայի զարկաւ Բաբելոն տարաւ:

Հ. Մանասէն Բաբելոն գերի երթալէն ետքը ի՞նչ ըրաւ.

Պ. Հոն բանտին մէջը խելքը գլուխը ժողվեց՝ զղջումի եկաւ ու Տէր ամենակալ զղջման աղօթքն ըրաւ: Աստուած ալ իրեն ողորմեցաւ ու նորէն դարձուց իր աթոռն, որ բոլոր նորոգեց ամէն աստուածպաշտութեան կարգերն. ու յիսունըհինգ տարի թագաւորելէն ետքը մեռաւ:

Պ. Չէ. վասն զի այլ Իսրայէլացւոց մեղաց չափը լցուած էր. անոր համար Աստուած Յովսիայի թոյլ տուաւ որ ինքիրեն պատերազմ բանայ Եգիպտացւոց Նեքաւով թագաւորին դէմ, երբոր անիկայ Ասորեստանցւոց վրայ պատերազմի կ'երթար. ու հոն պատերազմին մէջ Յովսիա նետով մը չարաչար զարնուեցաւ՝ ու մեռաւ: Եւ իրեն մահուանը վրայ սաստիկ սուգ մտան ամենքը. Երեմիա մարգարէն ալ ողբ շինեց:

Հ. Յովսիայէն ետեւէն ով նստաւ.

Պ. Յովաքազ իրեն որդին քսանուիրեք տարուան, որ նստելուն պէս նորէն սկսաւ կռապաշտութիւն ընել. բայց իրեք ամիսէն Նեքաւով թագաւորը՝ Ասորւոց պատերազմէն դառնալու ատեն Երուսաղէմ եկաւ՝ զինքը շղթաներով կապած Եգիպտոս տարաւ, որ հոն մեռաւ. և անդը թագաւոր դրաւ անոր մեծ եղբայրն Եղիակիմը՝ քսանըհինգ տարուան, վրան ծանր տուրքեր դնելով. անունն ալ փոխեց Յովակիմ դրաւ:

Հ. Եղիակիմի կառավարութիւնը ինչպէս էր.

Պ. Իր Յովաքազ եղբօրմէն ալ գէշ էր բռնած Ճամբան. Թէպէտեւ Երեմիա մարգարէն զինքը միշտ կը խրատէր: Ու սակայն չորս տարիէն Բաբելացւոց Նաբուգոդոնոսոր թագաւորն եկաւ նորէն Երուսաղէմն առաւ, ու Յովակիմ թագաւորը շղթաներով կապած՝ Բաբելոն տարաւ, և քիչ ատենէն վրան ծանր տուրք դրած՝ անանկ թող տուաւ: Յովակիմ մէկ քանի տարիէն ետքը Նաբուգոդոնոսորէն զարձեալ ապստամբեցաւ. ան ատենը նորէն վրան եկան Բաբելացիքն ու երկար ատեն պատերազմ ընելով, Երուսաղէմն առին կողոպտեցին, ու Յովակիմ թագաւորն ալ տասնըմէկ տարի թագաւորելէն ետքը՝ չարաչար սպաննեցին:

83.

## Յեքոնիա, Սեդեկիա :

Հ. Եղիակիմին յաջորդն ով եղաւ.

Պ. Իրեն որդին Յեքոնիա՝ որ Յովակիմ ալ կ՚ըսուէր՝ տասնեւութը տարուան, հօրը նման գէշ: Բայց երեք ամսէն նորէն եկաւ Նաբուգոդոնոսոր՝ Երուսաղէմը պաշարեց առաւ, մեհեանին ոսկին ու արծաթը կողոպտեց. և թագաւորն ալ իր իշխաններովը և ութը հազարաւոր գերիներով Բաբելոն տարաւ, մնացածներուն վրայ ալ իրեն ձեռքին տակը թագաւոր դրաւ Սեդեկիան՝ Յովսիա թագաւորին պզտի տղան քսանումէկ տարուան:

Հ. Սեդեկիան ինչ ճամբայ բռնեց.

Պ. Սեդեկիան իր եղբայրներէն ալ գէշ եղաւ. ժողովուրդը բոլորովին վարժեցուց կռապաշտութեան, որ մարգարէները համարձակ ծաղր ընել սկսան: Բայց Աստուծոյ թոյլ տալովը Նաբուգոդոնոսորէն գլուխ քաշեց. ան ալ անհամար զօրքով նորէն Հրէաստան եկաւ. առաջ Եգիպտացւոց յաղթեց՝ որ Հրէից օգնութիւն եկեր էին, ետքը գնաց Երուսաղէմի վրայ և երկու տարի պաշարելով զիրենք չարչարելէն ետև պարիսպներն մէկ կողմը փլուց՝ ներս մտաւ, մեծ ջարդ տուաւ. Սեդեկիա թագաւորն ալ քաղքէն դուրս փախչելու ատեն զինուորները բռնեցին, Նաբուգոդոնոսորի առջևը տարին, որ ան ալ իրեն ըրած երդմնազանցութեանն երեսը զարնելով հոն իրեն աչքին ու մեծամեծ իշխաններուն աչքին առջևն սպաննել տուաւ. ետքը իրեն երկու աչքն ալ հանեց ու զինքը շղթաներով Բաբելոն տարաւ:

Հ. Սեդեկիայի գերութենէն ետև Երուսաղէմին ո՞վ իշխեց.

Պ. Նաբուզարդան Նաբուգոդոնոսորի դահճապետն եկաւ՝ Աստուծոյ տաճարն ու թագաւորին պալատը կողոպտեց ու կրակի տուաւ. քաղաքին պարիսպներն ալ փլուց, ու բոլոր մեծամեծները Բաբելոն գերի տարաւ, թողլով միայն աղքատներն ու երկրագործները, և անոնց վրայ Նաբուգոդոնոսորի հրամանովը Հրէից ազգէն Գոթողիա որդի Աքիկամայ իշխանը վերակացու դրաւ։

Հ. Գոթողիայի իշխանութիւնը ո՞րչափ տեւեց.

Պ. Խիստ քիչ. վասն զի Իսմայէլ որդի Նաթանայ Յուդայի թագաւորական ցեղէն մէկը, խաբէութեամբ սպաննեց զինքն ու փախաւ Ամոնացւոց թագաւորին քով՝ որդի Կարեին Յովնաթանայ ձեռքէն՝ որ զօրքով ետևէն ինկեր էր զինքը մեռցնելու համար։

Հ. Գոթողիայէն ետև մնացած Երուսաղեմի ժողովրդեան ո՞վ իշխեց.

Պ. Յովնաթան Կարեի որդին. բայց վախնալով Քաղդէացիներէն՝ ժողովուրդը հետն առած Եգիպտոս փախաւ, և հոն Աստուած պատժեց զիրենք. վասն զի Երեմիա մարգարէն Աստուծոյ կողմանէ ըսեր էր որ չվախէ Քաղդէացիներէն ու չերթայ։

Հ. Բոլորովին Հրէից իշխանութիւնը վերնալէն ետքը չիրցա՞ն նորէն վրայ գալ ու առջի փառքը պատիւն ունենալ.

Պ. Եօթանասուն տարի անանկ երեսի վրայ մնալէն ետքը, նորէն ողորմեցաւ Աստուած. բայց առջինին պէս բոլորովին ազատ չիրցան ըլլալ։

Հ. Երբոր Հրեայք բոլորովին իշխանութիւնը կորուսին ու աստին անդին ցրուեցան, մէջերնին չհանդիպեցա՞ն յիշատակի արժանի գործքեր.

Գ. Հանդիպեցաւ, որոնք ասեն՝ ի ատեն Բաբե_լացւոց գերութեան ժամին մէջ գրած է. և են այսոնք. Պատմութիւն Տոբիթայ, Յուդիթայ, Եսթերայ, և Երեք մանկանց. այսոնցմէ զատ կայ նաև առանձին մարգարէներուն պատմութիւնք:



86.

## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Սամուէլ արդէն ղեւտացի ըլլալովը՝ տապա-նակին պէտք էր ծառայէր, հապա մայրն ինչո՞ւ մանաւանդ ուխտը ըրաւ որ զինքն Աստուծոյ նուիրէ։

Գ. Ղեւտացիներուն Աստուծոյ ծառայելու պարտքը կը սկսէր քսանըհինգ տարուան եղած ա-տեննին. և երբոր յիսուն տարեկան կ՚ըլլային՝ պաշտօնէն կ՚ազատէին. իսկ Սամուէլ պզտիկուց ինչուան մահն ուխտաւոր Աստուծոյ եղաւ։

Հ. Աստուած ի՞նչպէս առաջ Սաւուղին եր-դումն ընդունեցաւ՝ յաղթութիւն տուաւ, ու ետքն որ նորէն հարցուց՝ պատասխան չտուաւ.

Գ. Առջի յաղթութիւնը տուաւ՝ միայն չխապէկ ըլլալուն համար. և թէպէտ ան հրամանը զգու-նալով արհամարհող մը չէր եղած, բայց ետքը Աստուած արգելելովը ու պատասխան չտալովը ուզեց իմացընել թէ անխոհեմ հրամանը՝ թէպէտ անմեղութեամբ եղած՝ զգուշանալի է. վասն զի ինքն պատճառ եղաւ որ բոլոր զօրքն իրեն հրա-մանին դէմ տրտնջացին, և իր տղան զինքը արհա-մարհեց. ետքը օրինաց դէմ ալ ընել սկսան՝ ոչ-խարները գետնի վրայ մորթած արիւնով ուտե-լով։

Հ. Յոնաթանին մեղր ուտելը յանցանք չէ՞ր.

Գ. Չէ. բայց իր հօրը հրամանին չհնազանդիլ ցու-ցնելն աղէկ բան չէր։

Հ. Երբոր Սաւուղ Մեղայ ըսաւ, Սամուէլ ինչո՞ւ մտիկ չըրաւ.

Գ. Վասն զի սրտանց չէր զղջացեր, հապա մենակ վախէն՝ որ չըլլայ թէ թագաւորութենէն զրկուի, և ժողովրդեան աչքէն ելլէ։

Հ. Ի՞նչպէս կ'ըլլար որ Դաւիթի քնար զարնելովը Սաւուղայ դիւահարութիւնը կը հանդարտէր.

Գ. Որովհետև սատանան մարդուն միտքը նոր կիրք չկրնար խօթել, հապա բնական ունեցած կիրքը Աստուծոյ թոյլ տալովը կը սաստկացընէ, անոր համար սատանան Սաւուղայ վրայ տիրելէն ետքը՝ երբոր Սաւուղ բնութեամբ քիչ մը այլայլութիւն կ'ունենար, նոյն այլայլութիւնը սատանան ուզածին պէս կը սաստկացընէր. ուստի դրսանց ալ բնական հիւանդութիւն կ'երևնար. երբոր քնար կը զարնէին՝ բնական կիրքը կ'իջնէր, սատանան ալ կը թողուր զինքը։

Հ. Սաւուղին Դաւիթը բռնելու համար Նաւաթ Հռամա խրկած մարդիկն և ինքը, ի՞նչպէս կը մարգարէանային.

Գ. Մարգարէանալ բառը կը նշանակէ երբեմն երգել, զԱստուած օրհնել։ Երբոր անոնք մարգարէներուն քովը կ'երթային, Աստուած մտքերնին անանկ կը փոխէր որ ամէն բան կը մոռնային՝ կը սկսէին անոնց հետ երգել։ Անով Աստուած Դաւիթի փախչելու ատեն տուաւ։

Հ. Դաւիթ իրաւունք ունէ՞ր Նաբաղը անով տեղով սպաննելու.

Գ. Մինակ զինքն ալ սպաննելու իրաւունք չունէր. վասն զի դեռ իրեն թագաւոր ըլլալը չէր հրատարակուած, և Նաբաղը պարտք չունէր իրեն բան տալու. միայն թէ Դաւիթի ըրած բարերարութեանը պէտք էր շնորհակալ ըլլալ ու քիչ մը բան տալ, չէ թէ անարգել զինքը։ Բայց Դաւիթ զինուորական սովորութեամբ սխալեցաւ, անոր համար կիրքէն իջածին պէս ճանչցաւ որ աղէկ չէր ըրածն, ու փառք տուաւ Աստուծոյ։

Հ. Դաւիթ ի՞նչպէս յանձն առաւ Անքուսայ հետ Իսրայէլացւոց վրայ պատերազմի երթալ.

Պ. Թէպէտ աստուածաշունչը յայտնի պատճառը չըսեր, բայց Դաւիթի ուրիշ գործքերէն յայտնի է որ Աստուծոյ հարցուց, Աստուած՝ գնա՛, ըսաւ, իմացընելով թէ ինքն ուզեր է որ այլազգիք Իսրայէլացւոց վրայ երթան. և թէ որ Թողուին իշխանները, Դաւիթ Աստուծոյ հրամանին հնազանդելով պիտի պատերազմէր Իսրայէլացւոց դէմ:

Հ. Վհուկ կնոջ կախարդութեամբն ի՞նչպէս երևցաւ Սամուէլ Սաւուղին.

Պ. Վհուկն իր արհեստը չգանեցուցած Աստուած ցուցուց Սամուէլն որ Սաւուղը յանդիմանէ. և վհուկը տեսնելով որ գեռ ինքը բան մը չըրած՝ երևցաւ, շատ վախցաւ: Իսկ Սամուէլ՝ "ինչո՞ւ զիս անհանգիստ ըրիր" ըսելովը, իմացընել կ'ուզէր թէ Աստուծոյ տեղն իջնալով աղաչ-խարելու տեղ՝ սատանիկ վհուկին ձեռքովը զինքը վրդովելը Սաւուղին օգուտ մը չըներէն ետքը վնաս ալ ըրաւ:

Հ. Դաւիթ ինչո՞ւ այնչափ լացաւ Աբիսողոմին մահուանը վրայ.

Պ. Հոգւոյն կորսուելուն համար. գիտնալով թէ իր մեղքը պատժելու համար Աստուած թողուց որ Աբիսողոմ իրեն ապստամբի. անոր համար Դաւիթ կ'ուզէր որ զինքը յորդորելով դարձի բերէր:

Հ. Սաղմոսը ե՞րբ գրեց Դաւիթ.

Պ. Այլ և այլ ատեն կար կար. վասն զի երևելի գիտնուած մը ըլլալուն պէս՝ Աստուծոյ գովասանք կը չինէր ու քնարովը կ'երգէր. Թէպէտ Սաղմոսին մէջ տեղի մարգարէներուն և երգիչներուն շարադրածներն ալ կան:

87.

Հ. Ի՞նչպէս կրնայ ըլլալ որ Սողոմոնին պէս իմաստուն մարդ աշխարհք դեռ չէ եկած և պիտի չգայ.

Պ. Սողոմոնին իմաստութիւնը որովհետեւ գեր-բնական չէր՝ բնական էր, անոր համար սովորա-կան մարդկանց հետ բաղդատելով իրեն նմանը պիտի չըլլայ. բայց Ադամայ՝ մարգարէից՝ առա-քելոց և ուրիշ սուրբերու, եւ մանաւանդ Յիսուսի և Աստուածածնայ իմաստութիւնը բնականէն վեր է. անոնց հետ չբաղդատուիր:

Հ. Սողոմոն իմաստունն ի՞նչ գիրք շինեց.

Պ. Առակաց գիրքը՝ որ կարճ կարճ խրատներ են. Ժողովողը՝ աշխարհքիս ունայնութեանն ու մարդուս ճշմարիտ վախճանին վրայ. Երգ երգոց ըսուած խորհրդաւոր գիրքը և Իմաստութիւն: Ուրիշ գրքեր ալ գրեր էր՝ բնական գիտութիւն-ներու վրայ, բայց հիմա չեն գտնուիր. ու կար-ծիք է որ Եղեկիա թագաւորին այրած ըլլայ զա-նոնք՝ ժողովրդեան վնասակար սեպելով:

Հ. Սողոմոն իր մեղքերն ապաշխարեց.

Պ. Ապաշխարած ըլլալուն մեծ նշան է Ժողովո-ղին գիրքը. բայց սուրբ գրքին անոր փրկութիւնն անորոշ թողուլը՝ յայտնի կը ցուցնէ Աստուծոյ դատաստանին ահաւորութիւնը:

Հ. Յերոբովամին միտքն ուսկի՞ց ինկաւ հորթ պաշտելը.

Պ. Մէյմը որ լսեր էր թէ Իսրայէլացիք անա-պատին մէջը հորթ պաշտեր էին. մէյմըն ալ ինքն առաջ Եգիպտոս փախած ըլլալով տեսեր էր Ե-գիպտացւոց կով պաշտելն ու անոնց կարգերը:

Հ. Եղիան ինչո՞ւ կրակով պատժեց երկու յիս-նապետները.

Գ. Վասն զի ծաղր ընելով Մարդ Աստուծոյ կ'ըսէին իրեն, ու հպարտ կերպով մը կը հրամայէին որ ելլէ գայ:

Հ. Երբոր Յովրամ պատերազմին համար Եղիսէին հարցուց, ինչու Եղիսէ քնար զարնել տուաւ՝ պատասխան տալէն առաջ.

Գ. Վասն զի Հոգին սուրբ խաղաղ միտք կ'ուզէ: Եղիսէին ան ատենը նեղացած ըլլալով Յովրամայ ըրած գէշութիւններուն համար, քնար ուզեց որ հանդարտ սրտով կարենայ Աստուծոյ խորհուրդները մտածել:

Հ. Եղիան որ դեռ Յովսափատ չմեռած վերացեր էր, ինչպէս թուղթ գրեց անոր որդւոյն Յովրամ թագաւորին.

Գ. Կ'երևնայ որ դրախտէն գրեց ու մարգարէի մը կամ ուրիշ բարեպաշտ մարդու մը յայտնուելով տուաւ թուղթը՝ Յովրամին խրկեց:

Հ. Հրէից թագաւորներուն պատմութիւնն ո՞ւր կը պատմուի.

Գ. Թագաւորութեանց ըսուած չորս կտոր գրքերուն, ու երկու Մնացորդաց գրքերուն մէջ, որ ատեն ատեն այլ և այլ մարգարէներէ գրուած են:



## ԳԵՐՈՒԹԵԱՆ ԱՏԵՆԸ

### ԻՆՉՈՒԻԱՆ ՔՐԻՍՏՈՍ

### 88.

### Տոբիթ։

Հ. Տոբիթ ո՞վ է.

Գ. Նեփթաղիմի ցեղէն՝ Թեզբէ քաղաքէն բարեպաշտ մարդ մըն էր Իսրայէլացւոց տասը ցեղին մէ՛ջը կռապաշտ թագաւորներուն ատեն, որ ամէն օրէնքները կը պահէր, ու ատենին Երուսաղէմի տաճարը կ'երթար։ Երբոր Սաղմանասար Իսրայէլացւոց տասը ցեղը գերի տարաւ, Տոբիթ ալ մէկտեղ գնաց իր Աննա կնիկովը ու Տոբիա տղուն հետ։ Հոն Աստուծոյ օրհնութեամբը անանկ սիրելի եղաւ Սաղմանասար թագաւորին՝ որ կ'երթար կուգար, ինչուան որ մեռաւ Սաղմանասար։

Հ. Սաղմանասարայ մեռնելէն ետքը Տոբիթ ի՞նչ գործքի հետ էր.

Գ. Երբոր Սաղմանասարայ տեղը Սենեքերիմ թագաւորեց ու Եզեկիայի պատերազմէն յաղթուած դարձաւ, սիրտն այրած ըլլալով շատ Իսրայէլացի կը սպաննէր. Տոբիթ ալ գիշերանց ան

մեռելները կը թաղէր ։ Թագաւորին իմացաւ ու Տօբիթին ալ սպաննել կ'ուզէր . ան ալ որ փախաւ , բոլոր ունեցածները յափշտակեցին ։ Եօթը քիչ օրէն սպաննուեցաւ Սենեքերիմ , և Տօբիթ նորէն դարձաւ ։ Օր մը երբոր իր ազգականներուն սեղան ըրեր էր՝ Տուբիան խրկեց որ եթէ իր ազգէն աղքատ մը գտնէ , սեղանի կանչէ ։ Տղան շուտ դարձաւ պատմեց թէ Իսրայէլացի մը մեռուցած՝ փողոցը ձգած է ։ Տօբիթ կերակուրը թողուց՝ գնաց ան մեռելը տուն բերաւ ու երբոր գիշերանց թաղեց . և օրինաց ըսածին այս պիղծ սեպուելով , դուրսը պատին տակը հոգնած կանըկի վրայ ինկած քնացաւ՝ աչքը բաց . վերէն ծիծղուկները ծրտելու տաքն Տօբիթի աչուըներուն երթալով կուրցաւ . բայց ինքը՝ եղբայրսիրութեան համար ըլլալուն՝ սիրով կը համբերէր , և կնկանը մանածով խեղճութեամբ կ'ապրէր ։

Հ. Աննային մանածին տակը թէ որ չօգտէր ապրելու , ինչ կ'ընէին ։

Պ. Իրենք Աստուծոյ ապաւինած էին , Աստուած ալ զիրենք կը հոգար . ուստի Տօբիթ ան յուսով մեռնելու վիճակ ալ հասնէր , չէր ուզեր որ ապրուստ գտնելու համար անիրաւութիւն ընեն ։ Անոր համար , անգամ մը մանած դնողներուն մէկը այծու ձագ մը պարգև տուաւ Աննային . Տօբիթ կարծելով թէ գողցուկ ուլ մը ձեռք ձգեր է՝ սկսաւ հետը վիճել որ ետ տայ , ինչուան որ իրաւն իմացաւ ։ Եօթը տարին բանտերով սիրտն եղած՝ խնդրեց Աստուծմէ որ ազգին մեղացը թողութիւն տայ ու իր հոգին ալ առնէ ։ Անոր համար սկսաւ Տուբիային կտակ ընել՝ աստուածպաշտութեան խրատներով . և միտքը գալով տասը քանքար տաղանդն որ Մարաց երկիրը Գաբայէլ ըսուած մարդուն փոխ տուեր էր , ապսպրեց որդւոյն որ առնէ բերէ ։

Հ. Տուբիան ուսկէ՞ գիտէր Մարաց երկրին Ճամբան և Գաբայէլին տունը.

Պ. Չէր գիտեր. անոր համար երբ հայրը հրամանաւ կ'երթար ընկեր մը գտնելու, Ռափայէլ հրեշտակը կարիճ մարդու մը կերպարանքով դիմացն ելաւ ու ըսաւ թէ ինքը կը տանի. Երբոր Տոբիթի առջևն ելան, հարցուց որուն տղան ըլլալը. ան ալ ըսաւ թէ "Քու Անանիա բարեկամիդ տղան եմ՝ Ազարիան,,. Աս որ լսեց՝ սիրով անոր յանձնեց Տուբիան որ երթան, խոստանալով իրեն վարձք օրը դրամ մը ու կերակուր.

Հ. Տուբիան Ռափայէլ հրեշտակին հետ ինչ յաջողութեամբ ըրաւ իր ճամբորդութիւնը.

Պ. Մէջէ չանցած բարիքներուն հանդիպելով: Նախ երբոր Եփրատ գետին քով հասան, ու Տուբիան քիչ մը լուացուիլ կ'ուզէր, մեծ ձուկ մը վրան վազեց. "Մի՛ վախեր, ըսաւ հրեշտակը, բռնէ դուրս հանէ,,. ան ալ դուրս քաշեց. ու հրեշտակը "Հանէ, ըսաւ, սիրտը՝ լերդն ու լեղին պահէ,,. ու ձուկն եփեցին կերան: Ետքը Եկբատան որ հասան, հրեշտակին խորհրդովը ան գիշերը Տուբիայի ազգականին Ռագուելին տունն իջան, որ անոր Սառա աղջիկը Տուբիան իրեն առնէ. Թէպէտ Տուբիան վախ կը ցուցնէր՝ ըսելով որ եօթը հոգի ան աղջկան առնելու եկեր են, ու եօթն ալ առջի գիշերը մէկ դև մը մեռուցեր է, չըլլայ թէ ինծի ալ անանկ պատահի: Բայց հրեշտակը սիրտ տուաւ և պատուիրեց որ առջի գիշերը քիչ մը կրակով ան ձկան սիրտն ու լեղը ծխէ, և հարսին հետ մեկտեղ աղօթք ընեն Աստուծոյ. ան հոտէն ըսաւ՝ դևը կը փախչի: Ետքը Ռագուելին հրեշտակը խօսք բացաւ աղջկանը համար. անոնք ալ սիրով յանձն առին, ու հարսնիքքին գիշերը Տուբիան հրեշտակին պատուիրածն ընելով երբոր վնաս մը չեղաւ, ամենքը փառք

մեկէ մը չյաղթուիր. պէտք է սպասել որ իրենք իրենց Աստուծոյն դէմ յանցանք ընեն որ յաղթուին»: Հոլոփեռնէս կրակ կտրեցաւ, «Նաբուքոդոնոսորին մէկ կրնայ յաղթել» ըսելով. Աքիովրն ալ՝ զԱստուած իր թագաւորէն զօրաւոր սեպելուն համար՝ ձեռքը ոտքը կապած՝ Բեթուլուայի բերդին տակը ձգել տուաւ, որ երբոր քաղաքն առնէ՝ զինքն ալ Հրէից հետ պատժէ: Բեթուլուացիք ներս առին Աքիովրը, պատմել տուին. որ երբոր իմացան Հոլոփեռնէսին պատրաստութիւնը սարսափեցան, սկսան աղօթք ընել: Հոլոփեռնէս ալ իրեն իշխաններուն խորհուրդով պաշարեց քաղաքն ու Ջուրն ալ կտրեց:

Հ. Բեթուլուացիք ի՞նչպէս կրցան դիմանալ Հոլոփեռնեսի պաշարմանը.

Պ. Երեսունչորս օրէն ետքը՝ սաստիկ ծարաւէն նեղացած՝ իշխաններն որոշեցին որ եթէ հինգ օրէն ալ Աստուած չօգնէ՝ քաղաքը տան: Այն ատեն Յուդիթ որբեւայրի կինը՝ Ղմաւոնի ցեղէն՝ պարկեշտ, շնորհալի, որ պահքով աղօթքով կ'անցընէր կեանքը, Աստուծմէ լուսաւորուած՝ կանչեց իշխանները յանդիմանեց զանոնք անանկ ծուռ խորհուրդներնուն համար, ու ըսաւ թէ «Աղօթք ըրէք, կը յուսամ որ Աստուած իմ ձեռքովս բարիք մը ընէ»:

Հ. Յուդիթ ի՞նչպէս ազատեց Բեթուլուան Հոլոփեռնեսին ձեռքէն.

Պ. Գնաց քուրձով ու մոխրով ինկաւ Աստուծոյ առջեւ, շատ աղաչելէն ետքը՝ հագուեցաւ, զարդարուեցաւ ու իր աղախինին հետ քաղքէն դուրս ելաւ գնաց: Հոլոփեռնեսի զինուորներն երբոր տեսան, վրան զարմանալով թէ ի՞նչու դուրս ելեր է՝ զինքը Հոլոփեռնեսի տարին: Հոլոփեռնէս հարցուց թէ ո՞վ է, ուսկից կուգայ. Յուդիթ խելացի կերպով պատասխան տուաւ. «Տէր,

խմ․ տեսայ որ Աստուած բարկացեր է մեր ազ-գին․ ու իրենց բանը գէշ պիտի ըլլայ․ անոր համար փախայ եկայ քեզի աղախին ըլլալու ,, ։ Բայց գիշերները բանակէն դուրս ելլելու հրաման խնդրեց որ իր Աստուածը պաշտէ , ու Գոդեփրեանէսն ալ առանց վնասի մը Աստուծոյ հրաման տուած օրն Երուսաղէմ տանի ։ Գոդեփրեանէս Յուդիթայ ըսածներուն հաւատալով հրամայեց որ իր վրանը բերեն մինչև ու իր աղէկ կերակուրներէն տան անոր․ բայց Յուդիթ աղաչեց որ ինքն իր հետը բերած կերակուրն ուտէ ։ Ասանկ իրեք օր հոն կեցաւ , ու գիշերները միայն բանակէն դուրս կ'ելլէր՝ աղօթք կ'ընէր որ Աստուած իր բանը յաջողէ ։ Չորրորդ իրիկունը Գոդեփրեանէս փառաւոր սեղան մը ըրաւ իր զօրապետներուն , Յուդիթն ալ կանչեց , որ եկաւ նստաւ ու իր հետը բերածներէն կ'ուտէր․ կերան խմեցին , Գոդեփրեանէս ալ աղէկ մը գինովցաւ ։ Երբոր ամէնքն որ գնացին , ու միայն Յուդիթ ու Գոդեփրեանէս մնացին , Յուդիթ տեսաւ որ Գոդեփրեանէս խորունկ կը քնանայ , գնաց քովը , հանեց անոր թուրը , բանեց մազերէն , " Տէր Աստուած , ըսաւ , օգնէ ինծի ,, , ու երկու հեղ զարկաւ՝ գլուխը կտրեց առաւ , դուրս ելաւ՝ իր աղախինին տուաւ որ կերակրին մախաղին մէջը դնէ ։ Ու ասանկով մարդ չիմացած՝ գիշերանց ետ դարձաւ , Բեթուղուայի պարսպին տակն որ հասաւ , սկսաւ կանչել պահապաններուն թէ " Բացէք դռները , Աստուած մեր հետն է ,, ։ Ժողվեցան ամէնքը ջահերով ճրագներով տեսան Գոդեփրեանէսին գլուխը Յուդիթայ ձեռքը , փառք տուին Աստուծոյ․ Աքիոր Ամմոնացւոց իշխանն տեսնելուն պէս՝ ինկաւ մարեցաւ․ ու ետքը զարմանալով Աստուծոյ զօրութենէն վրայ՝ դարձաւ աստուածապաշտ եղաւ ։

մէկէ մը չյաղթուիր․ պէտք է սպասել որ իրենք իրենց Աստուծոյն դէմ յանցանք ընեն որ յաղթուին ,, ։ Հոլոֆեռնէս կրակ կտրեցաւ , "Նաբուքոդոնոսորին ամէն կրնայ յաղթել ,, ըսելով․ Աքիովրն ալ զԱստուած իր թագաւորէն զօրաւոր սեպելուն համար՝ ձեռքը ոտքը կապած՝ Բեթուղուայի քաղաքին տակը ձգել տուաւ , որ երբոր քաղաքն առնէ՝ զինքն ալ Հրէից հետ պատժէ ։ Բեթուղուացիք ներս առին Աքիովրը , պատմել տուին․ որ երբոր իմացան Հոլոֆեռնէսին պատրաստութիւնը սարսափեցան , սկսան աղօթք ընել ։ Հոլոֆեռնէս ալ իրեն իշխաններուն խորհրդով պաշարեց քաղաքն ու ջուրն ալ կտրեց ։

Հ․ Բեթուղուացիք ինչպէս կրցան դիմանալ Հոլոֆեռնեսի պաշարմանը․

Պ․ Երեսունըչորս օրէն ետքը՝ սաստիկ ծարաւէն նեղուած՝ իշխաններն որոշեցին որ եթէ հինգ օրէն ալ Աստուած չօգնէ՝ քաղաքը տան ։ Ան ատեն Յուդիթ որբեւայրի կինը՝ Շմաւոնի ցեղէն՝ պարկեշտ , շնորհալի , որ պահքով աղօթքով կ'անցընէր կեանքը , Աստուծմէ լուսաւորուած՝ կանչեց իշխանները յանդիմանեց զանոնք անանկ ծուռ խորհուրդներնուն համար , ու ըսաւ թէ " Աղօթք ըրէք , կը յուսամ որ Աստուած իմ ձեռքովս բարիք մը ընէ ,, ։

Հ․ Յուդիթ ինչպէս ազատեց Բեթուղուան Հոլոֆեռնեսին ձեռքէն․

Պ․ Գնաց քուրձով ու մոխրով ինկաւ Աստուծոյ առջեւ , շատ աղաչելէն ետքը՝ հագուեցաւ , զարդարուեցաւ ու իր աղախինին հետ քաղաքէն դուրս ելաւ գնաց ։ Հոլոֆեռնեսի պահապաններն երբոր տեսան , վազան զարմանալով թէ ինչու դուրս ելեր է՝ զինքը Հոլոֆեռնեսին տարին ։ Հոլոֆեռնէս հարցուց թէ ով է , ուսկից կուգայ․ Յուդիթ խելացի կերպով պատասխան տուաւ․ "Տէր,

իմ, տեսայ որ Աստուած բարկացեր է մեր ազ-
գին. ու իրենց բանը գէշ պիտի ըլլայ. անոր հա-
մար փախայ եկայ քեզի աղախին ըլլալու ,, ։
Բայց գիշերները բանակէն դուրս ելլելու հրա-
ման խնդրեց որ իր Աստուածը պաշտէ, ու Հո-
ղեփեռնէսէն ալ առանց խափանի մը Աստուծոյ հրա-
ման տուած օրն Երուսաղէմ տանի ։ Հողեփեռ-
նէս Յուդիթայ ըսածներուն հաւատալով՝ հրա-
մայեց որ իր վրանը բերեն զինքն ու իր աղէկ կե-
րակուրներէն տան անոր. բայց Յուդիթ աղաչեց
որ ինքն իր հետը բերած կերակուրն ուտէ ։ Ա-
սանկ իրեք օր հոն կեցաւ, ու գիշերները միայն
բանակէն դուրս կ'ելլէր՝ աղօթք կ'ընէր որ Աս-
տուած իր բանը յաջողէ ։ Չորրորդ իրիկունը Հո-
ղեփեռնէս փառաւոր սեղան մը ըրաւ իր զօրա-
պետներուն, Յուդիթն ալ կանչեց, որ եկաւ
նստաւ ու իր հետը բերածներէն կ'ուտէր. կե-
րան խմեցին, Հողեփեռնէս ալ աղէկ մը գինով-
ցաւ ։ Ետքը ամէնքն որ գնացին, ու միայն Յու-
դիթ ու Հողեփեռնէս մնացին, Յուդիթ տեսաւ
որ Հողեփեռնէս խորունկ կը քնանայ, գնաց
քովը, հանեց անոր թուրը, բռնեց մազերէն,
“ Տէր Աստուած, ըսաւ, օգնէ ինծի ,,, ու եր-
կու հեղ զարկաւ՝ գլուխը կտրեց առաւ, դուրս
ելաւ՝ իր աղախինին տուաւ որ կերակրին մախա-
ղին մէջը դնէ ։ Ու տանելով մարդ չիմացած՝ գի-
շերանց ետ դարձաւ, Բեթուղուայի պարսպին
տակին որ հասաւ, սկսաւ կանչել պահապաննե-
րուն թէ “ Բացէք դռները, Աստուած մեր հետն
է ,, ։ Ժողվեցան ամէնքը ջահերով ճրագներով
տեսան Հողեփեռնէսին գլուխը Յուդիթայ ձեռ-
քը, փառք տուին Աստուծոյ. Աքիոր Ամմոնա-
ցւոց իշխանն տեսնելուն պէս՝ ինկաւ մարեցաւ.
ու ետքը զարմանալով Աստուծոյ զօրութեանը
վրայ՝ դարձաւ աստուածապաշտ եղաւ ։

Հ. Հողեփեռնեսին մարդիկն ինչ կերպով իմացան իրեն մահը, և ինչ ըրին.

Պ. Հրեայք առաւօտանց Հողեփեռնեսի գլուխը բերդին վրայ կախեցին, ետքը վազեցին թշնամիներուն վրայ, անոնք ալ շուտ մը գնացին Հողեփեռնեսի ձայն տալու որ պատերազմ սկսին։ Մտաւ սենեկապետը՝ տեսաւ մարմինն արիւնլուայ գետինը փռուած, "Վա՜յ, կանչեց, Եբրայեցի կին մը խաղք ըրաւ զմեզ"։ Աս որ լսեցին զօրքը՝ փախչող փախչողի եղան։ Ան ատենը Հրեայք աղէկ ջարդ մը տուին անոնց, ու երեսուն օրուան մէջ հազիւ կրցան կողոպուտները ժողվել։

Հ. Յուդիթայ յաղթութեանը համար Հրեայք իրեն ինչ փոխարէն ըրին.

Պ. Ամէնքը չորս դիէն կուգային զինքը կ'օրհնէին. ինչուան Երուսաղեմէն քահանաներ եկան զինքը տեսնելու և օրհնելու։ Հողեփեռնեսի վրանն ալ բոլոր արծըթեղէն ու ոսկեղէն բաներովը Յուդիթայ տուին, որ ինքն ալ ետքը տաճարին ընծայեց։ Իսկ Յուդիթ ուրախութեամբ լցուած օրհնութիւն մը երգեց Աստուծոյ, ու նորէն գնաց իր տունը՝ բարի վարքով ապրեցաւ ինչուան հարիւր հինգ տարի։

90.

Եսթեր։

Հ. Եսթերայ պատմութեան մէջ գլխաւոր դիտելու դիպուածներն որո՞նք են.

Պ. Արտաշէս թագաւորին փոփոխամտութիւնը, Համանայ հպարտութիւնը, Մուրդքէին աստուածպաշտութիւնը, և Եսթերայ եղբայրսիրութիւնը։

Հ. Արտաշէսն ո՞վ է.

Պ. Պարսից զօրաւոր թագաւոր մը, որ թագաւորութեանը երրորդ տարին մեծ յաղթութիւններ ընելով՝ փառաւոր կոչունք մը ըրաւ իր իշխաններուն՝ Սուսա թագաւորական քաղաքին մէջ՝ վեց ամիս. եւ վերջը վեց օր ալ առանձին իր պալատին մէջ չպատմուելու մեծ հանդէսով։ Վերջի օրը Արտաշէս բոլորովին զուարճացած՝ ուզեց որ Աստինէ մեծ թագուհին գայ, իշխաններուն երեւնայ ու իրեն հետ մէկտեղ փառաւորուի. բայց Աստինէն չեկաւ. անոր համար Արտաշէս ալ սաստիկ բարկացաւ, իշխաններուն խորհրդովը զինքը թագուհիութենէ ձգեց՝ որ ուրիշ կիները իրմէն չար օրինակ չառնեն. որուն տեղը Եսթեր ընտրուեցաւ։

Հ. Ի՞նչ կերպով Եսթեր թագուհիութեան հասաւ.

Պ. Հրաման եղաւ որ ուրիշ մը փնտռեն, որ Աստինէի տեղ թագուհի ընտրուի։ Եսթեր Մուրդքէի հօրեղբօրը աղջիկն էր՝ որբ մնացած՝ որ Մուրդքէն զինքը կը պահէր. ու երբոր լսեց թագուհի ընտրելու հրամանը, զԵսթերն ալ խրկեց՝ պատուիրելով որ չյայտնէ ինչ ազգ ըլլալը։ Թագաւորն Եսթերին հաւնեցաւ ու թագուհի ըրաւ. Եսթեր ալ Մուրդքէի խրատովը աստուածպաշտութիւնը գաղտուկ կ'ընէր։

Հ. Մուրդքէն ինչ պաշտօնի մէջ էր.

Պ. Թագաւորին ծառայութեանը մէջ մտած էր. անոր համար անգամ մը իմանալով որ երկու ներքինի մէջերնին խօսք դրեր են թագաւորը մեռցնելու, մէկէն Եսթերայ ձեռքովը իմացուց թագաւորին. Արտաշէս կախել տուաւ այն ներքինիները ու Մուրդքէին հաւատարմութիւնը յիշատակարանին մէջ գրել տուաւ։ Եւ աս Մուրդքէին գործքը պատճառ եղաւ որ Համանին ձեռքէն ազատեցաւ։

Հ․ Համան ո՞վ էր, ու ի՞նչ բանի համար Մուրդքէին հետ թշնամացաւ․

Պ․ Արտաշէսին մեծ իշխաններէն մէկն էր․ վարպետութեամբ մը հրաման հանել տուաւ որ ինքը Թագաւորին երկրորդ սեպուի, ու պալատին մարդիկն ամէնքն ալ իրեն երկրպագութիւն ընեն։ Մուրդքէն աս հրամանը չէր պահեր՝ Համանն Ամաղեկացի՝ Աստուծոյ անիծած ազգէն ըլլալուն համար։ Համան կատղեցաւ աս բանիս վրայ, ու ոխը բոլոր Հրէաներէն ուզեց հանել․ ուստի հասկըցուց Արտաշէսի թէ Պարսից տէրութեան խաղաղութիւն գտնելու համար՝ ան խռովարար Հրէից ազգը պէտք է ջնջել․ և հրովարտակ հանել տուաւ որ ադար ամսուն տասնուերեքին ամէն Հրէաները մեծ ու պզտիկ՝ թրէ անցուին, և անոնց ունեցածները Թագաւորին գանձն երթան։ Հրէաները յուսահատած՝ Աստուծոյ ապաւինեցան։

Հ․ Հրեայք ի՞նչպէս կրցան ազատիլ Համանին բարկութենէն․

Պ․ Մուրդքէ Եսթերին հասկըցուց որ ինքը պարտական է աս բանիս համար ձեռքէն եկածն ընելու․ Եսթեր Մուրդքէին պատասխան իրկեց թէ “ինչպէս որ գիտես՝ Թագաւորը չկանչած առջևն եկողը կը մեռնի․ երեսուն օր է որ ես ալ Թագաւորին չեմ գնացեր”։ Մուրդքէ նորէն իրկեց իմացուց թէ պէտք է որ ինքը աս բանիս ճարը տեսնէ։ Եսթեր տակնուվրայ եղաւ, ապսպրեց որ ամէն Հրէաներն աղօթք ընեն՝ պահք պահեն որ Աստուած իրեն օգնէ․ ինքն ալ քուրձ մը հագած՝ հանգստութեան բաները մէկդի թողած՝ աղօթքի նստաւ երեք օր։ Երբոր փառաւոր լաթեր հագաւ զարդարուեցաւ ու երկու աղախինով Թագաւորին առջևն ելաւ․ բայց սրտին վախէն հոն մարեցաւ ինկաւ։ Եսթերին անանկ

խեղճ կնոջը Թագաւորին գութը շարժեց որ շուտ մը ելաւ աթոռէն քովն եկաւ, անոյշ խօսքերով սիրտ կուտար որ չվախէ: Եսթեր ասով քիչ մը սիրտ առաւ. բայց երբոր նորէն մարեցաւ, Թագաւորը նորէն վրայ տուաւ, "ինչուան կէս Թագաւորութիւնս ալ ուզես՝ կուտամ", ըսելով: Եսթեր ան ատենը համարձակեցաւ "Կը խնդրեմ որ, ըսաւ՝ Համանը հետդ հրամես իմ սեղանս գաս". Թագաւորն ալ յանձն առաւ: Սեղանին վրայ նորէն ըսաւ Թագաւորը Եսթերին որ խընդրէ ինչ որ կ'ուզէ. Եսթեր ալ խնդրեց որ երկրորդ օրը նորէն հրամեն: Համան ուրախութեամբ լցուած երբոր տուն կը դառնար, ճամբան Մուրդքէին հանդիպեցաւ, որ իրեն երկըրպագութիւն չըրաւ. բարկացաւ վրան, ու անցաւ տուն գնաց. պարծելով պատմեց իր կնկանն ու բարեկամներուն թէ մինակ ինքը կանչուեցաւ Եսթերայ սեղանին. բայց ցաւելով ալ ըսաւ Մուրդքէին իրեն ըրած անարգանքը: Անոնք ալ ըսին թէ "Վաղը երկայն փայտ մը տնկել տուր, ու ըսէ որ կախեն զինքը": Համան մէկէն հրամայեց որ յիսուն կանգուն երկայն փայտ մը պատրաստեն:

Հ. Համան կըցա՞ւ առաջ տանիլ Մուրդքէն կախելու խորհուրդը.

Պ. Աստուած բանը անանկ դարձուց որ ինքը կախուի ան փայտէն: Ան իրիկունն Արտաշէսի քունը չտանելով ատեն անցընելու համար ուզեց յիշատակարաններն աչքէ անցնել կարդալ. ու գիպուածով բացուեցաւ երկու ներքինիներուն կախուելուն պատճառն ու Մուրդքէին հաւատարմութիւնը. ան ատեն հարցուց թէ "Մուրդքէին ինչ փոխարէն ըրիք". ծառաներն ըսին որ "Բան մը չըրինք": Երբոր առաւօտ եղաւ՝ հարցուց թէ "Ո՞վ կայ դուրսը". և իմանալով որ

Համանը հոն է, որ եկեր էր՝ Մուրդքէն կախելու հրամանը առնելու համար, ներս կանչեց՝ հարցուց. « Թէ որ, ըսաւ, ես մէկը ուզեմ պատուութել՝ ի՞նչ պէտք է ընեմ »: Համանն ալ մըտքէն անցընելով թէ « ինծմէ զատ ով պիտի պատուութէ », ըսաւ. « Կը վայլէ որ զան մարդը Թագաւորի հագուստով ու ձիով՝ Թագաւորին խիստ սիրելին տանի բոլոր քաղաքը պտըտցընէ. առջևէն ալ կանչեն թէ « Թագաւորին պատուուած մարդն է ասիկայ »: Թագաւորը հաւնեցաւ ըսածին ու հրամայեց իրեն որ երթայ Մուրդքէին ընէ ան պատիւները: Համան ալ չկրնալով ձայն հանել՝ գնաց զՄուրդքէն պատուեց, ու սիրտը սաստիկ կոտրած՝ տուն դարձաւ: Ետքը Եսթերայ սեղանը գնաց: Թագաւորը հարցուց նորէն Եսթերին թէ « Ի՞նչ է խնդիրդ. գիտնամ, ըսաւ՝ թագաւորութեանս կէսն ալ ուզես՝ կու տամ »: Ան ատեն Եսթերն ըսաւ. « Տէր իմ, կը խնդրեմ քեզմէ իմ ազգիս կեանքն որ խաբերայ Համանը աշխարհքէս վերցընել ուզեց »: Թագաւորը լսածին պէս՝ այլայլած ելաւ սեղանէն. Համանը մինակ մնալով՝ սարսափած Եսթերի ոտքն ինկաւ՝ կ'աղաչէր: Ան որ տեսաւ գիտուածով Թագաւորը՝ բարկացաւ թէ ինչո՞ւ Եսթերայ քով կեցեր է. հոն մէկն ալ իմացուց Թագաւորին թէ Համան զՄուրդքէն կախելու համար փայտ տնկեր է. մէկէն ըսաւ. « Զինքն ան փայտէն կախեցէք »: Ետքը Համանին ունեցածներն ալ Եսթերի պարգևեց, և իմանալով որ Մուրդքէն Եսթերին ազգականն է, Համանին իշխանութիւնն ալ Մուրդքէին տուաւ:

Հ. Հրէից վրայ եղած հրովարտակն ի՞նչ կերպով ետ դարձուեցաւ.

Պ. Նոր հրովարտակ մը ելաւ առջինին ներհակ հրամաններով. ան օրն որ իրենք պիտի

ջարդուէին՝ իրենց զուլիճները ջարդին ։ Ուստի ան օրը շատ մարդ ջարդեցին, բոլոր Համանայ տունն ալ ջնջեցին ։ Ետքը Աստուծոյ շնորհակալութեան համար Հրեաները տօն հաստատեցին ադար ամսուն տասնըչորսին, և ինչուան հիմա կը պահեն, որ Փուրիմ կ'ըսուի ։

## 91 ·

### ԵՍԱՅԻ, ԵՐԵՄԻԱ, ԵԶԵԿԻԵԼ։

Հ. Մարգարէներուն վրայ հարկաւոր գիտնալու ի՞նչ բան կայ ։

Պ. Պատմական դիպուածներ՝ թէ Քրիստոսի անօրէնութեանը վրայ և թէ Իսրայէլացւոց մեղաց պատիժներուն վրայ, որ երբեմն տեսիլքով և երբեմն խօսքով մարգարէացան ։

Հ. Եսայեայ գլխաւոր տեսիլքը ո՞րն է ։

Պ. Եսայի մարգարէն՝ որդի Ամովսայ՝ որ Ոզիա թագաւորին ատենէն ինչուան Եզեկիայի ատենը մարգարէացաւ, անգամ մը տեսաւ տաճարին մէջ զԱստուած բարձր փառաւոր աթոռ նստած, հրեշտակներ չորս դին պատած՝ վեց վեց թեւերով, որ երկու թեւով երեսնին կը գոցէին, երկուքովը ոտուըննին, մէկալ երկուքովն ալ կը թռչտէին, ու կ'ըսէին . “ Սո՜ւրբ, սո՜ւրբ, սո՜ւրբ, տէր զօրութեանց՝ լի է ամենայն երկիր փառօք նորա ” ։ Մարգարէն՝ “ Վա՜յ ինծի, կ'ըսէր, որ տէր զօրութեանց կը տեսնեմ ու լուռ կեցեր եմ պիղծ բերանով ըլլալուս համար ” ։ Ան ատեն սերովբէներէն մէկը ունելիքով սեղանէն կայծ մը բերաւ՝ մարգարէին բերնին դպուց ու ըսաւ, “ Ասիկայ սրբէ զքեզ քու պակասութիւններէդ ”

Համանը հոն է, որ եկեր էր՝ Մուրդքէն կախելու հրամանը առնելու համար, ներս կանչեց՝ հարցուց. " Թէ որ, ըսաւ, ես մէկը ուզեմ փառաւորել՝ ի՞նչ պէտք է ընեմ ",: Համանն ալ միտքէն անցընելով թէ " ինծմէ զատ ո՞վ պիտի փառաւորէ ", ըսաւ. " Կը վայլէ որ զան մարդը Թագաւորի հագուստով ու ձիով՝ Թագաւորին խիստ սիրելին տանի բոլոր քաղաքը պտըտցընէ. առջևէն ալ կանչէն թէ " Թագաւորին փառաւորած մարդն է ասիկայ ",: Թագաւորը հաւնեցաւ ըսածին ու հրամայեց իրեն որ երթայ Մուրդքէին ընէ ան պատիւները: Համան ալ չկրնալով ձայն հանել՝ գնաց զՄուրդքէն պատուեց, ու սիրտը սաստիկ կոտրած՝ տուն դարձաւ: Ետքը Եսթերայ սեղանը գնաց: Թագաւորը հարցուց նորէն Եսթերին թէ " Ի՞նչ է խնդիրդ. գիտնաս, ըսաւ՝ Թագաւորութեանս կէսն ալ ուզես՝ կուտամ ",: Ան ատեն Եսթերն ըսաւ. " Տէր իմ, կը խնդրեմ քեզմէ իմ ազգիս կեանքն որ խաբեբայ Համանը աշխարհքէս վերցընել ուզեց ",: Թագաւորը լսածին պէս՝ այլայլած ելաւ սեղանէն. Համանը մինակ մնալով՝ սարսափած Եսթերի ոտքն ինկաւ՝ կ'աղաչէր: Ան որ տեսաւ գիտուածով Թագաւորը՝ բարկացաւ թէ ինչո՞ւ Եսթերայ քով կեցեր է. հոն մէկն ալ իմացուց Թագաւորին թէ Համան զՄուրդքէն կախելու համար փայտ անկեր է. մէկէն ըսաւ. " Զինքն ան փայտէն կախեցէք ",: Ետքը Համանին ունեցածներն ալ Եսթերի պարգևեց, և իմանալով որ Մուրդքէն Եսթերին ազգականն է, Համանին իշխանութիւնն ալ Մուրդքէին տուաւ:

Հ. Հրեից վրայ եղած հրովարտակն ի՞նչ կերպով ետ դարձուեցաւ.

Պ. Նոր հրովարտակ մը ելաւ առջինին ներհակ հրամաններով. ան օրն որ իրենք պիտի

ջարդուեցին՝ իրենք զուրկեները ջարդին ։ Ուստի ան որը շատ մարդ ջարդեցին, բոլոր Համանայ տունին ալ ընջեցին ։ Ետքը Աստուծոյ շնորհակալութեան համար Հրեաները տօն հաստատեցին ադար ամսուն տասնըչորսին, և ինչուան հիմա կը պահեն, որ Փուրիմ կ'ըսուի ։

## 91.

### ԵՍԱՅԻ, ԵՐԵՄԻԱ, ԵԶԵԿԻԷԼ։

Հ. Մարգարէներուն վրայ հարկաւոր գիտնալու ինչ բան կայ.

Պ. Մանաւոր գիտնալիքներ՝ թէ Քրիստոսի անօրէնութեանը վրայ և թէ Իսրայելացւոց մեղաց պատիժներուն վրայ, որ երբեմն տեսիլքով և երբեմն խօսքով մարգարէացան ։

Հ. Եսայեայ գլխաւոր տեսիլքը ո՞րն է.

Պ. Եսայի մարգարէն՝ որդի Ամովսայ՝ որ Ոզիա թագաւորին տարիներէն ինչուան Եզեկիայի ատենը մարգարէացաւ, անգամ մը տեսաւ տաճարին մէջ զԱստուած բարձր փառաւոր աթոռ նստած, հրեշտակներ չորս դին պատած՝ վեց վեց թևերով, որ երկու թևով երեսնին կը ծածկէին, երկուքովը ոտուընին, մէկալ երկուքովն ալ կը թռչտէին, ու կ'ըսէին. “ Սբ̃, սբ̃, սբ̃, տէր զօրութեանց՝ լի է ամենայն երկիր փառօք նորա ,, ։ Մարգարէն՝ “ Վա՜յ ինծի, կ'ըսէր, որ տէր զօրութեանց կը տեսնեմ ու լուռ կեցեր եմ պիղծ բերանով ըլլալուս համար ,, ։ Ան ատեն սերովբէներէն մէկը ունելիքով սեղանէն կայծ մը բերաւ՝ մարգարէին բերնին դպուց ու ըսաւ, “ Ասիկայ սրբէ զքեզ քու պակասութիւններէդ ,,

Ետքը լսեց որ Աստուած կը հարցընէր. « Ո՞վ խրկեմ ան ժողովրդեանը »: Ինքն ալ պատասխան տուաւ թէ « Ահա զիս խրկէ »: Աստուած ալ խրկեց որ անկէ ետքն սկսաւ քարոզել:

Հ. Եսայեայ մարգարէութիւններուն մէջ նշանաւոր ի՞նչ բան կայ.

Պ. Քրիստոսի հրաշալի ծնունդն ու խաչուիլը՝ մեռնիլը՝ աւետարանչի պէս տեղն 'ի տեղը կը պատմէ:

Հ. Երեմիա մարգարէին գլխաւոր տեսիլքներն որո՞նք են.

Պ. Երեմիա մարգարէն որ Յովսիա թագաւորին ատենէն մինչեւ բոլորովին Հրէից կործանումը մարգարէացաւ, շատ տեսիլքներ տեսաւ. որոնց մէջ գլխաւոր կրնայ ըսուիլ ան՝ որ անգամ մը երկինքը հիւսիսային դիէն կաթսայ մը կրակի վրայ) կ'եփէր, որով կ'իմացընէր Աստուած թէ ան կողմէն Քաղդէացիք Հրէից վրայ պիտի խրկէ:

Հ. Երեմիայի մարգարէութիւններն աւելի ի՞նչ բանի վրայ էին.

Պ. Իր ազգին անօրէնութիւններն կուլար. որ ետքը յուսահատած՝ ողբ ալ ըսաւ վրանին:

Հ. Երեմիա ի՞նչպէս անցուց իր օրերը.

Պ. Հրեայք տեսնելով որ զիրենք շատ կը յանդիմանէ, զզուելու տեղ կ'ատէին ու կը հալածէին զինքը. և ըսելով թէ ժողովրդեան ձեռքը կը թուլցընէ որ չկարենան թշնամիներուն դէմ դընել, տարին մահապարտներուն գուբը ձգեցին որ մեռնի: Բայց Աբդամելէք Եթովպացին մէջ մտաւ, « Ասանկ-առաքինի մարդ մեզի հարկաւոր է » ըսելով թագաւորին. ուստի գուբէն հանեցին ու բանտ դրին: Ետքը երբոր Նաբուզարդան դահճապետը Հրեաները Բաբելոն գերի տարաւ, Երեմիան խնդրեց որ ինքն իր Բարուք աշկերտին հետ Երուսաղէմ մնան: Բայց ետքը Յովնաթան որդի

կարեկին երբոր զժողովուրդը Եգիպտոս փախուց, զՅիսուս ալ տարաւ. և հոն Հրեաները չդիմանալով իրեն քարոզութիւններուն, քարկոծեցին զինքը:

Հ. Եզեկիէլի տեսիլքները որո՞նք են.

Պ. Նաբուքոդոնոսոր երբոր եկաւ, Յեքոնիա թագաւորը Բաբելոն տարաւ, Եզեկիէլ ալ միւս գերիներուն հետը գնաց, ու տեսիլքները հոն յայտնուեցան իրեն: Առջինն աս էր. անգամ մը Քոբար գետին քովը կեցած՝ յանկարծ ամպերուն մէջը մեծ կառք մը տեսաւ՝ ամէն դիէն աչուըններով, որ չորս կենդանի կը քաշէին, ու անոնց կերպարանքը մարդու, առիւծի, կովու և արծուոյ, որոնք չորս ալ թև ունէին. անանկ լուսաւոր էին որ վրանին նայելու աչք չէր դիմանար: Տեսաւ մէջ տեղը երկինքն ալ բաց, ուր աթոռով փառաւոր մարդ մը ճառագայթներով կը փայլէր արևու պէս: Ասով Աստուած յայտնեց Հրէից որ իրենց երկրաւոր տաճարին կարօտ չէ. փուճ տեղը անով չպարծին: Եզեկիէլ երբոր մտածելով կը նայէր, Աստուած սկսաւ գանգատիլ Իսրայէլացւոց ըրած ապերախտութեանը վրայ. ետքը դէպ 'ի իրեն ձեռք մը երկնցաւ ու գիրք մը տուաւ որ ուտէ, որուն ներսը դուրսը ողբ ու վայ գրած էր. ան ուտելուն պէս բերանին անուշցաւ. Աստուած ալ հրամայեց որ երթայ սկսի քարոզել:

Մէկ ուրիշ ուրախական տեսիլք մըն ալ տեսաւ. օր մը Աստուած Եզեկիէլը դաշտ մը տարաւ՝ որ մեռելներու չորցած ոսկորներով լեցուած էր. ու ըսաւ անոր. “Հրամայէ որ ողջանան”. և բոլոր դաշտն անհամար մարդով լեցուեցաւ, որ յարութեան նշան էր: Ուրիշ անգամ ալ Երուսաղէմի տաճարը նոր ձևով մը տեսաւ:

Հ. Եզեկիէլի մարգարէութիւնները ի՞նչ բանի վրայ էին.

Պ. Իսրայէլացւոց վրայ եկած ու գալու թշուառութիւնները կը քարոզէր տեսիլներով :

## 92.

### Դանիէլ:

Հ. Դանիէլ ո՞վ էր և ի՞նչպէս առաջ եկաւ.

Պ. Նաբուքոդոնոսոր Բաբելացւոց թագաւորը երբոր Երուսաղէմն առաւ ու շատ մարդ գերի տարաւ, իր Ասփանեզ իշխանին ապսպրեց որ Հրէից մէջէն շնորհալի խելացի տղաքն ընտրէ ու կրթէ. Անոնցմէ էր Դանիէլ Յուդայի ցեղէն, որուն անունը Բաղտասար դրին, և իրեք ընկերները՝ Անանիա, Միսայէլ ու Ազարիա, որոնց անունը փոխեցին՝ Սեդրաք, Միսաք ու Աբեդնագով դրին. ու երբոր թագաւորէն իրենց ղրկած կերակուրներ կը բերուէր, անոնք վերակացուին աղաչեցին որ միայն ընդեղէն տայ, խմելու ալ լոկ ջուր: Անիկայ առջի բերան թող չտուաւ, վախնալով որ կը վտանգնան տղաքը. բայց ետքը փորձեց որ ան չորսը ընդեղէն ուտելով թագաւորին կերակուրն ուտողներէն աւելի գէր ու կայտառ կ'ըլլան: Ետքը երբոր թագաւորն անոնց տրված իմաստութիւնը փորձեց՝ տեսաւ որ Բաբելացւոց կարդացողներէն ալ շատ քան գիտեն, մանաւանդ Դանիէլը, անոր համար զիրենք կարդացողներուն կարգն անցուց:

Հ. Դանիէլի նշանաւոր գործքերն որո՞նք են.

Պ. Երբոր տասուերկու տարուան էր՝ Շուշանին անմեղութիւնը յայտնեց: Ետքը Նաբուքոդոնոսորայ երկու երազին մեկնութիւնը տուաւ. Բաղտասարին պատին վրայ գրերը կարդաց. առիւծներուն գուբէն ողջ ազատեցաւ. Կիւրոսի ատեն Բելայ սուտ աստուած ըլլալը յայտնեց.

Բաբելոնացւոց պաշտած վիշապը ճաթեցուց, երկրորդ անգամ վեց օր առիւծներուն գուբը նետուեցաւ. և Քրիստոսի գալստեան ժամանակը յայտնի մարգարէացաւ։

Հ. Շուշան ո՞վ է, և ի՞նչ բանի մէջ յայտնեց Դանիէլ անոր անմեղութիւնը.

Պ. Շուշանն էր Յովակիմին կինը։ Աս Յովակիմը Բաբելոն գերի գնացող մեծատուններուն մէկն ըլլալով, Հրէից ծերերն իրեն տունը կը ժողվէին խորհրդի։ Անոնցմէ երկու ծեր շատ գալով Յովակիմի տունը՝ սկսան չար մտքի երթալ Շուշանին վրայ, ու ատեն կը փնտռէին որ մտքի չարութիւննին կատարեն։ Օր մը Շուշանը ելաւ պարտէզ՝ գնաց աւազանին քովը լուացուելու, և աղախինները խրկեց որ երթան օճառ բերեն։ Ան ատենը ան երկու ծերերն որ հոն պահուըտեր էին՝ եկան Շուշանին վրայ. Շուշան նեղը մտած հառաչեց, ու տեսաւ ու ուրիշ ճար չկայ, սկըսաւ կանչուըռտել։ Անոնք երբոր տեսան որ բանը գէշի գնաց, իրենք ալ կանչուըռտեցին. ու երբոր մարդիկ հասան՝ ծերերն սկսան Շուշանայ վրայ սուտ զրպարտութիւն ընել։ Ուստի երկրորդ օրը դատաստանի հանեցին զինքը, ու ան երկու ծերերուն հաւտալով վճռեցին որ մեռնի. Շուշան զԱստուած իրեն վկայ կանչելով մեռնելու կ'երթար. Ճամբան Դանիէլ սկսաւ կանչել թէ “Ես անպարտ եմ ատոր արիւնէն„։ Ժողովուրդը կեցան, հարցուցին թէ ի՞նչ կ'ըսէ։ Ան ալ ըսաւ. “Առանց քննելու անմեղն ի՞նչպէս կը դատապարտէք. դարձէք նորէն դատաստանի նստէք„։ Երբոր դարձան, ըսին Դանիէլի. “Աստուած զքեզ լուսաւորեց, դու եկո՛ տես աս դատաստանը„. ան ատենը Դանիէլ՝ “Զատեցէք. ըսաւ, աս երկու ծերերը մէկմէկէ„. ետքը առանձին երկուքին ալ հարցուց թէ ո՞ւր տեսան Շուշանը.

հոգին կուն, զարմացաւ կանչեց. " Սեդրաք, Միսաք, Աբեդնագով, ծառայք Աստուծոյ բարձրելոյ, դուրս եկէք "։ Եւ երբոր եկան, երեւցան որ լաթերնին ալ բան մը չէր եղած. Նաբուքոդոնոսոր զարմացած " Մեծ է, ըսաւ, ձեր Աստուածը. ասկէ ետքը ով որ անոր դէմ խօսի՝ կը մեռցնեմ "։ Իրենց իշխանութիւնն ալ առջինէն աւելի մեծցուց։ Բայց ինքն ասով չկրցաւ ճանչնալ զԱստուած, ինչպէս որ պէտք է, ու սուտ հպարտութենէն դադրիլ։

Հ. Նաբուքոդոնոսորայ հպարտութեանը պատճառն ի՞նչ էր.

Պ. Ըրած յաղթութիւններն ու դիզած հարըստութիւնները։ Բայց Աստուած ուրիշ երազով մը յայտնեց իրեն գլխուն գալիքը, որ իմանայ իր տկարութիւնը։

Հ. Նաբուքոդոնոսորայ երկրորդ տեսած երազն ի՞նչ բան էր.

Պ. Տեսաւ երկրիս մէջ տնկուած մեծ ծառ մը բարձր ինչուան երկինքն ու բոլոր աշխարհքիս վրայ տարածուած՝ տերեւներով պտղով լեցուն, շուքին տակը գազաններ կը բնակէին, և ճիւղերուն վրայ թառեր էին թռչունները։ Եւ երկինքէն հրեշտակ մը իջաւ ու կանչեց. " Կտրեցէք աս ծառը, ջնջեցէք, միայն արմատը թողէք՝ երկաթէ ու պղնձէ շղթայով կապած, խոտերուն մէջ՝ գազաններուն հետ. մարդկային սիրտը վերցուի, գազանի սիրտ տրուի իրեն ինչուան եօթը ժամանակ "։

Հ. Նաբուքոդոնոսորին տեսած ծառը Դանիէլ ինչպէս մեկնեց.

Պ. Երբոր ամէն կարդացողները չկրցան մեկնել, Դանիէլ մէկէն մեկնութիւնը տուաւ ըսելով որ " Էն ծառը դուն ես, մարդիկներուն մէջէն պիտի վռընտուիս ու անբան անասուններուն հետ

խոտ ուտես եօթը տարիի չափ, մինչեւ որ խելքդ գլուխդ գայ, և արմատդ պիտի թողուի որ նորէն դառնաս թագաւորես ,,։ Դանիէլ սա մեկնութիւնը տալէն ետեւ խրատ ալ տուաւ թէ շատ ողորմութիւն տայ աղքատներուն որ Աստուած իրեն մեղքին թողութիւն ընէ ։

Հ. Նաբուգոդոնոսոր Դանիէլին խրատը պահե՞ց՝ գլխուն գալու պատիժէն ազատելու համար.

Պ. Չէ. անոր համար տարիէ մը ետքը օր մը իր պալատին վրայ քալելով հպարտութեամբ Բաբելոնի գեղեցկութեանը վրայ պարծենալով որ կը խօսէր, յանկարծ երկինքէն ձայն եկաւ, թէ. " Նաբուգոդոնոսոր՝ քեզի կ՚ըսեմ, Թողուց թագաւորութիւնդ ու գազաններու հետ բնակիս ,,։ Ուստի հոն անոնց հետ խոտ կ՚ուտէր ։ Եօթը տարիէն ետեւ իմացաւ Աստուծոյ կարողութիւնն, ու դարձաւ եկաւ իր աթոռը նստաւ ։

Հ. Բաղտասարայ պատին վրայ տեսած գիրն ինչ բան էր.

Պ. Բաղտասար Նաբուգոդոնոսորին յաջորդն անգամ մը սեղան ըրաւ իր իշխաններուն՝ հազար հոգւոյ. և իր հրամանովը սեղանին վրայ սկսան գործածել Երուսաղէմի տաճարէն կողոպտած ոսկիէ ու արծըթէ ամանները, ու անոնցմով գինի կը խմէին իրենց կուռքերուն կենացը ։ Այն ատենը յանկարծ ձեռք մը երեւցաւ որ ճրագին լուսոյն առջեւը պատին վրայ բան մը գրեց ։ Թագաւորը սարսափած՝ դողալ սկսաւ, ու շուտ մը կանչեց բոլոր Բաբելացւոց մոգերն որ այն գիրը կարդան ու մեկնեն. բայց երբոր չկրցան, Թագուհիին միտքն ինկաւ Դանիէլը. ուստի մէկէն կանչեցին, ու Թագաւորն ալ խոստացաւ անոր մինչեւ կէս թագաւորութիւնը՝ թէ որ կարդայ այն գիրը ։ Դանիէլ պատասխան տուաւ. " Ընծաներդ քեզի ըլլայ, և պատիւդ ուրիշի տուր ,,։ Ետքը յանդի-

նայէ ,, ․ Թագաւորը նայեցաւ ․ " Մոխրին՝ կըն-կըտոց ու տղոց ոտքի նշաններ կան ,, ըսաւ ։ Սկը-սան փնտռել թէ ուսկից եկած է ․ և տեսան որ սեղանին տակէն գաղտուկ դուռ մը շինած կայ ․ ուսկից կ'ելլէն քուրմերը տղոցմամբ եօթանասուն հոգի կ'ուտէին կը խմէին եղեր ։ Կատղեցաւ Թա-գաւորը , ջարդել տուաւ զամէնքը , ու կռատունը կործանել տուաւ ։

Հ ․ Դանիէլ Բաբելացւոց պաշտած վիշապն ի՞նչպէս ճաթեցուց ․

Պ ․ Թագաւորն երբոր Բէլին սուտ ըլլալն իմա-ցաւ , վիշապին համար ալ որ կը պաշտէին՝ հարցուց Դանիէլի ։ Պատասխանեց Դանիէլ թէ " Աստուած անմահ պիտի ըլլայ ․ իսկ ես աս վիշապն առանց թրի կրնամ մեռցընել ,, ։ Թագաւորն ալ հրաման տուաւ ։ Ան ատենը Դանիէլ եղ ձիւթ ճարպ ու մազ մէկտեղ եփեց , գունտ մը շինեց , ան վիշապին կերուց , որ մէկէն ճաթեցաւ ։ Բաբելացիք ալ աւելի կատղեցան , ըսելով թէ " Հրեայ եղաւ Թագաւորը ․ Բէլը , քուրմերը , վիշապը ջնջեց ,, ․ ուստի բռնեցին Դանիէլն առիւծներուն գուբը ձգեցին , ուր որ եօթը առիւծ կային որ օրը եր-կու մարդու մարմին ու երկու ոչխար կ'ուտէին ։ Բայց երբոր Դանիէլը ձգեցին՝ ուրիշ բան չտուին , ու վեց օր հոն թողուցին ։

Հ ․ Դանիէլ վեց օր ինչո՞վ ապրեցաւ գուբին մէջ ․

Պ ․ Անգամ մը Ամբակում մարգարէն ապուր եփեր էր ու մէջը հաց բրդած իր բանուորներուն կը տանէր ․ հրեշտակ մը երեցաւ " Դանիէլին տար ,, ըսաւ ։ Երբոր մարգարէն՝ " Տեղը չեմ գիտեր ,, ըսաւ , հրեշտակն անոր գլխուն մազե-րէն բռնեց ու շուտ մը Բաբելոնի առիւծ-ներուն գուբն իջեցուց , որ ձեռքի կերակու-րը Դանիէլի տուաւ ․ ու նորէն իր տեղը դար-

ձուց ։ Եօթներորդ օրը Թագաւորը գուբին բերանը գնաց, տեսաւ որ Դանիէլն ողջ է, սկսաւ կանչել. "Մեծ ես դու Աստուած Դանիէլի"։ և շուտ մը հանել տուաւ, ու անոր թշնամիները ձգեցին որ մէկէն բզիկ բզիկ եղան առիւծներէն ։

## 79.

### Յովնան ։

Հ. Յովնանու մարգարէութիւնը ինչ բանի վրայ է.

Պ. Երկրորդ Յերոբովամի Իսրայելացւոց Թագաւորին ատենն էր. Աստուած իրեն հրամայեց որ Նինուէ քաղաքն երթայ՝ ու իմացընէ որ եթէ չապաշխարեն, իրեք օրէն Նինուէն պիտի կործանի ։ Յովնան վախնալով որ եթէ Նինուէացիքն ապաշխարեն ու չպատժուին, ան ատեն ինքը սուտ ըսող կ'երևնայ, ելաւ Յոպպէ գնաց. ու նաւ մը մտաւ՝ Թարսիս փախչելու համար ։ Բայց Աստուած սաստիկ ալէկոծութիւն մը ըրաւ որ նաւը մօտ էր ընկղմելու ։ Նաւավարներն իրենց աստուածները օգնութիւն կը կանչէին ու բեռներնին ծովը կը ձգէին. իսկ Յովնան մէկ կողմը քաշուած կը խռկար ։ Արթընցուցին զինքն ալ որ աղօթք ընէ իր Աստուծոյն ։ Բայց ճար չըլլալով ըսին որ վիճակ ձգեն, իմանան թէ որուն մեղացը համար է աս փորձութիւնը ։ Երբոր վիճակը Յովնանու վրայ ելաւ, հարցուցին իրեն թէ ուր կ'երթայ. և իմանալով իրմէն որ Աստուծմէ կը փախչի, սկսան տարակուսիլ թէ ինչ ընեն ։ Յովնան ըսաւ որ զինքը ծովը ձգեն. բայց անոնք կը ջա-

Պ. Իսրայէլացւոց վրայ եկած ու գալու Թշուառութիւնները կը քարոզէր առակներով :

## 92.

### Դանիէլ :

Հ. Դանիէլ ո՞վ էր և ի՞նչպէս առաջ եկաւ, —

Պ. Նաբուքոդոնոսոր Բաբելացւոց Թագաւորը երբոր Երուսաղէմն առաւ ու շատ մարդ գերի տարաւ. իր Ասփանէզ իշխանին պատուիրեց որ Հրէից մէջէն շնորհալի խելացի տղաքն ընտրէ ու կրթէ . Անոնցմէ էր Դանիէլ Յուդայի ցեղէն, որուն անունը Բաղտասար դրին, և իրեք ընկերները՝ Անանիա, Միսայէլ ու Ազարիա, որոնց անունը փոխեցին՝ Սեդրաք, Միսաք ու Աբեդնագով դրին. ու երբոր Թագաւորէն իրենց աղէկ կերակուրներ կը բերուէր, անոնք վերակացուէն աղաչեցին որ միայն ընդեղէն տայ, խմելու ալ լոկ ջուր : Անիկայ առջի բերան Թող չտուաւ, վախնալով որ կը վտանգուին տղաքը. բայց ետքը փորձեց որ ան չորսը ընդեղէն ուտելով Թագաւորին կերակուրն ուտողներէն աւելի գէր ու կայտառ կ'ըլլան : Ետքը երբոր Թագաւորն անոնց սորված իմաստութիւնը փորձեց՝ տեսաւ որ Բաբելացւոց կարդացողներէն ալ շատ քան գիտեն, մանաւանդ Դանիէլը, անոր համար զիրենք կարդացողներուն կարգն անցուց :

Հ. Դանիէլի նշանաւոր գործքերն որո՞նք են.

Պ. Երբոր տասնուերկու տարուան էր՝ Շուշանին անմեղութիւնը յայտնեց : Ետքը Նաբուքոդոնոսորայ երկու երազին մեկնութիւնը տուաւ. Բաղտասարին պատին վրայ գրերը կարդաց. առիւծներուն գուբէն ողջ ազատեցաւ. Կիւրոսի առջեն Բէլայ սուտ աստուած ըլլալը յայտնեց.

Բաբելացւոց պաշտած վիշապը ճաթեցուց, երկրորդ անգամ վեց օր առիւծներուն գուբը նետուեցաւ. և Քրիստոսի գալստեան ժամանակը յայտնի մարգարէացաւ:

Հ. Շուշան ո՞վ է, և ի՞նչ բանի մէջ յայտնեց Դանիէլ անոր անմեղութիւնը.

Պ. Շուշանն էր Յովակիմին կինը: Այս Յովակիմը Բաբելոն գերի գնացող մեծատուններուն մէկն ըլլալով, Հրէից ծերերն իրեն տունը կը ժողվէին խորհրդի: Անոնցմէ երկու ծեր շատ գալով Յովակիմի տունը՝ սկսան չար մտքի երթալ Շուշանին վրայ, ու առեն կը փնտռէին որ մտքի չարութիւննին կատարեն: Օր մը Շուշանը ելաւ պարտէզ՝ գնաց աւազանին քովը լուացուելու, և աղախինները խրկեց որ երթան օճառ բերեն: Այն առենը ան երկու ծերերն որ հոն պահուըտեր էին՝ եկան Շուշանին վրայ. Շուշան նեղը մտած հառաչեց, ու տեսաւ ու ուրիշ ճար չկայ, սկըսաւ կանչուըռտել: Անոնք երբոր տեսան որ բանը գէշի գնաց, իրենք ալ կանչուըռտեցին. ու երբոր մարդիկ հասան՝ ծերերն սկսան Շուշանայ վրայ սուտ զրպարտութիւն ընել: Ուստի երկրորդ օրը դատաստանի հանեցին զինքը, ու ան երկու ծերերուն հաւտալով վճռեցին որ մեռնի. Շուշան զԱստուած իրեն վկայ կանչելով մեռնելու կ'երթար. ճամբան Դանիէլ սկսաւ կանչել թէ "Ես անպարտ եմ ատոր արիւնէն": Ժողովուրդը կեցան, հարցուցին թէ ի՞նչ կ'ըսէ: Ան ալ ըսաւ. "Առանց քննելու անմեղն ի՞նչպէս կը դատապարտէք. դարձէք նորէն դատաստանի նստէք": Երբոր դարձան, ըսին Դանիէլի. "Աստուած զքեզ լուսաւորեց, դու եկո՛ տես աս դատաստանը". ան առենը Դանիէլ՝ "Զատեցէք, ըսաւ, աս երկու ծերերը մէկմէկէ". ետքը առանձին երկուքին ալ հարցուց թէ ո՞ւր տեսան Շուշանը.

անոնք ուրիշ ուրիշ տեղ ըսելով խաղք եղան, ու Շուշանին տեղ սպաննուեցան ։ Ասով ու ետքն ալ Նաբուքոդոնոսորին երազը մեկնելով Դանիէլին անունը խիստ հռչակուեցաւ ։

Հ. Նաբուքոդոնոսորին տեսած երազն ինչ էր.

Պ. Ինքն ալ մոռցեր էր երազը. անոր համար կանչեց Բաբելոնի իմաստունները, հարցուց թէ ինչ է երազը և մեկնութիւնը. ու չգիտնալնուն համար բարկացաւ, սպաննել տուաւ զամէնքը ։ Երբոր Դանիէլ լսեց, խնդրեց որ քիչ օր մը ատեն տան, ինքը կը զրուցէ ։ Ան գիշերն Աստուծոյ դիմեց իր ընկերներուն հետ որ Աստուած յայտնէ՝ ու առաւօտանց գնաց թագաւորին ըսաւ. " Երազիդ մէջն ահաւոր արձան մը տեսար. գլուխն ոսկիէ, ձեռուըները՝ կուրծքն ու թեւերը արծըթէ, մէջքէն ինչուան ծունկերը պղնձէ, սրունքը երկաթէ, և ոտուըներուն կէսն երկաթէ ու կէսը հողէ ։ Ետքը լեռնէն ինքիրմէ քար մը փրթաւ՝ գլորեցաւ, արձանին զարկաւ ու փոշի դարձուց, հովն ալ փչեց տարաւ. ու ան քարն աճեցաւ՝ մէկ մեծ լեռ մը եղաւ և բոլոր աշխարհքս լեցուց ։ Ասոր մեկնութիւնն ալ աս է, ըսաւ. ան արձանին ոսկի գլուխը դու ես՝ թագաւորներուն թագաւորը. ետեէդ ուրիշ թագաւորութիւն մը պիտի գայ, որ ան արծաթը կը ցուցընէ. անոր ետեէն աւելի տկար մը. ու անկէ ետքը չորրորդը երկաթ՝ որ ըսել է ամենէն ուժով, բայց անոր ալ կէսը հողէ է՝ որ ետքը տկարանայ պիտի ։ Ետեէն նոր թագաւորութիւն մը պիտի ելլէ որ զամէնքը կործանէ՝ իր տակն առնէ պիտի, որ է ան քարն որ յաւիտեան պիտի մնայ ",*

Հ. Նաբուքոդոնոսոր Դանիէլին երազ պատմելուն համար ինչ փոխարէն ըրաւ.

Պ. Նախ Դանիէլին երկրպագութիւն ըրաւ,

ու հրամայեց որ անոր խունկ ու զոհ մատուցանեն. և ըսաւ թէ «Հիմայ իմացայ որ ձեր Աստուածն է Ճշմարիտ»։ Շատ պարգևներ ալ տուաւ անոր, ևս Բաբելացւոց իշխաններուն ու կարգադրիչներուն գլուխ ըրաւ զինքը. և անոր խնդրելովը՝ իրեն իրեք ընկերներն ալ Թագաւորական գործքերու վրայ դրաւ։

## 93.

### Երեք մանկունք։

Հ. Դանիէլի իրեք ընկերներն ինչո՞վ երևելի եղան.

Պ. Ճշմարիտ աստուածպաշտութեամբ. վասն զի Նաբուքոդոնոսոր թագաւորութեան տասնըութերորդ տարին ոսկիէ արձան մը անկեց վաթսուն կանգուն երկայն, վեց կանգուն լայն՝ Դէերայ դաշտին մէջ, ու հրաման հանեց որ ամէն տեղէն մեծամեծները ժողովին ու հանդէսով ան արձանը պաշտեն. անոր քովն ալ հնոց մը շինել տուաւ որ չհնազանդողը հոն ձգեն։ Այս բանս Դանիէլին իրեք ընկերները յանձն չառին. ոչ յորդորանք մտիկ ըրին, ոչ խրատ։ Սաստիկ կատղեցաւ Նաբուքոդոնոսոր ու հրամեց որ մէկէն զանոնք հնոցը ձգեն։ Բայց բռնաւոր Թագաւորին բարկութիւնը բարեգութ Աստուծոյ խնամքը չկրցաւ յաղթել։ Նաբուքոդոնոսորայ մարդիկը վառեցին հնոցը, իրեքը մէկէն մէջը ձգեցին. անոնք հնոցին մէջը զԱստուած օրհնել սկսան. մարդիկը մէկ կողմանէ կրակը կը սաստկացընէին որ քառասունուինը կանգուն վեր կ'ելլէր բոցն, ու չորս դին կեցողներն ալ կ'այրէր. իսկ անոնց քովը հրեշտակ մը իջաւ՝ զովացուց փռան մէջն՝ որ հանգիստ կը պտըտէին ու զԱստուած կ'օրհնէին։ Թագաւորն եկաւ տեսաւ՝ որ մէջը չորս

հուր կար, զարմացաւ կանչեց. «Սեդրաք, Միսաք, Աբեդնագով, ծառայք Աստուծոյ բարձրելոյ, դուրս եկէք»: Եւ երբոր եկան, երեւցան որ լաթերնին ալ բան մը չէր եղած: Նաբուգոդոնոսոր զարմացած «Մեծ է, ըսաւ, ձեր Աստուածը. ասկէ ետքը ով որ անոր դէմ խօսի՝ կը մեռցնեմ»: Իրենց իշխանութիւնն ալ առջինէն աւելի մեծցուց: Բայց ինքն ասով չկրցաւ ճանչնալ զԱստուած, ինչպէս որ պէտք է, ու սուտ հպարտութենէն դադրիլ:

Հ. Նաբուգոդոնոսորայ հպարտութեանը պատճառն ի՞նչ էր.

Պ. Ըրած յաղթութիւններն ու դիզած հարըստութիւնները: Բայց Աստուած ուրիշ երազով մը յայտնեց իրեն գլխուն գալիքը, որ իմանայ իր տկարութիւնը:

Հ. Նաբուգոդոնոսորայ երկրորդ տեսած երազն ի՞նչ բան էր.

Պ. Տեսաւ երկրիս մէջ տնկուած մեծ ծառ մը բարձր ինչուան երկինքն ու բոլոր աշխարհքիս վրայ տարածուած՝ տերեւներով պտղով լեցուն. շուքին տակը գազաններ կը բնակէին, և ճիւղերուն վրայ թառեր էին թռչունները: Եւ երկնքէն հրեշտակ մը իջաւ ու կանչեց. «կտրեցէք աս ծառը, ջնջեցէք, միայն արմատը թողէք՝ երկըթէ ու պղնձէ շղթայով կապած, խոտերուն մէջ՝ գազաններուն հետ. մարդկային սիրտը վերցուի, գազանի սիրտ տրուի իրեն ինչուան եօթը ժամանակ»:

Հ. Նաբուգոդոնոսորին տեսած ծառը Դանիէլ ինչպէս մեկնեց.

Պ. Երբոր ամէն կարդացողները չկրցան մեկնել, Դանիէլ մէկէն մեկնութիւնը տուաւ ըսելով որ «Այն ծառը դուն ես, մարդիկներուն մէջէն պիտի վռնտուիս ու անբան անասուններուն հետ

խոտ ուտես եօթը տարիի չափ, ինչուան որ խելքդ գլուխդ գայ և ճանչնաս. այն ատեն Թողուի որ նորէն գահուդ Թագաւորես ,, ։ Դանիէլ այս մեկնութիւնը տալէն ետև խրատ ալ տուաւ Թէ շատ ողորմութիւն տայ աղքատներուն որ Աստուած իրեն մեղքին Թողութիւն ընէ ։

Հ. Նաբուքոդոնոսոր Դանիէլին խրատը պահե՞ց՝ գլխուն գալու պատժէն ազատելու համար.

Պ. Չէ. անոր համար տարիէ մը ետքը օր մը իր պալատին վրայ քալելով հպարտութեամբ Բաբելոնի գեղեցկութեանը վրայ պարծենալով որ կը խօսէր, յանկարծ երկինքէն ձայն եկաւ, Թէ “ Նաբուքոդոնոսոր՝ քեզի կ'ըսեմ, Թողուի Թագաւորութիւնդ ու գազաններու հետ բնակիս ,, ։ Ուստի հոն անոնց հետ խոտ կ'ուտէր ։ Եօթը տարիէն ետև իմացաւ Աստուծոյ կարողութիւնն, ու դարձաւ եկաւ իր աթոռը նստաւ ։

Հ. Բաղտասարայ պատին վրայ տեսած գիրն ի՞նչ բան էր .

Պ. Բաղտասար Նաբուքոդոնոսորին յաջորդն անգամ մը սեղան ըրաւ իր իշխաններուն՝ հազար հոգւոյ . և իր հրամանովը սեղանին վրայ սկսան գործածել Երուսաղէմի տաճարէն կողոպտած ոսկիէ ու արծըթէ ամանները, ու անոնցմով գինի կը խմէին իրենց կուռքերուն կենացը ։ Ան ատենը յանկարծ ձեռք մը երևցաւ որ ճրագին լուսոյն առջևը պատին վրայ բան մը գրեց ։ Թագաւորը սարսափած՝ դողալ սկսաւ, ու շուտ մը կանչեց բոլոր Բաբելացւոց մոգերն որ ան գիրը կարդան ու մեկնեն . բայց երբոր չկրցան, Թագուհիին միտքն ինկաւ Դանիէլը . ուստի մէկէն կանչեցին, ու Թագաւորն ալ խոստացաւ անոր ինչուան կէս Թագաւորութիւնը՝ Թէ որ կարդայ ան գիրը ։ Դանիէլ պատասխան տուաւ . “ Ընծաներդ քեզի ըլլայ, և պատիւդ ուրիշի տուր ,, ։ Ետքը յանդի-

մանկաց զԹագաւորն որ Նաբուքոդոնոսորին պատիժներէն ինքը չէ խրատուած, [illegible] Աստուծոյ տաճարին սուրբ ամանները պղծեր է: “Իսկ գրածն աս է, բառ. “Մանէ, Թագաւորութեանդ վերջը հասաւ. Թէկէլ. Աստուած զքեզ քննեց՝ յանցաւոր գտնուեցար. Փարէս, Թագաւորութեանդ կէսը Մարաց՝ կէսն ալ Պարսից տրուեցաւ”: Թագաւորը շուտ մը իշխանութեանը երրորդ մասին տէր դրաւ զԴանիէլը. և ան գիշերն ինքն ալ սպաննուեցաւ. Մարաց Դարեհ Թագաւորէն որ զինքը պաշարեր էր, ու նորա մեռաւ Բաբելոնն առաւ:

## 94.

### Դանիէլին ետքի գործերը.

Հ. Դարեհ զԴանիէլն ինչո՞ւ ձգեց առիւծներուն գուբը.

Պ. Դանիէլ անոր շատ սիրելի ըլլալուն՝ իշխաններուն գլուխ էր եղեր. ուստի ամէնքը նախանձելով կ'ուզէին փորձանքի բերել, վրան յանցանք չէին գտներ: Անոր համար հրաման հանել տուին որ երեսուն օր՝ միայն Թագաւորէն խնդիրք ըլլուի. և ով որ աս հրամանին դէմ ընէ, առիւծներուն գուբը ձգուի: Դանիէլ իր սովորութիւնը չթողուց. օրը իրեք անգամ իր տունը պատուհանին առջև դէպ 'ի Երուսաղէմ աղօթք կ'ընէր Աստուծոյ: Թշնամիներն իմացան, ստիպեցին զԹագաւորն, ու Դանիէլը առիւծներուն գուբը ձգեցին: Ան ատեն Թագաւորն յուսահատած բսաւ. “Աստուած զքեզ կ'ազատէ”: Մեծ քարով մըն ալ գուբին բերանը գոցեցին ու Թագաւորին մատնիովը կնքեցին: Ան իրիկունը մեծ տրտմութեամբ անցուց Թագաւորն, ու առաւօտանց կանուխ

գուբին բերանը փակել տուաւ. և երբոր Դանիէլի ողջ հանելուն ուրախացաւ, և հրամայեց որ անոր տեղը թշնամիները ձգեն առիւծներուն գուբը. և անոնք գետնի վար չհասած, առիւծները բզքտե-ցին զիրենք։ Իսկ Դանիէլ մնաց իր պատուոյն մէջ նաև Պարսից Կիւրոս թագաւորին ատենն որ եկաւ Բաբելոնն առաւ ու տիրեց։

Հ. Բելին սուտ աստուած ըլլալը Դանիէլ ինչ-պէս յայտնեց.

Պ. Այս Բել աստուածին ամէն օր կուտային տա-սներկու արդու բարակ ալիւր, քառասուն ոչ-խար, ու վեց մար գինի։ Թագաւորն օր մը Դա-նիէլի հարցուց թէ "Դուն ինչո՞ւ չես պաշտեր Բելը"։ Դանիէլ ըսաւ. "Ես միայն Ճշմարիտ կենդանի Աստուածը կը պաշտեմ"։ Ան ատեն թագաւորը պատասխանեց. "Բելը կենդանի չէ՞ որ ամէն օր կ՚ուտէ կը խմէ"։ Դանիէլ խնդալով ըսաւ. "Մի՛ խաբուիր թագաւոր, Բելին ներսի դին հող է՝ դրսի դին պղինձ. ոչ կ՚ուտէ, ոչ կը խմէ"։ Թագաւորը քուրմերը կանչեց՝ հարցուց ու ըսաւ. "Թէ որ խաբէութիւն է ըրածնիդ՝ պիտի մեռնիք. թէ չէ՝ Դանիէլը մեռնի որ հայ-հոյեց զԲէլ"։ Եօթը գնացին կուռատունը, դրին կերակուրները Բելին առջեն ու քուրմերն ըսին. "Ահա մենք դուրս կ՚ելլենք. դուն թագաւոր դռները կնքէ, ու վաղը կամ մենք կամ Դանիէլ մեռնի"։ Եւ երբոր քուրմերը դուրս ելան, Դա-նիէլ մոխիր բերել տուաւ, բոլոր գետինը ցանել տուաւ, ու դուրս ելան, դուռը կնքեցին։ Առա-ւօտանց կանուխ թագաւորը Դանիէլին հետ ե-կան տեսան որ կնիքը կեցած է. ու երբոր դու-ռը բացին տեսան որ կերակուրները հատեր են, թագաւորն ուրախութեամբ սկսաւ կանչել. "Ճշմարիտ Աստուած է Բէլ"։ Ան ատենը Դա-նիէլն ըսաւ թագաւորին. "Մէյմը գետինը

նայէ ,, . Թագաւորը նայեցաւ . " Մարդու՝ կըն-կրտոց ու տղոց ոտքի նշաններ կան ,, ըսաւ : Սկը-սան փնտռել թէ ուսկից եկած է . և տեսան որ սեղանին տակէն գաղտուկ դուռ մը շինած կայ . ուսկից կ'ելլեն քուրմերը տղոցմով եօթանասուն հոգի կ'ուտեն կը խմեն եղեր : Կատղեցաւ Թա-գաւորը , Ջարդել տուաւ զամէնքը , ու կռատունը կործանել տուաւ :

Հ . Դանիէլ Բաբելոնացւոց պաշտած վիշապն ինչպէս ճաթեցուց .

Պ . Թագաւորն երբոր Բէլին սուտ ըլլալն իմա-ցաւ , վիշապին համար ալ որ կը պաշտէին՝ հարցուց Դանիէլի : Պատասխանեց Դանիէլ թէ " Աստուած անմահ պիտի ըլլայ . իսկ ես աս վիշապն առանց Թրի կրնամ մեռցընել ,, : Թագաւորն ալ հրաման տուաւ : Ան ատենը Դանիէլ եղ ձիւթ ճարպ ու մազ մէկտեղ եփեց , գունտ մը շինեց , ան վիշապին կերուց , որ մէկէն ճաթեցաւ : Բաբելոնցիք ալ սաստիկ կատղեցան , ըսելով թէ " Հրեայ եղաւ Թագաւորը . Բէլը , քուրմերը , վիշապը ջնջեց ,, . ուստի բռնեցին Դանիէլն առիւծներուն գուբը ձգեցին , ուր որ եօթը առիւծ կային որ օրը եր-կու մարդու մարմին ու երկու ոչխար կ'ուտէին : Բայց երբոր Դանիէլը ձգեցին՝ ուրիշ բան չտուին , ու վեց օր հոն թողուցին :

Հ . Դանիէլ վեց օր ինչո՞վ ապրեցաւ գուբին մէջ .

Պ . Անգամ մը Ամբակում մարգարէն ապուր եփեր էր ու մէջը հաց բրդած իր բանուորներուն կը տանէր . հրեշտակ մը երեւցաւ " Դանիէլին տար ,, ըսաւ : Երբոր մարգարէն՝ " Տեղը չեմ գիտեր ,, ըսաւ , հրեշտակն անոր գլխուն մազե-րէն բռնեց ու շուտ մը Բաբելոնի առիւծ-ներուն գուբն իջեցուց , որ ձեռքի կերակու-րը Դանիէլի տուաւ . ու նորէն իր տեղը դար-

ձուց ։ Եօթներորդ օրը Թագաւորը գուբին բերանը գնաց, տեսաւ որ Դանիէլը ողջ է, սկսաւ կանչել . “ Մեծ ես դու Աստուած Դանիէլի ,, . և շուտ մը հանել տուաւ, ու անոր թշնամիները ձգեցին որ մէկէն բզիկ բզիկ եղան առիւծներէն ։

79 .

Յովնան ։

Հ . Յովնանու մարգարէութիւնը ի՞նչ բանի վրայ է .

Պ . Երկրորդ Յերոբովամի Իսրայէլացւոց թագաւորին ատենն էր . Աստուած իրեն հրամայեց որ Նինուէ քաղաքն երթայ՝ ու իմացընէ որ եթէ չապաշխարեն , իրեք օրէն Նինուէն պիտի կործանի ։ Յովնան վախնալով որ եթէ Նինուէացիքն ապաշխարեն ու չպատժուին , ան ատեն ինքը սուտ ըսող կ'երևնայ , ելաւ Յոպպէ գնաց , ու նաւ մը մտաւ՝ Թարսիս փախչելու համար ։ Բայց Աստուած սաստիկ ալէկոծութիւն մը ըրաւ որ նաւը մօտ էր ընկղմելու ։ Նաւավարներն իրենց աստուածները օգնութիւն կը կանչէին ու բեռներնին ծովը կը ձգէին . իսկ Յովնան մէկ կողմը քաշուած կը խռկար ։ Արթընցուցին զինքն ալ որ աղօթք ընէ իր Աստուծոյն ։ Բայց ճար չըլլալով ըսին որ վիճակ ձգեն , իմանան թէ որուն մեղացը համար է աս փոթորիկը ։ Երբոր վիճակը Յովնանու վրայ ելաւ , հարցուցին իրեն թէ ո՛ւր կ'երթայ . և իմանալով իրմէն որ Աստուծմէ կը փախչի , սկսան տարակուսիլ թէ ի՞նչ ընեն ։ Յովնան ըսաւ որ զինքը ծովը ձգեն . բայց անոնք կը ջա-

նաւին ցամաքին մօտենալ. և չկրնալով՝ բռնեցին զՅովնան ծովը ձգեցին. հովն ալ մէկէն դադրեցաւ:

Հ. Յովնան ծովը ձգուելէն ետև ի՞նչպէս կրցաւ քարոզութիւն ընել.

Պ. Մեծ ձուկ մը կլլեց զինքը, և երեք օր անոր փորուն մէջն ողջ կեցած, ի նեղութեան ժամուն սկսած աղօթքն ընելով ապաշխարեց: Ետքը ձուկը զինքը ցամաքը տարաւ դուրս ձգեց. ինքն ալ նորէն Աստուծմէ հրաման առնելով գնաց Նինուէ ու քարոզեց թէ երեք օրէն Նինուէն պիտի կործանի: Շուտ մը հաւատացին, ու թագաւորին հրամանով մեծ ու պզտիկ՝ ինչուան անասուններուն ալ՝ ծոմ պահեցին, ապաշխարեցին. Աստուած ալ պատիժը չխրկեց, Յովնան տրտմած ըսաւ Աստուծոյ. “Ես գիտէի որ զղջացողին թողութիւն կուտաս, անոր համար փախչիլ կ'ուզէի. ուստի հիմա սուտ ըլլալուս երևցայ. գոնէ մեռցնէ զիս որ ազատիմ,,: Ետքը գնաց քաղքին դիմացը տեղ մը նստաւ որ տեսնէ թէ քաղաքը կը կործանի՞: Աստուած ալ հոն դդմենի մը բուսցուց, որ շուտ մը մեծցաւ՝ տերևներովը շուք ըրաւ Յովնանու վրայ. Յովնան ալ ուրախացաւ անոր համար. բայց մէկալ օրն առաւօտանց որդ մը գնաց ան դդմենին արմատէն կերեց, դդմենին ալ չորցաւ: Ան ատենը Յովնան սաստիկ արևէն տանջուելով սկսաւ ըսել. “Ա՛հ, մեռնիմ ու ազատիմ,,: Աստուած ալ ըսաւ իրեն. “Դուն այդչափ կը ցաւիս մէկ դդմենիին համար, որ ինքն իրեն մէկ գիշերուան մէջ բուսաւ ու մէկալ գիշերը չորցաւ. հապա ի՞նչպէս ես չողորմիմ մեծ քաղքի մը, ուր հարիւր քսան հազար միայն անմեղ տղաք կան,,:

96.

Հրէից Գերութենէն դառնալը :

Հ. Երբոր Աստուծոյ սահմանած եօթանասուն տարին լմնցաւ, ինչ կերպով դարձան Հրեայք Բաբելոնացւոց գերութենէ.

Գ. Կիւրոս Պարսից Թագաւորն երբոր Բաբելոնացւոց տիրեց, Աստուծմէ շարժած հրաման հանեց որ Հրեաները բոլոր Երուսաղէմ դառնան, և Աստուծոյ տաճարը նորէն շինեն. և որչափ ոսկիէ ու արծըթէ ամաններ կային որ առենով Երուսաղէմէն կողոպտեր էին, ամէնքը ետ դարձուց. հրաման ալ տուաւ թէ տաճարը շինելու ինչ որ պէտք ըլլայ՝ թագաւորական գանձէն տրուի: Ուստի յիսուն հազարի չափ Հրեայ իրենց առաջնորդ առած Զօրաբաբէլը Սաղաթիէլեանց՝ Յեքոնիա Թագաւորին Թոռը, և Յեսու Յովսեդեկեանց ան ատենի քահանայապետը, Երուսաղէմ եկան ու սկսան քաղաքը նորոգել, և տաճարը շինել:

Հ. Երբոր Հրեայք Բաբելոնէն դարձան, տաճարին շինելն ինչ կերպով առաջ գնաց.

Գ. Հրէից քովի ազգերը նախանձելով կ'արգիլէին, ինչուան որ Կիւրոս մեռաւ: Ետքը Արտաշէս Թագաւորին ատենը բոլորովին արգիլել տուին, ինչուան Դարեհ Թագաւորին երկրորդ տարին:

Հ. Դարեհի ատեն տաճարն ինչպէս նորէն կրցան շինել Հրեայք.

Գ. Դարեհ փառաւոր սեղան մը ըրաւ իշխաններուն. ետքը երբոր գնաց քուն ըլլալու՝ իրեք սենեկապանները, որոնց մէկն էր Զօրաբաբէլն որ Երուսաղէմէն նոր դարձեր էր ու տաճարը չի-

նէրքը հրամանն առնելու կը ջանար, խորհուրդ ըրին՝ որ ամէն մէկը գրէ մէյմէկ խելացի բան գրեն, ու որուն որ Թագաւորն հաւնի, անիկայ մեծամեծ պատիւներու հասնի. ուստի՝ կարծիքնին գրած կնքած՝ Թագաւորին բարձին տակը դրին: Առջինը գրեր էր՝ թէ գինին յաղթող է ամէն բանի: Երկրորդը՝ ամէնուն յաղթող՝ Թագաւոր. և երրորդն որ Զօրաբաբէլն էր, գրեր էր թէ՝ կիներն են ամէնուն յաղթող, և անոնցմէ ալ զօրաւոր՝ ճշմարտութիւնն է: Թագաւորն երբոր ան թղթերը կարդաց, հրամայեց որ ամէն մէկը իր գրածը պատճառներով հաստատէ մեծամեծներուն առջև: Երբոր անոնք լմնցին՝ Զօրաբաբէլին բանածին հաւնեցան, ու սկսան կանչել. «Մեծ է ճշմարտութիւնը»: Ան ատենը Դարեհ ըսաւ իրեն, թէ «խնդրէ ինչ որ կ'ուզես». Զօրաբաբէլն ալ ըսաւ. «Միայն այս կը խնդրեմ որ Երուսաղեմի տաճարը շինուի»: Թագաւորն ալ հրաման տուաւ որ իր գանձէն վճարուի պէտք եղածը: Այսպէսով Զօրաբաբէլին առաջնորդելովը՝ չորս տարուան մէջ լմնցաւ տաճարը, ու երբոր Աստուծոյ նուիրեցին: Սեղանին կրակն ալ գտան՝ բերին ու սկսան ողջակէզ ընել, զոհ մատուցանել:

Հ. Զօրաբաբէլը տաճարը շինելէն ետև Իսրայելացւոց ո՞վ կ'իշխէր.

Պ. Եզրաս քահանան, Դարեհի յաջորդ Արտաշէսին հրամանովը եկաւ Երուսաղէմ, ու Հրէից օրէնքները սորվեցուց, և ուրիշ կարգեր կանոններ ալ դրաւ: Ետքը Նեեմին որ Թագաւորին կը ծառայէր, և իրեն շատ սիրելի եղաւ, հրամանն առաւ, ու գնաց Երուսաղէմին պարիսպները շինել տուաւ: Թէպէտ շատ ջանացին քանի ազգերուն իշխաններն արգիլել, բայց չկրցան:

Հ. Սեղանին կրակն ինչպէս և ուսկի՞ գտան.

Գ. Անգամ մը երբոր Երուսաղէմ էկաւ ; Աստուծոյ զոհ մատուցանելէն ետքը՝ հետաքրքրութեամբ Սրբութիւն սրբոցն ալ ուզեց տեսնել. Թէպէտ շատ դէմ կեցան, բայց ճար չեղաւ՝ մտաւ. և մէկէն աղբին անդին զարնուելով անդամալոյծ ինկաւ գետինը : հասան՝ ծառաները, դուրս քաշեցին, խել մը ատեննէն հազիւ վրայ եկաւ : Երբոր ետ դարձաւ, բարկացած՝ հրաման հանեց որ իր տէրութեան տակին եղած Հրէաները ամէնքն ալ կուռք պաշտեն, և յանձն չառնողը կապած Աղեքսանդրիա տանին : Անանկով շատ Հրեաներ մեծ ու պզտիկ տարին Աղեքսանդրիա հրապարակի մը մէջ, ու եօթը հարիւր փիղ պատրաստեցին՝ որ կատղեցուցած վրանին թողուն, ու իրենք տեսնելով անոնց ջարդը զուարճանան : Հրեայք սկսան աղօթքի ու պաղատանքի. և Աստուած երկու իրեք օր թագաւորին քունը ծանրացընելով անոնց ջարդը արգիլեց. ետքը նոյն օրն ալ որ փիղերը թողուցին, երկու հրեշտակ՝ որ միայն Հրէից կ'երևնային, մէկ խռովութիւն մը ձգեցին զօրքին ու փղերուն մէջ, որ փղերն սկսան զիրենք ջարդել, և զօրքը փախչող փախչողի եղան : Թագաւորին ալ միտքը փոխուելով սկսաւ վրանին ցաւիլ. ու հրաման տուաւ որ հոն մեռնելու տեղերնին եօթն օր իր սեղանէն Հրեայք ուտեն խմեն. և ամենուն պիտոյքը հոգալով տեղերնին խրկեց զամէնքը. ու անկէ ետքը հանգիստ ուրախ կ'ապրէին :

Հ. Պտղոմէոս Փիղոպատորին Հրէից հետ հաշտուելէն ետքը, մինչև ատեն Հրեայք հանգիստ մնացին.

Գ. Անոր մեռնելէն ետքը մեծն Անտիոքոս Ասորւոց թագաւորը տիրեց Եգիպտացւոց. և անոր որդւոյն Սելեւկոս Փիլոպատորին ատեն Հրէից խաղաղութիւնը տակնուվրայ ըրաւ Սիմոն անու-

նով Հրեայ մը, որ անկարգութեան համար Ոնիա քահանայապետէն յանդիմանուելով, նեղացաւ, գնաց Ապողոնիոսի՝ ան կողմերուն վերակացուին մատնեց թէ Երուսաղէմի տաճարը շատ գանձ կայ։ Սելեւկոս իմանալուն պէս՝ Հելիոդորոս իշխանը Երուսաղէմ խրկեց, որ ան գանձն իրեն բերէ։ Ոնիա քահանայապետն ըսաւ. “ Իրաւ չորս հարիւր քանքար արծաթ ու երկու հարիւր քանքար ոսկի կայ, բայց որբերուն ու որբեւայրիներուն աւանդուածն են ,,։ Հելիոդորոս ալ կը կոխէր թէ. “ Պէտք է որ թագաւորին տանիմ ,,։ Ուստի օր մը բռնի տաճարը մտաւ որ առնէ. բոլոր քաղաքը կուլային, կ'աղօթէին որ Աստուած որբերուն օգնէ։ Ան ատենը երկինքէն ձիաւոր մը հասաւ՝ երկու փառաւոր կորիճներով, աղէկ մը ծեծեցին Հելիոդորոսը՝ մեռնելու մօտ։ Անանկ խեղճութեամբ քաշքշելով դուրս հանեցին զինքը մեհեանէն. ու քովինները աղաչեցին Ոնիային որ աղօթք ընէ, առողջացընէ։ Երբոր քահանայապետը զոհ մատուց, նորէն ան փառաւոր կորիճները երեցան՝ ըսին Հելիոդորոսի. “ Շնորհակալ եղիր Ոնիա քահանայապետին որ Աստուած անոր աղօթքովը քեզի ողորմեցաւ, և գնա՛ ամենուն պատմէ Աստուծոյ կարողութիւնը ,,։ Խեղճ Հելիոդորոս ինքն ալ զոհ մատուց, ու շնորհակալ ըլլալով՝ պարգեւներ տուաւ Ոնիա քահանայապետին, և դարձաւ ու ամենուն կը պատմէր. Թագաւորին ալ իմացուց թէ Աստուած պաշտպան է ան տեղին. “ Թէ որ կ'ուզես, ըսաւ, պատժել մէկը, հոն խրկէ ,,։

98.

Անդրէաս Եղիշեանին ժամանակը.

Հ. Միթէ՞ ուրիշ մէկ եղաւ որ Ոնիային քահանայապետութեանն աչք անկէ.

Գ. Երբոր Սելեւկոսէն ետքը Անտիոքոս Եպիփան ըսուած եղբայրը թագաւորեց, որ հրէական օրէնքին թշնամի էր, Յասոն Ոնիային եղբայրը շատ տուրք տալ խոստացաւ թագաւորին, թէ որ ինքն ըլլայ քահանայապետ. իրեն ալ տուաւ՝ Հրէից կռապաշտութեան սովորեցնելու : Անանկով ալ չար Յասոնն իրեք տարի Հրէից տուած պաշտութիւնն աւրելէն ետքը, երբոր Մենելաոսին ձեռքովը տարեկան տուրքը Անտիոքոսին խրկեց, Մենելաոս գնաց՝ թագաւորին ալ շատ տուրք խոստանալով Յասոնին տեղը ինքն անցաւ :

Հ. Մենելաոս Յասոնէն յափշտակած քահանայապետութիւնը կրցա՞ւ տեւաւ պահել.

Գ. Խոստացած տուրքը հատուցանել չկրնալով, տաճարին արծաթեղէններէն կաշառք տուաւ Անդրոնիկոսի՝ թագաւորին մեծ իշխանին, կէս մըն ալ ծախեց : Երբոր Ոնիան Մենելաոսին գողութիւնը յայտնեց, ան ալ Անդրոնիկոս իշխանին ձեռքովը մորթել տուաւ զՈնիան : Այսոր վրայ ժողովուրդը սաստիկ յուզելով գանգատեցան թագաւորին . ան ալ շուտ մը Անդրոնիկոսը իշխանական լաթերը հանած բոլոր քաղաքը պտըտցունել տալէն ետեւ, Ոնիայի սպաննուած տեղը գլուխը կտրել տուաւ :

Հ. Ընդդիմամիտս իշխանը մեռնելէն ետև Մենելաւոս քահանայութեան մէջ մնաց.

Գ. Երբոր չէր կրնար տալիքը հատուցանել՝ գնաց ինքը Թագաւորին. Լիւսիմաքոս եղբօրը յանձնելով որ տաճարէն ոսկի արծաթ վերցընէ գաղտուկ իրեն բերէ: Ժողովուրդն իմացան ու կ'ուզէին ձգել Լիւսիմաքոսը. ան ալ իրեք հազար հոգի հանեց անոնց դէմ, կռուեցան ու շատ մարդ ջարդուեցան: Երբ Թագաւորին առջև դատաստանի ելան՝ Մենելաւոս պարտաւորեցաւ. բայց ինքը Թագաւորին մէկ բարեկամը կաշառելով, ամբաստանողները մեռցնել տուաւ: Ու աս օրերս քառասուն օր երկինքը ձիաւոր մարդիկ կ'երևնային և զէնքերու ձայներ կը լսուէին:

Հ. Երկինքն՝ երևցած պատերազմի նշանները ինչ վերջ ունեցան.

Գ. Ան օրերն Անտիոքոս Եգիպտացւոց վրայ պատերազմի երթալով, երբոր ուշացաւ, ձայն ելաւ թէ մեռեր է: Յասոն որ փախեր էր, շուտ մը քանի հազար հոգւով եկաւ Երուսաղէմ, շատ մարդ ջարդեց որ իշխանութեան հասնի Մենելաւոսը ձգէ. բայց իմանալով Անտիոքոսին ողջ ըլլալը, նորէն փախաւ, և ամենուն ատելի եղած՝ տար երկիր չարաչար մեռաւ: Անտիոքոս աս բաներս իմանալով, կարծեց թէ Հրեայքն իրմէ կ'ապըստամբին, անոր համար կատղած բոլոր զօրքով եկաւ, իրեք օրուան մէջ ութսուն հազար մարդ ջարդեց, քառասուն հազար ալ գերի առաւ ծախեց: Երբ Մենելաւոսի մատնութեամբը տաճարը մտաւ, արծաթ ոսկի և ուրիշ [illegible]ուքաներ ալ մէկտեղ հազար եօթը հարիւր քանքարի չափ ժողվեց տարաւ. մնացած Հրէից ալ վերակացու դրաւ Փիլիպպոս Փռիւգացի չար մարդը: Ետև Ապողոնիոսը քանի հազարով խրկեց որ չափահաս մարդիկը ջարդէ, և կանայք ու տղաքը

գերի ծախել ։ Ալկադոնիոս դժբաղդաբար թէ հրեայք շաբաթ օրը սուրբ պահելու համար՝ դէմ չէին դներ, աղօթելով քանի մը օր, ու շաբաթ օրը յանկարծ վրանին ելաւ, շատ մարդ ջարդեց ։

99 ·

Եօթն եղբարց նահատակութիւնը ։

Հ. Անտիոքոս Հրէից տուած ջարդովը կշտացա՞ւ.

Պ. Ուզեց որ միացածներն ալ ամէնքը կուռք պաշտեն. ուստի Աթենացի ծերունին խրկեց, որ եկաւ կռապաշտութիւն կը սորվեցընէր, ու մտիկ չընողը սաստիկ տանջանքներով կը սպաննէր ։ Անգամ մըն ալ երկու կին՝ տղաքնին թլփատելնուն համար տարաւ բարձր պարիսպէն վար նետել տուաւ ։ Անոր համար շատ մարդ ասդին անդին լեռները փախան ։

Հ. Անտիոքոսի հալածանքին մէջ ինչ երևելի գիպուած կը յիշատակուի.

Պ. Եղիազար քահանային քաջութիւնը. Եօթն եղբարց նահատակութիւնը և Մակաբայեցւոց կործութիւնը ։

Հ. Եղիազար քահանան ինչ քաջութիւն ըրաւ.

Պ. Ասոր բերանը զօռով բացած՝ կ'ուզէին բռնի խոզի միս կերցընել որ օրինաց դէմ ընէ. և թէպէտ բարեկամները կը յորդորէին թէ գաղտուկ ուրիշ միս տան ուտելու, որ դատաւորը խաբէ ու տանջանքէն ազատի, բայց ինքն ամենևին յանձն չառաւ. "Իննսուն տարուան ծեր եմ, կ'ըսէր, ինչպէս իմ խիղճս մաքուր պահելու համար՝ ու-

ընկերները գայթակղեցընեմ. գիտեմ որ իննսուն տարի ալ ապրիմ, չեմ ըներ ,,։ ասանկով Եղիազար Աստուծոյ յանձնելով հոգին աւան-դեց։

Հ. Եօթն եղբարքն իրենց մօրը հետ ինչպէս նահատակուեցան.

Պ. Երբոր զասոնք բռնեցին, կը ստիպէին որ խոզի միս ուտեն. մեծ եղբայրնին առաջ անցաւ, ըսելով. “ Ի՞նչ պարապ տեղը կը հարցընէք. կը մեռնինք, օրէնքը չենք թողուր ,,։ Թագաւորը հրամայեց որ շուտ մը անոր լեզուն ու ոտքերնե-րուն ձեռուըներուն ծայրերը կտրեն, գլխուն կաշին ալ քերթեն՝ երեսին վրայ դարձընեն։ Ա-սանցմով երբ չմեռաւ, հրամայեց որ կրակին վրայ դնեն, տապկեն։ Մէկալ եղբայրքը մօրերնուն հետ սկսան մէկմէկու սիրտ տալ որ մեռնին 'ի փառս Աստուծոյ։ Ետեւէն երկրորդին գլխուն կաշին քերթեցին՝ երեսին վրայ ձգեցին ըսելով. “ Հնազանդէ, խոզի միս կեր ,,. ու մէկալին պէս տանջեցին. և ինքը հոգին տալու ատենը Թագա-ւորին ըսաւ. “ Ո՛վ հպարտ, դուն զմեզ կը մեռ-ցընես, բայց Աստուած կը կենդանացընէ ,,։ Եր-րորդին հրամայեցին որ լեզուն դուրս հանէ, շուտ մը հանեց, առանց վախնալու ձեռուըներն ալ երկնցուց, որ Թագաւորն ալ զարմացաւ մնաց։ Ետքը չորրորդը մեռնելու ատենն ըսաւ. “ Երա-նի՜ մեզի որ պիտի յարութիւն առնենք. վա՜յ քեզի որ զրկուած ես անկէց ,,։ Հինգերորդը՝ վեցե-րորդն ալ նոյն տանջանքով մեռան։ Ուզեց Թա-գաւորն որ գոնէ եօթներորդն անոյշ խօսքերով պարգեւներ խոստանալով խաբէ. բայց երբոր ճար չեղաւ, իր մօրը ըսաւ որ զինքը խրատէ։ Մայրն ալ անոր դէմ սկսաւ յորդորել որ չըլլայ թէ սը-տակէն զրկուի, որ եղբայրքը մէկտեղ պսակուեցան։ Ան ատենը տղան ալ աւելի սիրտ առաւ սկսաւ

նախատել զԹագաւորը․ «Աստուած քեզ պիտի պատժէ» ըսելով։ Թագաւորն ալ կատղեցաւ, ալ աւելի սաստիկ տանջանքով զինքն ալ մայրն ալ մեռուց։

## 100․

### Մակաբայեցիք։

Հ․ Մակաբայեցիք որո՞նք են, և ի՞նչ կարծութիւն ըրին․

Պ․ Աս ատենն էր Մատաթիա քահանան որ գնաց Մոդին քաղաքը քաշուեցաւ հինգ տղոցմով, անուննին՝ Յովհաննէս, Շմաւոն, Յուդա Մակաբէ, Եղիազար, Յովնաթան։ Անտիոքոս հոն ալ մարդ խրկեց՝ դարձընելու համար, և շատը կը դառնային․ բայց Մատաթիան համարձակ կ'ըսէր թէ «Մենք կուռք չենք պաշտեր»։ Աս ըսելու ատեն տեսան որ անդիէն ուրացող Հրեայ մը եկաւ, կուռքին զոհ կը մատուցանէր․ մէկէն վրան վազեց ու սուրով զարկաւ, կուռքին առջևը սատկեցուց։ Ան Թագաւորական մարդն ալ որ զինքը կը յորդորէր՝ մեռուց, կուռքը կործանեց, և սկսաւ կանչել․ «Ով որ աստուածային օրէնքը կ'ուզէ պաշտպանել՝ քովս գայ»։ Ասանկով տղաքն և ուրիշ բարեպաշտ մարդիկ ալ մէկտեղ ելան լեռ մը գնացին ու այրերու մէջ կը բնակէին։ Թշնամիներն իմացան, շաբաթ օր վրանին եկան, համարձակ հազար հոգի ջարդեցին։ Ասոր վրայ Մատաթիա շատ ցաւելով, խորհուրդ ըրաւ որ անկէց ետքը շաբաթ օրն ալ աստուածային օրինացը համար պատերազմին։ Եւ երբոր աւելի շատցան, սկսան կռապաշտաց հետ պատերազմիլ, կուռքերը կործանել, ուրացողները ջարդել։ Ետքը Մատաթիայի մահը մօտենալով՝ յորդորեց որդիքն որ

քաջութեամբ աստուածպաշտութիւնը նորէն հաստատեց, ու մեռաւ. Շմաւոն եղբայրներն իրենց հօր տեղ գնելով, Յուդա՛ Մակաբէն ալ զօրավար, որուն անունովը կոչուեցան Մակաբայեցիք:

Հ. Յուդա Մակաբէն ինչպէս յաղթութեամբ առաջ կ'երթար.

Պ. Առջի բերանը վեց հազար հոգւով սկսաւ քաղաքները գեղերը առնել. Ապողոնիոսին դէմ ալ ելաւ, յաղթեց, շատ կողոպուտ առաւ, զինքն ալ սպաննեց ու անոր թուրը ինքը բանեցնել սկըսաւ: Ան ատենը Ասորեստանի Նիգէն զօրավարն ա՛լ ուզեց զօրքով դէմն ելաւ. Յուդա իր քիչ զօրքը յորդորելով որ Աստուծոյ ապաւինին, վրանին վազեց, և ութը հարիւր հոգի ջարդելով ցրուեց անոնց բանակը:

Հ. Անտիոքոս ինչ ըրաւ՝ երբոր լսեց Յուդա Մակաբէին քաջութիւնները.

Պ. Մտածեց որ բոլոր ուժովը դէմ ելլէ ու Հրէից ազգը ջնջէ. ուստի առաջ գնաց Պարսից վրայ՝ ստակ ձեռք ձգելու համար. Լիւսիաս իշխանին և իր Անտիոքոս որդւոյն յանձնելով Հրէից պատերազմին բաները: Լիւսիաս իրեք զօրավար ընտրեց՝ Պտղոմէոսը, Նիկանորն ու Գորգիասը. և քառասուն հազար հետևակ՝ ու եօթը հազար ձիաւոր զօրքով խրկեց որ Անտիոքոսին մտածածը կատարեն: Նիկանոր վաճառականներուն հետ խօսք դրաւ, որ բռնելու գերիներուն իննսունը՝ մէկ քանքարի ծախէ իրենց. և կը կարծէր որ միայն ան Հրէից գնովը՝ Հռոմայեցւոց տրուելու տարեկան տուրքն կ'ելլէ: Յուդա իրեններն որ սաստիկ վախի մէջ էին՝ յորդորեց նախահարց օրինակներումն ու Աստուծոյ հրաշքներումն: Ետքը բոլոր Հրէից աղօթք ու պահք ապսպրելով, զօրքը կարգի դրած՝ Աստուծոյ օգնութեամբը թշնա-

մինչերէն տասնումէկ հազար հոգի ջարդեց և ամբարտաւան Նիկանորին զօրավարութեան ալ ողջ բանակի հալածուած որ չճանչցուի՝ Անտիոքը փախաւ ։ Խեղճ Հրէայք խել մը կողոպուտ ձեռք ձգելէն ետև՝ գերի գնելու եկող վաճառականներն ալ բռնեցին ու ստակներն առին . և սա կողոպուտներէն՝ Յուդայի հրամանովը չատ բան աղքատաց ու որբոց բաժնեցին ։ Անկէ ետև Յուդա յաղթութիւնմըն ալ ըրաւ Տիմոթէոսի և Բակքիդի դէմ . քսան հազար ալ անոնցմէ ջարդեց ու շատ կողոպուտ ալ առաւ ։

## 101.

Անտիոքոսի մահը ։

Հ. Լիւսիասայ խորհուրդն երբոր առաջ չգընաց ի՞նչ ըրաւ ։

Պ. Տարիէ մը վաթսուն հազար հետևակ ու հազար ձիաւոր զօրքով Հրէաստան եկաւ ։ Յուդա տասնումէկ հազարով դէմ ելաւ, ու հինգ հազար հոգի ջարդեց, և բանակը ցրուեց ։

Հ. Յուդա Մակաբէ Երուսաղէմն ալ չազատե՞ց Անտիոքոսի ձեռքէն ։

Պ. Լիւսիասայ յաղթելէն ետև բոլոր Հրէից իշխան ըլլալով Երուսաղէմ գնաց, որ երեք տարի կռապաշտութեան մէջ մնացած էր . ու բոլոր կուռքերը վերուց կործանեց, և սկսաւ նորոգելու Աստուծոյ տաճարն ամէն բանով . քահանաները զատեց, և Աստուծոյ շնորհակալութեան համար եօթն օր տօն կատարեցին ։ Ետքը ամէն սահմանակից կռապաշտ ազգերուն ալ յաղթեց

Յուդա՝ յայտնի Աստուծոյ օգնականութեամբը : տեսանելի որ անգամ մը հինգ ձիաւոր կարմիրներ երեւցան որ Յուդան մէջերնին առած կը պահէին , ու թշնամիներուն նետ նետելով կը շփոթէին զանոնք՝ որ իրար անցած կը յաղթուէին :

Հ . Անտիոքոս որ Պարսկաստան գնացեր էր՝ երբոր լսեց իր զօրավարներուն յաղթուիլը , ի՞նչ ըրաւ .

Պ . Երբոր խաղջ եղած զարմանալ անկէ , սաստիկ կատղեցաւ . Ճամբայ ելաւ՝ արտորնօք Հրէաստանի վրայ սկսաւ գալ որ օր մը առաջ ջնջէ Հրեաները : Ան ատեն Աստուծոյ պատուհասաւոր սաստիկ ցաւ մը եկաւ վրան : Երբոր իրեն ցաւին մտիկ չընելով կը քշէր կառքը , յանկարծ ինկաւ , ջարդուփշուր եղաւ բոլոր մարմինը , և սկսաւ փտիլ ներսի դին , վրան որդեր կը վխտային ու կը հոտէր : Ասանկով երբոր ալ մահուան դուռը հասաւ , խնդրեց քաշածներուն պատճառը , անոր համար առաջադրեց որ եթէ առողջանայ , Հրեայ ըլլայ ու ամէն Աստուծոյ ուզածներն ընէ : Բայց Աստուծոյ ողորմութեան չափը լցուած ըլլալով՝ թողուց որ չարաչար սատկի :

Հ . Անտիոքոսի մեռնելէն ետև Յուդա Մակաբէն հանդարտութիւն գտաւ .

Պ . Չէ . վասն զի Լիւսիաս մեծէն անոր որդին՝ Եւպատոր կամ Հօրանոյն ըսուած Անտիոքոսը թագաւոր դրաւ , որ նորէն պատերազմ բացաւ , ու շատ անգամ Յուդայեն յաղթուելէն ետքը՝ հաշտութիւն խնդրեց . բայց քիչ քէնց , որովհետև Դեմետրիոս իրեն հօրեղբօրը որդին եկաւ Անտիոք , սպաննեց Անտիոքոսն ու Լիւսիասը և ինքը թագաւորեց : Ան ատենը Ալկիմոս անուն Հրեայ մը որ ատենով քահանայապետութենէ վռնտուած էր , գնաց թագաւորին ըսաւ ; թէ " Քանի որ Յուդա Մակաբէն ողջ է , Հրէաս-

տան խաղաղութիւն չըլլար,,։ և ուրիշներուն ալ վրայ տալովը՝ Թագաւորը զԱղկիմոսը Բակքիդ զօրավարին հետ խրկեց որ պէտք եղածն ընեն, անոնք ալ եկան խաբէութեամբ խել մը մարդ Յուդայի բարեկամներէն սպաննեցին, և տեսնելով որ Յուդան պատերազմի կը պատրաստուի, դարձան նորէն Թագաւորը գրգռեցին. ան ալ Նիկանովրը շատ զօրքով խրկեց որ զՅուդան բռնէ, ու Աղկիմոսը քահանայապետ դնէ։

102.

Յուդայի մահը։

Հ. Նիկանովր զՅուդան բռնելու հրամանը կրցա՞ւ առաջ տանիլ.

Պ. Նիկանովր տեսաւ որ Յուդա կարիճ զօրքով պատրաստուած կեցեր է, միրտ չըրաւ, ուզեց որ հաշտութիւն ընէ. ուստի Երուսաղէմ մտաւ և Յուդայի հետ խնամութիւն ալ ըրաւ։ Աղկիմոս Նիկանովրայ ըրածները տեսնելով, գնաց Թագաւորին ամբաստանեց. ան ալ սրդողեցաւ, գրեց Նիկանովրին թէ Յուդան կապած ինծի խրկես։ Յուդա լսեց, պահուըտեցաւ. Նիկանովր փնտռելով զինքը՝ քահանաներուն գնաց, ձեռքը դէպ 'ի տաճարին երկնցընելով“ Թէ որ, ըսաւ, Յուդան ձեռքս չտաք, աս տաճարը կը կործանեմ, մեհեան կը շինեմ,,։ Քահանաները լալով սկսան աղաչել Աստուծոյ որ պահէ իր տաճարը։

Հ. Նիկանովր երբոր զՅուդա Մակաբէն չկրցաւ բռնել, ի՞նչ ըրաւ.

Պ. Նախ քաղքին դժուար ծերը Հռազիս բռնելու համար հինգ հարիւր զինուոր խրկեց. բայց Հռազիս չուզելով կռապաշտներու ձեռք իյնալ,

Թուրով ինքնիրեն զարկաւ ու ինք զինքը պարխա-ղէն վար ձգեց. և չմեռած՝ արիւնլուայ ոտքի վրայ ելաւ, գուրս ինկած փորոտիքը ձեռքին ա-ռաւ, ըսաւ. « Տէր, այսպէս իրեն հատուցա-նես », ու ինկաւ մեռաւ։ Ետքը Նիկանորը իմա-նալով որ Յուդա Մակաբէն Սամարիայի կողմերը զօրքով կեցեր է. կամէր շաբաթ օր իր բոլոր ու-ժովը վրան վազեց։ Յուդա Մակաբէն ալ իր զօր-քը յորդորելով, տեսիլք մըն ալ պատմեց թէ Ոնիա քահանայապետը Հրէից համար աղօթք կ'ընէր, և ուրիշ ծերունի մըն ալ կը ցուցնէր, ըսելով թէ՝ « Երեմիա մարգարէն է, որ միշտ ձեզի համար Աստուծոյ կ'աղաչէ »։ Ան ատեն Երեմիան ոսկիէ թուր մը Յուդայի կուտայ ու կ'ըսէ. « Ա՛ռ ու բոլոր թշնամիներդ սպաննէ »։ Աս տեսիլքով քաջալերուած իրենք քիչ հոգի ըլլալով, երեսունըհինգ հազար հոգի մեռուցին՝ Նիկանորն ալ մէկտեղ։ Յուդա հրամայեց որ Նիկանորայ գլուխը և աջ ձեռքը կտրեն, որ բե-րին տաճարին առջևը կախեցին։

Հ. Նիկանորայ մեռնելէն ետև Յուդան խաղա-ղութիւն գտաւ.

Գ. Մօտերն ուրիշ զօրաւոր թշնամի մը չգըտ-նուելով, քիչ մը ատեն դադրեցաւ պատերազմը. և ինքն ալ լսելով Հռոմայեցւոց մեծ անունը, դեսպան խրկեց, հետերնին դաշինք դրաւ։ Բայց Դեմետր լսելով Նիկանորայ մահը, նորէն Բա-քիդը Աղկիմոսի հետ խրկեց։ Ան ատեն Յուդայի քով միայն երեք հազար զօրք գտնուելով վախ-ցան ցրուեցան, և միայն ութը հարիւր հոգի մնաց. անոնք ալ կ'ըսէին թէ « Աս անգամ ետ կենանք »։ Յուդա ըսաւ. « Ես փախչիլ չեմ գիտեր ». և ան ութը հարիւրով [illegible] ինչպէս կրկին պատերազմեցաւ ու բանակին աջ թևին յաղթեց։ Բայց ձախ թևին զօրքը եկան

զիրենք մէջ առին. հոն ինկաւ Յուդան ու զօրքը ցրուեցան։ Ետքը Շմաւոն ու Յովնաթան եղբայր-քը անոր մարմինը տարին հայրենական գերեզ-մանը Թաղեցին, Հրէայք ալ վրան մեծ սուգ ըրին։

## 103.

### Յովնաթան, Շմաւոն։

Հ. Յուդա Մակաբէին տեղ ո՞վ եղաւ առաջ-նորդ Հրէից.

Պ. Առջի բերանը անոնք մնալով, Բաքիդէն շատ նեղութիւն քաշեցին. անոր համար Յովնա-թան անոր եղբայրը քահանայապետ ու առաջ-նորդ ըրին։ Բաքիդ զան ալ կ'ուզէր սպաննել. բայց Յովնաթան զօրքով անապատ տեղ մը քա-շուեցաւ։ Բաքիդ գնաց՝ շաբաթ օր պատերազմ բացաւ. Յովնաթան հազար հոգի զարկաւ փա-խուց։ Երկրորդ անգամ ալ Բաքիդ յաղթուելով հաշտութիւն ըրաւ ու Անտիոք դարձաւ, որով-հետեւ Դեմետր Թագաւորն ալ Աղեքսանդր Ե-պիփանին ձեռքէն կը վշտանար։ Ասանկով Յով-նաթան Մաքմաս նստաւ սկսաւ ժողովուրդը կառավարել. վասն զի Երուսաղէմի բերդը դեռ Դեմետրին ձեռքն էր։

Հ. Յովնաթան կրցա՞ւ խաղաղութեամբ քշել իր իշխանութիւնը.

Պ. Իրեն քաջութիւնը հաշտակուելով, ուրիշնե-րը չէ թէ միայն դէմ չէին ելլեր, հապա նաեւ եր-կու թագաւոր Դեմետր ու Աղեքսանդր՝ մէկմէ-կու դէմ Յովնաթանու բարեկամ ըլլալ կը ջանա-յին։ Բայց Յովնաթան Դեմետրի անօրէնու-թիւնները յիշելով, անոր բարեկամական խոստ-մունքներուն այնչափ չէր հաւատար. մանաւանդ

որ Աղեքսանդր զինքն քահանայապետ ճանչնալով՝ ոսկի թագ ու ծիրանի խրկեց իրեն. Թէպէտ Դեմետր ալ նորէն բարեկամութեամբ թուղթ գրեց Հրէից, շատ ազատութիւններ տալով, բայց անոնք հաստատ կեցան Աղեքսանդրի հետ։ Ետքը Աղեքսանդր զԴեմետրն սպաննեց, ու Եգիպտացւոց Պտղոմէոս թագաւորին հետ ալ բարեկամանալ ուզելով, անոր Կղէոպատրա աղջիկն իրեն կին առաւ. Եւ երբոր երկու թագաւոր մէկտեղ Պտղոմայիդ քաղաքը հարսնիք կ'ընէին, Աղեքսանդր զՅովնաթանն ալ հրաւիրեց, ու շատ պատիւ տուաւ իրեն. Թէպէտ հոն Յովնաթանի վրայ շատ ամբաստանութիւն ընողներ ալ եղան։

Հ. Յովնաթան ինչուան երբ խաղաղութեամբ իշխե՞ց Հրէից.

Պ. Քիչ ատենէն՝ մեռած Դեմետր թագաւորին մեծ որդին Դեմետր Նիկանովր՝ իր հօրը տեղը Անտիոք քաղաքն եկաւ նստաւ. ու Յովնաթանի վրայ բարկացած՝ իր հօրմէն զատուելուն համար, Ապողոնիոս զօրապետը՝ խրկեց վրան, ութը հազար հետեւակով և երեք հազար ձիաւորով. Յովնաթան Շմաւոն եղբօրը հետ տասը հազար զօրքով դէմ ելաւ, ութը հազարը ջարդեց, և Դագոն կուռքին տաճարը՝ հոն փախչողներուն վրայ այրեց, ու շատ կողոպուտով Երուսաղէմ դարձաւ։ Աղեքսանդրն ալ Յովնաթանի քաջութեանը համար իրեն թագաւորական նշան պարգև խրկեց ու իշխանութիւնը մեծցուց։ Բայց Աղեքսանդր սպաննուելէն ետքը որ Դեմետր աւելի զօրացաւ, ինքն ալ Յովնաթանը մեծարեց, ազատութեան գիր տուաւ։

Հ. Յովնաթան ի՞նչպէս մեռաւ.

Պ. Տրիփոն զօրապետը կ'ուզէր Աղեքսանդրի տղան թագաւոր ընել, Յովնաթան Դեմետրին օգնեց, յաղթել տուաւ. բայց Դեմետր անոր

փախարկէն չընելով, եւ որք իր զօրքէն ալ Թշնամանալով փախուցին զինքն ու Անտիոքոսը Թագաւոր ճանչցան, որ Յովնաթանին պատիւ ըրաւ: Բայց Տրիփոն Անտիոքոսին ալ Թշնամի դարձած, երբոր Յովնաթան անոր օգնելու կ'երԹար, Տրիփոն խաբէութեամբ զօրքը քովէն հեռացընել տուաւ ու հազար հոգւով Պտղոմայիս քաղքին մէջ գոցեց զՅովնաթան, հետը եղած զօրքը ջարդեց, ու ինքն սկսաւ Հրէաստանի վրայ երԹալ: Հրեայք եղածին վրայ շատ ցաւելով, Շմաւոնը Յովնաթանի տեղ նստուցին: Տրիփոն իմանալուն պէս՝ Շմաւոնի խրկեց ըսաւ Թէ, « Յովնաթան պարտք ունի, վճարեցէք, եւ իրեն երկու որդիքն ինծի պատանդ տուէք որ զինքը Թողում »: Շմաւոն իմացաւ խարդախութիւնը. բայց ժողովըրդեան բերանը չկենալու համար՝ անոր ուզածները տուաւ: Տրիփոն անոնք առնելէն ետեւ, Յովնաթանը մեռուց ու ետ դարձաւ. գնաց Անտիոքոսն ալ գաղտուկ սպաննել տուաւ ու ինքը Թագաւորեց: Իսկ Շմաւոն Յովնաթանի մարմինն առաւ, Մովդիիմ քաղաքն՝ իր հօրը գերեզմանը դրաւ, եւ վրանին փառաւոր քարէ շինուածք շինեց:

Հ. Շմաւոն ի՞նչպէս քշեց իր իշխանութիւնը.

Պ. Որովհետեւ Դեմետր ան ատենը ուժովցեր էր, ընծաներ խրկեց անոր ու ազատութիւններ առաւ, եւ երկար ատեն խաղաղութեամբ կառավարեց: Ետքերը Անտիոքոս անունով մէկը Տրիփոնին յաղԹեց, ու Շմաւոնին հետ սկսաւ Թշնամութիւն ընել. իր Աթենոբիոս բարեկամը խրկեց, շատ բաներ կը պահանջէր Շմաւոնէն: Շմաւոն պատասխանեց Թէ « Միայն հարիւր քանքար կուտանք Յոպպէ ու Գազարա քաղաքներուն տեղը. ուրիշ պարտք չունինք տալու »: Անտիոքոս բարկացած՝ շատ զօրքով խրկեց վրան

Կենդեբոս զօրավարը․ Շմաւոն ալ իր երկու որդիքը Յուդա և Յոհան քանի հազար զօրքով անոնց դէմ ելկեց, որ զամենքը ջարդեցին ու փախուցին։

Հ․ Շմաւոն իր մահուամբը մեռաւ․

Պ․ Չէ․ Պտղոմէոս Աբուբեանց Շմաւոնի փեսան վզան նախանձելով, որ մէկ սեզան ըլլալ անոր իր քաղաքը, և ուտել խմելէն ետև՝ Շմաւոնը և երկու որդիքը Յուդա ու Մատաթիա սպաննել տուաւ․ Անտիոքոսէն ալ իրեն օգնութիւն ուզեց․ և Շմաւոնին մէկալ տղուն վրայ ալ Գազարա քաղաքը մարդ ղրկեց որ սպաննեն․ բայց անիկայ առաջուց գաղտուկ իմանալով, ան մարդիկը բռնեց մեռուց ու իր հօրը տեղը նստաւ։

## 104․

### Յաւելուած ։

Հ․ Յոհանի կառավարութիւնը ի՞նչպէս եղաւ․

Պ․ Անոր վրայ կը լմննայ Մակաբայեցւոց պատմութիւնը․ բայց Յովսեպոսին մէջէն գիտենք թէ Յոհան որ Հիւրկանիա գաւառին յաղթելուն համար Հիւրկանոս ալ կ՚ըսուի, Պտղոմէոսին յաղթելէն ետև՝ հօրը տեղը անցաւ։ Եւ Անտիոքոս երբոր բոլոր ուժովը եկաւ Երուսաղէմ պաշարեց․ Յոհան անանկ քաջութեամբ դէմ դրաւ որ անոր ճարը․ հատած՝ հետը հաշտուեցաւ։ Ետքը Անտիոքոս Պարթից դէմ պատերազմի ելլելու ատենը Յոհանն ալ հետն առաւ՝ անոր քաջութեանը համար։ Անտիոքոս երբոր ինքզինքն սպաննեց, Յոհան Հրէաստան դարձաւ,

ու իր տէրութիւնը ուզածին պէս մեծցուց : Բայց իր ատենը Սադուկեցւոց ու Փարիսեցւոց աղանդները տարածուած ըլլալով . Յոհան եղբայրը Սադուկեցւոց կողմը բռնեց, և Հրէից ատելի եղաւ :

Հ. Յոհանին ո՞վ յաջորդեց .

Պ. Հինգ տղոցը մէջէն նոստա Արիստոբուղոսը, և ինքզինքը Հրէաստանի թագաւոր անուանեց . իր մայրն որ իշխանութեան ետեւէ էր՝ մեռուց, ու իրեք եղբայրները բանտ դնել տուաւ . և մէկալ Անտիգոնոս եղբայրն՝ որ իրեն թագաւորութեան ընկեր էր առեր, անգամ մը երբոր պատերազմէն յաղթութեամբ դարձաւ, վրան կարծիքի երթալով թէ կ'ուզէ թագաւորութիւնը յափշտակել, անողորմաբար մորթել տուաւ : Բայց տարիէ մը աւելի չքշեց իր իշխանութիւնն ալ . և ուր որ իր եղբօրն անմեղ արիւնը թափեց, հոն հոգին փչեց :

Հ. Արիստոբուղոս որո՞ւ թողուց իր թագաւորութիւնը .

Պ. Ինքը զաւակ չունենալով, իր կինը՝ զԱղեքսանդրոս Յաննէոս տագրը բանտէն հանել տուաւ, ու հետը կարգուելով զինքը թագաւոր դրաւ . որ թէպէտ քաջութեամբ Հրէաստանի սահմանը շատ մեծցուց, բայց իր անգթութեամբը խիստ ատելի եղաւ ամենուն . ուստի զինքը մեռցնել կը նայէին : Աղեքսանդրոս իմանալով կատղեցաւ, և ինչպէս որ կ'ըսեն, վեց տարուան մէջ յիսուն հազար հոգւոյ գլուխ կտրեց . մէկ հեղ մ՛ ալ ութը հարիւր հոգի մեծամեծներէն որ իր ըրած բռնակալութիւններուն վրայ կը խօսէին, բռնել տուաւ, ու ինքը սեղան նստած ուրախութեան ատենը՝ զանոնք խաչի վրայ կախել տուաւ, ու իրենց կնիկները՝ զաւակները բերաւ անոնց առջեւ մորթել տուաւ : Աղեքսանդրոս եղբայրը զինքը

գինիի տալով, անոր համար իրեք տարի ալ հի-ւանդութիւն քաշելէն ետև, իր իշխանութեանը քսանուեօթներորդ տարին մեռաւ ։

Հ ։ Աղեքսանդրոսին ո՞վ յաջորդեց .

Պ . Իրեն տղաքը Հիւրկանոս և Արիստոբուղոս պզտիկ ըլլալուն, Թագաւորութեան ժառանգու-թիւնը յանձնեց իր Աղեքսանդրա կնկանը որ Սա-ղոմէ ալ կ'ըսուէր . ան ալ քահանայապետութիւնը Հիւրկանոսի տուաւ, և ինքը միայն կառավարու-թիւնը կ'ընէր . ինը տարիէն ետքը մեռաւ, իշ-խանութիւնը բոլորովին Հիւրկանոսի մնաց ։

Հ . Հիւրկանոսի կառավարութիւնը ինչպէս եղաւ .

Պ . Ինքը տկար ըլլալով և իր Արիստոբուղոս եղ-բայրը տաքարիւն, Հիւրկանոսի վրայ պատերազմի ելաւ, յաղթեց, ինքը առաւ աթոռը ։ Իրեք տա-րիէն Հիւրկանոս՝ Արաբացւոց Արետաս Թագա-ւորին օգնութեամբը փախուց Արիստոբուղոսն ու ինքը նստաւ . ինչուան որ Սկաւրոս Հռոմայե-ցւոց զօրապետն Երուսաղէմ առաւ՝ նորէն Հիւր-կանոսի դարձուց, և Արիստոբուղոսն իր զաւկը-ներովը Հռոմ բերաւ, և բոլոր Հրէաստան Հռո-մայեցւոց հարկատու ըրաւ, Անդիպատրոսի յանձ-նելով որ Հրէից տուրքերը ժողվէ ու Հռոմայե-ցւոց խրկէ ։

Հ . Մակաբայեցւոց ցեղէն վերջի Թագաւորն ո՞վ եղաւ .

Պ . Անտիգոնոս Արիստոբուղոսին որդին, որ ութը տարի Հռոմ բանտը կենալէն ետև, հօրը հետ բանտէն փախաւ, ու Հրէաստան դարձաւ ։ Բայց ետքը Անդիպատրոսի որդւոյն Հերովդեսի խօսքովը որ կ'ըսէր թէ Անտիգոնոս թշնամի է Հռոմայեցւոց, կապած Անտիոք քաղաքը տարին գլուխը կտրեցին ։ Ասով բոլորովին Հրէից իշխանութիւնը վերջացաւ ։

Հ. Հրէից ազգը Մակաբայեցւոցմէ ետքը ո՞վ կառավարեց.

Պ. Հերովդէս, որ Հրէից ազգէն չէր, և խարդախութեամբ Հռոմայեցւոց ծերակուտին ութը հարիւր տաղանդ ստակ խոստանալով, Օգոստոս կայսեր ձեռքէն բոլոր Հրէաստանի թագաւորութիւնը ինքն առաւ, որուն ատենը Քրիստոս աշխարհք եկաւ։



105.

## Գ Ի Տ Ե Լ Ի Ք

Հ. Հրեայք երբոր գերութեան գնացին, տապանակն ինչ եղաւ.

Պ. Երեմիա մարգարէն՝ տաճարը չկործանուած՝ գետնին տակ գաղտուկ պահեց տապանակն ու սեղան խնկոցը. ետքը տարաւ Նաբաւ լեռը՝ Մովսէսի թաղուած տեղը. և ուր դնելը անյայտ պիտի մնայ ինչուան վերջը։

Հ. Եսթեր ինչո՞ւ համար Թագաւորը և Համանն ալ մէկտեղ երկու անգամ սեղանի հրամցուց.

Պ. Որպէս զի Թագաւորին սէրը իր վրայ ալ աւելի շարժէ. և Համանն ալ կանչուելով և փառաւորուելով, թէ որ յանկարծ իր ըրած անիրաւութիւնը լսէ, շփոթի ու չկարենայ խաբէութիւն մտածել։ Մէկմըն ալ, որ ըսած բանէնը Համանը քովն ըլլալով, Թագաւորն ամեններին կասկածի մը չերթայ։

Հ. Համանը կախուելէն ետքը, Հրեաներն ինչո՞ւ իրենց թշնամիները ջարդեցին.

Պ. Վասն զի անոնք Հրէից վրայ թշնամութիւն պահելով, միշտ զիրենք ջնջելու ետևէ կ՚ըլլային. ուստի Հրեաներն ալ առեն գտնելով անոնց առաջքը առին, որ իրենց կեանքը ազատեն. անոր համար ալ թշնամիներուն հարստութեանը ամենևին չմօտեցան։

Հ. Դանիէլ ու իր ընկերներն ինչո՞ւ Թագաւորական սեղանէն ուտել չուզեցին.

Պ. Մէյմը որ Թագաւորական սեղանը շատ անգամ Մովսէսի օրինացը դէմ կերակուրներ կը դրուէին. և երկրորդ՝ շատ անգամ Բաբելացիք ան կերակուրներն իրենց կուռքերուն նուիրած կ՚ըլլային:

Հ. Տասնուերկու փոքր մարգարէներն ո՞ր ատեն և ինչ բանի վրայ մարգարէացան.

Պ. Շատը Հրէից Թագաւորներուն ատենը մարգարէացան, Իսրայէլացւոց կռապաշտութիւնը յանդիմանելով և Քրիստոսի գալուստը գուշակելով. միայն Յովնան ու Նաւում Նինուէացւոց վրայ մարգարէացան. իսկ ետքի իրեքը Բաբելացւոց գերութենէ ետքը սկսան մարգարէանալ:

Հ. Հռաքսին ինքզինքն սպաննելն աղէկ բան էր.

Պ. Չէ. Թէպէտ և ինքը քաջասրտութեամբ ըրաւ որ անհաւատներուն ձեռքը չիյնայ, իր ազգին ալ կտրճութեան օրինակ տայ: Անոր համար շատերը զինքն անմեղադիր կ՚ընեն:

Հ. Ռափայէլ հրեշտակն ինչպէս իր անունը Ազարիա ըսաւ.

Պ. Վասն զի ան Ազարիային կերպարանքովը երեցաւ՝ որն որ Տոբիթ կը ճանչնար. մէյմըն ալ որ հրեշտակները որովհետև մասնաւոր անուն չունին, մարդկանց առջև ինչ անուն որ ուզեն՝ կրնան ըսել:

Հ. Սեղանին սուրբ կրակն որ Երեմիա պահեց, ուսկի՞ց եկած էր.

Պ. Ան կրակն էր որ առջի անգամին անապատին մէջ՝ Ահարոնին ողջակէզ ընելու ատենն երկինքէն յանկարծ իջնելով, այրեց ողջակէզը. Աստուած հրամայեց որ ան կրակը միշտ վառ

պահէին քահանաներն ողջակիզաց սեղանին վրայ. ուստի ինչուան Բաբելացւոց գերութիւնը վառ-մնաց : Եւ ապա Երեմիայի պահած տեղէն հրաշքով հանեցին, ու անկէ ետև ինչուան տաճարին կոր-ծանիլը դիմացաւ :

Հ. Յակոբ նահապետին խոստմունքը թէ Յու-դայի ցեղէն իշխան չպակսի ինչուան Քրիստոս, ի՞նչ կերպով կատարուեցաւ.

Պ. Յուդայի ցեղին իշխանութիւնը Դաւթէն սկսելով, ինչուան Սեդեկիա շարունակեց, և ապա Բաբելացւոց գերութեան ատենը Նաբուքոդո-նոսոր զՅեքոնիան թագաւորական պատուով կը պահէր. և անոր որդին և Զօրաբաբէլ Թոռը՝ ան գերութեան ատենին ալ անկէ հրէից մէջ ազգի պատիւն ունէին և իշխանութեան մէջ էին Նա-բուքոդոնոսորայ քովը, և թագաւորութեան իրաւունքով կը վարուէին : Երբոր նորէն Երու-սաղէմ դարձան և սկսան ապրիլ, ան ալ Յուդայի իշխանութիւն էր, որովհետև երկիրը Յուդայի էր, ժողովուրդը բոլոր Յուդայի, և միայն մէկ քանի հոգի ուրիշ ցեղերէն կը գտնուէին մէջեր-նին. և թէպէտ ետքի բուն իշխանը Ղևեայ ցեղէն էր, բայց յայտնի է որ Յուդայի ցեղին անուամբը. որովհետև Աստուած Ղևեայ ցեղը տասներ-կու ցեղին մէջէն ընտրելը՝ իրեն առեր էր, անոր համար Ղևեայ ցեղը թագաւորութիւն չէր կրնար ունենալ, հրաման ալ չունէր քաղաքներ երկիրներ ստանալու. բայց Յուդայի ցեղին մէջ թագաւո-րելու յարմար մարդ չգտնուելով, Աստուած իր մարգարէներէն անոնց տուաւ որ իշխանութիւննին հաստատ պահեն. ասանկով Յուդայի թագա-ւորութիւնը ինչուան Քրիստոս դիմացաւ :



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻՆ



## ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՐԴԵՂՈՒԹԵՆԷՆ

### ԻՆՉՈՒԻԱՆ ՄԿՐՏՈՒԹԻՒՆ



### 106.

Աւէտարան, այջէլութիւն ։

*Հ. Ո՞վ փրկեց զմեզ սատանայէն գերութենէն.*

*Պ. Աստուած իր անհուն գթութեամբն ու անչափ սիրովը լսեց մարդկանց աղաղակին՝ որ չորս հազար տարի իր ընտրեալ նահապետներուն և մարգարէներուն բերնով՝ ամէն ինկած՝ իր սիրոյն դէմ ըրած յանցանքներնուն թողութիւն կը խնդրէին ։ Եւ ուզեց որ եթէ մարդիկ ստեղծման ատեն իր ցուցուցած սէրը չճանչցան, ուզեց որ փրկելու ատենն իր մեր վրայ ունեցած սիրոյն մեծութիւնը խիստ յայտնի փորձով ցուցընէ ։ Անոր համար ինքն Աստուած մարմին առաւ, մարդ-*

եղաւ , ու իր նախատական մահուամբը զմեզ մա-հուանէ ազատեց ։

Հ . Երբոր Քրիստոս աշխարհք գալը մօտե-ցաւ , առաջուց նշան մը տուաւ .

Պ . Հերովդէսի թագաւորութեանը երեսունը-հինգերորդ տարին՝ Եղիսաբեթի էրկանը Զա-քարիա քահանային որ ծերացեր էր ու տղայ չունէր , օր-մը երբոր տաճարը խունկ կը մատու-ցանէր , հրեշտակ մը երեւցաւ ու ըսաւ . " Աղօթքդ լսեց Աստուած , Եղիսաբեթ քեզի որդի մը պիտի ծնանի , անունը Յովհաննէս դնես , որ շատերուն ուրախութեան պատճառ ըլլայ . ծնած՝ հոգւով սրբով լեցուի , և Աստուծոյ առջեւէն երթալով ժողովրդեան սիրտն անոր դարձընէ . ուխտաւոր ըլլալուն համար զգուշացիր որ գինի և օղի չխմէ ,, ։ Զաքարիա Երբոր տարակուսեցաւ ծեր ըլլալուն համար , հրեշտակն ըսաւ . " Ես Գաբրիէլ հրեշ-տակն եմ , որ Աստուած զիս խրկեց . հիմա ինծի չհաւատալուդ՝ համր ըլլաս մինչեւ ան օրը ,, ։ Մէ-կէն Զաքարիային լեզուն կապուեցաւ . ետքը երբոր տուն գնաց , Եղիսաբեթ յղացաւ , ու փառք կուտար Աստուծոյ ։

Հ . Յիսուսի ծնունդը Յովհաննէսին ծնընդե-նէն ո՞րչափ ետքը պիտի ըլլար .

Պ . Հինգ ամիսէն ետև Գալիլեայի Նազարէթ քաղաքը՝ ուր էր կոյսն Մարիամ նշանած Յովսէ-փայ արդարոյն հետը՝ եկաւ Գաբրիէլ հրեշտակը Մարիամու ըսաւ . " Ուրախ լեր բերկրեալդ . տէր ընդ քեզ ,, ։ Կոյս Մարիամ հրեշտակը տես-նելով և ան խօսքը լսելով շփոթեցաւ ։ Հրեշտակը նորէն ըսաւ թէ " Մի՛ վախեր , Քրիստոս քեզմէ պիտի ծնանի ,, Երբոր ինքը նորէն կը տարակու-սէր , պատասխան տուաւ հրեշտակը թէ " Հոգ-ւով սրբով պիտի ըլլայ ,, . և իմացուց թէ Եղիսա-բեթ ազգականն ալ որ ամուլ էր՝ յղի է ։ Մարիամ

ալ ըսաւ . « Ահա ես Աստուծոյ աղախինն եմ, ինչ որ ըսեր ինծի՝ կատարուի » : Այս խօսքովը յղացաւ զՅիսուս :

Հ . Աւետմանէն ետեւ ի՞նչ ըրաւ սուրբ կոյսը .

Պ . Եղիսաբեթին այցելութեան գնաց . ու երբոր բարեւեց , Եղիսաբեթի արգանդին մէջ վեց ամսուան տղան շարժեցաւ . մայրն ալ Հոգւովն սրբով լեցուած՝ կանչելով ըսաւ . « Օրհնեալ ես դու ՚ի կանայս , և օրհնեալ է պտուղ որովայնի քո . ու ինչ մեծ պատիւ է՝ որ Աստուծոյ մայրն ինծի գայ » : Մարիամ ալ սկսաւ ըսել այն խորհրդաւոր օրհնութիւնը . Մեծացուսցէ անձն իմ զՏէր . ու երեք ամիսէն իր տունը դարձաւ :

Հ . Յովհաննու մկրտչի ծնունդն ինչպէս եղաւ .

Պ . Եղիսաբէթ ատենին երբոր ծնաւ , ազգականներն իրեն ուրախակից եղան . և ութերորդ օրը տղան թլփատելու ատենին՝ ուզեցին որ անունը Զաքարիա դնեն : Մայրը կ՚ըսէր թէ « Յովհաննէս գրեք » . ուրիշները՝ « Ձեր ազգատոհմին մէջ աս անունը չկայ » կ՚ըսէին : Իսկ հօրը հարցուցին , ան ալ տախտակի մը վրայ գրեց , թէ « Յովհաննէս է անունը » . ան ատեն լեզուն ալ արձակուեցաւ՝ ու Հոգւով սրբով լեցուած սկսաւ Օրհնեալ տէր Աստուած Իսրայէլի օրհնութիւնը ըսել : Իսկ Յովհաննէս պզտիկուց անապատ քաշուեցաւ՝ մինչեւ քարոզութեան ատենը :

107.

Ծնունդ։

Հ. Սուրբ Յովսէփ ի՞նչպէս իմացաւ Մարիամու հրաշալի յղութիւնը.

Պ. Դրսի նշաններէն տեսնելով, և չգիտնալով թէ Հոգւով սրբով է, շատ շփոթեցաւ. բայց ինքն արդար ըլլալով, ուզեց գաղտուկ քովէն ճամբել։ Ասանկ մտածելով երբոր քունը տարաւ, հրեշտակ մը իմացուց ի՛նչ ըլլալը, և անունը Յիսուս դնես ըսաւ, յիշելով Եսայի մարգարէին ըսածը թէ “ Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի՝ ընդ մեզ Աստուած ”։ Ասոր վրայ Յովսէփ շատ ուրախացաւ։

Հ. Յիսուսի ծնունդն ի՞նչպէս եղաւ.

Պ. Որովհետև մարգարէներն ըսեր էին որ Բեթղեհէմ քաղաքը պիտի ծնանի Քրիստոս, Հռոմայեցւոց Օգոստոս կայսրը հրաման հանեց որ ամէն մարդու ցեղն ու քաղաքը գիր անցուի։ Յովսէփ ալ Բեթղեհեմացի ըլլալով եկաւ Բեթղեհեմին դրսի գին ախոռի մը մէջ իջաւ. հոն ծնաւ Յիսուս գիշեր ատեն. Աստուածածինն ալ զինքը խանձարուրով պատեց ու մսուրի մէջ դրաւ։ Ան կողմերը հովիւներ կային, ոչխարներ կը պահէին. անոնց ալ յանկարծ հրեշտակ երևցաւ ու ըսաւ. “ Մի՛ վախէք, ուրախացէք, այսօր ծնաւ ձեր փրկիչը. գնացէք տեսէք մսուրին մէջ ”։ Աս ըսելու ատեն ուրիշ անհամար հրեշտակներ ալ երևցան ու սկսան օրհնել զԱստուած՝ ըսելով. “ Փառք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն ”։

Երբոր հովիւները փութացին եկան, գտան Յիսուսը մսուրին մէջը, երկրպագութիւն ըրին. և ով որ անոնցմէ կը լսէր, կը զարմանար: Իսկ ութերորդ օրը թլփատեցին ու անունը Յիսուս դրին:

Հ. Հովիւներէն ուրիշ մարդ չկանչուեցա՞ւ որ գայ Յիսուսը տեսնելու.

Գ. Աստուած Հրէից անհոգութիւնն երեսնին տալու համար՝ հեռու աշխարհքէ կոչեց երեք մոգերն որ աստղի երեւնալէն գուշակելով Յիսուսի ծնունդը, եկան ու սկսան Երուսաղեմի մէջ հարցընել թէ "Ո՞ւր է նոր ծնած թագաւորը": Հերովդէս անոնցմէ լսելով շփոթեցաւ. կանչեց Հրէից կարդացողները, հարցուց. անոնք ալ ըսին. "Միքիա մարգարէն կը գրէ թէ Բեթղեհէմ քաղաքը պիտի ծնանի": Ան ատեն Հերովդէս գաղտուկ կանչեց մոգերը, աղաչեց իրենց որ եթէ գտնեն տղան, իրեն ալ իմացընեն որ ինքն ալ երթայ անոր երկրպագութիւն ընէ: Երբոր ան աստղը նորէն երեցաւ իրենց ու ինչուան Յիսուսին բնակած տեղին վրայ գնաց կեցաւ: Անոնք ալ մտան, երկրպագութիւն ըրին Յիսուսին ու պարգև տուին, ոսկի՝ կնդրուկ ու զմուռս:

Հ. Մոգերը դարձա՞ն Հերովդէսին՝ Յիսուսի ծննդեան տեղը ցուցընելու համար.

Գ. Չէ. վասն զի հրեշտակ երեւցաւ անոնց, պատուիրեց որ ուրիշ ճամբով երթան իրենց տեղը:

Հ. Հերովդէս երբոր մոգերէն խաբուեցաւ, ի՞նչ ըրաւ.

Գ. Սաստիկ սրդողեցաւ, ու ջարդել տուաւ բոլոր Բեթղեհէմի և մօտ տեղերուն երկու տարուընէ վար եղած տղաքը:

Հ. Բեթղեհէմի մանկանց կոտորածէն Յիսուս ի՞նչպէս ազատեցաւ.

Գ. Առաջուց հրեշտակին իմացընելովը Յովսէփ զՅիսուս մօրը հետ Եգիպտոս փախուց, ին-

շրջան որ Հերովդէս մեռաւ ։ Ետքը նորէն հրեշտակին ըսելովը դարձաւ եկաւ ․ տեսաւ որ Արքեղայոս Հերովդեսի չար տղան նստեր էր՝ վախցաւ, ու հրեշտակին առաջնորդելովը Նազարէթ քաղաքը գնաց, որ Անտիպաս Հերովդեսին իշխանութեանը տակն էր ։

Հ ․ Յիսուսի ընծայումն ինչպէս եղաւ ․

Պ ․ Յիսուս երբոր քառասուն օրուան եղաւ, ինչպէս որ օրէնքը կ՚առաջարկեր, տաճարը տարին զինքը՝ երկու տատրակ հետերնին առած, Աստուծոյ ընծայելու համար ։ Ան ատենը հոն էր ծերունին Սիմէոն, որուն Հոգին սուրբ յայտներ էր թէ ինչուան որ փրկիչը չտեսնէ, պիտի չմեռնի ․ ուրախութեամբ գիրկը առաւ Յիսուսն ու ըսաւ ․ “ Տէր ինծի ըրած խոստմունքդ կատարեցիր, ալ թող որ մեռնիմ „ ։ Ետքը Աստուածածնայ ըսաւ թէ “ Աշխարհ շատերուն փրկութեան և շատերուն կորստեան պատճառ պիտի ըլլայ, և քու սիրտդ ալ պիտի խոցուի „ ։ Աննա մարգարէն ալ, որ եօթը տարի միայն էրկանը հետ կեցեր էր, և ութսուն չորս տարի օրքեարի տաճարը կը բնակէր պահքով և աղօթքով, սկսաւ փառք տալ Աստուծոյ ու քարոզել Յիսուսին Մեսիա ըլլալը ։ Անանկով նորէն Նազարէթ դարձան ։

Հ ․ Հրէից մէջ կարգ էր որ բարեպաշտ մարդիկ տարին մէյմը տաճար երթան, զոհ մատուցանեն ․ աս կարգն ալ կը պահէր Աստուածածին ․

Պ ․ Ամէն տարի Յիսուսն ալ մէկտեղ առած կ՚երթային ։ Անգամ մը երբոր Յիսուս տասնուերկու տարուան էր՝ գնացին, ու ետ դառնալու ատեն՝ առանց իրենց գիտնալուն՝ Յիսուս տաճարը մնաց ։ Իրենք կարծելով թէ ուրիշ ճամբորդներու հետ կուգայ՝ հոգ չըրին ։ Օրուան մը ճամբայ ընելէն ետև փնտռեցին, ու երբոր չգտան, նո-

## 108.

## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Երբոր Յուդայի ցեղին իշխանութիւնը վերջացաւ, Հրեայք չէի՞ն սպասեր Քրիստոսի գալուն.

Պ. Կը սպասէին, բայց կարծէին որ Թագաւորական փառքով պիտի գայ, ու Հերովդէսի բռնաւորութենէն ազատէ զիրենք, և բոլոր աշխարհքիս տիրէ. ինչպէս որ Հերովդէսին ալ մեկնեցին կարդացողները, մոռնալով այնչափ մարգարէութիւններն որ Քրիստոսի խոնարհութեամբ գալուստը կը գուշակէին:

Հ. Մոգերն ո՞վ էին ու ի՞նչպէս աստղով իմացան Քրիստոսի ծնունդն ու եկան.

Պ. Արաբացի կամ Սաբայ երկրէն երեք իմաստուն Թագաւորներն էին, որ աւանդութեամբ գիտէին թէ աստղ մը պիտի երևնայ՝ Հրէից մեծ Թագաւոր մը ծնանելու նշան. և երբոր տեսան այն մեծ աստղը որ երկրիս մօտիկ անշարժ կեցած է, մէկէն ճանչցան որ անիկայ բնական աստղ չէ. և Աստուծոյ մասնաւոր ազդմամբը եկան Երուսաղէմ: Երբոր Երուսաղէմէն նորէն ճամբայ ելան, հոն նորէն երևցաւ այն աստղը որ արևելք տեսեր էին, անոր համար խիստ շատ ուրախացան տեսնելով թէ յոյսերնին պարապը չելաւ: Եւ ինչպէս որ հաւանական կ'երևնայ, միայն իրենք կը տեսնէին զայն աստղը:

Հ. Հերովդէս ինչո՞ւ գաղտուկ պատուիրեց մոգերուն Քրիստոսի համար.

Պ. Որպէս զի չըլլայ թէ բոլոր Հրեաներն ալ իմանան Քրիստոսի ծնունդը:

Հ. Յիսուս երեսուն տարի ի՞նչ ըրաւ.

Պ. Աստուածածնայ և սրբոյն Յովսեփայ հնազանդելով կ'աշխատէր պէտք եղած գործքերուն մէջ՝ ու հիւսնութիւն կ'ընէր։

Հ. Յիսուս ի՞նչպէս շատերուն կորսուելու պատճառ պիտի ըլլար.

Պ. Մեր վրայ ունեցած անհուն սիրովը չափէ դուրս խոնարհութիւն ընելուն համար, շատերը պիտի արհամարհէին Աստուծոյ անբաւ իմաստութիւնն, ու շարունակով պիտի չհաւատային իրեն մարդեղութեանը, ինչպէս որ եղաւ։





# ՅԻՍՈՒՍԻ ՄԿՐՏՈՒԹԵՆԷՆ

## ԻՆՉՈՒԱՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ ՄՏՆԵԼԸ



### 109 .

Յիսուսի խոնարհութեան օրինակը ։

Հ. Ի՞նչպէս սկսաւ Յիսուս իր խոնարհութիւնը.

Պ. Ինչպէս որ Յիսուսի ծննդեանը կարապետ եղաւ Յովհաննէս մկրտիչ իր հրաշալի ծննդեամբը, նմանապէս ալ Յիսուսի խոնարհութեանը առաջ Յովհաննէս մկրտիչն եկաւ անապատէն, սկսաւ քարոզել Յորդանան գետոյն քովը ու կ'ըսէր թէ "Ապաշխարեցէք, մօտեցաւ Աստուծոյ թագաւորութիւնը", ու զերջ եկողները կը մկրտէր՝ ապաշխարութեան նշան ըլլալու համար ։ Ժողովուրդը իր բարի վարքէն Ճանչցան թէ Աստուծմէ խրկուած է. ու կարծիք ալ երթալով թէ Մեսիան է, եկան՝ սկսան իրեն հարցընել. ինքն ալ կ'ըսէր թէ "Ես անոր Ճամբայ բացողն եմ, և արժանի չեմ անոր կօշիկները հանելու. անիկայ պիտի գայ իմ ետևէս ու զձեզ մկրտէ Հոգւով սրբով" ։ Ան օրերը Յիսուս ալ երեսուն տարուան Յորդանան գետը գնաց՝ մկրտուելու համար ։

Յովհաննէս յանձն չէր առներ. « Ես քեզմէ պէտք է որ մկրտուիմ » ըսելով։ Յիսուս պատասխան տուաւ. « Հիմա թող որ արդարութեան պարտքը կատարենք »։ Ասանկով մկրտուեցաւ Յիսուս, ու ջրէն դուրս ելլելուն պէս՝ երկինքը բացուեցաւ, Հոգին սուրբ աղաւնիի կերպարանքով Յիսուսի գլխուն վերայ իջաւ, երկինքէն ալ ահաւոր ձայն մը եկաւ, թէ « Դուն ես իմ սիրելի որդիս, քեզի հաճեր եմ »։

Հ. Յիսուս մկրտուելէն ետև ի՞նչ ըրաւ.

Պ. Գնաց անապատը, և քառասուն օր ծոմ պահելէն ետև անօթեցաւ. ան ատենը սատանան եկաւ զինքը փորձելու։ Նախ՝ « Թէ որ Աստուծոյ որդին ես, ըսաւ, հրամայէ որ աս քարերը հաց ըլլան »։ Յիսուս պատասխան տուաւ. « Գրուած է, միայն հացով մարդ չապրիր, հապա Աստուծոյ պատուիրանքներովը »։ Ետքը սատանան զՅիսուս տաճարին աշտարակին վրայ հանեց, ըսաւ. « Թէ որ Աստուծոյ որդի ես, ինքզինքդ վար ձգէ. գրած է թէ հրեշտակները ձեռքի վրայ բռնած են զքեզ »։ Յիսուս ալ ըսաւ, « Գրած է թէ զԱստուած մի փորձեր »։ Անկէ ետքը լեռան մը վրայ հանեց զՅիսուս, ու բոլոր աշխարհքիս փառքը ցուցնելով ըսաւ. « Ասոնք քեզի կուտամ, թէ որ ինծի երկրպագութիւն ընես » Ան ատենը Յիսուս ըսաւ անոր. « Կորսուէ՛ քովէս՝ սատանայ. միայն Աստուծոյ պէտք է երկրպագանել »։ Ետև հրեշտակներն եկան Յիսուսի կը ծառայէին։

Հ. Յիսուս սատանայէն փորձուելէն ետքը ի՞նչ ըրաւ.

Պ. Անապատէն դարձաւ որ քարոզէ, աշակերտներ ժողվէ. և Յովհաննէս մկրտիչը հեռուէն զինքը տեսնելով, իր աշկերտներուն ըսաւ. « Ահա աս է իմ ձեզի քարոզած գառն Աստուծոյ

Քրիստոսը ,,։ Աս որ լսեցին անոնցմէ երկուքը Յիսուսի ետևէն գնացին . որոնց մէկը Անդրէաս էր՝ Պետրոսի եղբայրը ։

Հ . Յիսուսի քարոզութեանը մէջ գլխաւոր խրատ տանելու գործքերն որո՞նք են .

Պ . Նախ գործած հրաշքները , երկրորդ խօսած առակները ; երրորդ ըրած վարդապետութիւնները , և չորրորդ երկայնամիտ համբերութիւնը ։

**110 .**

Հ . Յիսուսին առջի ըրած հրաշքն ո՞րն եղաւ .

Պ . Ան օրերը հանդիպելով Կանա Գալիլեացւոց հարսնիքը , և հոն Աստուածամայրը հրաւիրուած ըլլալով , Յիսուս ալ կանչուեցաւ իր աշակերտներովը ։ Երբոր գինին պակսեցաւ , Աստուածամայրն ըսաւ իրեն՝ Թէ " Գինի չունին ,, . Յիսուս պատասխան տուաւ ,, Ատենս չէ եկած ,, ։ Բայց Աստուածամայրը գիտնալով Թէ Յիսուս իր խօսքը զանց չառներ , ծառաներուն պատուիրեց որ Յիսուս ինչ որ ըսէ՝ ընեն ։ Աս հարսնիքին տունը վեց Թակոյկ կար . Յիսուս հրամայեց որ ջրով լեցընեն զանոնք ու ճաշարապետին տանին ։ Երբոր համը նայեցաւ ճաշարապետը , չգիտնալով Թէ ուսկից է , ըսաւ փեսային Թէ " Սովորութիւնը չէ՞ս գիտեր որ առաջ աղէկ գինին կը բաժնեն , և երբոր ալ խմած կ'ըլլան , գէշը կը բերեն . դուն աղէկը պահեցիր ու վերջը բերիր ,, ։

Հ . Յիսուս ջուրը գինի ընելէն ետքը ո՞ւր գնաց ։

Պ . Կափառնաում քաղաքն եկաւ . անկէ ալ քանի մը օրէն զատիկին Երուսաղէմ տաճարը գնաց , տեսաւ որ կով ոչխար՝ աղաւնի կը ծախէին մէջը , և լումայափոխներն աթոռ կ'ը-

նէին , խաչազան մը շինեց ու զամէնքը ծեծելով դուրս վռնտեց , ըսելով թէ " Իմ Հօրս տունն առուտուրի տուն մի ընէք ,, ։ Հրեաները նեղացան թէ ինչ իրաւունք ունի ատանկ բան ընելու ․ Յիսուս ալ իրենց ըսաւ ․ " Քանդեցէք աս տաճարը , ու ես երեք օրուան մէջ նորէն շինեմ ,, ։ Հրեաները ալ ըսին թէ " Քառասունվեց տարի քաշեց ասոր շինուածքը , դու ինչ կը խօսիս ,, ։ Չիմացան որ ինքն իր մարմնոյն համար կ'ըսէր ։ Աս զատկին շատ մարդիկ իրեն հաւատացին , տեսնելով իրեն ըրած հրաշքները ․ որոնց մէջն էր Նիկոդեմոսն ալ ։ Ետքը գնաց 'ի Յորդանան սկսաւ երթալ , ու իրեն աշկերտներուն հետ մկրտութիւն ընել ․ և աս բանիս նախանձեցան Յովհաննու աշկերտները ։ Բայց Յովհաննէս անոնց իմացուց թէ ան է Ճշմարիտ Մեսիան ․ անոր համար իրեն աշակերտներն ալ սկսան Յիսուսին ետևէն երթալ ․ և Հերովդեսն ալ Յովհաննէս մկրտիչը բանտը դրաւ՝ զինքը խրատելուն համար ։

Հ ․ Յիսուս երբոր լսեց Յովհաննէս մկրտիչին բռնուիլը , ինչ ըրաւ ․

Պ ․ Ինքն ալ ան կողմերը թողուց , նորէն Գալիլեա եկաւ ։ Ճամբան երբոր Սամարացւոց երկրէն կ'անցնէր , կէս օրուան գէմ հոգնած՝ հորու մը քով նստաւ որ քիչ մը հանգչի ։ Ան ատենը Սամարիա քաղքէն կին մը եկաւ ջուր տանելու ․ Յիսուս ալ անոր ձեռքէն խմելու ջուր ուզեց ․ անկէ խօսք բացուելով , կինը Յիսուսի հաւատաց , ու վազեց քաղաքը քարոզեց զինքը ։ Սամարացիք ալ եկան զՅիսուս քաղաքը տարին , հաւատացին իրեն ու աղաչեցին որ երկու օր ալ կենայ քովերնին ․ և ան ատենը տուած խրատներուն համար սկսան ըսել , թէ " Աս է աշխարհքիս Ճշմարիտ փրկիչը ,, ։

111.

Հ. Յիսուսի երկրորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Երբոր Սամարիայէն Նազարէթ իր քաղաքը գնաց, ու հոն Հրէից ժողովարանը մտաւ, առաւ որ կարդայ Եսայեայ մարգարէութիւնը. երբ ան խօսքը հանդիպեցաւ որ կ՚ըսէ "Հոգի Տեառն 'ի վերայ իմ", իր վրայ մեկնեց. ու Հրէից կատարութեանը վրայ խօսեցաւ: Անոր վրայ Հրեայք անանկ սրդողեցան, որ բռնեցին քաղքէն դուրս լեռան գլուխը հանեցին, և անկէ վար ձգել ու մեռցընել կ՚ուզէին. բայց Յիսուս մէջերնէն ելաւ գնաց Գալիլեա:

Հ. Յիսուսի երրորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Գալիլեայի մէջ իշխանի մը տղան հիւանդ ըլլալով, հայրը եկաւ՝ կ՚աղաչէր Յիսուսին որ Կափառնաում գայ, իր որդին՝ որ մեռնելու վրայ է՝ բժշկէ: Երբոր Յիսուս հանդարտ սկսաւ երթալ, անիկայ կ՚արտորցընէր որ տղան չմեռած հասնի: Յիսուս դարձաւ ըսաւ իրեն. "Գնա՛, որդիդ ողջ է". մարդն ալ հաւատաց ու ելաւ գնաց: Ճամբան ծառաները դիմացն ելան՝ աւետիս տալով թէ "Որդիդ աղէկցաւ": Ան ատենը հարցուց իմացաւ որ Յիսուսն՝ Ողջ է, ըսելուն պէս՝ բժշկուեր է. անոր համար տնով տեղով հաւատաց Յիսուսի: Ետքը Յիսուս ալ Կափառնաում գնաց, քարոզելով շատ հիւանդներ ու դիւահարներ բժշկեց:

Հ. Յիսուսի չորրորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Անգամ մը Գալիլեա Գեննեսարէթ ծովուն քով ժողովուրդը խիստ շատ ըլլալուն, հոն որ երկու պզտիկ ձկնորսի նաւեր կային, մէկը Սիմոն Պետրոսին, մէկալը Յակոբոսի և Յովհաննու՝ Զեբեդէոսին որդւոցը, Յիսուս Պետրոսին նաւը

մնաց ու անկէ քարոզ խօսեցաւ : Ետքը Սիմոնին ըսաւ որ քիչ մը բացը երթէ, ուռկանը ձգէ ձուկի համար. ան ալ ըսաւ թէ "Վարդապետ՝ սա գիշեր բոլոր աշխատեր ենք՝ բան չենք կրցած բռնենել. բայց հիմա քու խօսքիդ կը հնազանդինք" : Ետքը երբոր ձգեցին, ձուկին շատութենէն ուռկանը կը պատռուէր թէ որ մէկալ նաւը չօգնէր. ու երկու նաւն ալ ընկղմելու չափ ձուկով լեցուեցան : Պետրոս ու մէկալներնիս ասոր տեսնելով երբոր սկսան վախնալ, Յիսուս իրենց սիրտ տուաւ, "Ասկէ ետքը պիտի մարդիկ որսաք" ըսելով : Անոնք ալ ամէն բաներնին թողուցին ու Յիսուսին ետեւէն գնացին :

Հ. Յիսուսին հինգերորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Գալիլեայի ծովէն Գերգեսացւոց երկիրն անցնելու ատեն նաւուն մէջն սկսաւ քնանալ : Յանկարծ սաստիկ ալեկոծութիւն ելաւ. աշակերտները վախցած՝ արթընցուցին, "Ազատէ մեզ" ըսելով : Յիսուս ալ արթընցաւ "Թերահաւատներ՝ ըսաւ, ինչու այդչափ կը վախէք" : Ետքը ծովուն "Դադրէ" ըսաւ, մէկէն հանդարտեցաւ : Ամէնքն սկսան զարմանալ թէ "Աս ո՞վ է որ ծովուն կը հրամայէ" :

Հ. Յիսուսի վեցերորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Գերգեսացւոց երկիրը հասածին պէս՝ գերեզմանէն երկու կատղած մարդ դիւահարներ դիմացն ելան ու կը կանչուըռտէին. "Յիսուս որդի Աստուծոյ, ինչու զմեզ կը տանջես" : Վասն զի Յիսուս կը հրամայէր որ ելլեն սատանաներն ան մարդիկներէն : Անուննին որ հարցուց, "Լեգէոն է" ըսին. ետքը Յիսուսի աղաչեցին որ զիրենք գժոխք չղրկէ, հապա հրաման տայ որ ան կողմերը արծող խոզերուն փորը մտնեն : Հրամայելուն պէս գնացին. ու խոզերն որ երկու հազարի չափ կային՝ դիւահարեցան ու վազելով

ծովը թափեցան՝ խեղդուեցան ։ Դահապետները փախան գնացին քաղաքը պատմեցին ․ քաղաքացիք ալ եկան տեսան, ու վախնալով Յիսուսի աղաչեցին որ ելլէ երթայ ։ Դիւահարներուն մէկը կ՚ուզէր Յիսուսի հետ երթալ ․ բայց Յիսուս՝ “ Տունդ դարձիր, ըսաւ, ու պատմէ Աստուծոյ ողորմութիւնը ” ։

112 ․

Հ ․ Յիսուսի եօթներորդ հրաշքը ո՞րն է ․

Պ ․ Գերգեսացւոց դիւահարները բժշկելէն ետև Կափառնաում գնաց ․ և երբոր տան մը մէջ կը քարոզէր, անդամալոյծ մը բերին, տեսան որ այնչափ բազմութենէն չեն կրնար ներս խօթել, տանը ծածքը քակեցին ու անկէ անդամալոյծը Յիսուսի առջևն իջուցին ։ Յիսուս տեսնելով անոնց հաւատքը ․ “ Որդեակ, ըսաւ անդամալուծին, թողութիւն ըլլայ մեղքերուդ ” ։ Հոն գտնուած կարդացողներն սկսան դատել Յիսուսը “ Հայհոյութիւն ըրաւ ” ըսելով ։ Յիսուս ալ անոնց միտքն իմանալով, հարցուց իրենց ․ “ Ո՞ր դիւրին է, մեղքերուդ թողութիւն ըլլայ ըսելը, թէ ելիր մահճիճդ առ ու գնա ըսելը ” ։ Ետքը դարձաւ հիւանդին “ Ելի՛ր, ըսաւ, առ մահճիճդ ու տունդ գնա՛ ” ։ Անդամալոյծը մէկէն ելաւ, շալկեց մահճիճն ու տուն գնաց ։ Ասով իմացընել ուզեց որ անդամալոյծ բժշկողը թողութիւն ալ կրնայ տալ ։ Ամէնքն ալ զարմացան մնացին ։

Հ ․ Յիսուս ատենն որ կերակուրն ո՞ւր կ՚ուտէր ․

Պ ․ Ուր որ հանդիպէր ։ Անգամ մըն ալ մաքսատան առջևէն անցնելու ատեն, տեսաւ Մատթէոս մաքսաւորը, “ Եկո՛, ըսաւ, ետևէս ” ․ ան ալ մէկէն ելաւ գնաց ։ Ետքը Մատթէոս իր տունը Յիսուսին փառաւոր սեղան ըրաւ, ուր որ ուրիշ

Մաքսաւորներ ալ կանչուած էին։ Փարիսեցիներն ու կարգադրողները երբոր լսեցին, սկսան գայթակղիլ։ Յիսուս ալ պատասխան տուաւ թէ, « Բժիշկը հիւանդներուն համար է, եւ ալ մեղաւորներուն համար եկեր եմ »։

Հ. Յիսուսի ութերորդ և իններորդ հրաշքները որո՞նք են.

Պ. Յայրոս Հրէից իշխանն եկաւ, Յիսուսի ոտքն ինկաւ, ու իր մէկ հատիկ տասնուերկու տարուան աղջկանը համար կ՚աղաչէր որ շուտով գայ՝ ձեռքը վրան դնէ՝ ու բժշկէ, որ մեռնելու վրայ էր։ Յիսուս մէկէն ճամբայ ելաւ. երթալու ատենն՝ տեսաւ կին մը որ տասնուերկու տարի բոլոր ունեցածը բժիշկներու տալով օգուտ մը չէր տեսած, եկաւ գաղտուկ Յիսուսի լաթերուն դպաւ ու շուտ մը բժշկուեցաւ։ Յիսուս դարձաւ հարցուց թէ « Ո՞վ ինծի դպաւ »։ Աշակերտներն սկսան զարմանալով ըսել թէ « Բազմութիւնը քեզ կը նեղէ »։ Յիսուս նորէն շուրջ դին կը նայէր։ Կինը տեսաւ որ չծածկուեր, վախնալով Յիսուսի ոտքն ինկաւ ու պատմեց։ Յիսուս ալ իրեն սիրտ տուաւ ու ճամբեց։ Անդիէն Յայրոսի տունէն մարդիկ հասան ըսին թէ « Աղջիկդ մեռաւ, վարդապետը մի աշխատցըներ »։ Յիսուս Յայրոսին « Դուն մի վախնար, ըսաւ. միայն հաւատա »։ Երբոր տունը հասան, լացողներն ու գոռում գոչումը տեսնելով։ « Ի՞նչ շփոթեր էք, ըսաւ. աղջիկը մեռած չէ, քնած է »։ Անոնք աս խօսքիս վրայ սկսան խնդալ։ Յիսուս միայն իրեք աշակերտներն ու ծնողքը հետն առած՝ գնաց աղջկանը ձեռքը բռնեց, « Ել » ըսաւ. մէկէն ելաւ աղջիկը։ Յիսուս հրամայեց ծնողացն որ կերակուր տան որ ուտէ։

Հ. Յիսուսի տասներորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Զատկի տօնին Յիսուս Երուսաղէմ որ

գնաց, հօն Պրոպատիկէ կամ Բեթհեզդա աւազանին քովը շատ հիւանդներ կը սպասէին որ տարին անգամ մը երբոր հրեշտակ Աստուծոյ իջնայ ջուրը խառնէ, իրենք մէջը նետուին. և ով որ ամենէն առաջ կ'իջնար, ան միայն կը բժշկուէր։ Մէկը կար որ երեսունեութը տարուընէ վեր ան ջրին քով կը սպասէր. Յիսուս հարցուց իրեն թէ «Կ'ուզե՞ս ողջըննալ»։ Ան ալ ըսաւ. «Տէր, զիս աւազանը ձգող մը չունիմ»։ Պատասխան տուաւ Յիսուս. «Ելի՛ր, մահիճդ առ ու գնա՛»։ Ան ալ մահիճը շալկեց ու գնաց։ Հրեաները սկսան սըրդողել թէ ինչու շաբաթ օր մահիճը վերցուցեր կը տանի։ Պատասխան տուաւ թէ «իս բժշկողն ըսաւ ինծի»։ Անոնք հարցուցին թէ «Ո՞վ է անիկայ», բժշկուողը չէր գիտեր։ Ետքը տաճարին մէջը Յիսուս իրեն հանդիպեցաւ ու ըսաւ. «Մէյմըն ալ մեղք մի՛ ըներ որ ա՛լ գէշ հիւանդութիւն չգայ վրադ»։ Մարդը գնաց Հրեաներուն պատմեց թէ Յիսուս էր զինքը բժշկողը։ Անոր համար Հրեաները ալ սկսան Յիսուսը հալածել. Յիսուս փախչելու տեղը՝ իրենց սկսաւ իմացընել թէ ինքն Որդի Աստուծոյ է. անով աւելի կատղեցան Հրեաները ու զինքը մեռցընել կ'ուզէին։

Հ. Յիսուսի մեռասաններորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Շաբաթ օր մը արտերուն մէջէն կ'անցնէր. աշակերտները անօթեցած՝ ցորենի հասկեր փըրցընելով ափերնուն մէջը կը շփէին ու կ'ուտէին։ Երբոր Փարիսեցիքն իմանալով նեղացան, Յիսուս Դաւիթ մարգարէին Առաջաւորաց հացէն ուտելուն ու քահանաներուն շաբաթ չպահելուն օրինակներովը զիրենք պապանձեցուց։ Բայց մէկալ շաբաթը Յիսուս ժողովարանին մէջ քարոզելու ատեն՝ Փարիսեցիք չար մտքով հարցուցին իրեն թէ «Շաբաթ օր բժշկութիւն ընել կ'ըլլա՞յ»։

Հոն աջ ձեռքը չորցած մարդ մը կար. Յիսուս տաճարը կանչեց զինքն ու փարիսեցւոց հարցուց թէ "Շաբաթ օրը բարիք ընելն աղէկ է՝ թէ չարիք. թէ որ ոչխար մը շաբաթ օր փոսն իյնայ, չէք հաներ. ուրեմն շաբաթ օրը մարդ բժշկել ալ կ'ըլլայ": Եւ ետքը ան մարդուն "Ձեռքդ երկընցուր" ըսաւ. ան ալ երկընցուց ու բժշկուեցաւ։

Հ. Յիսուսի երկոտասաներորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Անգամ մըն ալ Յիսուս շաբաթ օր ժողովարանին մէջ կին մը բժշկեց՝ ձեռքը վրան դնելով, որ տասնըութը տարի սատանայէն բռնուած՝ մէջքը ծռած մնացեր էր։ Ան ատենը ժողովարանին գլխաւորը սրդողեցաւ ժողովրդեան, ըսելով. "Շաբաթը վեց օր բանի օր է. ան օրերն եկէք բժշկուեցէք, չէ թէ շաբաթ օր": Յիսուս պատասխան տուաւ թէ "Շաբաթ օր անասունը կ'արձըկէք. հապա Աբրահամու աղջիկն որ տասնըութը տարի սատանայէն կապուած էր, պէտք չէ՞ր արձակել շաբաթ օրը":

Հ. Ով որ ուզեր կրնա՞ր Յիսուսի աշակերտ ըլլալ.

Պ. Թէպէտ ամէն ուզող կրնար Յիսուսի ետեւէն երթալ, բայց ինքն անոնցմէ ընտրեց տասներկու հոգի ու Առաքեալ անուանեց. որոնց անունը՝ Սիմոն, որ Յիսուս՝ Պետրոս անուանեց. Յակոբոս և Յովհաննէս՝ Զեբեդեայ որդիքը, որ Բանէրեգէս անուանեց՝ այսինքն Որդիք որոտման. Անդրէաս՝ Պետրոսին եղբայրը. Փիլիպպոս, Բարթուղիմէոս, Մատթէոս մաքսաւորը. Թովմաս, Յակոբոս Ալփէոսի որդին. Թադէոս, որ Յուդա ալ կ'ըսուէր. Սիմոն կանանացի կամ Նախանձայոյզ. Յուդա Իսկարիովտացի։ Ասոնցմէ զատ եօթանասուն ալ աշակերտ ընտրեց։ Եւ Յիսուս իրենց խրատ տուաւ, և ինք երանութիւնը իրենց ըսաւ։

113.

Հ. Յիսուսի երեքտասաներորդ հրաշքը ո՞րն է.

Պ. Երբոր առաքեալներն ընտրելէն ետքը լմընցուց ժողովրդեան առած խրատներն՝ ու լեռնէն վար իջաւ, բորոտ մը եկաւ, երկրպագութիւն ընելով կ'ըսէր. "Տէր, թէ որ կամիս, կարող ես զիս բժշկել,,: Յիսուս ալ՝ "Կ'ուզեմ,, ըսելուն պէս՝ բժշկուեցաւ: Ապսպրեց իրեն Յիսուս որ մարդու չըսած՝ երթայ օրէնքին սպասպրած կարգերը կատարէ:

Հ. Յիսուսի ԺԴ. հրաշքը ո՞րն է.

Պ. Յիսուս Կափառնաում գնաց. հոն հարիւրապետին սիրական ծառան մեռնելու վրայ էր. բայց ինքն այլազգի ըլլալով, չհամարձակեցաւ Յիսուսին գալու աղաչելու. անոր համար մարդ խրկեց: Յիսուս ելաւ որ տունը երթայ. հարիւրապետը նորէն խրկեց աղաչեց որ չաշխատի չգայ: Բայց երբոր մօտեցաւ, ան ատենը վազեց առջեւն ելաւ, "Արժանի չեմ որ իմ տունս մտնես, ըսաւ. հապա մէկ խօսքդ հերիք է բժշկելու,,: Յիսուս դարձաւ՝ ժողովրդեան ըսաւ. "Իրաւ կ'ըսեմ որ Իսրայէլացւոց մէջ ասանկ հաւատք չեմ տեսած,,: Ետքը հարիւրապետին "Գնա՛, հաւատացածիդ պէս ըլլայ,, ըսաւ: Ասանկով հիւանդը բժշկուեցաւ:

Հ. Յիսուսի ԺԵ հրաշքը ո՞րն է.

Պ. Յիսուս աշակերտներովը Նային երթալու ատեն՝ դրանը քով տեսնեն որ որբեւայրի կնկան մը մէկ հատիկ տղան մեռեր էր, կը տանէին. Յիսուսի գութը շարժեցաւ, գնաց դագաղին մօտ, ըսաւ մեռելին. "Որդեակ,,: Ըսաւ մը մեռելն ելաւ նստաւ ու խօսիլ սկսաւ:

Աս Յիսուսի ըրած հրաշքներուն ձայնը ամէն տեղ տարածուեցաւ։ Յովհաննէս Մկրտիչին ալ բանտին մէջը պատմեցին. ան ալ իր աշակերտներէն երկուքը խրկեց Յիսուսի հարցնելու թէ "Դուն գալու Մեսիա՞ն ես"։ Յիսուս անոնց առջին ամէն տեսակ բժշկութիւններ ընելով, պատասխանեց որ երթան Յովհաննէս Մկրտիչին պատմեն։ Ետքը Յիսուս ժողովրդեան առջև Յովհաննէս Մկրտիչը գովեց, ու վայ տուաւ Հրէից որ անոր քարոզութեանը չզղջացան։

Հ. Յիսուսի քարոզութեան ատեն առջի խօսած առակը որն է.

Գ. Օր մը Սիմոն Փարիսեցին՝ Յիսուսը հացի հրաւիրեց։ Մեղաւոր կին մը իմանալով որ Յիսուս հոն է, եկաւ ոտքն ինկաւ, կուլար ու արցունքով ոտուըները կը թրջէր, մազերովն ալ կը սրբէր, և ոտուըները համբուրելով, անուշ եղով կ'օծէր։ Սիմոնն սկսաւ կասկածի երթալ թէ Յիսուսը կնոջն ով ըլլալը չգիտեր, մարգարէ չէ։ Յիսուս անոր միտքն իմանալով, "Սիմոն՝ ըսաւ, մարդու մը երկու հոգի պարտք ունէին. մէկը հինգ հարիւր դահեկան, մէկալը յիսուն. պարտքին տէրը երկուքին ալ թողուց. հիմա աս երկուքէն որն աւելի կը սիրէ պարտքին տէրը"։ Սիմոնն ըսաւ. "Որն որ շատ պարտք ունէր"։ Յիսուս ալ իրեն պատասխանեց. "Ես քու տունդ եկայ, դուն ջրով ալ չլուացիր ոտքս. աս կինն արցունքովը թրջեց ու մազերովը սրբեց. դուն ինծի համբոյր մը չտուիր, ասիկայ ոտուըներս համբուրելէն չդադրիր. եղով գլուխս չօծեցիր, աս անուշ եղով օծեց։ Ասոր իս շատ սիրելուն համար թողութիւն տուի իր շատ մեղքերուն"։ Դարձաւ կնկանն ալ ըսաւ. "Հաւատքդ քեզ փրկեց. գնա ուրախացիր"։

Հ. Առաքեալներն ի՞նչ կարծիք ունէին Յիսուսի աստուածութեանը վրայ.

Պ. Գաղեստինի մէջ Կեսարիայի քովի քաղաքները պտըտելու ատենները Յիսուս հարցուց առաքելոց թէ “ Ժողովուրդը ո՞վ կը կարծեն զիս ,,. Պատասխան տուին թէ “ Ոմն Յովհաննէս Մկրտիչն է կ'ըսեն, ոմն Եղիան, ոմն Երեմիան, կամ ուրիշ մարգարէներէն մէկը։ — Դուք ի՞նչ կարծիքի վրայ էք ,, ըսաւ Յիսուս։ Ան ատենը մէկէն պատասխանեց Պետրոս. « Դու ես Քրիստոս Աստուծոյ որդին »։ Յիսուս ալ ան ատեն երանի՛ տալով Պետրոսի ըսաւ. « Իմ Եկեղեցիս քու վրադ պիտի շինեմ որ հիմանը քարն ես, ու դժոխքէն ալ չյաղթուիր. արքայութեան բանալիքն ալ քեզի կուտամ »։ Անկէ ետքն սկսաւ պատմել անոնց Յիսուս իր քաշելու չարչարանքները։

Հ. Յիսուս քարոզութեան ատեն իր աստուածութիւնն ալ յայտնի նշանով մը չերևցուց.

Պ. Քարոզութեան երրորդ տարին Պետրոս՝ Յակոբոս ու Յովհաննէս առաքեալները հետն առած՝ Թաբոր լեռն ելաւ։ Հոն Յիսուսի կերպարանքը բոլորովին փոխուեցաւ, երեսն արևու պէս ու հագուստը ձիւնի պէս ճերմակ փայլեցաւ։ Մովսէս ու Եղիան ալ երևցան ու Յիսուսի հետ խօսեցան իր չարչարանացն ու մահուանը վրայ. իսկ առաքեալները զարմացած կը նայէին։ Երբոր Մովսէս ու Եղիա գնացին, Պետրոս սկսաւ Յիսուսի աղաչել որ հոն մնան։ Ան ատենը լուսաւոր ամպ մը ծածկեց զիրենք, ու մէջէն աստանկ ձայն մը եկաւ թէ « Աս իմ սիրական որդիս է, իրեն մտիկ ըրէք »։ Առաքեալները վախցան, երեսի վրայ ինկան. Յիսուս զիրենք ոտք հանեց ու պատուիրեց որ չպատմեն ուրիշի՝ մինչև իր յարութիւնը։

Հ. Յիսուսի իէ՞ հրաշքը ո՞րն է.

Պ. Երբոր լեռնէն վար իջան, տեսան բազմութիւն աշակերտներուն քով ժողվուած. և անոնցմէ մէկը Յիսուսի առջևն ինկաւ, "Մէկ հատիկ տղաս, ըսաւ, դիւահարէր է, աշակերտներուդ բերի, չկրցան գէր հանել": Յիսուս սրդողելով առջևը բերել տուաւ. դիւահարին սկսաւ կատղել: Յիսուս ըսաւ. "Պիղծ սատանայ, ելի՛ր": Ան պահեն տղան սաստիկ տանջուելով ինկաւ, անանկ որ ամէնքը մեռաւ ըսին: Յիսուս ձեռքէն բռնեց վերցուց ու ողջ առողջ հօրը տուաւ: Եաքը աշակերտներն առանձին Յիսուսի հարցուցին թէ "Մենք ինչու չկրցանք բժշկել": Յիսուս ալ ըսաւ. "Հաւատք չունենալնուդ համար. թէ որ մանանեխի չափ հաւատք ունենաք ու լեռանը փոխուէ ըսէք, տեղէն կը փոխուի: Աս ալ գիտնաք որ աս տեսակ գէր միայն պաքով ու աղօթքով կ'ելլէ":

Հ. Յիսուս տէրութեան տուրք կուտա՞ր.

Պ. Ինչպէս ուրիշ բաները հասարակ մարդու մը պէս կ'ընէր, անանկ տուրք ալ կուտար: Եւ անգամ մը երբոր Պետրոսի հարցուցին թէ "Յիսուս աս տարուան տուրքը չի՞տար", Պետրոս "Կուտայ" ըսաւ. ու տուն որ մտաւ, Յիսուս Պետրոսի հարցուց թէ "Թագաւորներն իրենց զաւկըներէ՞ն կ'առնեն տուրքը թէ օտարներէն". Պետրոս ըսաւ. "Օտարներէն": Յիսուս պատասխանեց. "Ուրեմն ազատ են որդիքը. բայց զիրենք չգայթակղեցնելու համար, գնա՛ ծովէն ձուկ բռնելու. և առջի բռնած ձկանդ բերանը բա՛ց ու մէջէն ստատեր մը կը գտնաս, ա՛ռ և իմ ու քու տեղը տուր": Պետրոս ալ անանկ ըրաւ:

Հ. Յիսուսի աշակերտներուն տուած խրատներուն մէջ գլխաւորը ո՞րն է.

Պ. Խոնարհութիւնն է: Անգամ մը Ճամբան երթալու ատեն աշակերտներուն մէջ խօսք ելաւ

թէ Ցիտուս երբոր Թագաւորէ , իրենցմէ ալ մեծ պիտի ըլլայ : Ետքը Ցիտուս հարցուց թէ Ճամ-բան ի՞նչ կը խօսէին : Երբոր լսեց իրենցմէ , ըսաւ . " Մեծ ըլլալ ուզողը պզտիկ պիտի ըլլայ " : Պզտիկ տղայ մըն ալ առաւ գիրկն ու ըսաւ . " Թէ որ աս տղուն պէս խոնարհ ու անմեղ չըլլաք , արքայու-թիւն չէք երթար " : Ուրիշ անգամ մըն ալ Ցի-տուսի առջեւը մանր տղաք բերին որ օրհնէ . ու երբոր աշակերտները թող չէին տար որ Ցիտուսի նեղութիւն չըլլայ , Ցիտուս՝ " Թողէք որ գան , ըսաւ . արքայութիւնը ասանկ պզտիկներունն է " . ու զանոնք գիրկն առաւ , օրհնեց :

## 116 .

Հ . Ցիտուսի ըսած երրորդ առակն ի՞նչ է .

Պ . Անգամ մը եղբայրսիրութեան վրայ խրատ տալով ըսաւ . " Թէ որ եօթն անգամ եղբայրդ քեզի դէմ ընէ ու մեղայ ըսէ , իրեն թողութիւն տուր " : Պետրոս առոր վրայ տարակուսելով հար-ցուց թէ " Միայն եօ՞թն անգամ " : Ցիտուս ալ ըսաւ թէ " Եօթանասուն անգամ եօթը " . այս-ինքն միշտ : Ետքը առակով մըն ալ իմացուց . " Թագաւոր մը քննեց , ըսաւ , թէ ծառաներն իրեն ի՞նչ պարտք ունին . ու մէկուն պարտքը գտաւ տասը հազար քանքար : Ապսպրեց որ զինքը տանով տեղով ծախեն որ պարտքը վճարուի : Ծա-ռան Թագաւորին ոտքն ինկաւ , կ'աղաչէր որ իրեն ատեն տայ . Թագաւորին ալ գութը շար-ժեցաւ , ու բոլոր պարտքէն ազատ ըրաւ զինքը : Աս ծառան ուրիշէ մը միայն հարիւր դահեկան առնելիք ունէր . ելաւ գնաց , սկսաւ ուզել . ան ալ աղաչեց իրեն որ քիչ մը համբերէ : Անիկայ

"Չէ, Տէ՛ր, չըլլար", բռնեց բանտ դնել՝ տուաւ: Ուրիշ ծառաները խղճացին ան մարդուն վրայ, գնացին Թագաւորին ըսին: Ան ատեն Թագաւորը կանչեց զանիկայ, "Չա՛ր ծառայ, ըսաւ, քեզի աղաչելուդ համար տասը հազար քանքար պարտքդ Թողուցի. պէտք չէ՞ր որ դուն ալ հարիւր դահեկան առնելիքդ Թողուիր. ուստի զինքն ալ կապեցէք, ըսաւ, ինչուան որ բոլորը հատուցանէ":

Հ. Յիսուսի ըսած չորրորդ առակն ի՞նչ է:

Պ. Օր մը օրինաց վարդապետ մը հարցուց Յիսուսի թէ "Ի՞նչպէս կ'երթըցուի արքայութիւն": Յիսուս "Պատուիրանքները գիտե՞ս, ըսաւ, զանոնք պահէ": Ան ալ պատասխան տուաւ թէ "Պատուիրանքին մէջ՝ ընկերդ սիրէ կ'ըսէ. իմ ընկերս ո՞վ է: — Մտիկ ըրէ, ըսաւ Յիսուս. Մարդ մը Երուսաղեմէն Երիքով երթալու ատեն աւազակները զարկին. անոր ինկած տեղէն քահանայ մը անցաւ, ետքը Ղեւտացի մըն ալ անցաւ, ամենին օգնութիւն մը չըրին. ետեւէն Սամարացի մը հանդիպեցաւ, մեկէն վերուց, վէրքերը կապեց, իր ձիուն վրայ դրած՝ տարաւ պանդոկ մը յանձնեց. երկու դահեկան ալ տուաւ պանդոկապետին որ հոգայ զինքը. և ըսաւ թէ դարձած ատենս ինչ ստակ ալ որ երթայ՝ կը վճարեմ: Գնա՛ ըսաւ Յիսուս, դուն ալ ան Սամարացիին պէս ըրէ":

Հ. Յիսուսի ԻԴ հրաշքը ո՞րն է.

Պ. Երբոր Յիսուս Գալիլեայի ու Սամարիայի մէջ տեղէն կ'անցնէր, տասը բորոտ հեռուէն սկսան կանչել թէ "Յիսուս, ողորմէ՛ մեզի": Յիսուս պատասխանեց. "Գնացէք, ձեզ քահանաներուն ցըցուցէք". անոնք ալ բժշկուած գնացին: Ետքը անոնցմէ մէկն որ Սամարացի էր՝ եկաւ շնորհակալ եղաւ. Յիսուս զարմանալով հարցուց.

«Մէկալներնիք չըժշկուեցա՞ն որ չեկան փառք տա-լու Աստուծոյ»: ու դարձաւ Սամարացիին ըսաւ. «Գնա՛, քու հաւատքդ քեզ փրկեց»:

Հ. Յիսուսի աշակերտները միշտ իրե՞ն հետ կը պտըտէին.

Գ. Երբեմն առանձին ալ կը խրկէր քարոզու-թիւն ընելու. անգամ մըն ալ երկերկու խրկեց զատ, որ երթոր դարձան, սկսան ուրախութեամբ ըսել Յիսուսի թէ «Տէր, քու անունդ որ կու-տանք, սատանաներն ալ կը հնազանդին»: Յի-սուս ալ պատասխան տուաւ. «Դուք անոր վրայ ուրախացէք որ անուններդ երկինքը գրուած է»:

117.

Հ. Յիսուսին սովորական կերակուրն ի՞նչ էր.

Գ. Եղած տեղը ինչ որ գտնուէր՝ ան կ'ուտէր. թէ որ շատ բաներ պատրաստէին՝ չէր արգիլեր. և թէ որ իրեն հարցնէին, քիչը հերիք է կ'ըսէր: Ինչպէս անգամ մը Բեթանիա գեղը Մարթա ու Մարիամ Ղազարու քոյրերուն տունը գնաց: Մարթան կերակուրներ պատրաստել սկսաւ, ու Մարիամ Յիսուսի քովը եկաւ, խօսածը մտիկ կ'ընէր: Մարթան եկաւ Յիսուսի ըսաւ թէ «Մարիամն ինծի չօգներ որ մէկտեղ լմնցընենք ու ես ալ գամ մտիկ ընեմ»: Յիսուս «Մարթա, ըսաւ, գիտցի՛ր որ պարապ տեղը կ'աշխատիս, մեղի քիչ մը բան կ'օգտէ. Մարիամին խրատ մտիկ ընելն ալ աղէկ է»:

Հ. Յիսուսի ին՞ հրաշքը մի՞ն է.

Գ. Շաբաթ օր մը Երուսաղեմի Ճամբան կոյր մուրացկանի մը հանդիպեցաւ. աշակերտները հարցուցին թէ «Աս որ կուրութիւնը իր մեղքին

պատիժն է թէ ծնողացը „: Յիսուս ալ ըսաւ թէ "Մեկուն ալ չէ „: Երբոր Յիսուս գետինը թքաւ, անով կաւ շինեց, կուրին աչուըներուն քսեց ու հրամայեց որ Սելովամի աղբիւրին երթայ լուացուի: Անանկով կոյրը բժշկուեցաւ: Ճանչւորները տեսնելով, զարմացան, ու կը տարակուսէին թէ արդեօք ա՞ն է: Փարիսեցիք երբոր իմացան որ շաբաթ օրը բժշկեց, սկսան կուրին ըսել թէ "Ան մեղաւոր մարդ է „: Կոյրն ալ կ'ըսէր. "Թէ որ Աստուծմէ չըլլար անիկայ, չէր կրնար կոյր ծնած մարդ մը բժշկել „: Փարիսեցիք բարկացան վրան ու վռնտեցին: Երբոր Յիսուս անոր հանդիպեցաւ, զինքն անոր ճանչցուց, ան ալ Յիսուսի երկրպագութիւն ըրաւ:

Հ. Ինչո՞ւ Հրեայք Յիսուսի չէին հաւատար.

Պ. Նախանձոտ ու չարասիրտ ըլլալնուն համար: Անգամ մը տաճարին սրահին մէջ "Թէ որ Մեսիան ես, կ'ըսէին Յիսուսի, յայտնէ մեզի „. Յիսուս ալ պատասխան տուաւ, թէ "Ես յայտներ եմ, բայց դուք չէք ուզեր իմանալ, որովհետեւ իմ ոչխարներէս չէք. վասն զի ես ու իմ Հայրս մէկ ենք „: Հրեաները մէկէն զինքը քարկոծել ուզեցին. Յիսուս տեսնելով որ խօսք չեն հասկընար, մէջերնէն հեռացաւ:

Հ. Յիսուսին հինգերորդ ու վեցերորդ խօսած առակն ի՞նչ է.

Պ. Որովհետեւ Հրեայք խիստ կը նեղանային որ Յիսուս ցած մարդիկներուն հետ կը վարուէր, Յիսուս ալ անոնց ըսաւ. "Մարդ մը որ հարիւր ոչխարներէն մէկը կորսունցընէ, ան իննսունինը կը թողու, ու մէկ կորսուածին ետեւէն կ'երթայ. և թէ որ գտնայ, կ'ուրախանայ „: Ասոր ետեւէն անառակին պատմութիւնն ալ ըսաւ:

Հ. Անառակին պատմութիւնը ի՞նչպէս է.

Պ. Մարդ մը երկու որդի ունէր. օր մը պզտ-

տէր տղան. հօրմէն ուզեց՝ տալու իրեն ինկած ժառանգութիւնը, գնաց հեռու քաղաք մը, բոլոր մսխեց ու մէկու մը քով ծառայութեան մտաւ՝ խոզ կ'արածէր, ու անոնց կերած եղջիւրէն կ'ուզէր, ու չէին տար որ ուտէ։ Այսանկ խեղճութեան մէջ միտքն եկաւ իր հօրը տանը ծառաները որ հանգիստ կ'ապրին. ու ելաւ ըսաւ երթալ հօրն աղաչել որ ծառայի տեղ զինքը տուն առնէ։ Երբոր հայրը զինքը հեռուէն տեսաւ, վազեց վիզը պլլուեցաւ. տղան ամչնալով "Մեղայ, կ'ըսէր, զիս ծառայի տեղ ընդունէ"։ Հայրը՝ "Բերէք, ըսաւ, ասոր առջի աղուոր լաթերը հագուցէք". ու փառաւոր սեղան ըսաւ, գիրցուցած եզը մորթել տուաւ, որ կորսուած տղան գտնուեցաւ։ Ան միջոցին մեծ տղան տուն որ կուգար, հարցուց ծառային թէ ինչ ուրախութեան ձայն է. երբ իմացաւ, հօրը նեղացաւ, ըսելով. "Այսչափ տարին քեզի հնազանդեր եմ ու մէկ բան մը ինծի չես տուած, ու դէշ եղբօրս այնչափ պատիւ կ'ընես"։ Հայրն ալ ըսաւ. "Որդեակ, ամէն ունեցածներս քուկդ են. բայց ասիկայ կորսուած էր ու գտնուեցաւ. անոր համար պէտք է ուրախանալ"։

118.

Հ. Ցիսուսին եօթներորդ առակն ինչ է.

Պ. Հարուստ մարդ մը կար որ իր տնտեսը մսխողութիւն կ'ընէ, քովէն հանել ուզեց։ Տընտեսը մտմտալով որ ետքը ապրուստ պիտի չգտնէ, կանչեց իր տիրոջը պարտք ունեցողներուն ու պարտքերուն մէկ մասն աւրել տուաւ։ Տէրը երբոր լսեց անոր այսանկ խելք բանեցնելը, գովեց։

Ետքը Յիսուս " Դուք ալ, ըսաւ, անոր պէս մէ-կուն մեկալին թողութիւն տուէք, որ ձեզի օգնեն արքայութիւն երթալու համար ,, : Բայց ետքը ալ աւելի հաստատելու համար թէ ուրիշի թո-ղուլ և ողորմութիւն ընելը խիստ հարկաւոր է, մեծատան առակն ալ ըսաւ :

Հ. Յիսուսին ութերորդ առակն ինչ է.

Պ. Հարուստ մարդ մը հագուած կապուած՝ ամեն օր ուտել խմելու հետ էր. անոր դրանը քովը կը կենար աղքատ մը Ղազար անունով փըշ-րանքի կարօտ, շներն ալ անոր վէրքերը կը լզէին : Մեռան երկուքն ալ. մեծատունը դժոխքէն տե-սաւ Ղազարը Աբրահամու գիրկը, սկսաւ աղա-չել թէ խրկէ իրեն Ղազարն որ մատին ծայրովը իրեն ջուր տայ, որ քիչ մը պապակը իջեցնէ : Աբրահամ ալ " Զաւակ, ըսաւ, միտքդ բեր աշխարհքին մէջ ըրածներդ, և ասոր քաշած-ները ,, : Ան ատենը աղաչեց որ գոնէ իրեն եղբայր-ցը խրկէ իմացընէ դժոխքին տանջանքը : Աբրահամ ըսաւ. " Թէ որ անոնք լսած ու կարդացած խրատ-ները չեն պահեր, մարդ մըն ալ յարութիւն առնէ, երթայ իրենց ըսէ, մտիկ չեն ըներ ,, :

Հ. Յիսուսին իններորդ առակն ինչ բանի վրայ է.

Պ. Աղօթքին հարկաւորութեանը վրայ : Դա-տաւոր մը կար որ Աստուծմէ չէր վախեր, մէկէ մ՚ ալ չէր ամաչեր. որբեւայրի կին մըն ալ կուգար ամեն օր կ՚աղաչէր որ իրեն դատաստանը կտրէ : Օր մը ինքնիրեն ըսաւ դատաւորը. " Ես թէպէտ ոչ վախ ունիմ և ոչ ամօթ, բայց աս որբեւայրին դատաստանը տեսնեմ ու ազատիմ ձեռքէն ,, : — Թէ որ, ըսաւ Յիսուս, անիրաւ դատաւորը շատ ա-ղաչելուն չկրցաւ դէմ դնել, հապա Աստուած ինչպէս չողորմի աղաչողին ,, :

Հ. Յիսուսի տասներորդ առակն ինչ է.

Գ. Անգամ մը փարիսեցին ու մաքսաւորը տաճար գնացին. փարիսեցին սկսաւ աղօթել թէ “Փառք Աստուծոյ որ դէշ մարդ չեմ, կամ աս մաքսաւորին պէս չարագործ չեմ, այլ ամէն օրէնքները կը պահեմ,,: Իսկ մաքսաւորն աչքն ալ չէր ուզեր վեր վերցընել, ու կուրծքը զարնելով “Մեղայ,, կ'ըսէր: Ետքը ըսաւ Յիսուս. “Ալ աւելի հաճոյ եղաւ Աստուծոյ մաքսաւորը, այսինքն մեղաւոր մը իր խոնարհութեամբը, քան թէ փարիսեցին, այսինքն հպարտ արդարը,,:

Հ. Յիսուս հարո՞ւստ մարդն աւելի կը սիրէ՞ր թէ աղքատը.

Գ. Ինքը ա՛ն մարդը կը սիրէր որ սրտով աղքատ է. բայց հարուստ մարդու մը դիպուածով իմացուց, թէ շատ դժուար է որ մէկը հարուստ ըլլայ ու սիրտը ստակի կապած չըլլայ: Անգամ մը հարուստ երիտասարդ մը հարցուց Յիսուսի թէ “Արքայութիւն երթալու համար ի՞նչ պէտք է ընել,,: Յիսուս ըսաւ. “Պատուիրանքները պահէ,,: Հարուստն ալ “Պզտիկուց 'ի վեր պահեր եմ,, ըսաւ: Յիսուս պատասխանեց. “Ուրեմն թէ որ կ'ուզես կատարեալ ըլլալ, բոլոր հարստութիւնդ թող ու ետեւէս եկո,,: Հարուստը աս լսածին պէս՝ գլուխը կախեց գնաց: Դարձաւ Յիսուս կսկծալով ըսաւ. “Շատ դիւրին է որ մէկ հաստ չուան մը ասեղի ծակէն անցնի, քան թէ հարուստ մարդ մը արքայութիւն երթայ,,: Աշակերտները զարմացան, սկսան հարցընել թէ “Ուրեմն ո՞վ կրնայ փրկուիլ: Յիսուս ալ ըսաւ. “Եւ ոչ մէկը. բայց ուզողին Աստուած ոյժ կուտայ,,: Ան ատենը Պետրոս ըսաւ. “Մենք ամէն բաներնիս թողուցինք, քու ետեւէդ եկանք. մեզի ի՞նչ պիտի ըլլայ,,: Յիսուս ալ պատասխանեց “. Դուք դատաստանին օրը ինծի հետ տասնըերկու աթոռ պիտի նստիք,,:

ըլլայիր, եղբայրս չէր մեռներ. բայց հիմայ ալ կը հաւատամ որ եթէ ուզես, կրնայ ողջընել»: Յիսուսի պատասխանեց. «Կ՚ողջընայ թէ որ հաւատաս»: Գնաց Մարթա կանչեց զՄարիամ քոյրը. հետը եկան սգաւոր բարեկամներ ալ լալով: Յիսուս ալ սիրտն ելաւ, լացաւ. հարցուց թէ «Ո՞ւր թաղեցիք». տարին ցըցուցին: Յիսուս փոսին քարը վերցընել տուաւ ու ամուր ձայնով կանչեց. «Ղազարոս, դո՛ւրս եկո»: Մեկէն մեռելը պատանքովն ելաւ կեցաւ. եւ Յիսուս հրամայեց որ պատանքը քակեն: Ասով շատ մարդ Յիսուսի հաւատացին. ոմանք ալ գնացին փարիսեցիներուն իմացուցին. անոնց ալ քահանայապետներուն հետ խորհուրդ ըրին որ Յիսուսը մեռցընեն, չըլլայ թէ ատանկով ժողովուրդը ապստամբեցընէ ու Հռոմայեցիք գան զմեզ ջարդեն ըսելով: Յիսուս ալ իմանալով, նորէն երեսը ծածկեց, Եփրայիմ գեղը գնաց:

## 120.

Հ. Երբոր Յիսուսի չարչարանաց օրերը մօտեցաւ, առաջուց իմացո՞ւց աշակերտներուն.

Պ. Մօտիկ ան ատենին որ ինքը պիտի չարչարուէր, Եփրայիմէն ելաւ Երուսաղէմ գալու համար, ու ճամբան սկսաւ ըսել թէ «Մարգարէներուն ըսածն աս ատենին իմ վրաս պիտի կատարուի»: Ան ատենը Յակոբոս ու Յովհաննէս Զեբեդեայ որդիքն՝ իրենց մայրը բերելով խնդրեցին որ Յիսուս երբոր թագաւոր նստի, զիրենք քովը առնէ: Յիսուս ալ իրենց իմացուց թէ խոնարհութեամբ միայն կ՚ըլլայ աս բանը: Երբոր Յիսուս Երիքովին մօտեցաւ, ճամբուն վրայ մուրացկան

կոյր մը բժշկեց ։ Եւ բազմութիւնը չորս դին լցուած ըլլալով , Զաքէոս մաքսապետն ալ որ կը փափաքէր զՅիսուս տեսնելու՝ կարճ հասակով ըլլալուն չէր կրնար , ելաւ ծառի մը վրայ ․ Յիսուս ալ զինքը կանչեց ու ըսաւ ․ " Քու տունդ այսօր պիտի ուտեմ կերակուր ,, ։ Ան ալ ուրախացաւ ու խոստացաւ ունեցածին կէսն աղքատաց տալ , ու անիրաւութիւններուն տեղ չորեքպատիկ հատուցանել ․ Յիսուս ալ ըսաւ թէ " Այսօր փրկութիւն եղաւ աս տանս ,, ։

Հ ․ Յիսուսի տասնուերկուերորդ առակն ինչ է ․

Պ ․ Աստուծոյ արդարութիւնը յայտնելու համար պատմեց թէ թագաւոր մը երբոր հեռու տեղ պիտի երթար , կանչեց իր ծառաներն ու մէյմէկ քիչ ստակ տուաւ որ ինչուան որ դառնայ՝ շահեցնեն ։ Երթալէն ետև խրկեցին քաղաքացիք ըսելու իրեն թէ " Չենք ուզեր զքեզ մեզի թագաւոր ,, ։ Ետքը երբոր դարձաւ , կանչեց ծառաները հարցուց թէ ինչ վաստըկեցաք ։ Տասը քսակ առնողը՝ տասն ալ վաստակ բերաւ , և հինգ առնողն ալ հինգ բերաւ ․ Թագաւորը երկուքն ալ պատուեց գովելով ։ Երբոր մէկալին ալ հարցուց , բերաւ ետ տուաւ առած քսակը՝ ըսելով թէ " Չկորսնցնելու համար պահեցի , գիտնալով թէ խիստ բարկացող ես ,, ․ ան ատենը տէրը բարկացաւ ու ըսաւ ․ " Թէ որ առանկ է , ինչո՞ւ շահու չդրիր որ հիմա ամօթով չմնայիր ,, ։ Առանկ ըսելով՝ պատժեց ան ծոյլ մարդն ու ան ստակն ալ մէկալինին տուաւ ։ Եւ իրեն դէմ խօսողներն ալ սպաննել տուաւ ։

Հ ․ Ի՞նչ կերպով սկսաւ լցուիլ Յիսուսի վրայ եղած մարգարէութիւնները ․

12 Պ ․ Երբոր Երիքովէն նորէն Բեթանիա գնաց Սիմոն բորոտին տունը սեղանի նստաւ , Ղազար

ըլլայիր, եղբայրս չէր մեռներ. բայց հիմայ ալ կը հաւատամ որ եթէ ուզես, կրնայ ողջընել»: Յիսուս պատասխանեց. «Կ'ողջընայ թէ որ հաւատաս»: Գնաց Մարթա կանչեց զՄարիամ քոյրը. հետը եկան սգաւոր բարեկամներ ալ լալով: Յիսուս ալ սիրտն եղաւ, լացաւ. հարցուց թէ «Ո՞ւր թաղեցիք»: տարին ցուցուցին: Յիսուս փայի քարը վերցնել տուաւ ու ամուր ձայնով կանչեց. «Ղազարոս, դո՛ւրս եկո»: Մէկէն մեռելը պատանքովն եղաւ կեցաւ. և Յիսուս հրամայեց որ պատանքը քակեն: Ասով շատ մարդ Յիսուսի հաւատացին. ոմանք ալ գնացին փարիսեցիներուն իմացուցին. անոնց ալ քահանայապետներուն հետ խորհուրդ ըրին որ Յիսուսը մեռցնեն, չըլլայ թէ ատանկով ժողովուրդը ապստամբեցնէ ու Հռոմայեցիք գան զմեզ ջարդեն ընելով: Յիսուս ալ իմանալով, նորէն երեսը ծածկեց, Եփրայիմ գեղը գնաց:

## 120.

Հ. Երբոր Յիսուսի չարչարանաց օրերը մօտեցաւ, առաջուց իմացո՛ւց աշակերտներուն.

Գ. Մօտիկ ան զատկին որ ինքը պիտի չարչարուէր, Եփրայիմէն եկաւ Երուսաղէմ գալու համար, ու ճամբան սկսաւ ըսել թէ «Մարդարեներուն ըսածն աս զատկին իմ վրաս պիտի կատարուի»: Ան ատենը Յակոբոս ու Յովհաննէս Զեբեդեայ որդիքը՝ իրենց մօրը բերնով խնդրեցին որ Յիսուս երբոր թագաւոր նստի, զիրենք քովը առնէ: Յիսուս ալ իրենց իմացուց թէ խոնարհութեամբ միայն կ'ըլլայ աս բանը: Երբոր Յիսուս Երիքովին մօտեցաւ, ճամբուն վրայ մուրացկան

կոյր մը բժշկեց ։ Եւ թագաւորութիւնը չորս դին լսուած ըլլալով, Զաքէոս մաքսաւորապետն ալ որ կը փափաքէր զՅիսուս տեսնելու՝ կարճ հասակով ըլլալուն չէր կրնար, ելաւ ծառի մը վրայ ․ Յիսուս ալ զինքը կանչեց ու ըսաւ ․ “ Քու տունդ այսօր պիտի ուտեմ կերակուր ”։ Ան ալ ուրախացաւ ու խոստացաւ ունեցածին կէսն աղքատի տալ, ու անիրաւութիւններուն տեղ չորեքպատիկ հատուցանել ․ Յիսուս ալ ըսաւ թէ “ Այսօր փրկութիւն եղաւ աս տանս ” ։

Հ ․ Յիսուսի տասնուերկուերորդ առակն ի՞նչ է ․

Պ ․ Աստուծոյ արդարութիւնը յայտնելու համար պատմեց թէ թագաւոր մը երբոր հեռու տեղ պիտի երթար, կանչեց իր ծառաներն ու մէյմէկ քիչ ստակ տուաւ որ ինչուան որ դառնայ՝ շահացընեն ։ Երթալէն ետև խրկեցին քաղաքացիք ըսելու իրեն թէ “ Չենք ուզեր զքեզ մեզի թագաւոր ” ։ Ետքը երբոր դարձաւ, կանչեց ծառաները հարցուց թէ ի՞նչ վաստըկեցաք ։ Տասը քսակ առնողը՝ տասն ալ վաստակ բերաւ, և հինգ առնողն ալ՝ հինգ բերաւ ․ Թագաւորը երկուքն ալ պատուեց գովելով ։ Երբոր մէկալին ալ հարցուց, բերաւ ետ տուաւ առած քսակը՝ ըսելով թէ “ Չկորսնցնելու համար պահեցի, գիտնալով թէ խիստ բարկացող ես ” ․ ան ատենը տէրը բարկացաւ ու ըսաւ ․ “ Թէ որ ատանկ է, ինչո՞ւ շահու չդրիր որ հիմա ամօթով չմնայիր ” ։ Ասանկ ըսելով՝ պատժեց ան ծոյլ մարդն ու ան ստակն ալ մէկալինոնց տուաւ ։ Եւ իրեն դէմ խօսողներն ալ սպաննել տուաւ ։

Հ ․ Ի՞նչ կերպով սկսաւ լցուիլ Յիսուսի վրայ եղած մարգարէութիւնները ․

Պ ․ Երբոր Երիքովէն նորէն Բեթանիա գնաց Սիմոն բորոտին տունը սեղանի նստաւ, Ղազար



# ՅԻՍՈՒՍԻ

# ԵՐՈՒՍԱՂԷՄ ՄՏՆԵԼԷՆ

## ԻՆՉՈՒՍԱՆ ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏ



### 121.

Ծաղկազարդ :

Հ. Յիսուս ինչ հանդէսով Երուսաղէմ մտաւ.

Գ. Երբոր Բեթանիայէն ելաւ ու Ձիթենեաց լեռը մօտեցաւ, աշակերտներէն երկուքը խրկեց դիմացի գեղը որ հոն կապուած էշ մը կայ՝ իր քուռակովը բերեն. և թէ որ հարցնող ըլլայ, "Տէր պիտոյ է" ըսեն: Աշակերտները գնացին բերին, ու լաթերնին անոնց վրայ ձգած՝ Յիսուսը հեծուցին ու սկսան Երուսաղէմ մտնել: Ժողովուրդն արմաւենիի ու ձիթենիի ճիւղեր առած առջևն ելան ու հագուստնին գետինը փռելով ամէնքը միաբերան մեծ ու պզտիկ սկսան աղաղակել. "Օրհնութիւն որդւոյ Դաւթի, օրհնեալ յանուն Տեառն. օրհնութիւն 'ի բարձունս": Փարիսեցիներն ու կարգացողները սաստիկ նախանձելով՝ սկսան Յիսուսի ըսել թէ "Արգիլէ որ չխանչեն": Յիսուս պատասխանեց. "Թէ որ ասոնք լռեն, քարերը կ'աղաղակեն": Ետքը Երուսաղէմին մօտենալով՝ Յիսուս լացաւ քաղաքին

վրայ. «Վա՜յ քեզի՝ ըսելով, որ չճանչցար քեզի եղած բարիքը. անոր համար պիտի կորսուիս»։

Հ. Երբոր Յիսուս հանդիսով Երուսաղէմ մտաւ, ի՞նչ ըրաւ.

Պ. Մտաւ տաճարն ու տեսաւ որ հոն առուտուր կ'ընէին, զամէնքը դուրս վռնտեց, ըսելով թէ «Իմ հօրս տունը աւազակի այր մի ընէք»։ Ետքը շատ կոյրեր ու կաղեր բժշկեց, ու իրիկուան դէմ Բեթանիա գնաց։

Հ. Յիսուսի քսանըմէկերորդ հրաշքը որն է.

Պ. Ծաղկազարդին երկրորդ առաւօտն Երուսաղէմ դառնալու ատեն անօթեցաւ. Թզենիի մը քով գնաց ու պտուղ չգտնելով, ըսաւ անոր թէ «Քեզմէ մէյմ' ալ մարդ պտուղ չուտէ»։ Երկրորդ օրն որ նորէն անկէ կ'անցնէին, տեսան որ բոլորովին չորցեր է։ Աշակերտները Յիսուսի ցըցուցին. ան ալ ըսաւ որ «Հաւատքով և աղօթքով ամէն բան կրնաք ընել»։

Հ. Յիսուսի տասնուերեքերորդ ու տասնըչորրորդ առակն ի՞նչ է.

Պ. Փարիսեցիներն որ կը պարծէին թէ իրենք են Աստուծոյ հնազանդ որդիքը, զիրենք յանդիմանելու համար ըսաւ. «Մարդ մը երկու տղաք ունէր, մեկուն ըսաւ, թէ «Գնա այսօր այգին բանէ»։ Տղան՝ «Կ'երթամ» ըսաւ ու չգնաց. հայրն ալ մեկալին ապսպրեց, անիկայ «Չեմ երթար» ըսաւ, բայց զղջաց ու գնաց։ Ասանկ ահա մեղաւորները հնազանդելով՝ ձեզ պիտի անցնին»։ Ետքը «Ան առակս ալ լսեցէք, ըսաւ. Մարդ մը այգի տնկեց ու մշակներուն ձեռքը յանձնեց՝ գնաց։ Ատեններն ծառաներ ղրկեց որ պտուղը ժողվեն. մշակները զանոնք բռնեցին սպաննեցին։ Տէրը նորէն ուրիշները ղրկեց. մշակները զանոնք ալ մեռուցին. ասանկ քանի մը անգամ։ Ետքը տէրը իր տղան ղրկեց, գուցէ ասոր ամչնան ըսելով.

անոնք զան ալ սպաննեցին որ այգին իրենց ժա-ռանգեն ,, ։ Ետևէն ըսաւ Յիսուս . “ Ան մշակ-ներուն տէրն ինչ պիտի ընէ ,, ։ Մտիկ ընողները պատասխան տուին թէ “ Պէտք է սպաննէ ,, ։ Իսկ չարերն իմանալով թէ իրենց համար է ըսա-ծը , “ Չըլլայ ըսին , ատանկ բան ,, ։

Հ . Յիսուսի տասնըհինգերորդ առակն ինչ է .

Պ . Ասելի հաստատելու համար թէ Հրեայք զինքն արհամարհելով իրենց դէմ կ՚ընեն , ըսաւ . “ Աստուած Թագաւորի մը կը նմանի որ հարսնիք ըրաւ , ու ծառաները խրկեց՝ կանչեց բարեկամ-ները . անոնք մէյմէկ պատճառաւ չեկան . ոմանք ծառաներն ալ սպաննեցին ։ Թագաւորը լսելով , սաստիկ բարկացաւ , զինուորներ խրկեց , զանոնք սպաննել տուաւ . և անոնց տեղը փողոցներէն մուրացիկ բերել տուաւ ։ Ետքը Թագաւորը քովեր-նին եկաւ , տեսաւ որ մէկն աղտոտ լաթերով նստեր է . հարցուց թէ “ Ի՞նչպէս հարսնիքի լաթ չհագած եկեր ես ,, . ան ալ պապանձեցաւ ։ Անոր համար Թագաւորը հրաման տուաւ որ ոտքը ձեռքը կապած՝ դուրս ձգեն զինքը ,, ։

## 122 .

Հ . Յիսուսի վարդապետութեանը գլխաւոր դէմ դնողները որոնք էին .

Պ . Փարիսեցիներն ու Սադուկեցիները ։ Անգամ մը Փարիսեցիք խօսք դրին որ զՅիսուս տէրու-թեան դէմ յանցաւոր ցուցընեն ու բռնել տան . անոր համար եկան գովելով հարցուցին իրեն թէ “ Պէ՞տք է որ Հրեայք Հռոմայեցւոց կայսեր հարկ տան ,, ։ Յիսուս իմանալով անոնց միտքին չարու-թիւնը , “ Բերէ՛ք , ըսաւ , դահեկան մը որ տես-

նոնք աւելորդ տառապանքին ձգեցին . բայց անիկայ իր բոլոր ունեցածը տուաւ ,, ։

Հ . Յիսուսի տասնըմէկերորդ առակն ինչ է ։

Պ . Որովհետեւ առաջ առակ մը ըսաւ թէ՝ երբեմն ուշ դարձած մեղաւորներ պիտի ուրիշնե_րէն վեր անցնին , եաքը տասը կուսանաց առա_կովն ալ իմացուց որ ապաշխարութիւնը անհոգու_թեամբ եաք ձգողը չփրկուիր ։ “ Տասն կուսանք կա_յին , ըսաւ , հինգը յիմար , հինգն ալ իմաստուն . տանք լապտերնին վառած՝ փեսային դիմացը ելան ։ փեսան երբոր ուշացաւ , իրենք ալ քնա_ցան . կէս գիշերուան ձայն ելաւ թէ “ փեսան կու_գայ ,, . ելան լապտերնին պատրաստեցին ։ Յի_մարները ուրիշ պատրաստ եղ չունենալով , իմաս_տուններէն ուզեցին . անոնք ալ չտուին վախնա_լով որ չըլլայ թէ իրենց ալ չբաւէ . “ Գնացէք ձեզի գնեցէք ,, ըսին ։ Երբոր անոնք գնացին , փեսան եկաւ , իմաստունները ներս մտան ։ Եաքը եկան յիմարներն սկսան աղաչել որ դուռը բա_նայ . բայց ձայն չեղաւ , դուռը մնացին , առա_ջուց եղ չպատրաստելնուն համար ,, ։ Աս առա_կէն ետեւ Յիսուս յայտնեց աշկերտներուն որ երկու օրէն պիտի խաչուի ։

## 123 .

Հ . Երբոր Յիսուսի չարչարանաց օրերը մօտե_ցան , փարիսեցիք ինչ կերպով բանեցուցին զինքը բռնելու համար .

Պ . Զատկէն երկու օր առաջ ամէնքը ժողվե_ցան Կայիափա քահանայապետին քովը , ու խօսք դրին որ Յիսուսը կերպով մը սպաննեն . բայց տօնի օրերը չէին ուզեր ընել որ չըլլայ թէ խռո_

վութիւն մը ելլէ ։ Այն ատենէն ալ Յուդա Իսկա-րիովտացին փորը սատանայ մտաւ որ գնաց ա-նոնց ըսաւ. “ Յիսուսը ես կը մատնեմ, ինծի ինչ կուտաք ,, ։ Անոնք ուրախացան ։

Հ. Յուդա երբ մատնեց զՅիսուս.

Պ. Բաղարջակերաց տօնին գիշերը ։ Յիսուսին մարմնոյ և արեան պատարագին խորհուրդը տը-ւաւ, Ճաշակեց ուրիշ մարմինն ու գնաց մատնեց զՅիսուս ։

Հ. Յիսուս զատկական գառն ո՞ւր կերաւ.

Պ. Երուսաղէմին մէջ՝ որ տանն որ ինքը հաւնե-ցաւ. տանը խրկեց Պետրոսն և Յովհաննէսն ու ըսաւ. “ Քաղաքը մտնելնուդ պէս, մարդու մը կը հանդիպիք՝ սափոր կռնակը, գնացէք ետևէն ու անոր մտած տանը տիրոջը ըսէք. Վարդապետին տանդը հարցեր է, կ'ուզէ որ զատիկը քու տունդ ընէ ։ Ան ալ ձեզ զարդարած վերնատուն մը կը հանէ, հոն սեղանը պատրաստեցէք ,, ։ Իրիկուան գէմ ինքն ալ հոն գնաց, ու երբոր նստան ուտե-լու, Յիսուս “ Խիստ կը բաղձայի, ըսաւ, աս ժամին հասնելու ,, ։ Մէկ քանի սիրոյ խօսքեր ըսելէն ետև, “ Ձեզմէ մէկը զիս պիտի մատնէ ,, ըսաւ ։ Աս խօսքիս վրայ ամէն մէկը խռովուած՝ սկսան հարցընել թէ “ Արդեօք ե՞ս եմ ,, . Յիսուս ըսաւ. “ Ան է որ իր ձեռքը ինծի հետ սկուտ-ղակին երկնցընէ ,, ։ Ան ատենը Յուդան ալ հար-ցուց թէ “ Ե՞ս եմ ,, . Յիսուս ըսաւ “ Դո՛ւն ըսիր ,, ։ Կերակուրը լմըննալու ատեն Յիսուս հաց մը ա-ռաւ օրհնեց, ու աշակերտացը բաժնելով Առէք կերէք ըսաւ ։ Ետևէն գինիով գաւաթն առաւ օրհ-նեց ու տուաւ աշակերտներուն՝ Արբէք ՚ի սմանէ ը-սելով ։ Ասով պատարագը հաստատեց ու ապս-պրեց որ անով զինքը միշտ յիշեն ։

Հ. Զարչարանաց ընթրիքէն ետև Յիսուս ինչ ըրաւ.

Գ. Աշակերտներուն ոտուըները լուաց. բայց Պետրոս չէր ուզեր թողուլ. Յիսուս ըսաւ. "Թէ որ չլուամ, ինծի հետ մասն չես ունենար"։ Ետքը ամենուն մէկէն ըսաւ. "ինչպէս ես ձեզի ըրի, դուք ալ մէկմէկու ըրէք"։

Հ. Զատկական ընթրիքին գիշերը Յիսուս ո՞ւր կեցաւ.

Գ. Աշակերտաց ոտքը լուանալէն՝ ետքը նախ նստաւ քիչ մը խօսեցաւ. ետև դարձաւ Յուդայի ըսաւ. "Ինչ որ պիտի ընես, գնա՛ ըրէ"։ Յուդա մէկէն ելաւ գնաց Յիսուսը մատնելու՝ բոլորովին սատանայէն միտքը բռնուած։ Առաքեալները կարծեցին թէ Յիսուս զինքը բանի մը կը խրկէ։ Անկէ ետև իր մեր վրայ ունեցած սէրը շատ կերպ խօսքերով իմացուց Յիսուս, և թէ պիտի իրենցմէ բաժնուի։ Երբոր ամէնքը սրտերնին ելած մտիկ կ՚ընէին, իրենց ըսաւ թէ "Դուք ալ զիս պիտի թողուք երեսի վրայ". անոնք՝ Չէ, կ՚ըսէին. ամենէն աւելի Պետրոս. "Կը մեռնիմ քեզի հետ ու չեմ բաժնուիր", կ՚ըսէր. Յիսուս ըսաւ. "Գիտնաս որ աս իրիկուն երեք անգամ զիս պիտի ուրանաս"։ Ան ա՛լ աւելի կը պնդէր թէ անկարելի է։ Ետև գիշերանց ելան, Յիսուս Ձիթենեաց լեռը գնաց աղօթք ընելու։

124.

Հ. Մատնութեան գիշերը Յիսուս երբոր լեռը գնաց աղօթք ընելու, առաքեալներն ո՞ւր թողուց.

Գ. Գեթսեմանի գեղը թողուց, ու միայն Պետրոսը՝ Յակոբոսն ու Յովհաննէս հետն առած՝ պարտէզ մը գնաց, և անոնց ալ ըսաւ թէ

«Շատ տրամութեան մէջ՝ եմ. հոս աղօթքի կեցէք»։ Քիչ մ' ալ առաջ գնաց, ու սկսաւ աղօթք ընել. և մեր ըրած մեղքերուն մեծութիւնը մտածելով արիւն քրտնիլ սկսաւ։ Երկու անգամ ալ եկաւ առաքեալներն արթնցուց աղօթքի՝ որ փորձութեան մէջ չիյնան։ Երրորդ անգամ եկաւ «Ելէք, ըսաւ, երթանք, հիմա կուգան զիս փընտռողները»։ Ան ատեն մէկէն հասան Հրեաները զինքը բռնեցին։

Հ. Յուդա ինչ կերպով մատնեց զՅիսուս, և Յիսուս ինչպէս բռնուեցաւ.

Պ. Յուդա նշան տուեր էր անոնց թէ որուն որ պագնելով բարև տայ՝ ան է, ուստի երբոր զինուորներով զէնքերով եկան, Յուդայի բարև տալու ատենն ըսաւ Յիսուս, թէ «Ա՛ս ինչ է Յուդա, համբուրելո՞վ զիս կը մատնես»։ Ետքը անոնց առջևն ելաւ, «Զո՞վ կ'ուզէք» ըսաւ. «ԶՅիսուս» ըսին։ Երբոր պատասխանեց թէ «Ես եմ», ամէնքը կռնըկի վրայ ինկան։ Ետքը նորէն հարցուց, ու ըսաւ որ աշկերտներուն ձեռք չդպցընեն։ Երբոր մօտեցան զինքը բռնելու, աշակերտները սուր հանեցին որ կռուին։ Սուրերը տեղը դրէք ըսելու չմնաց, Պետրոս քաշեց Մաղքոսի ականջը կտրեց։ Յիսուս «Մի՛ ընէք, ըսաւ. ես թէ որ ուզէի հիմա հազարաւոր հրեշտակ կուգային», ու ծառային ականջը առաւ տեղը կպուց։ Ասանկով բռնեցին Յիսուսն Աննա քահանայապետին տարին։

Հ. Յիսուս Աննա քահանայապետին առջև ինչ ըրաւ.

Պ. Քահանայապետն սկսաւ հարցնել Յիսուսի ըրած գործքերը. Յիսուս պատասխանեց թէ «Իմ ըրած բաներս ամէնքը գիտեն»։ Ասանկ համարձակ ըսելուն համար՝ մէկը Յիսուսի ապտակ մը զարկաւ «Ասանկ պատասխան կուտաս»

ըսելով ։ Յիսուս ալ ըսաւ . “ Թէ որ ծուռ խօսք ըսի , ինծի իմացուր . իսկ թէ որ շիտակ , ինչո՞ւ կը զարնես ” ։ Ետքը Կայիափա քահանայապետին տարին ։

Հ . Կայիափայի առջեւ Յիսուսի ինչ ըրին .

Պ . Սկսան սուտ վկայ փնտռել , և հազիւ երկու հոգի գտնուեցան որ կ'ըսէին թէ “ Մենք լսեցինք որ իրեք օրուան մէջ տաճարը կրնամ քակել ու շինել ” կ'ըսէր . բայց ինչ որ ալ կ'ըսէին , մէկմէկու նման չէր ըլլար ։ Կայիափա հարցուց թէ “ ինչո՞ւ պատասխան չես տար ” . երբոր տեսաւ որ ճար չըլլար խօսեցընելու , ըսաւ . “ Յանուն Աստուծոյ կ'երդուընցընեմ որ ըսես թէ որդի Աստուծո՞յ ես ” . ան ատեն պատասխանեց Յիսուս . “ Դո՛ւն կ'ըսես . և վերջի դատաստանին օրն իմ փառքս պիտի տեսնէք ” ։ Աս խօսքիս վըրայ Կայիափա կատղեցաւ , լաթը պատռեց , ըսելով “ Հայհոյեց , ալ վկայ ինչ պէտք է ” ։ Ուրիշներուն հարցուց , ամէնքը ըսին թէ “ Պէտք է մեռցընել ” . ու սկսան նախատել , թքնել , զարնել . գլուխը լաթ մը ծածկեցին ու կը հարցընէին թէ “ Ո՞վ է զարնողը , գիտցի՛ր ” ։

Հ . Երբոր Յիսուս Կայիափայինքովը էր , առաքեալներն ո՞ւր էին .

Պ . Ամէնքը ցրուեցան գնացին . միայն Յովհաննէս՝ քահանայապետին ծանօթ ըլլալով պալատն եկեր էր . և Պետրոս ալ որ Յիսուսի սիրոյն չէր կրնար հեռանալ , ու եկեր էր ինչուան դուռը , Յովհաննէսին խօսքովը ներս առնուեցաւ ։

Հ . Յիսուս ինչպէս որ ըսեր էր , Պետրոս զինքն ուրացա՞ւ .

Պ . Երբոր սրահը նստած կը տաքնար ուրիշներուն հետ , աղախին մը իրեն ըսաւ որ “ Դուն ալ Յիսուսի հետն էիր ” . Պետրոս մէկէն ուրացաւ թէ “ Չեմ ճանչնար ան մարդը ” ։ Քիչ մը

ետքը ուրիշ մըն ալ տեսաւ ու առջինին պէս ըսաւ, ան ալ նորէն ուրացաւ։ Քիչ մը անցաւ՝ ուրիշ ծառայ մըն ալ «Դուն զքեզ պարտիզին մէջ տեսայ, ըսաւ, Յիսուսին հետ. լեզուէդ ալ կ'իմացուի որ Գալիլեացի ես»։ Պետրոս սկսաւ երդուընուլ՝ ուրանալ, «Չեմ ճանչնա՛ր» ըսելով։ Ան ատենը Յիսուս ներսէն դարձաւ Պետրոսին նայեցաւ. անով Պետրոսին միտքը վրան եկաւ, զղջաց, ելաւ դուրս ու լալ սկսաւ։

125.

Հ. Երբոր Կայիափային առջեւը զՅիսուս մահապարտ դատեցին, մէկէն սպաննեցի՞ն.

Պ. Ուզելով Յիսուսը նախատական մահուամբ մեռցընել, որովհետեւ իրենք օրինաց ըսածին պէս՝ միայն քարկոծելու հրաման ունէին կայսերէն ալ, անոր համար առաւօտանց կանուխ Յիսուսը Պիղատոսի ատեանը տարին ու ամբաստանեցին թէ կայսերէն կ'ապստամբեցընէ զՀրեաները ինքզինքը Թագաւոր անուանելով։

Հ. Երբոր զՅիսուս Պիղատոսի տարին, սպաննելու հրաման տուա՞ւ.

Պ. Չէ. առաւ զՅիսուս քննեց. ու երբոր իմացաւ թէ անմեղ է, ելաւ Հրէից ալ ըսաւ իր կարծիքը։ Անոնք նոր նոր ամբաստանութիւններ ընել սկսան։ Յիսուս անոնցին պատասխան չտալովը զարմացուց զՊիղատոս. որ իմանալով թէ Յիսուս Գալիլեացի է, Հերովդէսի խրկեց. որ ան օրերը Երուսաղէմ եկեր էր։

Հ. Հերովդէս Յիսուսին վրայ ի՞նչ դատաստան կտրեց.

Պ. Շատոնց փափաքելով որ Յիսուսը տեսնէ,

ուրախացաւ, ուզեց որ իր առջև հրաշք մը ընէ․ ու շատ բաներ սկսաւ հարցընել։ Երբոր Յիսուս ամենևին պատասխան չտուաւ, Հերովդէս բարկացաւ՝ նախատեց զՅիսուս, ու վրան ճերմակ լաթ մը հագած՝ նորէն Պիղատոսին խրկեց որ դատաստանը տեսնէ։

Հ. Երկրորդ անգամ երբոր Յիսուսը Պիղատոսի տարին, Պիղատոս ի՞նչ վճիռ տուաւ.

Պ. «Մեռնելու արժանի յանցանք չունի, ըսաւ, ուստի քիչ մը պատժեմ զանիկա. ու ինչպէս որ սովորութիւն ունիք՝ զատկին մէկ յանցաւոր մը արձակելու, անիկայ արձակենք»։ Ան ատեն ամէնքը մէկէն սկսան աղաղակել որ Բարաբբան արձակէ, որ արիւնկզակ մարդ մըն էր. ու զՅիսուս խաչ հանէ։ Պիղատոս շատ ջանաց որ մտքերնին փոխէ, բայց երբոր ճար չեղաւ, անոնց առջև ձեռքը լուաց, «Ես անպարտ եմ», ըսելով։ Անոնք մէկ բերան սկսան կանչել թէ «Արիւնը մեր ու զաւկըներունս գլխուն. թող խաչուի»։ Ան ատեն Պիղատոս դեռ յուսալով շահիլ անոնց սիրտը, զինուորներուն ձեռքը տուաւ զՅիսուս, որ լաթերը հանած՝ չարաչար ծեծեցին. գլուխը փշէ պսակ դրած՝ ձեռքը եղէգ մը կուտային, ծաղր ընելով կը ծնրէին առջևն, ու «Ո՛ղջ լեր, Թագաւոր» ըսելով կ'առնէին եղէգը ձեռքէն ու գլխուն կը զարնէին. ասանկով Յիսուսին բովանդակ վրան գլուխն արիւնլուայ ըրին։ Երբ անանկ խեղճութեան մէջ Պիղատոս հանեց զինքը Հրէից ցուց. բայց անոնք գթալու տեղ ա՛լ աւելի կատղեցան. «Ինքզինքը Աստուծոյ որդի կ'անուանէ», կ'ըսէին։ Աս որ լսեց Պիղատոս, սիրտը դող ելաւ. գնաց նորէն սկսաւ հարցընել, ըսելով թէ «Իշխանութիւն ունիմ զքեզ արձակելու»։ Յիսուս ալ պատասխանեց. «Թէ որ Աստուած չթողուր, դու բան չէիր կրնար ընել»։

Այս խօսքիս վրայ աւելի վախնալով, կ'ուզէր ար-ձակել։ Այն ատեն Հրեայք սկսան կանչուըռտել ըսելով. «Թէ որ ատիկայ արձակես, կայսեր բարեկամ չես»։ Տեսաւ Պիղատոս որ ուրիշ ճար չկայ, և վախնալով անոնց կամքին դէմ ընելու որ չըլլայ թէ իր վրայ կայսեր ամբաստանութիւն ընեն, «Ձեր թագաւորն, ըսաւ, կ'ուզէք որ խաչ հանեմ»։ Անոնք ալ ըսին. «Կայսրէն ուրիշ թագաւոր չունինք մենք»։ Այն ատեն Պիղատոս ալ վճիռը գրեց որ խաչին վրայ դնեն, թէ «Այս խաչուողը Յիսուսն է՝ Հրէից թագաւորը». ու Յիսուսը մատնեց անոնց ձեռքը։ Հրեայք աս վճռոյն չհաւնեցան, ուզեցին որ գրէ՝ թէ «Ինքզինքը թագաւոր անուանեց». բայց Պիղատոս մտիկ չըրաւ, վճիռը չփոխեց։

Հ. Յուդան զՅիսուս մատնելէն ետքը ի՞նչ ըրաւ.

Պ. Տեսնելով որ Յիսուսը մեռցնելու կը տանին, սաստիկ սրտին ցաւ եկաւ. գնաց առած ստակը ետ տուաւ «Մեղայ, ըսաւ, որ անմեղ մարդուն արիւնը մատնեցի»։ Հրեաներն «Այն դու գնա՛ մտածէ» ըսին։ Ինքն ալ յուսահատած գնաց ինքզինքը կախեց։ Իսկ անոր ստակով Հրեայք գետին մը գնեցին, օտար մարդիկներու գերեզմաննոց ըրին. տեղին անունն ալ դրին Ագարակ արեան։

126.

Հ. Երբոր Հրեայք Յիսուսի մահուանը վճիռն առին, ի՞նչ ըրին.

Պ. Նախատելով զարնելով խաչն ուսը տուին, ելան Գողգոթա լեռն երթալու։ Ամէն անցնող-

ներուն գութը կը շարժէր, կուլային․ Յիսուս դարձաւ ըսաւ անոնց, թէ «իմ վրաս մի լաք, ձեր վրայ լացէք, որ չճանչնալով իմ ձեր վրայ ցուցուցած սէրս, եւ պիտի չկենաք ձեր անկարգութիւններէն ու յուսահատական պիտի տանջուիք»։ Հրեաները վախնալով որ Յիսուս ճամբան կը մեռնի, գտան Սիմոն Կիւրենացին ու Յիսուսին խաչն անոր կռնակը տուին, ինչուան հասան Գողգոթա լեռը։ Հոն Յիսուսին լեղիով խառնուած քացախ տուին․ Յիսուս համն առաւ ու խմել չուզեց։ Ետքը Յիսուսը գամեցին խաչին վրայ, երկու դին ալ երկու ուրիշ աւազակներ խաչեցին։ Յիսուսի լաթերն ալ զինուորները մէջերնին բաժնեցին․ Յիսուս պատմուճան մը ունէր առանց կարի վերէն վար հիւսած, ան ալ վիճակով մէկու մը տուին։

Հ․ Յիսուս խաչուելու ատեն ինչ կը մտածէր․

Պ․ Մէկ կողմանէ սիրով կը համբերէր որ անով մենք պիտի փրկուէինք, մէկ կողմանէ ալ կը ցաւէր որ շատերնիս իրեն անանկ մեծ սէրը պիտի արհամարհէինք․ անոր համար սկսաւ ձայնով ալ աղօթել Հօր Աստուծոյ․ «Հա՛յր, ըսաւ, թողութիւն տուր ասոնց ըրածներուն, վասն զի իրենք ալ չեն գիտեր ինչ կ'ընեն»։

Հ․ Հրեայք Յիսուսը խաչելով հանգստացա՞ն․

Պ․ Չէ․ ամէն կերպով կը ջանային որ քանի որ ողջ է, սիրտը կսկիծցընեն, հայհոյելով, ծաղրելով․ «Թէ որ Աստուծոյ որդի ես՝ կ'ըսէին, ինչ կեցեր ես, խաչէն վար իջիր որ քեզի հաւտանք»։ Մէկն ալ անդիէն «Տեսէք, կ'ըսէր, ինքն որ ուրիշները կ'ազատէր, ինքզինքն ինչո՞ւ չազատեր»․ ուրիշ մըն ալ կ'ըսէր․ «Թէ որ Աստուած զքեզ կը սիրէ, շուտ ընէ թող զքեզ փրկէ»։ Զինուոր-

տուփին հարցընելով, գերեզմանը գնացին կնքեցին ու քովը պահապաններ ալ դրին երեք օրուան համար՝ որ մարմինը չգողնան աշակերտները ։

Հ. Յիսուսի յարութիւնն ինչպէս եղաւ.

Պ. Քանի մը բարեպաշտ կանայք շաբաթ իրիկունէ խունկ դրին ու կիրակի առաւօտանց կանուխ տեսակ տեսակ խունկեր ու անուշահոտ եղեր մէկտեղ առած՝ գերեզմանը կուգային ։ Ճամբան սկսան տարակուսիլ թէ ինչպէս վրայի մեծ քարը պիտի շարժեն, բայց առաջուց մեծ շարժմունքով հրեշտակ մը իջաւ՝ քարը մէկդի գլորեց. որուն վախէն զինուորները մեռելի պէս ինկան, ոմանք ալ փախան քահանայապետներուն պատմեցին ։ Իսկ անոնք շատ ստակ տուին զինուորներուն որ ձայն հանեն թէ՝ "Գիշերանց աշակերտները գողցեր են զՅիսուս,, ։ Ետքը երբոր իւղաբեր կանայք գերեզմանին դուռը բաց գտան, և մտան ներս, մարմինը չգտան. կարծելով թէ գողցեր են, լալ սկսան ։ Մարիամ Մագդաղենացին վազեց գնաց՝ ըսաւ Պետրոսի և Յովհաննու. անոնք ալ հետը մէկտեղ ելան եկան ։ Բայց դեռ անոնք չհասած, մէկալ կանայքը նորէն երբոր լալով գերեզմանը նայեցան, տեսան երկու հրեշտակ, վախցան ։ Հրեշտակներն ըսին թէ "Մի վախէք, Յիսուս յարութիւն առաւ. գնացէք աշակերտներուն պատմեցէք,, ։ Բայց անոնք վախնալով գնացին ու մէկու մը բան չըսին ։ Ետքը Պետրոս ու Յովհաննէս եկան նայեցան որ չկայ, գնացին մէկալներուն ըսելու. բայց Մարիամ կեցաւ հոն ու կուլար ։ Ան ատենը հրեշտակներն իրեն ալ երեցան, հարցուցին թէ ինչո՞ւ կուլայ. Մարիամ պատասխան տալու ատեն ետեւը նայեցաւ տեսաւ զՅիսուս, պարտիզպան կարծեց. սկսաւ աղաչել որ եթէ ինքը վերուցեր է, ըսէ ո՞ւր դրեր է ։ Ան ատեն Յիսուս իր ձայնովը կանչեց՝ "Մարիամ,,.

ան ալ մէկէն ճանչցաւ ։ վազեց՝ որ ոտքը պագնի. Յիսուս թող չտուաւ. «Գնա՛, ըսաւ, պատմէ ուրիշներուն»։

### 128.

Հ. Յիսուս յարութենէն ետքը քանի՞ անգամ երեցաւ.

Պ. Շատ անգամ երեցեր է ու շատ բան սորվեցուցեր աշակերտներուն մինչուան քառասուն օր ։ Բայց մանաւանդ կը յիշուի մէյմը Եմմաուսի ճամբան երեւնալը, մէյ մ՚ ալ Ծովուն եզերքը. ուրիշ երկու անգամ ալ ։

Հ. Յիսուս յարութենէն ետքը Եմմաուսի ճամբան ինչպէս երեւցաւ.

Պ. Յարութեան օրը աշակերտներէն երկու հոգի Եմմաուս գեղը կ՚երթային. Յիսուս քովերնին մօտեցաւ ճամբորդի մը պէս, սկսաւ հարցընել թէ ինչ բանի վրայ կը խօսին տրտմած ։ Անոնց մէկը Կղէոպաս՝ «Չե՞ս գիտեր, ըսաւ, աս օրերս ինչ բաներ եղան, որ սուրբ մարդը իշխանները խաչել տուին. մենք յոյս ունէինք թէ անիկայ զմեզ փրկէ. եւ այսօր կ՚ըսեն թէ երեւցեր է մեկուն մեկալին»։ Ան ատեն Յիսուս սկսաւ մարգարէից խօսքերովը ցուցընել թէ պէտք է որ ըլլային ան բաները ։ Իրիկուան դէմ երբոր Եմմաուս հասան, Յիսուս կը ձեւացընէր թէ հեռու անդ ալ պիտի երթայ. անոնք ստիպեցին որ ան գիշերը հոն կենայ. եւ երբոր սեղանի նստան, Յիսուս հացն օրհնեց բաժնեց. ան ատենն աչուընին բացուեցաւ ու ճանչցան, ու մէկէն աներեւոյթ եղաւ ։ Իրենք ալ շուտ մը ելան Երուսաղէմ եկան գտան ուրիշները ժողվուած, որ կ՚ըսէին թէ Յի-

տուս Պետրոսին երևցեր է ։ Հոն ատենը երբոր գո_ ցուած Հրեաներուն վախէն՝ կը խօսէին , յան_ կարծ Յիսուս մէջերնին երևցաւ , ցըցուց վէրքե_ րը . եւ զիրենք կերակուր ալ ուզեց ուտելու ։ Քիչ մը խորոված ձուկ և խորիսխ բերին , կերաւ , օրհնեց զիրենք ու աներևոյթ եղաւ ։

Հ . Յիսուսի երկրորդ անգամ առաքեալներուն մէջէն երևնալն ինչպէս եղաւ .

Պ . Առջի օրն որ երևցաւ , Թովմաս հոն չէր . երբոր եկաւ , պատմեցին ։ Ան սկսաւ ըսել թէ “ ինչուան ես չտեսնեմ ու մատս իրեն կողը չխո_ թեմ , չեմ հաւատար ,, ։ Ուստի ութը օրէն նորէն երևցաւ Յիսուս բոլոր աշկերտներուն մէջէն , և Թովմասին ըսաւ . “ Եկո՛ նայէ ու անհաւատ մի ըլլար ,, ։ Ան ատեն Թովմաս կանչեց . “ Տէր իմ և Աստուած իմ ,, . Յիսուս ալ ըսաւ . “ Երանի՜ անոնց որ զիս չտեսած կը հաւատան ,, ։

Հ . Յիսուս ծովեզերքին ինչպէս յայտնեց զինքն աշակերտներուն .

Պ . Երբոր Տիբերեայ ծովուն քով աշակերտ_ ները ձուկ բռնելու գնացեր էին , ու ձուկ չէին գտած , Յիսուս եկաւ երևցաւ , ու ըսաւ որ նաւին աջ կողմը ձգեն ուռկանը ։ Անանկով հարիւր յի_ սուն հատ խոշոր ձկներ բռնուեցան . ու քիչ մնաց որ կը պատռէր ուռկանը ։ Աս հրաշքէն առա_ քեալք իմացան որ Յիսուսն է , քովը ժողովեցան , նստան մէյտեղ ան ձկներէն եփեցին կերան ։ Ետքը Յիսուս Պետրոսի հարցուց իրեք հեղ թէ “ Զիս ուրիշներէն աւելի կը սիրե՞ս ,, . Պետրոս՝ “ Սրտանց կը սիրեմ ,, ըսաւ . Յիսուս ալ պա_ տասխանեց . “ Իմ գառներս ու ոչխարներս ա_ րածէ ,, ։ Ետև իրեն Յիսուս ըսաւ թէ “ Ա_ տենով դու ալ պիտի խաչուիս ու մարտիրոս ըլլաս ,, ։

Հ . Յիսուսին վերջի երևնալն ինչպէս եղաւ .

Գ. Շատ անգամ երևնալէն՝ խրատ տալէն վերջը, քառասներորդ օրը Նորէն երևցաւ, ապսպրեց որ սպասեն Հոգւոյն սրբոյ գալստեան, որ շնորհքով լցուած՝ բոլոր աշխարհքիս քարոզէն: Ետև զամէնքն տարաւ հետն ու Ձիթենեաց լեռը գնաց. հոն օրհնելով զանոնք՝ երկինք ելաւ: Երբոր ամպերուն հասաւ ու ծածկուեցաւ աչուըներնէն, երկու հրեշտակ երևցան՝ ըսին թէ “Ի՞նչ զարմացած երկինք կը նայիք. գիտցէք թէ ինչպէս որ հիմա գնաց, անանկ օր մը փառքով Նորէն պիտի գայ”: Աշակերտներն ալ ուրախութեամբ Աստուծոյ փառք տալով Երուսաղէմ դարձան:



## ԳԻՏԵԼԻՔ

### 129.

Հ. Քրիստոս իր վարդապետութեամբը գլխաւոր քանի՞ տեսակ բան մեզի սորվեցուց.

Պ. Իրեք. Ա. Հին օրէնքներուն տեղ, որ Աւետեաց երկիրը ժառանգելու համար էր, Նոր օրէնքներ ու պատուիրանքներ դրաւ՝ արքայութիւն վաստըկելու համար. Բ. խրատներ՝ Աստուծոյ սիրելի ըլլալու համար. Գ. խորհուրդներ՝ մեր բնութեան տկարութեան տեղը լեցնելու համար։

Հ. Քրիստոսի Նոր օրէնքներն ու պատուիրանքները որո՞նք են.

Պ. Նոյն առջի տասը պատուիրանքներն են. բայց որովհետեւ հին օրէնքին ամէն խոստմունքը մարմնաւոր էին, պատուիրաններն ալ նիւթական կերպով կը պահուէին. ինչուան որ մէկը արձան մը չպաշտէր, կռապաշտութիւն ըրած չէր սեպուեր. ինչուան որ մարդ մը չսպաննէր, մարդասպանութիւն ըրած չէր. ասանկ մէկալ ամէն պատուիրանները ալ։ Քրիստոսի մեզի ըրած խոստմունքը հոգեւոր ըլլալուն, պատուիրանքներն ալ ապսպրեց որ հոգեւոր կերպով պահենք։ Կռապաշտութիւն է ըսաւ հպարտանալը, փառքի՝ հարստութեան ետեւէ ըլլալը, աշխարհքիս՝ մարմնոյ ուզածներն ընելը, լայն ճամբէն երթալ ուզելը, ապրելու աւելորդ հոգ ունենալը։ Ուր որ միայն այո կամ ոչ ըսելով ճշմարտութիւնը կրնայ

իմացուիլ, հոն Աստուծոյ անունը յիշելը աւե-
լորդ սեպեց: Մինչդեռ շաբաթ օրը սուրբ պահե-
ցէք ըսուած էր, անոր տեղը ամէն օր ըսաւ ա-
ղօթք ըրէք. Հայր Մեր՛ն ալ սորվեցուց, և մտքով
միշտ սուրբ եղէք ըսաւ: Սպաննել է ըսաւ՝ մտքով
ուրիշը դատել, բամբասել, ոխ պահել, ողոր-
մութիւն չընել, բարկանալ, չար օրինակ տալ,
գայթակղեցընել ուրիշը: Մէկ խօսքով. ամէն
մեղք որ հին օրէնքին ատենն ինչուան գործքով
չընէին՝ մեղք չէր սեպուէր, Քրիստոս սորվեցուց
որ ինչ և իցէ մեղք ընելու երբոր մէկը փափաքի
մտքով, թէպէտ մարդ ալ չիմանայ, ան մեղքն
ըրած կը սեպուի: Հին օրէնքը մեղքին մեծու-
թիւնը եղած գործքէն կը չափէր. Քրիստոս
սորվեցուց որ պզտիկ մեղքն ալ չարութեամբ
ըրած՝ քան զբիւրաւոր տկարութեամբ ըրած մեղ-
քերէն մեծ է, և Հոգւոյն սրբոյ դէմ է:

Հ. Յիսուսի խրատները որո՞նք են.

Պ. Հոգւով աղքատութիւն, հեզութիւն, սգաւոր ըլլալ, արդարութեան քաղց ու ծարաւ ունենալ, ողորմածութիւն, սուրբ սիրտ ունենալ, խաղաղարար ըլլալ, արդարութեան համար հալածանք ու նախատինք քաշել: Ասոնց ամէն մէկն ընողին երանի տուաւ Յիսուս: Ետքը ետևինները ալ ըսաւ. "Ալ ծնօտը զարնողին՝ մէկալն ալ դարձընել. բաճկոնն ուզողին՝ շապիկն ալ թողուլ. անգարիայի բռնողին ետևէն սիրով երթալ. ուզողին տալ. մեզի չատուողին չատել. կատարեալ ըլլալու ջանք ունենալ. աշխարհք և ամէն բան թողուլ, խաչը առնել իր ետևէն երթալ. պատուոյ անուններ չուզել, ամէնուն հետ հաւասար ըլլալ. մեծ ըլլալով պզտիկներուն ծառայել. միշտ աղօթք ընել ու չձանձրանալ. մաքրութիւն պահել, հոգևոր կենաց հետ ըլլալ. պահք պահելու ատեն ուրախ ըլլալ. ուրիշներուն

հողային համար կենդանիքը գնել․ փոխ տալ՝ առանց յոյս ունենալու որ ետ առնէ․ Թշնամեաց ու հալածողաց համար աղօթք ընել․ ասոր գլխին քանձները մտածել, ձրի քարոզել,,: Բայց աս աւետարանական խրատներուն գլխաւորներն աս իրեքն են․ կամաւոր աղքատութիւն, ողջախո_հութիւն, և անձնուրացութիւն՝ որ է կրօնաւո_րական հնազանդութիւն։

Հ․ Աւետարանին պատուիրանները ու խրատ_ները պահողին ի՞նչ խոստացաւ Քրիստոս․

Պ․ Աս աշխարհքիս մէջը շնորհք․ և անդին յաւիտենական արքայութիւն․ ինչպէս որ չար_հողներուն ալ՝ հոս անհանգստութիւն սրտի, և անդին դժոխքն ու տանջանք յաւիտենական։

Հ․ Ցիսուսի մեր տկարութեանը օգնելու հա_մար տուած խորհուրդները որո՞նք են․

Պ․ Մկրտութիւնը, Դրոշմը ապաշխարեց տա_քելոց որ քրիստոնէութիւն դարձողները մկրտեն՝ սկզբնական մեղքէն սրբուելու համար, և ձեռք ալ գնեն՝ դրոշմեն, Հոգւոյն սրբոյ շնորհքովը լե_ցընելու համար, որ կարենանք դէմ դնել սատա_նային։ Ապաշխարութեան խորհուրդն ալ հաս_տատեց՝ իրեն կատարեալ սէրը ցուցընելու հա_մար, որ մեղաց բարդին չկրնար չներել․ վասն զի ճշմարիտ սէրն արհամարհել չկրնար։ Հաղոր_դութեան խորհուրդը հաստատեց որ զինքը սըր_տերնուս մէջն առնելով, ուրիշ բանի սէր չկա_պենք։ Վերջին օծումն ապաշխարեց որ հիւանդ_ներն օծեն ու Հոգւոյն սրբոյ կրակը մեղքերնուս վէրքերը այրելով բժշկելով, հոգինիս գեղեցկա_նայ զօրանայ՝ Աստուծոյ սիրելի և սատանային զօրաւոր յաղթող թշնամի ըլլայ։ Քահանայու_թիւն հաստատեց որ անով մասնակից ըլլան հա_ւատացեալները աս խորհուրդներուն։ Եւ Պսակին ամուսնանալէն հաստատեց, որ սրբութեամբ ու

Չպայքի անզօրթիջի հետ եղաւ Ճգնաւորի մէջ : Հարս-նիքի գնաց, մէկուն մէկալին սեղանը հրաւիրուեցաւ, ու հոգևոր խրատներով զանոնք ուրախացուց՝ ժողովրդեան մէջ բնակող վարդապետի մը պէս : Պէտք եղած տեղը Թշնամիները պապանձեցուց, բարկացաւ, յանդիմանեց, գէշերուն առանց ակնառութեան վայ տուաւ՝ արդար դատաւորի պէս : Ստակ ժողվելով աղքատներուն բաժնեց՝ ողորմած մեծատան պէս : Երբեմն ժողովրդեան պատիւը սիրով ընդունելով փոխարէնը առատութեամբ տուաւ . խեղճ մարդկանց հետ սիրով վարուեցաւ ու իրենց պիտոյքը հոգաց՝ հեզ ու գթած իշխանի պէս : Անմեղ տղաքը սիրեց՝ գիրկն առաւ օրհնեց . անոնց չար օրինակ տուողին պատիժ սպառնացաւ, գութ ունեցող ծնողաց պէս : Թշնամիներէն երբեմն փախաւ, հալածուեցաւ, Աստուծոյ անուանը համար նախատուողի պէս : Աղքատութեամբ գտածը կերաւ, հագուեցաւ, հօր Աստուծոյ ինչուան մահը հնազանդեցաւ, և միշտ սրբութեամբ ապրեցաւ : Անպարտ տեղը անարգական մահուամբ մեռաւ : Աս ամէն բան պէտք եղածին պէս ընելով, և ասոնցմէ զատ հրաշքներ գործելով սատանաները վախցընելով, յայտնի ցըցուց որ ինքն Աստուած է՝ մարդ եղած ; և կ'ուզէ որ ամէն քրիստոնեայ մարդիկ իրեն նմանելով Աստուծոյ նման ըլլան :

Հ. Յիսուսի քարոզութեան ատենին ըրած հրաշքներն և ուրիշ գործքերը բոլոր գրած են աւետարանին մէջ.

Պ. Չէ, հապա ինչպէս որ աւետարանիչն ալ կ'ըսէ, այնչափը գրուեցաւ որ լսողը չկարենայ տարակուսիլ Քրիստոսի աստուածութեան վրայ :

## ՀՈԳԵԳԱԼՍՏԵՆԷՆ

## ԻՆՉՈՒԱՆ ՊԵՏՐՈՍ ՊՕՂՈՍԻ ԳԼԽԱՏՈՒՄԸ

**131.**

Հոգւոյն սրբոյ գալուստը :

Հ. Քրիստոսի համբարձմանէն ետքը առաքեալներն ի՞նչ ըրին.

Պ. Ինչպէս որ Քրիստոս իրենց պատուիրեց Հոգւոյն սրբոյն գալստեանն սպասելու, գնացին ժողովեցան մէկ տան մը մէջ Աստուածածնայ հետ մէկտեղ, գիշեր ցորեկ աղօթք կ'ընէին : Ան օրերը Պետրոս առաքեալ ըսաւ թէ " Պէտք է Յուդային տեղ ուրիշ մը ընտրել ": Ուստի Յովսէփ կամ Յուստոս և Մատաթիա աշակերտներուն վրայ վիճակ որ ձգեցին, Մատաթիային ելաւ, և առաքելոց կարգը մտաւ :

Հ. Հոգին սուրբ ե՞րբ և ի՞նչպէս իջաւ առաքելոց վրայ.

Պ. Համբարձման տասներորդ օրը յանկարծ երկինքէն սաստիկ հովի ձայն գալով՝ տունը լցուե-

պահքի աղօթքի հետ եղաւ ճգնաւորի պէս ։ Հարսնիքի գնաց, մէկուն մէկալին սեղանը հրաւիրուեցաւ, ու հոգևոր խրատներով զանոնք ուրախացուց՝ ժողովրդեան մէջ բնակող վարդապետի մը պէս ։ Պէտք եղած տեղը թշնամիները պապանձեցուց, բարկացաւ, յանդիմանեց, գէշերուն առանց ակնառութեան վայ տուաւ՝ արդար դատաւորի պէս ։ Ստակ ժողվելով աղքատներուն բաժնեց՝ ողորմած մեծատան պէս ։ Երբեմն ժողովրդեան պատիւը սիրով ընդունելով փոխարէնը առատութեամբ տուաւ. խեղճ մարդկանց հետ սիրով վարուեցաւ ու իրենց պիտոյքը հոգաց՝ հեզ ու գթած իշխանի պէս ։ Անմեղ տղաքը սիրեց՝ գիրկն առաւ օրհնեց. անոնց չար օրինակ տուողին պատիժ սպառնացաւ, գութ ունեցող ծնողաց պէս ։ Թշնամիներէն երբեմն փախաւ, հալածուեցաւ, Աստուծոյ անուանը համար նախատուողի պէս ։ Աղքատութեամբ գտածը կերաւ, հագուեցաւ, Հօր Աստուծոյ ինչուան մահը հնազանդեցաւ, և միշտ սրբութեամբ ապրեցաւ ։ Անպարտ տեղը անարգական մահուամբ մեռաւ ։ Աս ամէն բան պէտք եղածին պէս ընելով, և ասոնցմէ զատ հրաշքներ գործելով սատանաները վախցնելով, յայտնի ցուցուց որ ինքն Աստուած է՝ մարդ եղած, և կ'ուզէ որ ամէն վիճակի մարդիկ իրեն նմանելով Աստուծոյ նման ըլլան ։

Հ. Յիսուսի քարոզութեան ատենին ըրած հրաշքներն և ուրիշ գործքերը բոլոր գրած են աւետարանին մէջ.

Պ. Չէ, հապա ինչպէս որ աւետարանիչն ալ կ'ըսէ, այնչափը գրուեցաւ որ լաւը չկարենայ տարակուսիլ Քրիստոսի աստուածութեան վրայ ։



# ՀՈԳԵԳԱԼՍՏԵՆԷՆ

## ԻՆՉՈՒԱՆ ՊԵՏՐՈՍ ՊՕՂՈՍԻ ԳԼԽԱՏՈՒՄԸ



### 131 .

*Հոգւոյն սրբոյ գալուստը ։*

Հ. Քրիստոսի համբարձմանէն ետքը առաքեալներն ի՞նչ ըրին.

Պ. Ինչպէս որ Քրիստոս իրենց պատուիրեց Հոգւոյն սրբոյն գալստեանն սպասելու, գնացին ժողովեցան մէկ տան մը մէջ Աստուածածնայ հետ մէկտեղ, գիշեր ցորեկ աղօթք կ'ընէին ։ Այն օրերը Պետրոս առաքեալ ըսաւ թէ "Պէտք է Յուդային տեղ ուրիշ մը ընտրել"։ Ուստի Յովսէփ կամ Յուստոս և Մատաթիա աշակերտներուն վրայ վիճակ որ ձգեցին, Մատաթիային ելաւ, և առաքելոց կարգը մտաւ ։

Հ. Հոգին սուրբ ե՞րբ և ի՞նչպէս իջաւ առաքելոց վրայ.

Պ. Համբարձման տասներորդ օրը յանկարծ երկինքէն սաստիկ հովի ձայն գալով՝ տունը լցուե-

պաքի աղօթքի հետ եղաւ Ճգնաւորի պէս ։ Հարսնիքի գնաց, մէկուն մէկալին սեղանը հրաւիրուեցաւ, ու հոգեւոր խրատներով զանոնք ուրախացուց՝ ժողովրդեան մէջ բնակող վարդապետի մը պէս ։ Պէտք եղած տեղը Թշնամիները պապանձեցուց, բարկացաւ, յանդիմանեց, գէշերուն առանց ակնառութեան վայ տուաւ՝ արդար դատաւորի պէս ։ Ստակ ժողվելով աղքատներուն բաժնեց՝ ողորմած մեծատան պէս ։ Երբեմն ժողովրդեան պատիւը սիրով ընդունելով փոխարէնը առատութեամբ տուաւ ․ խեղճ մարդկանց հետ սիրով վարուեցաւ ու իրենց պիտոյքը հոգաց՝ հեզ ու գթած իշխանի պէս ։ Անմեղ տղաքը սիրեց՝ գիրկն առաւ օրհնեց ․ անոնց չար օրինակ տուողին պատիժ սպառնացաւ, գութ ունեցող ծնողաց պէս ։ Թշնամիներէն երբեմն փախաւ, հալածուեցաւ, Աստուծոյ անուանը համար նախատուողի պէս ։ Աղքատութեամբ գտածը կերաւ, հագուեցաւ, հօր Աստուծոյ ինչուան մահը հնազանդեցաւ, և միշտ սրբութեամբ ապրեցաւ ։ Անպարտ տեղը անարգական մահուամբ մեռաւ ։ Աս ամէն բան պէտք եղածին պէս ընելով, և ասոնցմէ զատ հրաշքներ գործելով սատանաները վախցընելով, յայտնի ցըցուց որ ինքն Աստուած է՝ մարդ եղած, և կ՚ուզէ որ ամէն վիճակի մարդիկ իրեն նմանելով Աստուծոյ նման ըլլան ։

Հ ․ Յիսուսի քարոզութեան ատենն ըրած հրաշքներն և ուրիշ գործքերը բոլոր գրած են աւետարանին մէջ ․

Պ ․ Չէ, հապա ինչպէս որ աւետարանիչն ալ կ՚ըսէ, այնչափը գրուեցաւ որ լսողը չկարենայ տարակուսիլ Քրիստոսի աստուածութեան վրայ ։



# ՀՈԳԵԳԱԼՍՏԵՆԷՆ

## ԻՆՉՈՒԱՆ ՊԵՏՐՈՍ ՊՕՂՈՍԻ ԳԼԽԱՏՈՒՄԸ



### 131 ·

Հոգւոյն սրբոյ գալուստը ։

Հ. Քրիստոսի համբարձմանէն ետքը առաքեալներն ի՞նչ ըրին.

Պ. Ինչպէս որ Քրիստոս իրենց պատուիրեց Հոգւոյն սրբոյն գալստեանն սպասելու, գնացին ժողովեցան մէկ տան մը մէջ Աստուածածնայ հետ մէկտեղ, գիշեր ցորեկ աղօթք կ'ընէին ։ Ան օրերը Պետրոս առաքեալ ըսաւ թէ "Պէտք է Յուդային տեղ ուրիշ մը ընտրել"։ Ուստի Յովսէփ կամ Յուստոս և Մատաթիա աշակերտներուն վրայ վիճակ որ ձգեցին, Մատաթիային ելաւ, և առաքելոց կարգը մտաւ ։

Հ. Հոգին սուրբ ե՞րբ և ի՞նչպէս իջաւ առաքելոց վրայ.

Պ. Համբարձման տասներորդ օրը յանկարծ երկնքէն սաստիկ հովի ձայն գալով՝ տունը լցուե-

ցան . և ամենամեծերուն վրայ կրակէ լեզուներ երև_ցան . իրենք ալ սկսան օտար օտար լեզուներ խօսիլ : Ան ատենը ամէն աշխարհքէ բարեպաշտ Հրեաներ որ զատկին Երուսաղէմ եկեր էին՝ իմա_ցան , եկան սկսան զարմանալ որ իրենց երկիրնե_րուն լեզուովը կը խօսէին առաքեալները : Ոմանք ալ սկսան ծաղր ընել՝ " Գինով են ,, ըսելով : Ան ատենը Պետրոս ուրիշներուն հետ Յովէլ մարգա_րէին խօսքովը անոնց իմացուց ու զղջման քարոզ , անանկ որ ամէնքն սկսան հարցընել թէ " Ի՞նչ ընենք ,, : Պետրոս՝ " Զղջացէք ,, ըսաւ . և առան_կով ան օրը իրեք հազար հոգի Յիսուսի հաւա_տացին ու մկրտուեցան :

Հ . Հոգին սուրբ առնելէն ետքը առաքելոց սովորական գործքն ի՞նչ էր .

Պ . Ամէն օր տաճար կ՚երթային աղօթք ընելու . ամենուն համարձակ կը քարոզէին . և տեսակ տե_սակ հրաշքներով ալ ըսածնին կը հաստատէին : Ինչպէս օր մը Պետրոս և Յովհաննէս մէկտեղ տա_ճար մտնելու ատեն , կաղ ծնած մարդ մը որ միշտ դրան քով կը բերէին կը դնէին ողորմութիւն մուրալու համար , իրենցմէ ողորմութիւն ուզեց . Պետրոս ալ ըսաւ . " Քեզի ահա ունեցածս տամ . Յիսուսի անունով ելիր քալէ ,, . ըսելով ձեռ_քէն բռնեց վերուց : Ան ալ մէկէն ցատքեց գնաց տաճարին՝ Աստուծոյ փառք տալու : Աս պատճա_ռով եկան Պետրոսի քարոզութիւնը մտիկ ըրին ու հինգ հազար հոգի ալ դարձան :

Հ . Յիսուսի թշնամի եղող Հրեաները երբոր առաքելոց ըրածներն իմացան , ի՞նչ ըրին .

Պ . Վրանին բարկանալով թէ ժողովուրդը կը խռովեն , բռնեցին զանոնք բանտ դրին . առաւօ_տանց հանեցին բանտէն որ քննեն զիրենք : Առա_քեալներն ալ իմացուցին անոնց ճշմարտութիւնը : Անոնք վախնալով առաքելոց վնաս մը հասցընե_

լու, պատասխանեցին ըսին որ մէյմ՝ ալ չխօսին Յի-սուսի վրայ։ Անոնք ալ ըսին. «Մենք մարդա-հնազանդելու համար՝ Աստուծոյ հրամանին ոտքի տակ չենք կրնար առնել»։ Հրեայք նորէն բար-կացան ու թողուցին։ Առաքեալները գնացին միւսներուն պատմեցին, և ամէնքը մէկէն աղօթք ըրին որ Աստուած շնորհքն աւելցընէ որ չվա-խեն։ Մէկէն կեցած տեղերնին շարժեցաւ ու նորէն Հոգին սուրբ իրենց եկաւ։

## 139.

Հ. Երբոր հաւատացեալք սկսան շատնալ, մէ-ջերնին ի՞նչ կարգ կանոն դրին.

Պ. Յիսուսի խրատներուն հետևելով ամէնքը մէկ սիրտ մէկ հոգի, ունեցածնին կը ծախէին ու ստակնին կը բերէին մէկտեղ կը դնէին որ հաւա-սար ամենուն բաժնուի. կերակուրն ալ մէկտեղ կ'ուտէին։ Անանիան ու Սափիրա իր կինը աս կարգին դէմ խարդախութիւն ընելով պատժու-եցան։

Հ. Անանիայ և Սափիրայի ըրած խարդախու-թիւնն ի՞նչ բան էր.

Պ. Անոնք ծախեցին երկիրնին ու ստակին միայն մէկ մասը տարան։ Անանիան Պետրոս առա-քելոյն տուաւ. «Անանիա՛, ըսաւ առաքեալը, գիտնաս որ աս գործքովդ զԱստուած խաբե-ցիր»։ Անանիան մէկէն հոն ինկաւ մեռաւ։ Ետ-քէն Սափիրան եկաւ. հարցուց Պետրոս թէ «Այնչափ էր ագարակին գինը։ — Հրամմէ՛ էս» ըսաւ։ «Աս ի՞նչ է, ըսաւ Պետրոս, խօսք դրեր էք որ զԱստուած խաբէք. գնա՛ դուն ալ էրիկիդ քով թաղուիս»։ Ան ալ հոն ինկաւ մեռաւ. ու առա-

րին երկանըքով Թաղեցին ։ Ասով ամենուն սիրտը սաստիկ վախ մը ինկաւ որ կեղծաւորութիւն չընեն ։

Հ. Առաքեալներուն ըրած հրաշքները՝ Յիսու-սին ըրածներուն շատութեանը կը հասնի՞.

Գ. Ամենեքին Յիսուսին պէս անթիւ հրաշք կ՚ը-նէին, և զամենքը կը հաւատացնէին. այնչափ որ Պետրոսի անցնելու ճամբուն վրայ կը դնէին հի-ւանդները, որ իրեն շուքը վրանին զարնէ ու բժշկուին. շատն ալ առաքելոց Թաշկինակը կամ ուրիշ լաթը կը տանէին ու հիւանդին վրայ կը դնէին՝ կը բժշկուէր. Թշնամիներն ալ կը վախէին դէմ խօսելու ։ Իսկ Պետրոս առաքելոյն ըրած հրաշքներէն մասնաւոր կը յիշուի Ենեա անդա-մալոյծն որ բժշկեց, և Տաբիթա բարեպաշտ կինն՝ որ երբոր մեռաւ՝ ողջընցուց ։

Հ. Առաքեալները միշտ հանգիստ կրցա՞ն ի-րենց քարոզութիւնը ընելու.

Գ. Ոչ. վասն զի չդիմանալով քահանայա-պետներն ու փարիսեցիք, զառաքեալները բանտ դնել տուին ։ Բայց գիշերը հրեշտակ մը եկաւ զիրենք ազատեց, գնացին տաճարին մէջ սկսան քարոզել ։ Առաւօտանց Հրեայք մարդ խրկեցին բանտն որ դատաստանի բերեն զանոնք ։ Գնացին տեսան որ բանտը գոց է ու մէջը մարդ չկայ ։ Ետքը ուրիշներն եկան ըսին որ տաճարին մէջն են ։ Զարմացան. բայց կանչեցին սրդողեցան ։ Անոնք համարձակ պատասխանեցին թէ “Մենք մարդու ըսածին չենք նայիր, Աստուծոյ կը հնա-զանդինք„ ։ Ետքը սկսան երեսնին զարնել անոնց Յիսուսի դէմ ըրած անօրէնութիւնները. Հրեա-ներն ալ կատղեցան, դուրս հանեցին զիրենք ու խորհուրդ ըրին որ սպաննեն ։ Այն ատենը Գամա-ղիէլ խելացի մարդ մը իրենց խորհուրդ տուաւ որ անոնց ձեռք չդպչին. “Թէ որ ատոնք, ըսաւ, Թևդասին և Յուդային պէս են որ ելան

ժողովուրդն ապստամբեցընելու համար ու կորսուեցան, ասոնք ալ կը կորսուին. իսկ թէ որ Աստուծմէ է ըրածնին, Աստուծոյ դէմ կռիւ ըրած կ'ըլլաք, ու զիրենք ալ չէք կրնար ջնջել”: Աս բանիս իրենց խելքն ալ պառկեցաւ. բայց նախ աղէկ ծեծ մը տուին առաքելոց ու արգիլելով որ չխօսին, թողուցին: Անոնք ալ ուրախանալով որ Յիսուսի անուանը համար նախատուեցան՝ գնացին ալ աւելի սկսան քարոզել:

133.

Հ. Երբոր հաւատացեալները շատցան, աղքատներուն հոգն ալ միշտ առաքելո՞ց վրայ էր.

Պ. Առաքեալները տեսնելով որ չեն կրնար համնիլ ժողովրդեան հոգեւոր և մարմնաւոր պիտոյքը մէկտեղ հոգալու, խորհուրդ ըրին, եօթը հոգի ընտրեցին ու սարկաւագ օրհնեցին որ դրսի բաները հոգան. և էին ասոնք. Ստեփանոս, Փիլիպպոս, Պրոխորոն, Նիկանովր, Տիմոնէս, Պարմենա, Նիկողայոս. որոնց մէջէն Ստեփանոսը Հոգւոյն սրբոյ շնորհքով լցուած՝ հրաշքներ կ'ընէր, թշնամիները կը պապանձեցընէր:

Հ. Հրեայք Ստեփանոսի թշնամանալով կրցա՞ն իրեն վնաս մը հասցընել.

Պ. Բռնեցին քահանայապետին առջև դատաստանի տարին, ըսելով թէ զԱստուած ու զՄովսէս կը հայհոյէ: Քահանայապետն իրեն հարցուց. Ստեփանոս տեղն 'ի տեղը ցցուց Հրէից խստասրտութիւնը և իր ըսածներուն ճշմարտութիւնը: Ասով սաստիկ բարկացան վրան: Նայեցաւ Ստեփանոս երկինքն ու ըսաւ. “Ահա կը տեսնեմ Յիսուսն Աստուծոյ աջ կողմը նստած”:

Ամէնքն ահագին զայրացին , հանեցին դուրսէն քարկոծեցին . որ մեռանելու ատեն . կանչեց . « Տէր Յիսուս , ա՛ռ իմ հոգիս » : Եւ ծունկի վրայ եկաւ , « Աստուած , քաւէ , ասոնց ըրածը մեղք մի՛ սեպեր » , ու մեռաւ : Եղբարք եկան հաւատացեալները լալով արցունքով մարմինը վերցուցին : Սուրբն Ստեփանոս Քրիստոսի համար առջի արիւն թափողն ըլլալուն՝ Նախավկայ ըսուեցաւ :

Հ . Սրբոյն Ստեփանոսի մահուան ատեններն ուրիշ հաւատացեալները հանգի՞ստ էին .

Պ . Հրեայք բոլոր քրիստոնէից դէմ հալածմունք հանեցին . ան պատճառաւ բոլոր աշակերտներն Երուսաղեմէն ցրուեցան ու գացած տեղերնին կը քարոզէին :

Հ . Հոգեգալստեանէն ետքը առաքելոց ըրած գործքերը նոր կտակարանին մէջ բոլոր կը պատմուի՞ն .

Պ . Չէ . միայն Պետրոսին մէկ երկու գործքերը , Փիլիպպոսին զներքինին մկրտելը , Անանիային ձեռքով Պօղոս առաքելոյն դարձը , և ետքը Պօղոս առաքելոյն Բառնաբասի հետ ըրած քարոզութիւնները : Այնչափ որ ասոնցմէ մակաբերենք ուրիշներուն ըրածներն ալ :

Հ . Պետրոս առաքելոյն վրայ պատմուած գործքերը որո՞նք են .

Պ . Սիմոն մոգին տուած յանդիմանութիւնը , հեթանոսներուն՝ եկեղեցւոյ անդամ ըլլալնին իրեն յայտնուիլը , բանտէն հրեշտակին ձեռքով ազատիլը :

Հ . Սիմոն մոգն ո՞վ է , և Պետրոս առաքեալ զինքը ինչո՞ւ յանդիմանեց .

Պ . Սիմոն կախարդ մարդ մըն էր Սամարիայի մէջ , որ իր գործքերովը զամէնքը զարմացուցած էր : Երբոր Փիլիպպոս հոն գնաց , ինքն ալ եկաւ մկրտուեցաւ ու քովէն չէր զատուէր , և ըրած հրաշք_

քինին ալ ուրախութեամբ լցուած՝ գնաց իր տեղը :

Հ. Պօղոս առաքեալն ո՞վ էր, և ի՞նչպէս դարձաւ.

Պ. Սաւուղ անունով օրինաց սաստիկ մեծախնդիր Հրեայ մըն էր, որ Ստեփաննոսի քարկոծման ատեն քարկոծողներուն լաթերը պահեր էր : Իմանալով թէ հաւատացեալները Դամասկոսի մէջ կը շատնան, քահանայապետէն թուղթ առաւ ճամբայ ելլելու, որ երթայ զանոնք բռնել տայ : Երբոր Դամասկոս մօտեցաւ, յանկարծ երկինքէն չորս դին լոյս փայլատակեց, ինքն ալ գետինն ինկաւ, ու ձայն լսեց թէ " Սաւուղ Սաւուղ, ինչո՞ւ զիս կը հալածես ": Պօղոս ըսաւ. " Տէր, դուն ո՞վ ես ": Նորէն ձայն եկաւ թէ " Ես Յիսուս Նազովրեցին եմ : — Տէր ի՞նչ կ'ուզես որ ընեմ " ըսաւ Պօղոս : Ան ալ պատասխանեց. " Ելի՛ր քաղաքը գնա, ու ինչ որ քեզի կ'ըսեն՝ ըրէ ". Պօղոսին քովի մարդիկն ալ զարհուրած՝ բան չէին տեսներ, միայն ձայն կը լսէին : Ետքը աչուըները կուրցած՝ Դամասկոս տարին. հոն իրեք օր անանկ անօթի կեցաւ, ինչուան Աստուծոյ հրամանով Անանիան եկաւ, ձեռքը վրան դնելով բժշկեց ու մկրտեց :

Հ. Պօղոս մկրտուելէն ետև ի՞նչ ըրաւ.

Պ. Մէկէն սկսաւ քարոզել զՅիսուս ու վիճել Հրէից հետ. անոնք կը զարմանային թէ ինքն էր որ քրիստոնեայս հալածելու եկեր էր ու իրենց դէմ կ'ընէր. ուստի իրենք ալ ետևէ եղան որ զինքը սպաննեն : Աշակերտներն ալ զինքը գիշերանց պարսպէն կախելով փախուցին, որ Երուսաղէմ գնաց, սկսաւ քարոզել : Երբոր հոն ալ իմացան Հրեայք, ետևէն ինկան բռնելու : Անկէ ալ Տարսոն փախուցին :

133.

Հ. Պետրոս առաքելոյն ի՞նչպէս յայտնուեցաւ թէ հեթանոսներն ալ եկեղեցւոյ անդամ են.

Պ. Կուռնելիոս հարիւրապետ հեթանոս՝ բայց բարեպաշտ մարդ մը՝ միշտ ողորմութիւն կուտար ու աղօթքի հետ էր: Հրեշտակ Աստուծոյ երեւցաւ իրեն ըսաւ՝ թէ " Աղօթքդ Աստուած ընդունեցաւ. ուստի Յոպպէ քաղաքը մարդ խրկէ ու Պետրոս առաքեալը կանչէ որ քեզի սորվեցընէ փրկութեան ճամբան ": Կուռնելիոս շուտ մը իրեք հոգի խրկեց. ան ատեն Պետրոս կէս օրուան դէմ տանիքն ելեր աղօթք կ'ընէր. յանկարծ տեսաւ որ երկինքը բացուեցաւ, ու մէկ կտաւ մը չորս ծայրէն կախած, մէջը ամէն տեսակ կենդանիներով լցուած առջեւն իջաւ: Պետրոս երբոր զարմացած կը նայէր, ձայն մը լսեց՝ թէ " Պետրոս, ելիր մորթէ ու կեր ասոնք ". Պետրոս ըսաւ. " Քաւ լիցի տէր, պիղծ բան չեմ ուտեր ": Նորէն ձայն եկաւ՝ թէ " Մի՛ ըսեր պիղծ, վասն զի Աստուած սրբեց զասոնք ". ասանկ իրեք հեղ լսելէն ետեւ անյայտ եղաւ: Ասոր վրայ երբոր Պետրոս սկսաւ մտմտալ, նոյն ատենը Կուռնելիոսի խրկած մարդիկն ալ հասան, զինքը կանչեցին խօսեցան, ու պատմեցին Կուռնելիոսին հանդիպածը: Երկրորդ օրը Հոգւոյն սրբոյ ազդելովը՝ հետը մէկ քանի Հրեայ առած՝ Կուռնելիոսի քով եկաւ, որ բոլոր բարեկամները ժողված՝ իրեն կը սպասէր: Երբոր Պետրոս ասոնք մտաւ, Կուռնելիոս ելաւ ոտքն ինկաւ: Պետրոս " Ելի՛, ըսաւ, ի՞նչ կ'ընես, ես ալ քեզի պէս մարդ եմ ".

կռապաշտներուն առջև․ անոնք ալ հրաշքս տեսնելով, կարծեցին թէ կուռքերն երկինքէն իջեր են․ ուստի կ'ուզէր բերքին որ իրենց առջևը զոհ ընեն։ Ան ատեն Պօղոս ու Բառնաբաս լաթերնին պատռեցին, սկսան կանչել․ «Մենք ձեզի նման մարդիկ ենք, Աշխարհիս Աստուածը ձեզի կը քարոզենք»․ ատանկով հազիւ արգիլեցին զոհելէն։ Բայց ուրիշ քաղաքներուն Հրեաներն իմանալով թէ անոնք շատ ժողովուրդ կը դարձընեն, գրգռեցին զանոնք ու զՊօղոս չարչարելով վռնտեցին․ ան ալ Բառնաբասին հետ Յունաստանի ուրիշ քաղաքները գնաց ու շատ մարդ դարձուց։

Հ․ Հեթանոսներէն դարձած քրիստոնեաներուն ու Հրեաներէն եկածներուն մէջ ամենևին կռիւ չէր ըլլար․

Պ․ Գրեթէ միշտ մէջերնին հակառակութիւն կար Մովսէսի օրէնքներուն համար․ աւելի թլփատութեան վրայ։ Հրեայք կը պնդէին թէ ամէնքը պէտք է թլփատուին որ փրկուին։ Անոր համար Պօղոս ու Բառնաբաս Երուսաղէմ խըրկուեցան որ առաքելոց հետ խորհուրդ ընեն՝ որոշեցին որ չթլփատուին։

Հ․ Պօղոս առաքեալ հեթանոսներուն քարոզելու ատեն ամենևին թշնամի չունեցա՞ւ․

Պ․ Իրեն շատ նեղութիւն հասցընողները Հրեաներն եղան․ թէպէտև հեթանոսներէն ալ երբեմն չարչարուեցաւ։ Ինչպէս անգամ մը երբոր Մակեդոնիա կը քարոզէր, դիւահար աղախին մը ամէն հանդիպելուն կը կանչէր թէ «Ասոնք Աստուծոյ ծառաներն են»։ Օր մը Պօղոս դարձաւ սատանային ըսաւ․ «Յիսուսի Քրիստոսի անունովը ելի՛ր անկէց», ու շուտ մը կինը բժշկուեցաւ։ Ասոր վրայ դիւահարին տէրերը շատ սրդողեցան որ անոր իրենց գաղտուկ բաներ յայտնելովը շատ վաստակ կ'ընէին։ Անոր համար Պօ-

ղոսն ու Շիղան իր ընկերը բանտ դնել տուին ; ժողովուրդը կը խռովէին ըսելով։ Բայց կէս գիշերուն աղօթքի ատեն՝ յանկարծ բանտը շարժ մը եղաւ՝ բոլոր դռները բացուեցան, ու երկնց ալ կապերն արձըկուեցան։ Բանտին վերակացուն ձայնէն արթնցաւ, ու կարծելով թէ փախեր են, յուսահատութենէն թուրը քաշեց որ ինքզինքն սպաննէ. Պօղոս շուտ մը կանչեց թէ "Մի վախեր, հոս ենք,,։ Ան ատեն պահապանը դարմանելով եղած հրաշքին վրայ, բանտէն զիրենք հանեց տուն տարաւ. ու ինքն ալ ան գիշերը մկրտուեցաւ։ Առաւօտանց երբոր դատաւորներէն հրաման եկաւ ազատ ըլլալու, Պօղոս պատասխան տուաւ՝ թէ "Ազատ Հռոմայեցի մարդիկ ծեծելով բանտ դրին, ու հիմա գաղտնի կը հանեն,,։ Դատաւորները երբոր իմացան անոնց Հռոմայեցի ըլլալնին, շատ վախցան, ու եկան թողութիւն խնդրելով ազատեցին։ Անկէ ետև Պօղոս ասդին անդին շատ քարոզութիւններ՝ շատ հրաշքներ ընելով Եփեսոս գնաց։ Հոն ալ այնչափ եղաւ որ իրեն թաշկինակը հիւանդներուն կը տանէին ու անով կը բժշկուէին։

137.

Հ. Եփեսոսի մէջ Պօղոսի ինչ նոր դիպուած պատահեցաւ.

Պ. Եփեսոս Սկևի քահանայի մը եօթը տղաքը կային, որ երդմնեցուցիչ կ'ըսուէին, և դիւահարներ բժշկել կը ջանային. տեսան որ Պօղոս առաքեալ Յիսուսի անունովը դև կը հանէ. իրենք ալ մէկ հեղ մը ըսին. "Քեզ կ'երդումնցընենք Յիսուսի անունովը՝ որ Պօղոսը կը քարոզէ,,։ Ըսա

մէջ դիւահարը՝ " Յիսուսը գիտեմ ու Պօղոսը կը ճանչնամ, բայց դուք ո՞վ էք " ըսելով վրանին վազեց ու անոնցմէ երկուքը անանկ չարչարեց որ ծորով մերկ ու վիրաւորուած ազատեցան ձեռ-քէն: Ասով ժողովրդեան վրայ վախ ինկաւ, սկսան կախարդական գրքերն այրել, խոստովա-նիլ ու դառնալ: Ան ատեն Դեմետրիոս արծա-թագործ մը որ կուռքեր կը շինէր, երբոր տեսաւ որ կուռքերը գնողները կը քիչնան, գրգռեց իր արհեստակիցներն ու սկսաւ խռովութիւն հա-նել: Պօղոս տեսաւ որ ձեռքերնէն ազատիլ չըլ-լար, ելաւ անկէ ատչի քարոզած տեղուանքը պտըտելով նոր մտաւ որ Երուսաղէմ երթայ:

Հ. Երբոր Պօղոս Եփեսոսէն Երուսաղէմ գնաց, ի՞նչ նոր բան պատահեցաւ.

Պ. Ճամբան երբոր Կեսարիա հանդիպեցաւ, հոն Ագաբոս աշակերտ մը մարգարէացաւ թէ Երուսաղէմ զՊօղոս կապեն պիտի ու կռապաշտ-ներուն մատնեն: Ուստի Պօղոս երբոր գնաց Ե-րուսաղէմ, Հրեայք վրան շատ բարկացած ըլլա-լով, բռնեցին զինքը, կ'ուզէին մեռցնել. բայց դատաւորներու ձեռք մատնուեցաւ, որոնք Հրէից հաճոյանալու համար չէին արձըկեր. արդարու-թեան դէմ չըլլալու համար ալ չէին մեռցըներ: Ասանկ մէկ երկու տարի կապուած կեցաւ Պօղոս: Բայց տեսնելով որ ուրիշ ճար չկայ, կայսեր դի-մացն ելլել ուզեց. ուստի Փեստոս դատաւորը զինքը Հռոմ խրկեց:

Հ. Պօղոս Հռոմ երթալու ատեն՝ ճամբան ինչ նեղութիւն քաշեց.

Պ. Շատ խառնակ օդերու հանդիպելով, քանի մը հեղ նաւաբեկութիւն եղաւ: Անգամ մը որ ամէնքը յուսահատած՝ ոչ կ'ուտէին և ոչ կը խմէ-ին, Պօղոս անոնց սիրտ տուաւ որ ուտեն, ըսե-լով " Աստուած ինծի յայտնեց որ մարդ պիտի

չկորսուի ”: Եւ նաւը երբոր ցամաքի զարկաւ ու սկսաւ նաւը քայքայուիլ, ուզեցին զինուորները որ Հռոմ տանելու մահապարտներն սպաննեն որ չփախչին . բայց հարիւրապետը չթողուց, “ Ով որ ինչ կերպով կրնայ՝ թող ցամաքն ելլէ ” ըսաւ . վասն զի զՊօղոսն ապրեցընել կ'ուզէր : Ասանկով մէյմէկ տախտակի կտորով ամէնքն ազատեցան ելան Մելիտինէ կղզին : Հոն կղզեցիք զիրենք սիրով ընդունեցան ու կրակ վառեցին որ տաքնան, վրանին զլուխնին չորցընեն : Պօղոս կրակին մէջ խռիւներ ձգելու ատեն մէջէն օձ մը ելաւ՝ ու իր ձեռքին պլլուեցաւ . ամէն տեսնողները սկսան ըսել թէ “ Գէշ մարդ է եղեր որ օձը զարկաւ զինքը ” : Բայց երբոր Պօղոս թօթուեց օձը կրակին մէջ ու իրեն բան մը չեղաւ, “ Ուրեմն, ըսին, անիկայ աստուածներէն մէկն է ” : Իրեք ամիս հոն կեցաւ Պօղոս, շատ մարդ բժշկեց : Ետքը դնաց Հռոմ, և տեսնելով որ իրեն դէմ դատաստանի ելլող չկայ, մէկ տուն մը քարոզութիւն կ'ընէր : Քանի մը տարիէն ետև Ներոն կայսրը մէկ օրուան մէջ Պետրոսը գլխիվար խաչեց և Պօղոսը գլխատեց :



## ԳԻՏԵԼԻՔ

Հ. Նոր կտակարանին պատմութիւնը ո՞ր գրքեց.

Պ. Յիսուսի վարքը գրեցին չորս աւետարանիչները, Մատթէոս, Մարկոս, Ղուկաս և Յովհաննէս։ Մատթէոս հրէարէն գրեց Երուսաղէմի մէջ Քրիստոսի մեռնելէն վեց տարիի չափ ետքը։ Մարկոս Պետրոսի սան աշակերտը Հռոմ գրեց աւետարանը՝ Քրիստոսի մահուանէն տասը տարի ետև. Մարկոս և Ղուկաս՝ առաքելոց աշակերտներէն էին։ Ղուկաս Պօղոսէն ու մէկալ առաքեալներէն լսելով գրեց աւետարանը՝ Քրիստոսի համբարձմանէն քսան տարիի չափ ետքը։ Յովհաննէս ալ՝ Քրիստոսի չարչարուելէն վաթսունհինգ տարի ետև։ Իսկ Քրիստոսի համբարձմանէն ինչուան Պօղոսի Հռոմ երթալուն պատմութիւնը զատ գրեց Ղուկաս աւետարանիչը, որ Գործք առաքելոց կ՚ըսուի։

կռիւ ընել մէկալ Հրեաներուն հետ. և քաղաքին դռները գոց, մէջն ամէն օր վայնասուն, մէկզմէկ կը ջարդէին։ Տաճարն եղեր էր իրենց պատերազմին տեղը. որչափ որ ուտելու պաշար ունէին, բոլոր կրակի տուին, անանկ որ դեռ Թշնամիք վրանին չեկած՝ մէջերնէն խելացիներն իմացան որ աս մասնաւոր Աստուծոյ պատիժն է, ասանկով ուզեն չուզեն՝ պիտի ջնջուին. մանաւանդ որ Աստուած ալ մէկ քանի յայտնի նշաններով իմացուց իրենց գլխուն գալիքը։

Հ. Աստուած Երուսաղեմի կործանելուն ինչ նշաններ տուաւ.

Պ. Նախ՝ տաճարին պղնձէ դուռն որ քանի հոգի հազիւ կրնային գոցել, կէս գիշերանց ինքիրեն բացուեցաւ, և տաճարին մէջ հրեշտակներուն ահաւոր ձայնը կը լսուէր որ կ'ըսէր. « Աս տեղէն փախչինք, փախչինք »։ Բ. Կրակի պէս վառուած կառքեր ու խումբ խումբ զօրքեր կ'երևային օդուն մէջ երկինքը։ Գ. Յիսուս անունով մարդ մը Երուսաղեմին մէջ եօթը տարի գիշեր ցորեկ անդադար մէկ դիէն մէկալ դին վազվզելով կ'աղաղակէր. « Վա՜յ, վա՜յ, վա՜յ Երուսաղեմի »։ Դ. Երկինքը սաստիկ մեծ լոյս մը երևցաւ՝ տաճարին չորս դին պատած, կէս ժամի չափ. ահաւոր տեսքով գիսաւոր աստղ մըն ալ երևցաւ քաղաքին վրայօք տարիի մը չափ։

Հ. Երուսաղէմ ինչպէս պաշարուեցաւ.

Պ. Տիտոս շատ զօրքով եկաւ քաղաքին չորս կողմը բանակը դրաւ, ու սկսաւ երկու կողմէն սաստիկ պատերազմիլ։ Տիտոս շատ անգամ կը յորդորէր Հրեաներն որ խաղաղութիւն ընեն. բայց ամենևին օգուտ չէր ըլլար։ Եօթը հողաբլուրներ՝ աշտարակներ շինեց, ու բաբաններով պարիսպներն սկսաւ ծեծել։ Անոնք հողաբլուրը կ'այրէին՝ յուսահատած սաստիկ քաջութիւն ցուցնելով.

բայց սովը զիրենք խիստ կը տանջէր, և շատ մարդ կը մեռնէին անօթութենէ, շատն ալ կը փախչէին քաղքէն: Ասանկ պատերազմելով, Հռոմայեցիք առջի պարսպին մէկ կողմը փլուցին ու զՀրեա-ներն երկրորդ պարիսպը փախուցին:

Հ. Հռոմայեցիք ձեռք ինկած Հրեաներն ի՞նչ կ՚ընէին.

Գ. Ինքիրեննուն անձնատուր եղողները կը թողուին որ երթան ուր որ կ՚ուզեն: Բայց պա-տերազմի մէջ բռնածներին քաղքին գիմացը խաչ կը հանէին՝ օրը հինգ հարիւր մարդէն աւելի. Թէ-պէտ ինքիրեննուն գնացողներէն ալ շատը չարա-չար տանջանքներով կը սպաննէին Հռոմայեցւոց զինուորներն՝ որ պահած ոսկիներին քովերնէն առնեն:

Հ. Տիտոս ինչ կերպով առաջ տարաւ Երու-սաղեմի յաղթութիւնը.

Գ. Որովհետև ինքը քաղքին աղուորութեանը և ամրութեանը վրայ զարմացած կ՚ուզէր ազա-տել, անոր համար իրեք օրուան մէջ բոլոր քաղքին չորս դին հեռուէն նոր պատ մը քաշել տուաւ որ ոչ ջուր ուտելու խմելու, ոչ գաղտուկ ճամբայ մը՝ քաղաքը կերակուր տանելու, և ոչ յոյս փախ-չելու ազատելու, և անձնատուր ըլլան: Ասանկ Երուսաղեմի մէջ չպատմուելու սով տիրեց: Թէ որ մէկը չոր խոտ գտնէր ուտելու, երջանիկ կը սեպուէր: Մայր մը իր գրկի տղան եփեց՝ կերաւ: Տներն ու փողոցները մեռելներով լեցուեցան, մարդ չէր հաներ թաղելու, և մեռելները պարս-պէն ալէս վար փոսերուն մէջ կը նետէին: Տիտոս ալ խեղճութիւնները տեսնելով ու չկրնալով ճար մը ընել, " Աստուած է, կ՚ըսէր, աս բաներս ը-նողը ": Իսկ Երուսաղեմին մէջի խռովարարները բոլորովին յուսահատած ու կատղած՝ խելքէ մտքէ չանցած չարիքը կը գործէին. մէկու մը չէին

գթար, որուն բերնէն որ անձնատուր ըլլալու խօսք մը լսուէր՝ մեկէն կը սպաննէին: Պաշարման չորրորդ ամսուն մէջ Հռոմայեցիք Անտոնեան աշտարակին բակին ու հիմնայատակ փլուցին: Նոյնը տաճարին ալ ըրին ու Տիտոսի կամքին դէմ կրակի տուին: Անկէ ետև երրորդ պարիսպն ալ առին ու քաղքին բոլորովին աւրելով թալլեցին:

Հ. Երուսաղէմի կործանման ատեն որչափ մարդ կար մէջը.

Պ. Զատկի տօնին հանդիսանալով, ուրիշ քաղքըներէն շատ մարդիկ հոն ժողվեր էին, շատն ալ ամբոխութեանը համար հոն ապաւիներ էին. ուստի իրենց բազմութիւնը պատերազմին ատեն մեռածներուն համրանքէն կրնայ իմացուիլ. մեկ միլիոն հարիւր հազար մեռան, կ՚ըսէ Յովսեպոս, իննըսուն հազար ալ գերի եղան. թող փախածները ու ասդին անդին ցրուածները:

Հ. Երուսաղէմի պաշարման ատեն մէջը քրիստոնեայք չկային.

Պ. Պաշարմանէն յառաջ երբոր նշաններէն իմացան թէ սկսաւ կատարուելու [illegible] ապա-ն[illegible]ը, ամէնքն ելան փախան:



Ծաղկաքաղ խմացմունքներ ։

Սուրբ Գրոց զարմանալեաց խորհրդածութիւններ դառնին միտ առնելու համար ։

1 . Հրեշտակը հպարտութեամբ սատանայ եղաւ ։ Մարմնով անասուն և հոգւով սատանայ դարձած մարդն ալ խոնարհութեամբ հրեշտակ կ'ըլլայ ։

2 . Մեծ էր Ադամայ մեղքը՝ Աստուծոյ սիրոյն դէմ ; անոր համար սաստիկ պատժուեցաւ . մէկ մեծ եղաւ Քրիստոսի սէրը՝ մեր ըրած անիրաւութիւններուն դէմ ։ Անոր համար վայ անոր որ Քրիստոսի մեծ սիրոյն մեծ անիրաւութեամբ յաղթել կը ջանայ ։

Սուրբ գիրքը կ'ըսէ թէ Ադամ մեղանչեց . բայց ապաշխարութիւնը ուշացընելուն համար արժան չեղաւ ըսել թէ ապաշխարեց ։ Մեղանչելէն ետև մարդ որչափ ուշացընէ ապաշխարելը , այնչափ դժուար կ'ըլլայ մեղքերէն սրբուիլը ։

3 . Աբելի նման ըլլալու համար՝ ուրիշներէն եկած նեղութեան համբերելու է . բայց Կայենի նման ըլլալու համար՝ միայն սրտով ուրիշին ատելը հերիք է ։

4 . Մեղաւոր մարդիկ որչափ շատ ըլլան , այնչափ անհոգութեամբ մեղք կ'ընեն՝ մեկմէկու սիրտ առնելով . բայց Աստուած՝ որչափ մեղաւորները շատ ըլլան , այնչափ շուտ և սաստիկ կը պատժէ զանոնք ։

Նոյայ հետ ամէն տեսակ կենդանիներէն ալ փրկուեցան , բայց անոնք միայն որ տապանը մտան ու տապանով ջրոյն մէջ պտըտեցան , և նեղուածք տեղ չարչարուելով կեցան ։ Ամէն ազգէ

մարդիկ արքայութիւն պիտի երթան, բայց անոնք միայն՝ որ Քրիստոսի խաչին կ'ապաւինին, ու խաչին հետ մեկտեղ կը մկրտուին, և ինչուան կեանքը խաչին պլլուած՝ չարչարանք կը քաշեն:

5. Ծիածանը որչափ աւելի մարդկանց նշանին կարօտ եղած ատեններին երևնայ՝ մութ ամպերու մէջ, այնչափ աւելի գոյնզգոյն պայծառ կը փայլի: Սուրբ եկեղեցին ալ Աստուծոյ շնորհքներովը զարդարուած՝ որչափ սաստիկ թշնամիներու մէջ ինկնայ ու որչափ հալածուի, այնչափ աւելի փառաւոր կը տեսնուի, և զմարդիկ Աստուծոյ հետ կը հաշտեցնէ:

6. Ի՞նչ օգուտ որ կը պարծինք դրախտին Հայաստանու մէջ ըլլալուն համար, երբոր Աստուածան դրախտին մէջ չէ: Ա՜յ անոր որ հպարտութեամբ կը պարծէր, իմաստութեամբ զարդարուած խելքին վրայ, բայց Աստուծոյ երեսէն ինկած է:

7. Ով որ իր ծնողացը վրայ կը ծիծաղի, Քամայ հետ ինքն ալ բոլոր աշխարհքիս առջև ծիծաղ կ'ըլլայ, և ծնողացն անէծքին տակը կ'իյնայ:

Հպարտութեամբ կը կարծեն մարդիկ թէ իրենց խելքով բաղձանքնուն կը հասնին, ու կը սկսին մեծ մեծ աշտարակներ շինել մտքերնուն մէջ. բայց Աստուած յանկարծ կը շփոթէ զիրենք ու կը սորվեցնէ՝ թէ որչափ բարձր բաներու ձեռք զարնել ուզեն առանց Աստուծոյ, այնչափ խոնարհ պէտք է ըլլան Աստուծոյ առջև:

8. Երանի՜ աստուածասէր ծնողաց զաւկին. վասն զի անոնց օրհնութիւնը ինքն ալ կը վայելէ. բայց որչափ որ բարի ըլլալն իրեն դիւրին է, այնչափ ալ երբոր գէշնայ՝ պատժէն ազատիլը դըժուար է:

9. Ի՞նչ շահ խմանութը շատ կենալէն, երբոր սատակ պիտի չվաստըկիս որ երթաս զուարճանաս:

ի՞նչ օգուտ երկար ապրելէն, երբոր առաքինութիւն սիրել չկամենալիս որ արքայութիւն երթաս ուրախանաս :

10. Որչափ որ յայտնի է թէ լեզունիս Ադամայ լեզուն է, այնչափ աւելի ստոյգ է՝ թէ խօսածնիս Ադամայ խօսքերը չեն * :

11. Մեծ հաւատք ունեցողներուն՝ մեծ ու դժուար բաներ կ'առաջարկէ Աստուած. բայց երբոր մեծ նեղութիւններու մէջ կ'իյնան, մեծ պաշտպանութիւն ալ կ'ընէ անոնց :

12. Աբրահամ որչափ իրեն հիւր գար՝ կ'ընդունէր. անոր համար զԱստուած ալ ընդունեցաւ : Ով որ ամէն աղքատին ողորմութիւն կ'ընէ, երբոր Աստուած ալ դառնալու գայ չկարծած ատենը զինքը դատելու, Աստուծոյ ալ ներ ցուցնելովը ինքը զԱստուած կը տեսնէ որ դատելու տեղ ողորմի :

13. Չարերը երբոր Աստուծմէ կը կուրնան՝ Սոդոմացւոց պէս արդարներուն առջևէն կ'իյնան որ մտնեն, բայց դուռը չեն գտներ. անոնց յաղթելու դիւրին ճամբայ մը չեն գտներ, ու ետքն ալ սաստիկ կը պատժուին Աստուծմէ :

Չէ թէ միայն չար չըլլալու է, հապա բարի ըլլալէն ետքն ալ չարերէն զգուշանալու ենք, որպէս զի անոնց վրայ գալիք պատիժէն կարենանք ազատիլ :

14. Միայն Աբրահամն է արդեօք որ իր տղան խիստ սիրելուն համար Աստուծոյ ընծայեց : Աս անտարակոյս մըն է : Բայց ողբալի ճշմարտութիւն մը ալ է որ շատք զաւկըննին չարաչար սիրելով սատանային կ'ընծայեն, աղէկ չկրթելով, քանի աշխարհքի հետ կապելով ու չար օրինակներով :

* Վասն զի Ադամ միշտ մեղքին գէշութեանը վրայ կը խօսէր ու կուլար :

գայ կ'ամբաստանէ թէ իմ բաներս գործածեցիր ու վայելեցիր, և հիմա իմ գործքերս քու քովդ է։ Երանի՜ այն մարդուն որ կարենայ Յակոբայ պէս ըսել սատանային․ "Նայէ, թէ որ քովս քու բանէդ գտնաս՝ առ։"

20․ Եսաւ ջուր էր պղտորուած․ անկիրթ հըպարտ․ Յակոբ ջուր էր յստակ տարածուած, անդորր խոնարհ․ Եսաւ պղտոր ջրին մէջն ու փոթորկելով հայհոյութեան որ ուղղածին այնս կը չարժի ջրին մէջ․ բայց անոր չերեւար մխտանել, հիմնի ժանգտացաւ։ Իսկ Յակոբ գետակին հանդարտ առաջնը խոնարհելով՝ արեւուն զօրութեամբ խնչուած երկինք բարձրացաւ։ Ուր որ աղօթքներնիս է խոնարհիլ, վա՜յ թէ որ չխոնարհինք․ բայց հազար անգամ երանի՝ թէ որ խոստովանքնիս թողութեան ու անիրաւցին առջեւ խոնարհինք։

21․ Յակոբ աղէկ տղան սիրեց և ուրիշներուն առջեւ գգուեց․ անոր համար իրեն ալ ցաւեցաւ՝ տղան ալ։ Աստուած աղէկ մարդը կը սիրէ ու նեղութեան մէջ կ'աշխատցընէ․ անոր համար իրեն ալ կ'ուրախանայ մարդն ալ։ Ծառային աղէկ պտուղը թէպէտ կը սիրեն մարդիկ, բայց կը թողուն որ արեւուն մէջ եփի ու հասնի։

22․ Յովսէփ գերի ծախուեցաւ, գնողներուն չամբաստանեց եղբայրը վրայ․ Յովսէփ թագաւոր եղաւ, վրէժ չխնդրեց անոնցմէ։ Աստուած է ամէն բան առաջ տանողը, ով չհաւատար․ Աստուծոյ ըրածին վրայ ով կը դժգոհայ։ Բայց ամէնքը կը դժգոհան իրենց գլխուն եկած նեղութիւններուն վրայ։

23․ Ո՛րչափ մարդիկ Աստուծմէ կը պատժուին՝ Աստուծոյ ուզածն ընելնուն համար․ վասն զի իրենք Աստուծոյ դէմ ընելու մտքով կ'ընեն։ Յովսէփայ եղբայրքն իրեն վրայ նախանձեր էին․ Աստուած իրենց իմացուց որ փուճ անցք չէա-

խանձին. վասն զի ինքն անանկ կարգաւորեր է որ ամէնքն անոր երկրպագութիւն մխոհ ընեն ։ Մողով չհաւնեցան աս բանին, բայց գործքով անցան 'ի տեղը կատարեցին Աստուծոյ ուզածը ։

24. Մեղաւոր մը իր մեղքերէն ոչ չափ աւելի եա կենայ, Աստուած ալ այնչափ աւելի զինքը տանջել կը սկսի. բայց եաքը յանկարծ կը մխիթարէ. վասն զի ան ատենի տանջանքովը կ'իմանայ մարդ աղէկ մեղքերուն մեծութիւնը. և զինքը տանջելուն համար ինքն ալ կը սկսի զԱստուած սիրել ։ Յովսէփայ եղբարքն երբոր իրեն առջը դիմեցին, ինքն ալ ան ատեն սկսաւ զիրենք փորձել՝ նեղը խօթել. և քանի որ նոր մէջս կը հաւացնէր իրենց, այնչափ աւելի կը ճանչնային յանցանքնուն մեծութիւնն ու կը զղջային ։ Բայց վերջը ատենէն զինքը բոլորովին յայտնեց ու զանոնք մխիթարեց ։

25. Յակոբ թէ որ զՅովսէփ չկորսնցընէր ու չլաւէր, եաքն ալ չէր գտներ ու չէր ուրախանար. միշտը՝ միայն կորսնցընելուն համար էր, իսկ ուրախութիւնը՝ աղուն հետ շատ բարիքներ ալ գտնալուն համար ։

Աստուած զՅովսէփին տաւ Յակոբայ ձեռքէն, գործածեց, ու եաքը ատաւ շահով նորէն իրեն դարձուց ։ Աստուած ինչ հանդստութենէն որ կը զրկէ զմարդ, ան հանդստութիւնը շահովը մէկտեղ եա կը դարձընէ ։

26. Ասոր համար Եգիպտոս պէտք չէ երթալ. առջի բերանը կը հանդչեցընէ, բայց եաքը կը նախանձի ու կը չարչարէ ։ Ով որ նեղութեան մէջ աշխարհքէս հանգիստը կը փնտռէ, եաքն ալ մեծ նեղութիւններու մէջ կ'իյնայ ։

27. Փարաւոն Հրէից տղաքը ջնջել ուզած ատենն որ չըլլայ թէ իրմէ ապստամբին, իր պալատին մէջ կը մեծցընէր ան տղան, որ ատենով բա-

լոր Հրեաները՝ այնտեղ ապստամբեցընէր, և զինքն ու իր զօրքը այնտեղ ընկճէր : Աստուծոյ դէմ կռուիլ ուզողին չընել կռուոյ Աստուածային գործիքները՝ որ ինքն անոր դէմ այնտեղ բանեցընէ :

28 . Ո՞ւր լսուած է որ խոզաններու մէջ կրակ վառի ու չայրէ . բայց Աստուծոյ կամքովը մորենին կը բռնկէր ու չայրէր : Աստուծոյ ապաւինած մարդիկ ինչ փորձութիւններու մէջ ալ ինկան՝ չեն այրիր, հապա կը յաղթեն՝ Թէպէտ տկար ու խեղճ ալ ըլլան :

29 . Աստուած որչափ որ իր գթութեան գիրկը բացաւ Փարաւոնին, անիկայ այնչափ դուրս փախաւ որ չիյնայ մէջը . անոր համար արդարութեան վհին մէջ ինկաւ կորսուեցաւ : Անզեղջ մեղաւորը չէ թէ Աստուծոյ գթութեանը կը յաղթէ, հապա ինքն Աստուծոյ արդարութենէն կը յաղթուի :

30 . Ինչո՞ւ համար խառնացած մեղաւորը մեծամեծ հրաշքներով ալ դարձի չգար : Թէ որ Աստուած չյայտնէր, ինչպէս կրնայինք իմանալ : Վասն զի չարագործներուն հոգւոյն աչքը խաւարած է, չեն տեսներ . պէտք է նախ Ճրագ վառեն, շնորհք խնդրեն : Փարաւոնին սիրտը շօշափելի մութ պատած էր, ինչ և իցէ մեծ ջահերու կը յաղթէր : Առջի ութը պատուհասները չարագործներուն համար էին, իններորդը խաւարումին, անկէ ետև ալ մահ է եկածը :

31 . Իսրայէլացիք Եգիպտոսէն ազատեցան՝ գառնը բաղարջով ուտելով . մենք սատանային բռնութենէն ազատեցանք՝ Ճշմարիտ գառնը ըզ-Քրիստոս ճաշակելով : Բայց անոնք ամէնքն ալ գառնը կերածնուն պէս՝ ելան փախան Եգիպտոսէն . հիմա որչափ մարդիկ գառնը կը ճաշակեն, բայց Եգիպտոսէն Փարաւոնին հետ կ'ելլեն . այսինքն հպարտութեամբ իրենք իրենց հաւնելով, անոր համար կ'ընկղմին :

համբերող, անոյշ, հեզ, նախանձաւոր և հաւատարիմ ըլլալուն համար։ Ուստի անոնք միայն պէտք է ուրախանան, որոնք որ կարողութիւն ունին սա բաները ձեռք ձգելու. վասն զի իրենք ալ իրենց վիճակին մէջ կրնան ըլլալ սքանչելի։

41. Քահանաներուն ձայները Երկինքը կը ծանուցանէ. քահանաներուն ձայնով մարդկանց սրտին մէջ սատանային ամբերը կը կործանին։ Երկինքին ամէն բանը նզովեցին. սատանայինը առաջուց նզովուած է։

Վա՜յ այն մարդուն որ սատանային նզովուած խորհուրդին կը հաւնի, ու գաղտուկ սրտին մէջ կը թողու ու կը պահէ. Թերեւս դրացիներդ չիմացուին, բայց օր մը Աստուած ամենուն առջև պիտի յայտնէ, ու զինքը Աբիրոնին պէս անով անդամ՝ այսինքն հոգւով և մարմնով կրակի պիտի մատնէ ու տանջանքները վրան լեռան պէս պիտի դիզէ։

42. Աստուած տուեր պատուէր ու ըսաւ. "Անդադար աղօթէ". Ցերեկն ո՞վ է որ կ՚արգիլէ. Բայց անզգայ տղաքը ինչպէս առաջ Աստուծոյ, անանկ ալ հիմա Ցերեկոյ հնազանդեցաւ. Ամբողջ այն մարդիկն որ իրենց սովորութիւնը պատճառ բերելով՝ մեծերուն հրամանին չեն հնազանդիր։

43. Քառասուն տարի աշխատելով հազիւ միայն Իսրայէլացիք Աւետեաց երկիրը. բայց երկրին տէր ըլլալու համար շատ պատերազմներ ընել պէտք եղաւ։ Մեղաւորը շատ պզչումով Աստուծոյ գիրկը կը մտնէ. բայց հոն հաստատ մնալու համար շատ փորձութիւններ պիտի քաշէ ու շատ կռիւներ պիտի ընէ։

44. Աւազակայ երկու ձեռքով յաղթող ըլլալն ինչ օգուտ ունէր։ Սատանան իր ուժին վստահացած է. Թէ ուժով դէմ չես դնէր, խաբելով

պէտք է յաղթես ։ Թէ նա աշխարհ բարեկամաց , գու ձախող գաղտուկ բանեցուր ․ Թէ որ յաղթաղութեամբ բարեկ տայ՝ հպարտացընելու համար , խոնարհութեամբ Թուրը սիրտդ պէտք է խոթես ․ Ճախորդութեամբ Թէ ամբողջ տկարէ , վստահութեամբ գէթ անձնդրով պէտք է յաղթես ։

45 ․ Դեբորա մարգարէացաւ՝ սիրտ տալու ․ Բարակ զօրքով քաջութիւններ ըրաւ ․ Յայէլ յաղթութիւնը լմնցուց ։ Մէկ հոգի յաղթեց , իրեք հոգի փառք կուտան Աստուծոյ ։ Թէ Աստուծոյ փառացն համար մէկը կ'աշխատի , ինչո՞վ խմանամ , Թէ որ իր աշխատանաց վարձքն ուրիշն առնէ ու ինքն ուրախանայ ։

46 ․ Երեսունուերկու հազարէն իրեք հարիւր հոգի մնացին Գեդէոնին քովը ․ վասն զի ընտրեալքը քիչ են ։ Շատերը գէշ ըմպելուն ցրուեցան ․ բայց ան քիչն ալ երբ միմիակ մնացին , խեցերը կը ցուցընէր Թէ իրենք ալ են քաջութին պատերազմելէն ։ Ով որ աշխարհքիս մէջ Աստուծով չգործեր , պատնէ կը մտածէ , բայց անոնց հետ Աստուած կար՝ ամենուն յաղթող ։

47 ․ Թէ որ արեւը կը սիրես , արեւուն շատ մի նայիր որ իր լոյսը վայելես ։ Աքիմելէքը փառքը կը սիրէր , ափսոս իրեն որ անգադար փառքին կը նայէր , կուրցաւ չարաչար ․ եղբայրներուն որ իրեն փառք պիտի ըլլային՝ Թշնամի կարծեց , սպաննեց ․ անոր համար անարգ մահուամբ չարաչար կորսուեցաւ ։

48 ․ Ուխտ ընելն Աստուծոյ փառացը եւ մեր օգտին համար է ․ ուխտը կատարելու ատենն մի՛ չուրախանար ․ Յեփթայէ արտմեցաւ ու ցաւեցաւ ։ Վասն զի Աստուած խելք տուեր է որ մտածենք ու գործենք ․ Թէ որ մէկն առանց մտածելու ուխտ կ'ընէ , եաքը կատարելու ատեն որ կը մտածէ՝ պէտք է որ ցաւի ․ չէ Թէ ուխտ

ընկեր պէտք ընկերոջ համար, հապա ինքը Աստու-ծոյ դրած կարգը չպահելով առանց մտածելու գործելուն համար։

49. Որչափ մարդիկ միայն ըլլալով առիւծէն ուրիշ գազաններէն ալ կը յաղթուին։ Նոյնն անոնց որ Սամփսոնին պէս Աստուծոյ ապաւի-նած՝ առիւծները կը պատռեն։ Որչափ որ մեծ փորձութիւններու յաղթենք, այնչափ աւելի անուշութիւն ամենայն կը քաշենք։ Թէ որ առիւ-ծին ձայնը նայիս, կը թուլնաս կը յաղթուիս. իսկ թէ որ Աստուծոյ ապաւինիս, կը յաղթես ու կը յաղթիս։

50. Ամենէն խառնակ ճամբաներ երթալ պէտք չէ. կամ թէ որ գացեր է մէկը, նորէն պէտք է ետ դառնայ որ չկորսուի։ Սամփսոնին հետ շատը կ'երթան աշխարհք սիրելով կը կուր-նան, կը կապուին, խաղալիք կ'ըլլան սատանայի. բայց հոս էր թէ նորէն դառնային Սամփսոնին հետ ճանչնալով իրենց խեղճութիւնն ու յաղ-թէին աշխարհքին՝ սատանային և իրենց մար-մնոյն ալ մէկտեղ։

51. Ով որ ճշմարիտ Աստուծոյ կ'ապաւինի, Աստուած միշտ անոր հետ կը բնակի ու յաւի-տեան այն մարդը կը մխիթարէ։ Միքան իր աս-տուածը կորանցուց, մխիթարութենէն զրկուե-ցաւ։ Որչափ մարդիկ աշխարհքիս մէջ իրենց մէկ յօժարութիւնն պաշտելով կարծեն թէ անով միշտ հանգիստ պիտի ըլլան, բայց քիչ ատենէն ուզեն չուզեն կը զրկուին ան անկարգ յօժարու-թենէն ու բոլորովին թշուառութեան մէջ կ'իյ-նան։

52. Շատ մարդիկ աշխարհքիս փառք պատիւը թողուլ հեռանալ կ'ուզեն. բայց կարծելով թէ Աստուած զիրենք կ'արգիլէ, կը մնան ու ետքը չարաչար կը կորսուին։ Հռութ և Որփա ուզե-

կուած, կեանքէն ալ զզուեցաւ։ Ո՛վ. բանին որ արդարութեամբ քու հանիր, աղէկ է որ համբերութեամբ կենաս, քան թէ ծուռ ճամբով մէկ փոսէն մեկալ փոսն իյնաս։

69. Թէ որ շուքին տեսքին կը զմայլիս, հապա թէ զինքը տեսնես՝ ինչպէս պիտի ապշիս։ Սողոմոնի պատարագը՝ հաղորդութեան շուքն էր. տաճարը մեր եկեղեցւոյն օրինակն էր. Աստուած արև ծագեցաւ, շուքը կորսուեցաւ. բուն տաճարը մեր առջևն երևցաւ։ Հրեշտակներ երկինքէն մեր տաճարն ու պատարագը տեսնել կը փափաքին, մենք, աւա՜ղ, կը ցաւինք որ անոր շուքին կարօտ մնացինք. աս ինչ անխելքութիւն։

Յոբայ թագուհին որ Սողոմոնի ծառաներուն երանի տուաւ, թէ որ հիմա գար զՔրիստոս տեսնելու, Քրիստոսի ծառաներուն վրայ կու տար, զարմանալով Քրիստոսի իմաստութեանը ու դրած կարգերուն վրայ։ Իմաստուններն աստ պատճառը գիտեն, տգէտները պէտք չէ որ գիտնան։ Վասն զի ով որ քիչ մը խելք ունի՝ մէկէն կ՚իմանայ թէ Քրիստոսի կանոնները կարգը չեկողին քանի վա՜յ պիտի ըլլայ. տգէտները թող ձախի սորվին թէ զՍողոմոն Քրիստոսին բաղդատել կ՚ըլլա՞յ։

70. Արքայութեան աղուորութեանը խելք չհասնիր. բայց դռները ծածուկ տեղուանք բացուած են։ Ես կը յայտնեմ, ուզողը թող երթայ։ Յորդայ աղբիւրին մէջէն արքայութեան դուռ բաց կայ. Սողոմոնին պալատը մ՚երթար, ան կողմը պատ հիւսած է։

Ռոբովամ որչափ ողորմելի է եղեր. մեր ամենուս առջև ծիծաղ եղած է։ Բայց Ռոբովամ ինչ պիտի չընէր՝ թէ որ մեր ըրածը լսէր։ Աստուած մեզի կ՚ըսէր, Ճշմարտութիւնը կը քարոզէ, խիղճերնիս կը վկայէ. աս ամէն բաները

կ'արհամարհենք ու մեր կիրքերուն կը հետեւինք , և ուրիշը ծիծաղելի կը համարինք :

71 . Թագաւորութիւնը Աստուծոյ տուող Յե_ րբորդկանայ . անոր համար ան ալ զԱստուած Թո_ ղուց՝ ուրացաւ , որ չըլլայ թէ Աստուած նորէն իրմէն ուզէ տուածը ետ առնել : Ի՞նչ մեծ անխե_ լութիւն : Բայց թէ որ մեր բռածը մոռցեր՝ ի՞նչ սխալ ըսես : Աստուած մեզի տուաւ աս աշ_ խարհքս . ով որ աղէկ բանեցընէ , անոր յաւի_ տենական բարիքը խոստացաւ տալ : Մենք հիմա զԱստուած գործքով կ'ուրանանք , խոստմունքն ոտքի տակ կ'առնենք որ չըլլայ թէ երբ մեռնինք՝ զաշխարհքը թողունք , անոր տեղը նորէն ուրիշ բարիքներ առնենք :

72 . Թէ որ Աստուծմէ արդար կը խնդրես , խնդիրքներուդ կատարուելուն ի՞նչ բան յայտնի նշան կը սեպես . ան որ ուզածներդ սկսիս առ_ նել , թէ ան որ ունեցածէդ ալ զրկուիս : Աս հարցմունքս ծիծաղելի կ'երեւնայ . բայց ասոր առջի սովիհայ տարակոյս չէ , հապա հաստատ մարդկանց մտքին դէմ շփոթութիւն : Եղիա գնաց Սարեփթացւոյն այրուոյ հօգալու . բայց առջի բերանն անոր մնացած կերակուրն ալ ինքն ուզեց . անիկայ ճանչցաւ թէ Աստուծոյ է , չտա_ րակուսեցաւ , տուաւ ունեցածն ալ որ ունէր : Աստուած նախ մարդուն սիրտը կը փորձէ , և մի_ րոյն չափով ալեւր եղածը սկզբով կը հատու_ ցանէ :

73 . Թշնամւոյն յաղթել ուզողը՝ շատ և զօրա_ ւոր մարդիկ պէտք է ունենայ հետը : Եղիա կ'ու_ զէր հարիւրաւոր քուրմերուն յաղթել . երբ տե_ սաւ որ իր հետը կարիճ վկաւորներ չկան , զԱս_ տուած հետն առաւ : Տեսնողը զինքը միայն կը կարծէր . բայց զարհուրած՝ յաղթել անոր չէր կարծեր , վասն զի Աստուծոյ դէմ ուժ կայ որ

բան է ։ Ո՛վ որ Աստուծոյ կ'ապաւինի, անոր ուժն անպարտ է ։

74. Աստուած մարդու ան բանը կուտայ, ինչ որ մարդ Աստուծմէ կը յուսայ ։ Մարդն Աստուծոյ նման է. բայց երբոր չարանայ, կարծէ թէ Աստուած ալ իրեն պէս չար է. չարէն ալ բարի կը յուսայ ։ Աքաաբ չար էր, գրգռելու տեղ Աստուծմէ չարիք յուսալով, կ'ուզէր որ Աստուած իրեն չխառնուի. Աստուած ալ կատարեր էր անոր ուզածը, բայց երբոր Աքաաբ ապաշխարեց Աստուծոյ հարցուց ։ Աստուած առել չգիտեր, անոր համար Աստուած ան ալ իմացուց իրեն ։ Ո՞վ չգիտեր թէ Աստուծոյ երեսէն ինկած մարդը կորսուած է ։ Ես շատ մարդ գիտեմ որ Աստուծմէ աւելի աշխարհք կը սիրեն, ուստի կ'ուզեն որ Աստուած իրենց չխառնուի, աղէկ ըլլան. բայց չեն գիտեր որ Աստուծոյ ձեռքէն ելլողը՝ սատանային կը մնանուին. աշխարհքիս մէջ ինքնիշխան մարդ չգտնուիր ։

75. Չերմեռանդներուն վրայ ծիծաղողին Աստուած ինչ պատիժ կուտայ ։ Թէ որ մինակ է, կը թողու որ գլխուն գայ. իսկ եթէ շատուոր անոնք, յիսուն յիսուն զանոնք կը ջնջէ ։

76. Տղաքը՝ երկու կերպով կը կրթէ Աստուած. թէ որ աղէկ ծնողաց պատահեր են՝ կ'օրհնէ ու շնորհքը կ'աճեցնէ. բայց թէ երեսի վրայ ձգուած՝ չարը բարիէն ընտրել չեն սորված, արջին առիւծի բերան զիրենք կը մատնէ ։ Ո՛րչափ տղաք երեսի վրայ ձգուած են, որ չար գործքեր ընել տալով կտոր կտոր կ'ընէ զիրենք սատանան. Թող մտածեն ծնողք թէ Աստուծոյ ինչ պատասխան տան ։

77. Թշնամիներուն մէջը կեցած՝ Եղիսէն՝ աներեւոյթ զօրքերը կը պաշտպանեն ։ Որչափ փորձութիւնը զօրաւոր ըլլայ, Աստուծոյ պաշտպանութը

կը յաղթէ անոր ։ Սատանային զէնքերը քանի՞ տեսակ են ։ Թէ որ յաղթել ուզես անոր, առանց զէնքի մը իր զէնքերուն ամէնն ալ կ'աւրես, թէ որ աչքդ դէպ 'ի երկինք դարձնես ։

78 . Շատ մարդիկ որոնք իրենք զիրենք բարեգործ կը սեպեն՝ Աստուծմէ չարիք կ'ընդունին, անոր համար շատ ալ զԱստուած անիրաւ կը համարին ։ Բայց Յեռուն արդեօք անիրաւեցաւ Աստուծոյ, թէ Աստուած Յեռուին ։ Ա՛լ լաւ է զԱստուած չճանչնալ, քան թէ ճանչնալ, ու կէս մը Աստուծոյ ծառայել՝ կէս մըն ալ իր կամքին ։

79 . Ով որ կ'ուզէ բան մը չմոռնալ, նշանը վրան կ'առնէ՝ աչքին առջև կը պահէ ։ Իսրայէլացւոց տասներկու ցեղն ալ Յակոբայ որդիքն էին . ինչմէ տասը ցեղը կռապաշտ եղան, ու մնացած երկուքը՝ շատ անգամ աստուածապաշտ ։ Ասոնց քաղքին մէջ Աստուծոյ տաճարը կար որ անարգելէն կը զգուշանային . մէկալնոնք իսկ թէ մինակ մնացած՝ ուզածնին անվախ կ'ընէին ։ Ով որ Քրիստոսի կամ սուրբերուն նշանը քովը միշտ կը պահէ, անոնց յիշատակովը շատ չարիքներէ ազատ կը մնայ . թէպէտ իրեն [illegible] երևնայ ։

80 . Չարը բարիէն՝ կրակը ջրէն նոյնչափ տարբեր են ։ Թէ որ ջուրը երկար ատեն կրակին քով պահես, կը ցնդի կը կորսուի . ամէնէն չմօտեցնելն է ապահով ճամբայ ։ Յովսափատ Աքաաբին հետ բարեկամութիւն ըրաւ, Աքաաբ զգեստներն անոր տուաւ . Յովսափատ թէ որ առջի բարեգործութիւնները չունենար, ան ատեն կ'այրէր կը կորսուէր ։ Չար մարդու հետ ընտանութիւն պէտք չէ ունենալ ։

81 . Աստուած կը բարկանայ երկու տեսակ մարդկանց ; մէյմը իր թշնամւոյն՝ մէյմ՝ ալ իր ծառային . բայց իր ծառան կը խրատէ թշնամեայն

ձեռքով. իսկ Թշնամին կը պատժէ ինքն իր ձեռքով։ Չգիտցողը կարծէ թէ Աստուած իր ծառան քան զԹշնամին սաստիկ կը պատժէ. բայց աստ Աստուած մեր վրայ ունեցած գութը մեզի կը սորվեցընէ։ Իր ծառաներուն քաշած պատիժը՝ պատժողին կենացը հետ կը լմննայ. բայց քաշած տանջանքներնուն վարձքը՝ Աստուծոյ հետ անվախճան կը մնայ։ Գոթողիայի ձեռքով զՅուդան խրատեց Աստուած, բայց պահեց Յովասն ու անով Նորէն զազգը մխիթարեց. իսկ զԳոթողիան յաւիտենական տանջանքի մատնեց։

82. Ամէն մարդու ինչ որ կ'իյնայ՝ անկէ դուրս բանի պէտք չէ խառնուի։ Ողիա թագաւորը շատ բարեպաշտ էր. կարծեց թէ բարեպաշտ մարդը կրնայ խառնուիլ ամէն բանի, զինոց բուրվառը ձեռք առաւ ու մէջէն բորոտեցաւ։

83. Շատ անգամ բարիք ընող մարդիկ՝ Աստուծմէ պատիժ կ'ընդունին. Մանասէն չարիք ըրաւ ու բարիք ընդունեցաւ։ Չարն ալ բարին ալ երբոր իրենց գործքին մէջ անհաստատ կ'ըլլան, բարին իր վարձքը կը կորսնցընէ, չարն ալ իր պատիժը։

84. Յովսիա որչափ որ բարեպաշտ էր, այնչափ շուտ ու ցաւալի մահուամբ մեռաւ։ Աշխարհասէր մարդիկ ասոր վրայ կը զարմանան ու զԱստուած կ'արհամարհեն. իսկ աստուածասէրն աստ Աստուծոյ անհուն բարութիւնը կ'իմանայ ու կը գովէ։ Վասն զի աշխարհասիրաց բարի երեւցածը՝ Աստուծոյ առջև չար է, և իր ծառաներուն անկէ կը զգուշացընէ որ ճշմարիտ բարին տայ իրենց։ Աշխարհքիս ամէն գէշ փորձանքները մեծամեծ վարձքերու պատճառ են՝ Աստուծոյ սիրոյն համար քաշողին։

85. Աստուած ինչու կ'ուշացընէ խոստացեալ մեղաւորներուն պատիժը. ողորմած ու արդար

ըլլալուն համար ։ Ողորմութեամբ կ'ուշացընէ որ դառնան, արդարութեամբ կը պատժէ որ խմանան ․ ողորմութեամբը՝ անկարութեամբ սխալող մեղաւորներուն յոյս կուտայ փրկուելու ․ իսկ արդարութեամբը անզեղջ մեղաւորները կը յուսահատցընէ, խմացընելով թէ պատիժը կ'ուշացընէ, բայց ետքը ամէն պատիժ մէկէն վրանին կը թափէ ։ Յուդայի Թագաւորներուն պատիժը որչափ ուշացաւ ․ բայց երբոր անոնք իրենց չարութենէն ետ չկեցան, Աստուծոյ արդարութեան ձեռքը մատնուեցան ։

86 ․ Թէ որ ուրիշի կորստեանը պատճառ ես, պէտք է լաս՝ պէտք է ցաւիս, չէ թէ հանգիստ նայիս ։ Աբիսողոմին գէշ ըլլալուն Դաւիթ ինք զինքը պատճառ կարծելով այնչափ կը ցաւէր, որ ճար չէր ըլլար անոր լալուն ողբալուն ։

87 ․ Ի՞նչ կը զարմանաս Սողոմոնին վրայ թէ այնչափ շնորհք առաւ, ու ի՞նչպէս Աստուծոյ դէմ ելաւ ։ Շնորհքը զէնք է որ Աստուած մեզի կուտայ ․ մենք որուն դէմ ուզենք՝ կը բանեցընենք ։ Թէ որ Սողոմոնի կարողութիւնը շատ էր, Աստուծոյ դէմ պատերազմներ շատ կ'ընէր ․ Թէ որ ալ շատ յօժարութիւն դուն ունիս, Սողոմոնէն շատ աւելի ապերախտ և չար կը գտնուիս ։ Սողոմոն իր շնորհքներն Աստուծմէ առաւ ․ մեզի ալ կեանք և ոյժ Աստուած տուաւ, հետն ալ անթիւ վարձք խոստացաւ ․ աս ամէն բան կը մոռնանք ու կ'ըսենք թէ կիրքերնուս չենք կրնար յաղթել ․ վա՛յ մեզի ։ Աստուծոյ կրնա՞նք յաղթել ։ Բայց ան դարձեալ կը ներէ, միայն թէ ճանչնանք ու զղջանք ։

88 ․ Ծառը գետնէն կը բուսնի, գետնէն ոյժ կ'առնէ ու կ'աճի ․ գետինը թէ որ ցամքի, ինքն ալ կը դեղնի կը վշտանայ ․ բայց թէ որ հանես անկէն՝ բոլորովին կը չորնայ ։ Տոբիթ շատ նեղու_

զածն առաջ կը տանի ։ Ո՛րչափ մարդիկ անիրաւութեամբ ուրիշի յաղթել կը ջանան . ու երբոր ուզածնին յաջողի՝ իրենց խելքը արդարութենէն վեր կը սեպեն . բայց որ կուգայ՝ կ՚իմանան որ ինչ սխալ բան մտքերնին դրեր են ։

105 . Թէ և սեղանի վրայ շատ կերակուր հանուի, նստողները իրենց չափովը կ՚ուտեն ։ Աստուածաշունչին պատմութիւնները խիստ շատ գիտելիք մէջ կը հանեն, բայց կարդացողները իրենց չափովը պիտի քաղեն . ասոր համար քիչն ալ մէջի բաւական սեպենք ։ Առնմանութիւնը անոնց առջև կը դնէ, որոնց մարմնոյն ախորժակը քան զհոգիններունը խիստ շատ է ։ Թէ որ քիչ մը խելք ունիս՝ եկու տանիկ մտածէ . մարմինդ մեծնալու համար ամէն օր ապրուստ կ՚ուզէ, բայց պիտի աշխատի որ գտնէ ։ Թէ որ տաս ամէն օր ալ՝ նոր տեսակ համով բաներ, կը զուարճանայ կ՚ախորժի . իսկ թէ չտաս հարկաւորն ալ, ինքը կարօտ մնալուն համար կը սկսի ուտել ինչ որ գտնէ, ու կը փտտուի կը մեռնի ։ Հոգւոյն կերակուրն է Ճշմարտութիւնը, ուստի պէտք է որ միշտ Ճշմարտութիւնը քննես . Թէ չէ՝ հոգիդ չկրնալով համբերել, սնոտիութիւնները Ճշմարտութեան տեղ կ՚ընդունի ու քիչ ատենէն Աստուծմէ կը զրկուի կը մեռնի ։ Անոր համար ամէն օր ամէն ատեն սուրբ գիրքը քննելով հոգւ[illegible] միշտ Ճշմարտութիւնը յիշել տալու է, ինչ[illegible]ն մարմինէն բաժնուի, ու Ճշմարտութեան աղբ[illegible]րին մէջ ընկղմի և ազատի յաւիտեան ։

Աս պատճառաւ նոր կտակարանէն ալ մատնաւոր-խրատ չհանեցինք . վասն զի Յիսուսին և առաքելոց ամէն մէկ խօսքը ու գործքը՝ բարի քրիստոնէին մէյմէկ մտածութեանց նիւթ են՝ թէ որ սրտանց ու մտադրութեամբ կարդայ ։

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

| ԴԱՐ Ա. | Ամք Յէ | էջ |
|---|---|---|
| Ադամ ստեղծանելոյն. | 0 | 13 |
| Կայէն ծնանի. | 1 | 16 |
| Աբէլ ծն. | 30 | 16 |
| — Մեռանի 69 տարուան. | 99 | 16 |
| Սէթ ծն. | 131 | 16 |
| Ենովս ծն. | 239 | 17 |
| Կայէն շինեց Ենոք քաղաքը. | 515 | 16 |
| Ենովք ծն. | 623 | 17 |
| Մաթուսաղա ծն. | 688 | 17 |
| Ադամ մեռ. 930 տրէն. | 930 | |
| Ենովք վերցաւ 364 տրէն | 987 | 17 |
| Սէթ մեռ. 912 տրէն. | 1042 | |
| Նոյ ծն. | 1057 | |
| Ենովս մեռ. 905 տրէն. | 1140 | |
| Յաբէթ ծն. | 1557 | |
| Սեմ ծն. | 1559 | |
| Մաթուսաղա մեռ. 969 տրէն. | 1655 | |

* Քամ ալ Ջրհեղեղէն առաջ ծն. բայց ժամանակն անյայտ է:

